ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԺԱ.

# ՄՈՎՍԷՍ ԴԱՍԽՈՒՐԱՆՑԻ (ԿՈՉՈՒԱԾ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ) ԵՒ ԻՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂՈՒԱՆԻՑ


ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

Մխիթ. Ուխտէն



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1970

# MOSES DASKHOURANZI (GENANNT KAŁANKATUAZI) UND SEINE GESCHICHTE DER AŁUANER (ALBANER)

VON

P. DR. NERSES AKINIAN

MECHITHARIST

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1970

# ՄՈՎՍԷՍ ԴԱՍԽՈՒՐԱՆՑԻ
# (ԿՈՉՈՒԱԾ ԿՍՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ)
# ԵՒ
# ԻՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂՈՒԱՆԻՑ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

Մխիթ. Ուխտէն

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1970

# Ա Զ Դ

Գրութիւնս նախապէս լոյս տեսած է «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ 1953, էջ 1—32, 161—175, 321—349, 552—596· ՀԱ· 1954, էջ 471—496· ՀԱ· 1957, էջ 381—406· ՀԱ· 1958, էջ 149—151· ՀԱ· 1959, էջ 110—132· Թէեւ վերջին Յօդուածին աւարտին «Շարունակելի» մատնանշուած է, սակայն Հեղինակին կողմէ կազմուած բովանդակութեան ցանկէն յայտնապէս կը տեսնուի թէ 30-րդ գլխով ուզած է գործը վերջացնել: Իրականին սակայն տակաւին քանի մը գլուխներու ուսումնասիրութիւնը կը պակսի, ինչպէս որ հեղինակը մատնանիշ կ'ընէ էջ 373 ըսելով «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի»: Այս մասին չգտանք իր թուղթերուն մէջ որեւէ գրուածք մը, որով կը փութանք այս վիճակի մէջ գործը հրապարակ հանել առանձին հատորով:

ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

էջ

Ը

էջ

# ՄՈՎՍԷՍ ԴԱՍԽՈՒՐԱՆՑԻ

## Ա.

## ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ ԵՒ ԱՆՈՐ ՀԵՂԻՆԱԿԸ

### 1. ՁԵՌԱԳԻՐՔ ԵՒ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1. *Քրիստոսէ առաջ 296 տարւոյն Աղուանից աշխարհը, յոյն եւ հռոմայեցի մատենագիրներէ կոչուած* Albania *եւ Պարսիկներէ՝ Առան, կ՚ընդգրկէր Կուրի եւ Հայոց սահմաններէն մինչեւ Դերբենդ տարածուած անդրկովկասեան երկրամասերը: Բնակչութիւնը մեծաւ մասամբ կը բաղկանար լեռնական բազմազան եւ բազմալեզու ցեղերէ: Այս աշխարհը կը գտնուէր Մեծ Հայաստանի ազդեցութեան տակ*[1]:

297*ին, Մեծ Հայաստանի դիոկղետեան բաժանումի ժամանակ, Աղուանից վերադարձուեցան Կուրի եւ Երասխի աւազանին մէջ պարփակուած Ուտի, Արցախ եւ Փայտակարան նահանգները, որոնք* 400 *տարիներէ հետէ Մեծ Հայաստանի կը պատկանէին: Միաժամանակ խլուեցան Հայաստա-*

---

[1] *Ագաթանգեղոս, էջ* 16—17:

նէն Գուգարք նահանգն եւ անդրկուրեան գաւառները եւ միացուեցան Վրաստանի: Դիոկղետիանոս կը յուսար թէ այս երկու ընդարձակուած պետութիւնները պիտի կարողանան պահպանել Ալանաց եւ Աղուանից գաւառները եւ ապահովել հռոմէական վաճառականական ճանապարհները[2]:

Ինչպէս Գուգարք, նոյնպէս Ուտի, Արցախ եւ Փայտակարան նահանգները երկար դարերով միացած Հայաստանի՝ հայացած էին լեզուով, բարքով եւ քաղաքակրթութեամբ: 220—297 տարիներուն ընդունած էին անոնք քրիստոնէութիւնը Ս. Գրիգոր Լուսաւորչի եւ անոր յաջորդներու քարոզութեամբ: Այդ նոր կրօնը պահեցին անոնք իրենց նոր տէրերու տիրապետութեան տակ եւ ապրեցան անընդհատ յարաբերութեան մէջ իրենց ազգակիցներու եւ կրօնակիցներու հետ: Այժմ (297) այս հիւսիսային երկիրներու մէջ գոյութիւն առած էին երեք քրիստոնեայ Եկեղեցիներ, Հայոց, Վրաց եւ Աղուանից: Իւրաքանչիւրն ունէր իր հովուապետը, եպիսկոպոսապետը: Վերջին երկուքը իբրեւ քոյր եկեղեցիներ առաջնոյն, կ'առնէին իրենց եպիսկոպոսապետներու ձեռնադրութիւնը Հայոց գլխաւոր եպիսկոպոսէն, որ կը նկատուէր իբրեւ նախապատիւ երեք համապատիւներու մէջ. իսկ Հայոց եպիսկոպոսապետն իր կարգին կ'ենթարկուէր Կեսա-

[2] Հմմտ. Mommsen, Römische Geschichte, V. 441—445.

րից եպիսկոպոսապետին իրաւասութեան, որմէ կ'ընդունէր իր ձեռնադրութիւնը, ինչպէս ալ՝ Անտիոքի մետրապոլիտէն[3]:

Այս երեք եկեղեցիներու մէջ քրիստոնէական պաշտամունքները կը կատարուէին հայերէն, որովհետեւ հայալեզու էին երեքին ալ հաւատացեալները:

Ե. դարու արշալոյսին, երբ սկիզբ առաւ հայ գրականութիւնը, փոյթ տարաւ Ս. Մաշտոց, որ նոյն գրականութիւնը ծաւալի նաեւ Հայաստանէն դուրս եւ Աղուանից եւ Վրաց անցած նահանգներուն մէջ: Գնաց անձամբ Աղուանք, բացաւ այն տեղ թագաւորին եւ եպիսկոպոսապետին համաձայնութեամբ դպրոցներ[4]: Կորիւնի մէկ տեղւոյ սխալ հասկացողութեան արդիւնքն է այն հաստատումը Մ. Խորենացւոյ, թէ Մաշտոց Աղուանից («Գարգարացւոց») ուրոյն այբուբեն տուած ըլլայ[5]:

Ուտի, Արցախ եւ Փայտակարան նահանգները, որոնք իրենց մշակոյթով, իրենց գրագիտութեամբ անդադար յարաբերութեան մէջ էին մշակուած երկիրներու հետ, նկատուեցան Աղուանից աշխարհին գերակայ երկրամասերը. այն տեղ կը նստէր մարզական կայքը, թագաւորն եւ կաթողիկոսը:

Դ. դարու վերջերը Հայաստան, Վրաստան եւ Աղուանք աւար եղան Սասանեան

[3] Ակինեան, Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան, Վիեննա 1949, էջ 3—10:

[4] Ակինեան, Մաշտոց վարդապետ, էջ 129—131, 316—319:

[5] Անդ, էջ 301—306:

պետութեան եւ աւելի ուշ՝ Արաբացւոց: Բայց Աղուանից եկեղեցին պահեց իր գոյութիւնը, շարունակեց իր յարաբերութիւնները Հայոց եկեղեցւոյ հետ, բայց ոչ առանց ընդհատութեան: Զ. դարուն, երբ Հայոց եկեղեցին մխուեցաւ միաբնեայ վարդապետութեան, եւ այսպէս անջատուեցաւ ընդհանրական Եկեղեցիէն, ինչպէս Վրաց, նոյնպէս Աղուանից եկեղեցիները խզեցին իրենց կապը Հայոց հետ. Թէպէտ Աղուանք, քաղաքական բերմանց հետեւութեամբ, միաւանգամ հաստատեցին իրենց աղերսը Հայոց հետ, բայց յընթացս դարերու խզուեցան ժամանակ առ ժամանակ, մինչեւ նորագոյն շրջաններ: ԺԹ. դարու սկիզբը դադրեցաւ Աղուանից կաթողիկոսութիւնը:

Մինչ հեթանոս լեռնական ցեղերը այրեցան անյիշատակ, Աղուանից քրիստոնեայ ժողովուրդը ունեցաւ իր պատմութիւնն եւ գրականութիւնը: Այդ գրականութիւնը հայ գրականութիւնն է. վասն զի գրուած է հայ հոգւով եւ հայ լեզուով:

2. «Աղուանից պատմութեան» մը գոյութիւնը սկսեալ Թ. դարու կէսէն յաճախ կը յիշուի հայ գրականութեան մէջ: Կը պարծէին Աղուանները անով եւ անոր վրայ կը յենուին, երբ որ եւ է իրաւասական խնդիր կը ծագէր Հայոց եւ Աղուանից եկեղեցիներուն մէջ, յատկապէս Թ. դարուն: Բայց չէր տեսնուեր հրապարակի վրայ այդ Պատմութիւնը: Երբ Անանիա Մոկացի կաթողի-

*կոս (949) խնդրեց անկէ օրինակ մը, գլացան Աղուանք ընձեռել զայն Կաթողիկոսին։ ԺԴ. դարու սկիզբը դեռ հազուագիւտ էին անոր օրինակները. Եսայի Նչեցի կը գրէր Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոսին, թէ իրեն ծանօթ են անկէ երկու օրինակ միայն։*

*Այդ Պատմութիւնը մինչեւ ԺԷ. դար անանուն կը շրջէր ձեռքէ ձեռք։ Հայ պատմագիրները սակայն կը յիշեն անոր հեղինակը. մէկը կ'անուանէ «Մովսէս Աղուանից» ուրիշ մը՝ «Մովսէս Վ. Դասխուրանեցի» եւ երրորդ մը՝ «Մ. Կաղանկատուացի»։ Անմիաբան են նաեւ անոնց վկայութիւնները նկատմամբ պատմագրին ժամանակի. ոմանք կը ներկայացնեն Է. դարու, ուրիշներ Ը. եւ դարձեալ ուրիշներ Ժ. դարու մատենագիր։ Իսկ հեղինակի անձնաւորութեան մասին կ'իշխէ ընդհանուր անտեղեկութիւն։*

3. Աղուանից Պատմութեան ձեռագիրները։ *Խաչիկ Վ. Դադեան մանր համեմատութեան ենթարկելով էջմիածնի 5 ձեռագիրները՝ զանազանած է երկու խումբ։*

*Ա. խումբի կը պատկանին էջմ.* 1531 (*Կար.* 1640/1682). *էջմ. Գեւ.* 632 *եւ* 250։

*Բ. խումբ. էջմ. Գեւ.* 632 (*Բ*) = *Դադեան Ժողովածուք, Թ.* 81)։

*Այս ձեռագիրներէն հնագոյնն եւ ամէնուն գաղափար-օրինակ ծառայած է՝*

A. *էջմ.* 1531, *որուն նկարագրութիւնն է. Մեծութիւնն՝* 33 × 48 *հմ., երկսիւն,*

*գրուած խոշոր բոլորգրով, 1289ին Կարբւոյ Ս. Յովհաննու վանքին մէջ. գրիչն անծանօթ։ Կը բովանդակէ. Թղ. 1ա—230բ Սոկրատի Եկեղեցական պատմութիւնը. սկիզբէն պակաս։ Թղ. 231ա—377ա Պատմութիւն Աղուանից։*

*Բուն Յիշատակարանն ինկած է։ Ս. մասին վերջը (Թղ. 230բ) կ'ըսուի. «Այս Պատմութիւն իմաստասիրական ոչ գոյով ի սուրբ մենաստանիս, ի վանս Յովհաննու, եւ տէր Համազասպ բազում փափագանաւք ի խնդիր էի, զի յետ իմ մնասցէ ինձ ընձայ, ընդ մեծամեծս, ի սուրբս այս Սիոնի կաթուղիկէի։ Արդ աղաչեմ զձեզ մանգունք սուրբ ատագատի, հայցեալ ի Քրիստոսէ զթողութիւն յանցանաց մերոց, եւ ինձ եղկելի գրչիս»։ Մանր յիշատակագրութիւններ կան Թղ. 265ա, 273ա, 318ա։ Գրութեան տարւոյն համար կարեւոր կռուան կ'ընծայէ գրչին մէկ յիշատակագրութիւնը Թղ. 306բ (վարի լուսանցքի վրայ). «Աւաղ մեծի աղետիս եւ անմխիթար սգոյս որ եհաս տանս Վրաց եւ քրիստոնէից. զի սպանաւ Թագաւորն Դէմէտրէ յազգէն Նեմրոդայ, ոչինչ մահու պարտական, ի սահմի ամսոյ. եւ էր թիւն ՉԼԷ (1288 փետր.)։ Եւ ահա ի մեծի վտանգի կանք, Տէր փրկեա զմեզ ||||| նեղութեանց ամէն» (Արարատ, 1895, էջ 238)։*

*Ժամանակի ընթացքին մնասուած է ձեռագիրս. ինկած են անկէ թուղթք 343, 351, 352, 374—377, որոնք լրացուած են ապա*

*նօտրգիր եւ բոլորգիր, անշուշտ 1676ին Աթանաս գրչէն, որ արձանագրած է թղ. 377ա. «Յիշատակարան նորոգման գրոցս: Եղեւ նորոգումն գրոցս, որ կոչի Սոկրատ եւ Ագուանից պատմագիր ի թվին ՌՃ եւ ԻԱ (1676) յերկրիս Արարատու ի գաւառս Կարբու... ի սուրբ մենաստանս Յովհաննու վանից»: Կը նորոգեն «Թալիֆայ Զաքարայն, աշխատող հնացեալ գրոցս» եւ Աթանաս գրիչ (անդ, էջ 238):*

*Ասկէ վերջը տեղի ունեցած պիտի ըլլան հետեւեալ ձեռնմխութիւնները. թղ. 235բ—236ա. «այն երեսները գեղին ներկ քսած եւ 236ա սիւնակ բ ինն տող կեղծած. տողերի տակից քերուածքը նկատելի է»: Թղ. 359բ. «մի տող առաջին սիւնակից, եօթն տող երկրորդ սիւնակից քերել են եւ տեղը ուրիշ բան գրել»: Թղ. 375բ$^2$ «ութն տող քերած եւ կեղծած է»:*

*Ագուանից Պատմութեան բաժանումները ներկայացուած են այսպէս.*

Նախերգան Պատմութեան Ագուանից. Առաջին հատուածն գլուխք Լ (*թղ. 231ա*):

*Կատարեցան գիրք Պատմութեանս Ագուանից (թղ. 273ա$^2$):*

Երկրորդ Պատմութիւն Արեւելից Ագուանից նահանգիս (*թղ. 273բ$^2$*):

Երկրորդ (=Գ.) հատուած Պատմութեան Ագուանից (*թղ. 353ա$^1$*):

*Ձեռագրիս մասին հմմտ. Յովհ. եպ. Շահխաթունեան, Ստորագրութիւն Կաթու-*

ղիկէ Էջմիածնի, հատոր Բ., Էջմիածին 1842, էջ 330: E. Boré, Correspondence, II. p. 51. Brosset, Voyage, 3me Rapport, p. 71. Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան, Սոկրատ, էջ ԺԸ—ԻԳ եւ Արարատ, 1893, էջ 65: Աւելի մանրամասնութիւններով՝ Թաշիկ վարդապետ, Արարատ, 1895, էջ 235—239:

Ձեռագիրս Յովհաննավանքէն Էջմիածին փոխադրուած է 1761էն ետքը. այս տարւոյն Յովհաննավանքէն Էջմիածին բերուած էր օրինակութեան համար:

B. Այս A ձեռագրէն արտագրուած է Էջմ. Գէորգեան Բաժնի Թ. 632, որ այժմ 2646 համարը կը կրէ: Գրիչն է Ղունկիանոս դպիր, գրած Էջմիածին 1761ին Յակոբ կաթողիկոսին համար: Կը կրէ խորագիրս.

Էջ 1. «Գիրք Պատմութեան Աղուանից աշխարհին, ի յերիս հատորս բաժանեալ. շարադրեցեալ ի Մովսէ գերիմաստ վարդապետէ Կաղանկատուացւոյ, ի վաղնջուց ժամանակաց»: Կ՚աւարտի էջ 330. «Վերջարանութիւն Պատմութեան Աղուանից աշխարհին, զոր շարադրեալ է քաջ գիտնական եւ գերիմաստ վարդապետն Մովսէս Կաղանկատւացի...»:

Ղունկիանոս դպիր Բուն Յիշատակարանին մէջ կը հաղորդէ գրչութեան մասին հետեւեալ մանրամասնութիւնները.

Յակոբ կաթողիկոս «ի բազմաց ժամանակաց հետէ ցանկայր եւ փափագէր՝ սակս աստուածագունի գրասիրութեանն իւրոյ, զի

ստացի զայս պատմարանութիւն Աղուա-
նատանեայց (զոր արարեալ է Մովսէս վար-
դապետն գիտնական եւ Կաղանկատացի) եւ
ոչ կարէր ստանալ, զի վասն սակաւութեան
գրքոյս այսորիկ, ոչ գտանիւր յամենայն ու-
րեք, բայց եւ զի միշտ որոնէր եւ հետեւէր
առ ի գտանել եւ ստանալ զայս գիր բազմօք
կարօտանօք, վասն որոյ եգիտ զօրինակ մի
ի վանքումն Յոհաննու, որ կայ մերձ Կարբի
գեղջ, որ գրեցեալ էր ի բազմաց ամաց եր-
կաթագրով դժուարակարդալեաւ, եւ սխա-
լագրողի գրչաւ եւ մեծագրիւ ձեւով: Յայս-
մանէ օրինակէ խրթնացելոյ՝ հրամայեաց
ինձ ակարամտի եւ անգիտելի գրչիս Ղու-
կիանոսի դպրի՝ ըստ հոգւոյ իւրումն որդեկի
նախատապատկանի, գրել զայս գիրք պի-
տանի եւ ցանկալի, ի յիշատակ բարի անձին
իւրոյ, եւ ի վայելումն համօրէն մանկանց
որբոյ Աթոռոյս Էջմիածնի: Եւ զի այսպէս
սխալ՝ խրթին եւ մթին էր օրինակն գրքոյս,
վասն որոյ ես անդէտս, ոչ կարէի թարց
նպաստի պարզագրել եւ ի լոյս ածել: Ուստի
բարեմիտ եւ գրասէր Հաւս իմ զանեղի ինն
սահմանեաց մերձակայ ինքեան, վասն եր-
կուց պատճառաց. նախ զի ինքն եւս օժան-
դակ լիցի ակարութեանս իմոյ. երկրորդ՝ զի
փութով աւարտեսցեմ զսա: Յորում նստեալ
գրէի, նորին օժանդակութեամբ եւ մշտա-
վերահասութեամբ, մինչեւ յաւարտումն սո-
րին: Եւ էր թուականս մեր ՌՄԺ» (1761):

Կը սկսի յունուարի սկիզբը, կ'աւարտէ մարտ 10ին (Արարատ, 1895, էջ 333—345)։

Գրիչն էջ 329 յառաջ բերած է Կիրակոս Գանձակեցւոյ Պատմութենէն ՇՁԸ—ՈՁԴ շրջանի Աղուանից կաթողիկոսներու շարունակութիւնը։ Ասկէ առած պէտք է ըլլայ գրիչը նաեւ Աղուանից պատմագրի անունը «Մովսէս Վ. Կաղանկատցի»։

C. Նոյն A ձեռագրէն օրինակուած է Էջմիածնի Գէորգեան Բաժնի Թ. 250 (յամէ 1829)։ Գրիչն է Յովհաննէս արեղայ Գ. Շահխաթունեանց Շահրիարցի (ապա՝ եպիսկոպոս)։ Այս տարւոյն Էջմիածին էր արդէն A ձեռագիրը։ Շահխաթունեան խորագրած է պատմագիրքս. «Պատմութիւն Աղուանից արարեալ Մովսիսի Կաղանկատուացւոյ ի նոյն ազգէ եւ յաշխարհէ։ Սկիզբն առնէ ի ծննդոցն Յաբեթի եւ հասուցանէ ցվախճան իններորդ դարու...» (Արարատ, 1895, էջ 346)։

Բ. խումբ. որուն ներկայացուցիչներն են DE.

D. Էջմ. Գէորգեան Բաժին 632 (Բ) = Դաղեան Թ. 81։

Գրուած է բոլորգիր, 1664ին յԱմարաս, հրամանաւ Աղուանից Պետրոս կաթողիկոսի, ի վայելումն Ամարասի Բարսեղ արքեպիսկոպոսի, ձեռամբ Յովհաննէս գրչի։ Յիշատակարանին մէջ կ'ըսուի. Պետրոս կաթողիկոս «ետ գրել յոլով գրեանս. յորոց մինն է եւ գոյս պատմագիրքս, զոր ի վաղուց հետէ ապականեալ էր ի տանէս Աղուանից եւ գտեալ

եղեւ ի ձեռն յուսաւոր հոգի Ղուկաս վարդապետին, զոր ես վերստին գրել եւ օրինակել վերոգրեալ հայրապետն (Թղ. 259բ):

Թղ. 2ա. Ցանկ եւ նախադրութիւն սակս Պատմութեան Աղուանից:

Թղ. 4ա. Այս առաջին ցանկ պատմագրոյս, Թուով Լ. եւ ցուցանէ կարգի սորա. զոր գլխագիր լինի ընթերցողաց, զորս եւ կամիցին խնդրել. կարգաւ գիր եւ գաչխատող սորա յիշեա»:

Թղ. 66բ. Կատարեցան գիրք յառաջին պատմութեանցս Աղուանից: Երկրորդ պատմութեան Արեւելեայցս Աղուանից նահանգիս:

Թղ. 195բ. Կատարեցաւ շարած երկրորդ միջակ Պատմութեան Աղուանից: Երրորդ ցանկք Պատմութեան Աղուանից:

Թղ. 196բ. «ԻԵ. վասն կոտորածին, որ ի կողմանս Թաչենոյ եւ վասն բարեպաշտ իշխանին Ջալալին», այսպէս ԻԶ—ԻԸ. գլուխք, որոնք չկան Aի մէջ:

Արարատ, 1895, էջ 288—290: Թոփճեան, Ցուցակ, էջ 100:

E. Էջմ. 1725 (Կար. 1679=1721), նոտրագիր, անթուական, գրիչն՝ Յովհաննէս: Ծաշխաթունեան կը համարի գրուած 1675էն ետքը. Ստորագրութիւն, էջ 330: Արարատ, 1895, էջ 424—426:

Բովանդակութիւնն է.

Թղ. 1ա. Յաղագս Պատմութեան երկրիս Աղուանից:

Թղ. 2ա. Նախերգան սակս Պատմութեան Աղուանից։

Թղ. 78ա. Կատարեցան գիրք Ա. Պատմութեանս Աղուանից։ Երկրորդ... (=D)։

Թղ. 80ա. Կատարեցան երկրորդ ցանգք Պատմութեանս Աղուանից. յորում բազում եւ ազգի ազգի զրուցատրութիւնք գտանին։

Թղ. 230բ. Տարած Բ. միջակ պատմութեան Աղուանից։ Երրորդ ցանգք Պատմութեան Աղուանից։

Այս հինգ ձեռագիրներու մանրակրկիտ բաղդատութիւնը Մոսկուայի տպագրութեան հետ կատարած է Թաչիկ Վ. Դադեան քննական հրատարակութեան մը համար, որ ի գլուխ չէ եկած։ Այդ բաղդատութեան չերտերը նուիրեց ինծ 1926ին եւ կը գտնուին այժմ իմ քովս։

Կը յիշեմ այս տեղ ուրիշ ձեռագիրներ ալ, որքան ինծ ծանօթ են.

ա. Էջմիածին, Թ. 2561 (1669ին գրուած)։

բ. Անթիլիասի օրինակը, բոլորգիր, գրուած ԺԸ. դարու առաջին քառորդին. Թղ. 47բ կը խնդրուի յիշել «զատացող գրոյս գերջանիկ հայրապետն տէր Աբրահամ կաթողիկոսն ամենայն Հայոց»։ Այս շրջանին կային. Աբրահամ Բ. 1730—1734. Աբրահամ Գ. Կրետացի, 1734—1737. հաւանօրէն վերջինս էր ստացողը։ Ձեռագրիս ցուցակագրութիւնը տուած է Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի ձեռագրաց, Բ., էջ 150—151 = Բ. խումբ։

գ. Լոնտոն, Բրիտանական Թանգարան, Թ. 117. բոլորգիր. ԺԷ° դարէ. հմմտ. Conybeare, Catalogue, էջ 292—293, նոյն՝ Մ. Կաղանկատուացւոյ մէկ նոր ձեռագիրն. Բանասէր, 1903, էջ 207—208։ = Բ. Խումբ։

դ. Ագուանից Բաղդասար կաթողիկոսի օրինակը. անկէ արտագրուած՝

ե. Սարգիս Վ. Ջալալեանի օրինակը (Ճանապարհորդութիւն..., Բ., էջ 355). ուսկից մեծ թուով հատուածներ հրատարակած է յիշուած գործին մէջ։ = Բ. Խումբ։

զ. Երուսաղէմ, Թ. 375։
է. Վենետիկ, նոտրագիր = Ա.
ը. Տիւբինգէն, Թ. 69 (ԺԷ°)։
թ. Վիեննա, Թ. 8 (1838էն) = Ա.։
ժ. Վիեննա, Թ. 36 (1845/64) = Ա.
ժա. Պետերբուրգ, Ակադեմիա, 1841 = Ա.։

ժբ. Պետերբուրգ, Ասիական Թանգ. 1841 = Ա.։
ժգ. Մոսկուա, Լազարեան Ճեմարան, 1841 = Ա.։

ժդ. Երեւան, Թ. 667 (1848)։
ժե. Երեւան, Թ. 668 (1855)։
ժզ. Պարիս, Թ. 217 (1850) = Ա.։
ժէ. Թ. 218 (1852) = Ա.։
ժը. Թ. 219 (1852) = Ա.։
ժթ. Թ. 220 (1857) = Բ.։
ի. Թ. 221 (1850) = Ա.։

*Բ. Խումբի ձեռագիրները պահպանած են բնագիրը աւելի անաղարտ. որոնք կը լրացնեն Ա. Խումբի հնագոյն օրինակին թերոյթներն եւ գիտումնաւոր աղաւաղումները: Տակաւին լոյս չէ տեսած այս երկու խումբերու* (AD) *համեմատութեամբ վերակազմուած բնագիր մը:*

4. Տպագրութիւնք:

*Թէպէտ ԺԸ. դարու երկրորդ կէսին, մանաւորապէս ԺԹ. դարու առաջին կէսին ուշադրութիւն դարձուեցաւ Աղուանից Պատմութեան. բայց լոյս տեսաւ ան առաջին անգամ* 1860*ին եւ այն միաժամանակ երկու տարբեր տարբեր տպագրութեամբ, ի Մոսկուա եւ ի Պարիս:*

ա. *Մովսէսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի. ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկուա* 1860, $8^{0}$, *էջք* 286:

*Մ. Էմին, ինչպէս կը յայտարարէ, ունեցած է ձեռքի տակ երկու, անշուշտ նորագոյն, ձեռագիր, երկուքն ալ Ա. խումբէն ծագած:*

բ. *Պատմութիւն Աղուանից արարեալ Մովսիսի Կաղանկայտուացւոյ. ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք Կ. Վ. Շահնազարեան, Փարիզ* 1860, *Հատոր Ա., փոքր* $8^{0}$, *էջք* 432 (*էջ* 5—86) *Ներածութիւն. իսկ բնագիրն՝* 87—432. *Հատոր Բ., էջք* 118 (*էջ* 1—76, *Ծանօթութիւնք՝ էջ* 77—118):

*«Տպագրութիւն մատենիս եղեւ չորից օրինակաց համեմատութեամբ»․ մին օրինակած է Շահնազարեան յԷջմիածին․ ուրիշ մը «գրեալ ի Դավրէժ յայլ հին ձեռագրոյ», երրորդ մը գրուած Կ․ Պոլիս․ չորրորդի գրութեան տեղը չէ յիշած* (Ա․, *էջ* 85—86)։ *Զորս օրինակներուն ալ գրութեան տարին անծանօթ*։ *Տպագրութեան բնագիր առնուած է Բ․ խմբէ օրինակ մը*։

գ․ *Մովսէսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի․ Թիֆլիս* 1912, 8°, *էջ* 441 (*էջ* 409—441 *«Ցանկ յատուկ անուանց»*)։ [*Ղուկասեան Մատենադարան*, Ը․]։

*Մ․ Էմինի հրատարակութեան անփոփոխ տպագրութիւնը*։

*Սխալ տեղեկութեան մը վրայ յեցած է տեղեկատուութիւնս, թէ «ի Վենետիկ Ս․ Ղազար հրատարակուած է* Moses Kalkantuni, Patmuthiun Achuaniz»: Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellsch., 4 (1850), *էջ* 468։ *Բայց լոյս տեսած էր նախորդ տարւոյն Պատմութենէս հատուած մը* (Բ․ 1)․

դ․ *Մենամարտութիւն Բարկայ Սինեցւոյ ընդ Հոնին, Բազմավէպ*, 1849, *էջ* 180—181։

ե․ *Երկու հատուած ալ հրատարակած է Մ․ Էմին նոյն տարւոյն* (Բ․ 1 *եւ* 12) *ի գիրս*․

*Ընտիր հատուածք քաղեալք ի Մատենագրաց Հայոց, Մոսկվա* 1849, *էջ* 60—68 (*«Մովսէս վարդապետ Կաղանկատացի»*)։

գ. Ընդարձակ յառաջբերութիւններ տուած է Սարգիս Վ. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Հատոր Բ. Տփղիս 1858, էջ 217—222, 234—239, 248—255, 261, 319—330, 334—336, 345—348, 352, 370,—375, 384—387, 391—393, 426, 471—479:

Թարգմանութիւնք:

Исторія Агванъ Моисея Каганкатваци, писателя X вѣка. Переводъ съ армянскаго, *թարգմանած* К. Патканьянъ. С. Петерб. 1861, 8°, *էջք* XV+376 (*էջ* 284—376 *ծանօթութիւններ են*):

Քաղուածքներ:

ա. E. Boré, *որ 1838ին այցելած էր Էջմիածին, ծանօթացած էր հոն Աղուանից Պատմութեան Ա. Խումբի հնագոյն ձեռագրին, ուսկից օրինակութիւն մը առաւ հետը: Վերադարձին տուաւ անկէ ինչ ինչ հատուածներ Ֆրանսերէն թարգմանութեամբ* (*տե՛ս* § 5):

բ. A. Manandian, Beiträge, S. 31—48 (*տե՛ս* § 5) *գերմաներէն թարգմանութեամբ հրատարակեց Բ.* 1, 10—11 *եւ Ա.* 26 *գլուխները: Այլ մանր հատուածներ անգղիերէն եւ Ֆրանսերէն թարգմանութեամբ տե՛ս* § 5, Brosset, Bain *եւ* Brooks.

5. Գրականութիւն: *Կը դասաւորեմ այբուբենական կարգով.*

*Աղոնց Ն., Խորենացիական հարցն ու Հ. Վարդան Հացունի. Նամակ առ Ա. Զօ–*

պանեան. Անահիտ, 1938. Թ. 1—3. էջ 85—87:

Ադոնց Ն., Քննութիւն Մովսէս Կաղանկատուացու. Անահիտ, 1939, Թ. 3, էջ 69—77. Թ. 4—5, էջ 22—31. Թ. 6, էջ 4—9: 1940, Թ. 1—3, էջ 21—29: Վերջաւորութիւնը լոյս չէ տեսած:

— Հայոց առաքելութիւնը Հոնաց աշխարհում (Զ. դար). Արարատ, 1902, էջ 262—274:

Ալիշան Հ. Ղ., Հեղինակ Աղուանից Պատմութեան. Բազմավէպ, 1897, էջ 575—578:

— Մովսէս Կաղանկատուացի. ի գիրս՝ Հայապատում Ա. բաժին. Վենետիկ 1901, էջ 73—74:

Աճառեան Հ., Մովսէս Կաղանկատուացի. քննութիւն անոր գրութեան ժամանակի վրայ. Բազմավէպ, 1897, էջ 370—374:

— Մովսէս Կաղանկատուացի. ի գիրս՝ Հայոց անձնանունների Բառարան. հատոր Գ. Երեւան 1946, էջ 437—440:

— Հայերէն նոր բառեր Մովսէս Կաղանկատուացւոյն Պատմութեան մէջ. Բազմավէպ, 1913, էջ 239—240, 249—252, 299—304:

Անդրիկեան Հ. Ն., Միսայէլ Հայ-Աղուանից եպիսկոպոսը. Բազմավէպ, 1906, էջ 160—166, 318: 1911, էջ 258—265:

*Բարխուդարեան Մ. եպ., Մովսէս Կաղանկատուացի. ի գիրս՝ Պատմութիւն Աղուանից, Ա., Էջմիածին,* 1902, *էջ* 30—37։

Bain R. Nisbet, Armenian description of the Holy Places in the seventh century: Palestine Exploration Fund. Quarterly statement. 1896, p. 346—349.

Boré Eugène, Histoire des Aghovans par Moise Galkantouni. Extraite et traduite du manuscript arménien par E. Boré: Univers catholique. Journal de l'Institut sc. hist., t. XXII (1846), n° 136, novembre.

*Նոյնը միւսանգամ՝* avec des annotations par Vivien de St. Martin: Nouvelles Annales des Voyages, t. II, Paris 1848, pp. 53—93.

E. W. Brooks, An Armenian visitor to Jerusalem in the seventh century: The English Historical Review. 1896, No. 11, p. 93 - 97 *(Նկատի առած է Աղուանից Պատմութեան Բ.* 50 *գլուխը. Տես. Հանդ. Ամս.* 1896, *էջ* 185)։

*Նոյնը ռուսերէն թարգմանութեամբ՝* Сообщенія Имп. Правосл. Палест. Общ. 1896, *փետր. էջ* 120—123.

Brosset M., Extraits de l'Histoire des Aghovans, en arménien, par Mosé Caghanca[n]tovatsi *ի գիրս* M. Brosset, Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie. St. Pétersbourg, 1851, pp. 463—494.

*(Դալեան) Խաչիկ վարդապետ, Մովսէս Կաղանկատուացւոյ Աղուանից Պատմութեան*

*Մայր Աթոռի Մատենադարանում գտնուած ձեռագիր օրինակները. Արարատ*, 1895, *էջ* 235—238, 333—348, 388—390, 424—426։

— — *Նիւթեր ուսումնասիրութեան Աղուանից Պատմութեան. Արարատ*, 1896, *էջ* 22—26, 67—71, 125—128, 176—179։ 1897, *էջ* 67—70, 161—163։

Dowsett C. J. F., The name and the rôle of *ΣΑΡΑΒΛΑΓΓΑΝ* or Šahrapłakan: Byzantion 21 (1951), 311—321.

Еремян С. Т., Моисей Каланкатуйский о посольстве албанского князя Вараз-Трдата к хазарскоми хану Ала-Илитберу: Записки Института Востоковедений Академий и Наук СССК VII, 1939, стр. 129—155. *Երեմեան Ս. Տ., Մովսէս Կաղանկատուացի ի մասին աղուան Վարազ–Տրդատի դեսպանութեան առ Խազարաց Ալփ–Իլիթվեր Խան. Յիշատակարանք Արեւելեան Ինստիտուտի ՍՍՍԿ. Գիտութեանց Ակադեմիայի, է.* (1939), *էջ* 129—155 (*ռուս.*)։

*Զամինեան Արր., Պատմութիւն Հայոց հին գրականութեան, Բ. տպ., Պէյրութ* 1941, *էջ* 135—137։

*Զարբանալեան Հ. Գ., Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ* 1897, *էջ* 442—454։

*Հացունի Հ. Վարդան, Մ. Կաղանկատուացին կ'ապրէր է. դարուն. Բազմավէպ*, 1938, *էջ* 268—276։ *Նոյն՝ «Խորենա–*

ցին կը գտնուի ի Ե. դար», Վենետիկ 1938, 8°, էջք 78:

Kounik Ernéste, Sur la première expédition Caspienne des Russes-Normands en 944, d'après la chronique inédite de l'arménien Mosé Caghancatowatzi: Bulletin hist. philol. de l'Académie des sciences de St. Pétersbourg, t. IV, nº 12, 13, pp. 202—204.

Лерх, առթիւ Աղուանից պատմութեան ռուսերէն թարգմանութեան գրախօսական մը ի Թերթին՝ Извѣстія Императорскаго Археологискаго Общества, III (1861), 479—499.

Manandian A., Beiträge zur albanischen Geschichte. Untersuchungen über Moses den Utier (Kałankatuaçi). Leipzig 1897, 8°, S. 48 (Philos. Disert. Jena). Գրախօսած Ա. Կ. Արարատ, 1898, էջ 117—120:

Манандян Я. А, Средневековый итинерарий в армянской рукописи X столетия: Языки и Мышление, 1935, стр. 723—729 (Միջնադարեան ճանապարհորդներ Ժ. դարու հայերէն ձեռագրի մէջ):

Markwart Jos., Übersetzung aus Moses Kalankajtwaci und der armenischen Chronik vom Jahre 686/687 bis zum Ende der Kaiserliste, ի գիրս Hippolytus' Werke, Band IV, Leipzig 1929, S. 393—558. (Նկատի առնուած են Աղուանից Պատմութեան Ա. 1—3 գլուխները, մինչեւ «այս են անուանք Յաբեթի», եւ թարգմանուած էջ 454—467 համեմատութեամբ Հիպողիտոսի բնագրին):

Մսերեանց Զ., Տեղեկութիւն ի վերայ Ջուանշիր իշխանի եւ Դաւթակ ճարտասանի. Ճռաքաղ, 1860, էջ 76—83:

Neumann C. F., Beiträge zur armenischen Literatur, München 1849, S. 1—16. Moses Kalkantuni. Padmuthiun Achuaniz. Քաղուածք մը Boréի յօդուածէն:

Շահնազարեան Կ. Վ., Պատմութիւն Աղվանից արարեալ Մովսիսի Կաղանկայտուացւոյ, Հատոր Ա., Փարիզ 1860, էջ 79—86. «Մովսէս Կաղանկայտուացի»:

Патканіянъ К., Исторія Агванъ Моисея Каганкатваци. С. Петербургъ 1861, էջ III—XV ի մասին Մ. Կաղանկատուացւոյ:

Քիպարեան Հ. Կ., Պատմութիւն հայ գրականութեան, Հատոր Ա., Վենետիկ 1944, էջ 210—215:

Օշական, Մ. Կաղանկատուացի, Սիոն, 1927, էջ 278—280:

## 2. ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՄՈՎՍԷՍ ԴԱՍԽՈՒՐԱՆՑԻ (ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ)

Հեղինակն ըստ աւանդութեան: «Աղուանից Պատմութեան ինչ ինչ մասեր ծանօթ եղած կ՝երեւան Է. դարուն Մաքենոցայ վանքի Սողոմոն հօր (Ա. 6—7), Թ. դարուն Մաշտոց կաթողիկոսին (Բ. 48) եւ Ժ. դարու առաջին քառորդին Յովհաննէս Դրասխանակերտցի կաթողիկոսին (Բ. 48 եւ Գ. 3—11). որոնք սակայն որ եւ է մատնանշում չեն ըրած իրենց աղբիւրին մասին: Այդ Պատմագիրքի գոյու-

*թեան նկատմամբ առաջին անգամ յիշատակութիւն կը գտնենք Մոկացի Անանիա կաթողիկոսի* (943—967) *Թուղթերուն մէջ։ Անանիա կը պատմէ, թէ Գագիկ Աղուանից կաթողիկոսը, որ օծուած էր Աղուանից եպիսկոպոսներէն, կը գրէր իրեն, երբ ինքը Վասպուրական էր, որ եթէ աթոռը Անի հաստատէք, կու գամ ես հոն միանգամ օծուելու Ձեր ձեռքով, «որպէս եւ էր ի սկզբանէ լեալ եւ կարգեալ ի* Պատմութեան Աղուանից: *Իսկ մեզ, կը գրէ Անանիա, ...խնդրէաք ի նոցանէ* զՊատմութիւնն Աղուանից, *ուսանել զսկիզբն լուսաւորութեան նոցա, թէ զի՞նչ պատճառաւ։ Քանզի ոմանք այսր անդ(ր) արծարծէին» (պարծէի՞ն)՝ ունել զլուսաւորութիւն տանն Աղուանից նախագոյն լեալ քան զՀայոցս որ ի սուրբ Լուսաւորչէն յեւթնեւտասներորդ ամին Տրդատայ Հայոց թագաւորի։ Եւ ոչ ետուն մեզ տեսանել (զՊատմութիւնն)․ քանզի ցուցանէր (այն) զտուն Աղուանից արքեպիսկոպոս եւ զտունս Հայոց՝ պատրիարգ։ Եւ զառ ինքեանս զխանելով զման խոնարհութեան՝ գրուեալ (գրուանեա՞լ) գաղէին* զՊատմութիւնն Աղուանից: *Իսկ որ ըմբռնէ զիմաստունս ի խորագիտութեան՝ ինքնին յայց եղեալ՝ արար մեզ իրաւունս։ Քանզի եկին բերին յեղակարծս գրքունս ինչ Յովհաննու Ոսկեբերանի կարդալով վասն գիշերոյն ժամու։ Եւ իբրեւ Հոգւոյն շնորհաց գոյ ասել զեղեալոյն, թէ մերոյ աշխատութեանն պատ-*

ճառս համզամեան տալով Տեառն՝ գրեալ (գտեա՞լ) ի նա զպատճառս լուսաւորութեանն զոր սիրէաք (խնդրէա՞ք), որում եւ ցանկորդն (ցանկացողն) էաք տեսութեան։ Եւ կարդացեալ զպատճէնն՝ վերահասու եղեաք չարամանութեանն, զոր սիրէաք, որ ունէր զայս ձեւ օրինակի...» (Արարատ, 1897, էջ 135—139)։ Այս տողերու միտքն է. Անանիա խնդրած է Աղուաններէն օրինակ մը Աղուանից Պատմութեան. անոնք զլացած են ցոյց տալ։ Օր մը երեկոյեան՝ գիշերային ընթերցանութեան համար գիրք մը կը բերեն իրեն, իբրեւ Ոսկեբերանի մէկ գործը, բայց էր ան իր փնտռած Աղուանից Պատմութիւնը։ Անանիա ընդարձակ քաղուածքներ կու տայ այս «Աղուանից Պատմութենէն», որ ճշդիւ կը համապատասխանէ մեզի ծանօթ օրինակին (Հմմտ. Խաչիկ վարդապետի համեմատութիւնները Արարատ, 1896, էջ 22 եւ շար.)։

Անանիա կաթողիկոս չէ անուանած այդ «Աղուանից Պատմութեան» հեղինակը։ Անանիայի ժամանակակից է Ուխտանէս. որ այլեւայլ անգամներ կ՚օգտուի այդ Պատմութենէն։ Այսպէս Բ. 63 (էջ 119—120) «յայլոց պատմագրաց թելադրութենէ». յառաջ կը բերէ քաղուածաբար Կաղանկ. Բ. 48, աղբիւր մատնանշելով լոկ «ասէ պատմագիրն» (էջ 120)։ Նոյն աղբիւրէն է նաեւ Ուխտ. Բ. 64 (էջ 121—122) «դարձեալ ի նոյն խորհուրդ խնդրոյ յայլմէ պատմութենէ», այսինքն Կաղանկ. Բ. 48 (Շահ. 407—412)։

Ուխտ. Բ. 65 (էջ 122—124). «Թէ յորում ժամանակի հաւատացին Աղուանք յառաջ քան զՀայս, ի Պատմութենէ իւրեանց», այն է Կաղանկ. Ա. 6, էջ 93—95 Ծան.). աղբիւր ցոյց կու տայ Ուխտանէս. «լսելով զայս մեզ ի պատմագրացն Աղուանից՝ զարդար եւ զրուն եւ զառաջին հաւատալն աշխարհին իւրեանց հաւաստի մեզ պատմեալ»: Ասկէ է նաեւ Ուխտ. Բ. 69 (էջ 131 = Կաղանկ. Բ. 47, էջ 405—406): Ան կը գրէր 980էն վերջը. իր վկայութեամբ Աղուանից Պատմութիւնը կ'ենթադրէ պատմագիր եւ պատմագիրներ:

ԺԱ. դարու սկիզբը Ստեփանոս Ասողնիկ անծանօթ է «Աղուանից Պատմութեան»:

Աղուանից Պատմութեան Բ. 9 գլխոյն հայող հատուած մը, զոր հրատարակած է Ա. Տէր–Միքէլեան, Սամուէլ Անեցւոյ Ծանօթագրութիւններու մէջ (էջ 286), հանելով էջմիածնի Գեւ. Թ. 58 եւ 100 Թղթոց Գիրքերէն, ունի անծանօթէ մը այսպիսի խորագիր. «Այլ եւ ի նոյն Գրոց տեառն Վիրոյի Աղուանից կաթուղիկոսի. յառաջաբան Պատմութեան աշխարհին Աղուանից»: Առանց տարակուսի այս հատուածը, որ կը թուի, թէ նախնարար Գ. 8ի մասն էր, վաղ ժամանակ մը հանուած է Աղուանից Պատմութենէն: Վիրոյ կաթողիկոս գործած է Է. դարու առաջին կէսին. իսկ Եղիա կաթողիկոս Ը. դարու առաջին տասնեակին. ուստի Աղուանից Պատմութիւնը ժամանակ մը կոչուած էր

«Գիրք տեառն Վիրոյի», թէպէտ յետոյ այդ Գիրքը նոր յաւելուածներ ալ ընդունած էր։

ԺԳ. դարուն գրուած ձեռագիրներուն մէջ այդ Պատմագիրքը կը կրէր «Պատմութիւն Աղուանից» կամ «Պ. աշխարհին Աղուանից»։ Այսպէս խորագրուած է 1289ին Յովհաննավանք գրուած ձեռագիրը, որ արտագրութիւն մըն է հնագոյն օրինակէ մը։ Նոյնպէս ունին նաեւ Բ. Թումբի ձեռագիրները, ինչպէս կը տեսնուի վերագոյն (§ 3) յառաջ բերուած ձեռագիրներու բովանդակութեան բաժանումներէն։

Այս խորագիրը «Պատմութիւն Աղուանից» երիցս պահպանած է Ստեփաննոս Օրբելեան իր Պատմութեան մէջ. «Թէ զլինի եւ զերկոսին կամիս լսել՝ ընթերցիր զՄխիթանէան եւ զԱղվանից Պատմութիւնն եւ ի Գիրս Թղթոցն» (էջ 106)։ Թուղթն Սողոմոնի Մաքենոցաց առաջնորդի «կարգեալ է յԱղուանից Պատմութեան ի մէջին հատորն» (էջ 99—100. հմմտ. նաեւ 279)։

Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոս առ Հեթում գրած Թուղթին մէջ կը յիշէ «Աղուանից պատմիչն... եւ զԱղուանից պատմիչն գտել է (Եսայի Նչեցի) յերկու տեղ յԱրեւելք» (Կղեմէս Գալանոս, Միաբանութիւն..., Ա., էջ 444). ուստի առանց պատմիչի անունին։ Նոյն շրջանին (1305ին) օրինակուած է Վիեննայի Թ. 324 ձեռագիրը, որ կը բովանդակէ՝ ի մէջ այլոց հատուած մը «յԱղուանից Պատմութենէն. պատմութիւն վասն Մահ—

մեար» (թղ. 157ա. Հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ 770):

Այս տեսակէտէ ուշադրութեան արժանի է մանաւորապէս Մխիթար Անեցւոյ վկայութիւնը, որ կը գրէր իր պատմագիրքը կամ ԺԲ. դարու վերջին եւ կամ ԺԳ. դարու առաջին տասնեակին: Սա թուելով իրմէ յառաջ ծաղկած պատմագիրները կը յիշէ. «Եղիշէ, Շապուհ, Եւսեբիոս որ Հերակլին է. եւ Պատմութիւն Աղուանից. եւ Ղեւոնդ երիցուն. տէր Յովհաննէս» եւ այլն (էջ 15): Ինչպէս բացայայտ կը տեսնուի, Մխիթարի անծանօթ մնացած է «Աղուանից Պատմութեան» հեղինակը. իսկ անոր գրութեան տարին համարած է Սեբիոսէն (660) եւ Ղեւոնդ երէցէն (790) եւ Շապուհէն (885) ետքը եւ Յովհ. Դրասխանակերտցիէն (930) յառաջ:

Մխիթար Գոշ, որուն կ'ընծայուի «Ճար կաթողիկոսացն Աղուանից», սկսեալ Ժ. դարու երկրորդ կէսէն, կը գրէ. «Համարեցաք եւ զայս եւս հարկաւոր լինել, զի զՃար կարգի հայրապետացն դիցուք զԱղուանից. զի եւ յայնոսիկ յամենեսեան՝ զոսա որ այժմ ունին՝ յարմարեսցուք. մի՝ ըստ այդմ գրեսցուք պատճառի. երկրորդ՝ զի թէ ոք յօժարեսցի գրել պատմութիւն զկնի գրեցելումն Պատմութեանն Մովսէսի Դասխուրանեցւոյն, որ զբովանդակ պատմէ զտանս Աղուանից, դիւրին լիցի յայսմանէ զՃար Հայրապետացն առնուլ: Զի ոչ զամենեցուն անուն ի նորայն գտցէ Պատմութեան, բայց

գայնոցիկ, գորոց գրեաց: Զի յայն ժամանակէ մինչեւ ցայժմ ոչ ոք գրեաց. եւ թէ պատահի ոք < որ գրիցէ > յոյժ կարեւոր է» (Հայապատում, Բ., էջ 384):

Առաջին անգամ այս տեղ կը հանդիպինք Աղուանից Պատմութեան հեղինակին՝ «Մովսէս Դասխուրանցի» յորջորջումին: Այս աւանդութեան ծանօթ եղած է նաեւ Վանական վարդապետ, աշակերտն Մխիթար Գօշի, կա՛մ այս Շար հայրապետաց գրութենէն եւ կամ Մխիթարի բերանացի աւանդութենէն ուսած: Վանական «իր պատմական համառօտ գիտելեաց մէջ հարցնէ թէ ո՞վ է Աղուանից պատմագիր. եւ պատասխանէ. Մովսէս, եւ գեղջն (անուն) Դասխուրէն» (Ալիշան, Հայապատում, Ա., էջ 274):

Բայց եւ այնպէս Վանականի աշակերտը Կիրակոս Գանձակեցի, որուն անծանօթ մնացած է Մխիթար Գօշի ընծայուած Շարն կաթողիկոսաց, թէ եւ գիտէ հեղինակին «Մովսէս» անունը, բայց անոր ծննդավայրը կը համարի Կաղանկատուքը, ասկէ կը յորջորջէ «Կաղանկատուացի» (Ձեռագիրք՝ Կաղկանդուացի): Կիրակոս հայ պատմագիրներու թուին մէջ կը յիշէ. «տէր Յովհաննէս կաթողիկոսն Հայոց. եւ Մովսէս Կաղանկատուացի (Ձեռ. Կաղկանդուացի). եւ Ուխտանէս եպիսկոպոս...» (էջ 3, տպ. Վենետ.): Իսկ էջ 98 կը գրէ. «Ապա սուրբն Տուփհագիշոյ եկաց եպիսկոպոս. բայց վասն տանս պարսիկ յառաջ կարգելոյ՝ երկմտութիւն գոյ

*մեզ. գի որ գրեաց զՊատմութիւնն Աղուանից՝ զայս անուն կարդէ յաւուրս Վաչագանայ բարեպաշտի լեալ»։ Զարմանալի է անշուշտ «գի որ գրեաց զՊատմութիւնն Աղուանից» ասութիւնը, փոխանակ գրելու «գի Մովսէս Կաղանկատուացի, որ զՊատմութիւնն Աղուանից գրեաց...»։ Կիրակոս Աղուանից կաթողիկոսներու յաջորդութեան համար աղբիւր ունեցած է Աղուանից Պատմութիւնը, որ կը հասնէր մինչեւ «Մովսէս ամս Զ.*[6] *յաջորդութիւնքն Փառիսոսայ վանուց», ինչպէս ունին նաեւ մեզի ծանօթ հնագոյն ձեռագիրները։*

*Կիրակոսի եւ Մխիթար Անեցւոյ ազդեցութեանց տակն է Մխիթար Այրիվանեցի, որ Հայ պատմիչներու ցանկը տալով «Պատմագիրք» բաժնին մէջ, կը թուէ. «Եւսեբի (=Սեբիոս) որ ի Հերակլն. Մովսէս Աղուանից. Ղեւոնդ Երէց. Ուխտանէս...»* (էջ 37)։ *Իսկ Ժամանակագրութեան մէջ կը գրէ ճշդագոյն յամի ՆԼ.* (981). *«Աստ Աղուանից պատմագիրն Մովսէս Կաղանկատուացի եւ Գրիգոր Նարեկացի եւ Ուխտանէս պատմագիր* (էջ 71)։ *Մխիթար նման Կիրակոսի եւ Աղուանից Պատմագրին՝ կաթողիկոսներու ցանկը կ՚աւարտէ այսպէս. «տէր Մովսէս Զ.։ Այսչափս գտեալ է յօրինակաց. ԽԵ են սոքա»* (էջ 24)։

---

[6] *Վենետիկի տպ. մէջ կը պակսի «տէր Մովսէս ամս Զ.» բայց ունի մեր ձեռագիրը, Թ.* 574 (*յամէ* 1601)։

*Ուստի ինչպէս Կիրակոս, նոյնպէս Մխիթար Այրիվանեցի անծանօթ մնացած են «Ծար Կաթողիկոսաց»ին:*

*Մինչ Մխիթար Գոշի Կաթողիկոսաց Ծարը անմատչելի մնացած է յաջորդ սերունդին, ամէնուն ձեռքի տակ գտնուած է Կիրակոս Գանձակեցւոյ Պատմագիրքը: Անկէ գիտէ Վարդան Բաղիշեցի իր Պատմագիրքներու Ցանկին մէջ. «Մովսէս Կաղանկատուեցի (Զ. Կօղան Կոուեցի) որ է երեք հատոր Աղուանից պատմութիւն[7]»:*

*Եսայի Աղուանից կաթողիկոս* (1702—1728) *հին Պատմագիրներէն կը յիշէ. «Յովհաննէս կաթողիկոս Հայոց. եւ Մովսէս Աղուանից պատմագիր Կաղանկատուացի. Ուխտանէս եպ. Ուռհայի[8]...»:*

*Ղազար Ջահկեցի. «տէր Յովհաննէս կաթողիկոս. Մովսէս Կաղկանտուացի Աղուանից պատմագիր. Ուխտանէս եպ. Ուրհայեցի[9]». իսկ Խաչատուր Ջուղայեցի[10] կը գրէ պարզապէս.* «Մովսէս որ զՊատմութիւնն Աղուանից գրէ, *ի յերրորդ հատուածն եւ ի յառաջին պրակն գրէ թէ...» (կոչում մը Գ. 1էն):*

---

[7] *Ակինեան, Բաղէշի Դպրոցը, էջ* 296 (= *Հանդ. Ամս.* 1952, *էջ* 54):
[8] *Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի, Երուսաղէմ* 1868, *էջ Թ:*
[9] *Դրախտ ցանկալի, Կ. Պոլիս* 1735, *էջ* 646:
[10] *Պատմութիւն Պարսից, Վաղարշապատ* 1905, *էջ* 51:

2. Քննադատութեան առջեւ: Հ. Մ. Չամչեան, երբ կը գրէր իր Պատմութիւնը (1784), կը յիշէր միայն «Մովսէս Կաղկանտուացի՝ Աղուանից պատմիչ» աւելցնելով «զոր չունիմք առ մեզ» (Ա., էջ 18). Նոյնը կ՚երկրորդէր Բ., էջ 1046. «Եթէ հնար լինէր ի ձեռս բերել զՄովսէս Կաղկանտուացի զԱղուանից պատմիչ, մարթ է ի նմանէ ստուգագոյն ինչ գտանել» զԱղուանից թագաւորաց: Իր աղբիւրն այս կէտի մէջ Կիրակոս Գանձակեցին է, ինչպէս կ՚իմացուի իր արտայայտութենէն. «Իսկ Կիրակոս Գանձակեցի առեալ ինչ ինչ ի Կաղկանտուացւոյն գրէ...» (անդ): Աւելի բախտաւոր չէ եղած Գեր. Մ. Սոմալեան, որ իր Quadroի մէջ կը գրէր 1829ին. «Այս (Է.) դարուն վերջերը կ՚երեւայ — ինչպէս կ՚ըսեն շատերը — Մովսէս Կաղկանտուեցի, որ գրի առած է Հայոց դրացի Աղուաններու պատմութիւնը: Այս աշխատութենէն քանի մը հատուածներ միայն ունինք. բայց հաւաստի գիտենք, թէ կը գտնուի անկէ ամբողջական օրինակ մը Հայաստան. գրուած, ինչպէս կ՚երեւայ, վայելուչ լեզուով եւ բարձր ոճով» (էջ 44, նոյնը Neumann, Versuch, 1836, էջ 103—104):

1836 տարւոյն կը յաջողի Վենետիկի Մխիթարեանց ձեռք բերել, «ի սկզբան անդ տպագրութեան» Նոր Հայկազեան Բառգրքի, Մ. Կաղանկատուացւոյ Պատմութեան ձեռագիր մը, գրուած նոտրագիր «խառնակ եւ սխալ գրչութեամբ»: Նոյն Բառգրքի Նա-

խաղրունքի մէջ Հ. Մ. Աւգերեան այս անգամ կը գրէր. «Մովսէսի Կաղկանտուացւոյ, կամ լաւ եւս՝ Կաղանկատուացւոյ՝ Պատմութիւն Աղուանից Հայկազանց մինչեւ ի Ժ. դար՝ միջակ ոճով» (էջ 13)։

Երկու տարի ետքը Հայերէնագէտ ուղեւորը E. Boré էջմիածին կը հասնի (1838), ուր ժամանակ մը կը զբաղի ծանօթանալու համար արժէքաւոր ձեռագիրներու։ Յովհ. եպ. Շահխաթունեան ցոյց կու տայ իրեն 1289ին գրուած մեծադիր ձեռագիր մը, որ կը պարունակէր Աղուանից Պատմութիւնը. «Un auteur du VIIe siècle, Moyse Glangdouni ou Galgandouni, ava:t pris á tâche d'ecrire l'histoire de ce royaume (des Aghovans)». Կը փութայ օրինակ մը հանել այս Պարիսի Ակադեմիայի համար (Eugène Boré, Correspondance et mémoires d'un voyageur en Orient, t. II, Paris, 1940, p. 51–52)։ Վերադարձին տուաւ անդրադայն տեղեկութիւնները գրուածքին մասին եւ քաղուածքներ իր յօդուածին մէջ Histoire des Aghovans par Moïse Galkantouni (1846—1848), ուր պատմագրին ժամանակը փոխադրեց Է. դարէն Ը. դար, համարելով կաթողիկոսներու յաջորդութիւնքը (Գ. 24) յաւելուած գրչագիրներու։

Այս թուականէն ետքը ուշադրութիւն դարձուեցաւ Աղուանից Պատմութեան, հրապարակի վրայ երեւցան բազմաթիւ նոր օրինակութիւններ։ Անկէ օրինակ մ'այ ձեռք

անցուց M. Brosset, որ 1851ին նկատելով Հոն «Ուզիկ» ազգին, այն է Ուռւզներու արշաւանքը Պարտաւի վրայ (Գ. 22), որուն տարին ճշդեց Ե. Կունիկ 944 (տե՛ս վերը § 5) համարեցաւ, թէ Պատմութեան գրութեան ժամանակը, ըստ Սամուէլի «Է.» դար, պէտք է մէկ քանի դար յառաջ մղել, այն է Ժ. դար (Addissions ..., էջ 468, 494)։ Բայց եւ այնպէս Կ. Վ. Շահնազարեան 1860ին, իր հրատարակութեան Յառաջաբանին մէջ, յառաջ բերելով Պատմութենէն տեղիքներ (Ա. 18, Բ. 14, 28, 32) կը գրէ. «Հետազօտեալ իմ խնամօք ի գիրս իւր՝ գտի հաւաստի ցոյցս, ըստ որոց մարթ է, անտարակուսաբար, համարել զնա կեցեալ ի սկզբան Է. դարուն առ Վիրոյիւ կաթողիկոսաւ ... եւ առ Ջեւանշիր իշխանաւ» (Ա., էջ 82—83). իսկ «յէ. դարէ եւ այսր անանուն գրիչ ոմն շարունակեալ է զգործն Կաղանկատուացւոյն եւ հասուցեալ ի դարն տասներորդ» (էջ 85)։ Իր այս «անտարակուսաբար» եզրակացութեան համար յառաջ կը բերէ տեղիքներս. «Ի գլ. 18 Ա. գրոց, ի պատմելն զաղանդոյն մանահատութեան, զոր եբարձ արքայն Վաչագան, յաւելու «զոր բերեալ իսկ տեսաք բազումք»։ Ի պատմելն զհանդիպումն Վիրոյի արքայորդւոյն Խազրաց, ասէ Բ. 14. «անդ տեսաք զբազմոցս նոցա... եւ զընծայ ողջունին որ բարձեալ ի վերայ բազկաց մերոց»։ Եւ ՚ի գլ. 28 նոյն գրոց ի ճառելն զհանդերձանաց պայատան Ջեւանշիր իշխանին, այսպէս գրէ.

«յայնժամ լինէր անդ համաշխարհական ժողով... եւ տեսանէաք անդ... տեսանէաք զԹագաւորական հաւն...»: Դարձեալ ի գլ. 32, որ յաղագս գիւտի Մեսրոբեան Խաչին, «զոր ոչ (միայն) մեք, այլ աշխարհ ամենայն եղեն տեսողք»: Եւ զի փառաւոր իշխանն Ջեւանշիր եկաց ի կէսն է. դարուն, զՄովսէս եւս համարելի է ժամանակակից նմին եւ տողեալ զպատմական գիրս իւր» (էջ 82—83), ծնած Կաղանկատուից գիւղը, համաձայն Բ. 11 գլխոյն:

Շահնազարեանի կարծեկից է Զարբանալեան. ան գրէ թէ «ոմանք ճշմարտապէս այս Է. դարուս կը ցուցնեն» Աղուանից պատմագրին ժամանակը, «եւ ոմանք Ժ. դարուն, ինչու որ իր անուամբ (անուան) ընծայուած գրոց պատմութիւնն՝ ինչուան Ժ. դարուն վերջերը կը հասնի. յորմէ նաեւ հիմակուան բանասիրաց ոմանք ալ Ժ. դարու հեղինակ կը սեպեն զաս». «Մենք աներկբայ ենք որ բուն Աղուանից պատմիչն Մովսէս էր ի Կաղանկատուք գեղէ... եւ Է. դարու մէջ մեռած է, հաւանօրէն եւ ծնած...: Իսկ իր պատմութիւնը դադրեցուցած է 683—685 թուականին միջոց. ինչպէս կը յայտնուի պատմածէն եւ ոճէն եւ գրոց բաժանմունքէն, որ երեք գիրք են. երկուքն մեծաւ մասամբ իրենն է հարազատ. երրորդն... ուրիշի գրած է, որ եւ իրեն համանուն ըլլալով՝ նոյն մէկ անձն կարծուած է: Այդ համանունն է Մովսէս Դասխուրանեցի» (Զարբ., էջ 442,

453)։ *Զարրանալեան Ալիշանի ապրեցութեան տակ է*։

*Հ. Ղ. Ալիշան, Կիր. Գանձակեցի, էջ 4, ծան. 1 կը ծանօթագրէր* 1865*ին. «Մ. Կաղանկատուացի... հաւանօրէն յԷ. դարու եկաց։ Բայց զՊատմութիւն Աղուանից չարակարգեցին այլք յետ նորա»։ Իսկ* 1897*ին կ'արտայայտուի այսպէս. «Այլ եւ այլ գրչաց յիշատակք կան յԱղուանից պատմութեան մանաւանդ յԲ. գիրս, զորս համարեր է Մովսէս ի Ժ. դարու, եւ անոնցմէ վերջի դարուց գրողաց յիշատակներէն այլ քաղելով՝ Ա. եւ Գ. գրոց մեծ մասն ինքն է զաղափարեր կամ գրեր, եւ ձեւացուցեր է Աղուանից պատմութիւնը. իր յիշած իշխանաց եւ կաթողիկոսաց շարքն այլ՝ անտարակոյս հաստատեն զԱյրիվանեցւոյն ցուցած ժամանակը,* 980*ի եւ* 1000*ի միջոց»։ Այս նկատի առնելով Ուխտանէսի տեղիքը՝ «ի պատմագրաց Աղուանից»* (*Բ.* 65), *կը խորհրդածէ. «Եթէ այլեայլ հին մատենագիրք եղած են այդ պատմութեանն, կարելի՞ է իբրեւ գլխաւոր պատմիչ անուանել, կամ գոնէ երկուք. զԿաղանկատուացին՝ որ իր անունը չի յիշեր, եւ զՄովսէս՝ որ իր մականունը չի յիշեր»։ «Եթէ ընդունինք, թէ Աղուանից Պատմութեան հին յիշատակագիրն կամ մեծամասն գրողն է Կաղանկատուացի մի, գուցէ յետին հաւաքողի նման Մովսէս անուամբ (եւ գուցէ ոչ). որով երկուքին անուանքն եւ գործքն այլ իրարու խառնուին եւ չփոթուին եւ չփո-*

թեն այդ պատմութիւնը յիշողները»: Հ. Ալիշան կը յիշէ, առանց աղբիւրը ցոյց տալու, թէ Հասան Ջալալեան յառաջ բերած է Աղուանից Պատմութեան գլխակարգութեանց ցանկը, ուր չորս անգամ գրուած է թէ պատմագիրը իր աշխատութիւնը գրած է Հայոց «ՀԴ» թուին. ուստի 625ին. «բայց քանի մի տարի այլ կրկնայ աւելցուիլ վրան» կը յարէ Ալիշան, որ կը միտի Կաղանկատուացւոյն ժամանակը ցոյց տալ Է. դարու կէսին եւ Դասխուրանցւոյն՝ Ժ. դար (Բազմավէպ 1897 եւ Հայապատում. տես § 5): Բարխուդարեան իրացուցած է այս տեսութիւնը: Կը զարմանամ որ ոչ Ալիշան եւ ոչ իր նախորդները չեն անդրադարձած, որ Կիրակոս Գանձակեցւոյ «Կաղանկատուացին» առեղծուած է յուլ Աղուանից Պատմութեան Բ. 11 գլուխի «յորմէ եւ եա» տեղիքին թիւրիմացութենէն:

Աղուանից Պատմութեան լուրջ ուսումնասիրութիւն մը նախքան առաջին անգամ Ք. Պատկանեան իր ռուսերէն թարգմանութեան Յառաջաբանին մէջ 1861ին, որ գրեթէ անտեսուած է, գոնէ շատերէն:

Կ'ամփոփեմ այս տեղ իր տեսութիւնը ժամանակի մասին. Մովսէս Կաղանկատուացի իր Պատմութեան մէջ յիշատակութիւն չ'ըներ իր անձի մասին. չունի նաեւ գործին վերջը յիշատակարան: Այս լռութիւնը տեղի տուած է նկատմամբ ժամանակի երկու կարծիքներու: Առաջինը նկատի առ-

նելով, որ Պատմութիւնս կը շօշափէ այնպիսի դէպքեր, որոնք Ժ. դարու վերջերը կատարուած են, կը հետեւցնէ, թէ հեղինակը պէտք է նոյն դարուն ապրած ըլլայ: Իսկ երկրորդը յենլով Ա. եւ Բ. գրքերու մէջ նշմարուած ինչ ինչ անհարկութիւններու վրայ, որոնք հեղինակը ժամանակակից կ'ենթադրեն, կը հաստատէ վճռականապէս, թէ պատմագիրը ապրած է Է. դարուն: Բայց այս անհարկութիւնները, ի բացակայութեան այլ տուեալներու, ոչինչ կ'ապացուցանեն, որովհետեւ նման տեղիքներ կը տեսնուին նոյն գրքին նաեւ այնպիսի գլուխներու մէջ, որոնք անտարակոյս Ժ. դարը կ'ենթադրեն. օրինակ Ա. 18 եւ 19 (Պատկանեան, էջ VII—VIII).

Սակայն ի նպաստ երկրորդ կարծեաց կարելի է նկատողութեան առնել երկու հանգամանք. նախ Զուանշէրի, ինչպէս նաեւ Վիրոց կաթողիկոսի պատմութեան հայոց Բ. 10—50 գլուխները, որ հեղինակը ինչպէս ժամանակակից եւ ականատես, նաեւ համակարծիք կ'արտայայտուի: Երկրորդ կան Գ. գրքի մէջ տեղիքներ, որոնք կը հակասեն Ա. գրքին մէջ պատմուածներուն (էջ VIII—IX. հմմտ. էջ 276, ծան. 3 եւ 352—353):

Մենք այսպիսի համաձայնէինք, կ'ըսէ Պատկանեան, դնելով հեղինակս Է. դարու մատենագիրներու շարքին, եթէ հայ մատենագիրներէն որ եւ է մէկը վկայած ըլլար, թէ Աղուանից Պատմութիւնը գրուած է յերկուս

գիրս. վասն զի Գ. գիրքը անմիջականօրէն Ժ. դարու արտադրութիւն է:

1897ին Հ. Աճառեան, անծանօթ Պատկանեանի քննութեան, միանգամ քննադատութեան ենթարկեց Շահնազարեանի տեսութեան չորս հիմնաքարերը, ապացուցանելով, որ Աղուանից Պատմութենէն հանուած այն տեղիքները ոչ թէ Պատմութեան հեղինակին կը հային, այլ անոր աղբիւրներուն սեպհական են. ուստի «Մովսէս Կաղանկատուացի ապրած է Ժ. դարուն. իրենն են Ա.—Գ. գրքերը. որովհետեւ Պատմութեան Գ. գիրքը կը հասնի մինչեւ 914. ուրեմն Մովսէս ալ այս թուականին մօտերը գրած պիտի ըլլայ. գնենք 920» (Բազմավէպ 1897, էջ 371—374):

Նոյն տարւոյն, անկախ Աճառեանի եւ Ալիշանի քննութիւններէն, ուսումնասիրութեան առաւ Աղուանից Պատմութիւնը Յ. Մանանդեան իբրեւ քննաճառ: Իրեն ծանօթ էր Պատկանեանի ռուսերէն թարգմանութիւնը: Նաեւ Մանանդեան նկատի առած է Շահնազարեանի չորս կէտերն եւ ցոյց տուած, թէ այն տեղիքներէն կարելի չէ ապացուցանել Մովսէսի դիպաց ականատես ըլլալը. վասն զի անոնք հանուած են իր աղբիւրներէն, որոնք առանց խմբագրումի պատմագրին կողմէ, ագուցուած են անփոփոխ Պատմութեան մէջ: Ժամանակը կը մատնանշէ Մանանդեան «944էն, նոյն իսկ 980էն ետքը, հաւանօրէն 1000էն յառաջ» (Beiträge 8—18):

*Այս գրուածքին գրախօսող մը՝ Ս. Կ. կը հարցնէ. Եթէ այսքան անագան ժամանակ մը գրուած է Պատմութիւնս, ի՞նչպէս կարող էր Անանիա Մոկացի անկէ օգտուիլ 950ին (Արարատ, 1898, էջ 120)։*

3. **Գնահատութիւն։** Պատկանեան *կը գրէ. «Մովսէս Կաղանկատուացւոյ գիրքը թէեւ Պատմութիւն Աղուանից կը կոչուի, բայց այն աւելի աշխարհին քան ժողովուրդին պատմութիւնն է։ Այն տեղ խօսք կ՚ըլլայ առաւել մանրամասնութեամբ Պարսից, Հոնաց, Խազարաց եւ Ռուսիկներու քան Աղուաններու մասին։ Իր տեղեկութիւնները Աղուանից մասին առնուած են հայ պատմագիրներէն։ Ան ապրած է Ժ. դարուն վերջը. եւ ինչպէս կ՚երեւայ չէր ստացած մասնաւոր կրթութիւն. էր վանական մը. Հայաստանի մէկ թշուառ դարուն. չունէր իր ժամանակակիցներէն աւելի ոչ ուսում եւ ոչ ալ բանասիրութիւն։ Ան ժողովեց բազմազան տեղեկութիւններ, որքան ձեռքն ինկած էին, եւ դասաւորեց ինչպէս ձեռք բերած էր, առանց միտ դնելու անոնց ներքին կապակցութեան եւ ժամանակագրական կարգին։ Թէպէտ ինքը Ժ. դարու հեղինակ է, բայց այն աղբիւրները, զորոնք զետեղած է Ա. եւ Բ. գրքերուն մէջ եւ կը պատկանին Է. եւ Զ. դարերուն, չեն տուժեր իրենց ծանրակշռութենէն» (էջ XII—XIII)։ Այլուր կը գրէ.*

*«Առաջին երկու մասերը հիմնուած են մինչեւ Է. դար գոյութիւն ունեցող յիշատա–*

կարանների վերայ. և այս պատճառով համարձակ կարելի է դասել նոյա Սասանեանց կործանման և Արաբացւոց դէպի Պարսկաստան առած առաջին արշաւանքների ժամանակակից աղբիւրների կարգում: Իսկ Գ. մասը պարունակում է իւր մէջ մինչև Ժ. դար Աղուանից աշխարհում պատահած անցքերը» (Փորձ, 1880, Թ. 1, էջ 18):

Մանանդեան. *Աղուանից Պատմութիւնը թէև բաժնուած է երեք գրքերու, բայց անտեսուած է հոն ծրագրային կարգ և նիւթերու բաժանում: Հեղինակը աշխատած է ներկայացնել Աղուանից պատմութիւնը իրեն մատչելի եղած աղբիւրներով, որոնք են պատմական գրուածքներ, թուղթեր և ուրիշ գրութիւններ, և նկատի առած է գլխաւորաբար եկեղեցական անցուդարձերը: Ա. գրքին աղբիւրները ծանօթ են մեզի. բայց Բ. գիրքը արժէքաւոր է այլուստ մեզի անծանօթ տեղեկութիւններով Խազարներու և Հոներու մասին, որոնք պատմագէտներու համար կրնան շատ հետաքրքրական ըլլալ: Հեղինակը կը դնէ մեր առջև լոկ անտաշ ատաղձներ, և յաճախ այնպիսիներ, որոնք որևէ աղերս չունին Աղուաններու պատմութեան հետ: Ան արտագրած է միայն ինչ որ գտած է, առանց իւրացնելու զանոնք քննական և կարգադրանական ոգւով: Ուստի կրնանք ըսել, թէ գրուածքս քաղուածոյքի նկարագիրն ունի: Անոր գործածած աղբիւրները կարող ենք մատնանշել. և եթէ չյաջողինք*

իսկ ցոյց տալ ինչ ինչ հատուածներու աղբիւրը, պէտք չէ կարծել, թէ անոնք Մովսէսի սեպհական ստացուածքներն ըլլան։ Զանազան ժամանակներէ եւ հեղինակներէ յառաջացած գրուածքի մը ոճի եւ լեզուի մասին չի կրնար խօսք ըլլալ (Beiträge 7—8)։

Աճառեան. «Կաղանկատուացին խառնակ պատմութիւն մըն է լի կրօնական առասպելներով, Խաչի եւ սուրբ Նշխարներու անվերջ գիւտերով. երբեմն դէպքերն անկարգ, պակաս, խառնակ. գլխաւոր արժէքը յիշատակութիւնն է քանի մօտ պաշտօնական Թուղթերուն եւ Դաւթակի Ողբին» (Բազմավէպ, 374)։

Ալիշան. «Մեր ազգային պատմութեանց հիներէն եւ նշանաւորներէն մէկն է Աղուանից Պատմութիւն կոչուածն, եւ կրնայ եւս շատ նշանաւոր ըսուիլ՝ այդ մեր դրացի եւ սակաւածանօթ ազգին միակ յատուկ պատմութիւնն ըլլալով, եւ անկէ աւելի հետաքննելի՝ տեղեկութեամբքն, անոր սահմաններէն եւ լերանց պահակէն (Ճորայ կամ Դարբանդայ) այնդին՝ հիւսիսային ազգաց վրայօք, որոց գլխաւորն են Հոնք» (Բազմավէպ, 1897, էջ 575)։

Զամինեան. Կաղանկատուացւոյ «Պատմութիւնը կարող է միայն այս կամ այն հում նիւթը մատակարարել, որ սակայն պէտք է ստուգել այլ աղբիւրներով» (էջ 136)։

Վերջին անգամ պարապեցաւ այս հար-

ցով Ն. Ադոնց. իր եզրակացութիւնն է. «Մովսէս Կաղանկատուացին կազմել է իր Պատմութիւնը գրեթէ նոյն ժամանակ ինչ Յովհաննէս կաթողիկոս եւ Թովմաս Արծրունի, Ժ. դարի առաջին կէսին... Կաղանկատուացու երեք գրքերը կազմում են մի գործ եւ պատկանում են մի հեղինակի, որի գլխաւոր ջանքն է եղել հաւաքել ցան եւ ցրիւ նիւթերը անցեալից հասած. իր գրչին է պատկանում թերեւս Գ. գրքի 19 գլխից սկսած մինչեւ վերջը» (Անահիտ, 1938, էջ 68):

**4. Վերաքննութիւն Աղուանից Պատմութեան: Ձեռագրերը:** *Տեսանք վերադոյն, թէ մեզի ծանօթ բոլոր ձեռագիրները մէկ գաղափար–օրինակէ ծագած են, որուն ներկայացուցիչն է էջմ. 1531, գրուած 1289ին: Այս ձեռագիրը թերութիւններ կը ներկայացնէր, մասամբ թուղթերու անկումով եւ մասամբ նպատակաւոր աղճատումներու հետեւութեամբ: Այս թերութիւնները բարեբախտաբար կը լրացնեն Բ. խումբի ձեռագիրները, որոնք ծագած են կամ այս հնագոյն ձեռագրէն եւ կամ անոր գաղափար–օրինակէն: Երկու խումբերն ալ կ՚աւարտին Մովսէս կաթողիկոսով, նկատի չառնելով այն ձեռագիրները, որոնք ուրիշ աղբիւրէ շարունակած են Կաթողիկոսներու շարքը եւ կամ յաւելուածաբար կցած են Աղուանից պատմութեան այլ պատմական հատուածներ: Այս ծաւալի մէջ տեսած է Պատմութիւնս Մխի–*

*թար Գօշ, եւ իրմէ ետքը Կիրակոս Գանձակեցի եւ Մխիթար Այրիվանեցի։ Ոչ այսպէս սակայն Անանիա Մոկացի 950ին, որուն օրինակը գրուած այս թուականէն յառաջ, թէ բովանդակութեամբ այլապէս էր եւ թէ ժամանակի աւելի ամփոփ միջոց կ՚ենթադրէր։*

*Այժմեան բոլոր օրինակները յառաջացած են ձեռագրէ մը, որ վաղ ժամանակ յառաջ կրած էր թղթերու ետեւառաջութիւն, թերեւս նաեւ թուղթերու անկում։ Այս ետեւառաջութիւնները կը տեսնուին Վիրոյ կաթողիկոսի Պատմութեան մէջ, որոնց պիտի անդրադառնանք յետոյ ի մերձուստ։ Թէ այս փոփոխութիւնները ե՞րբ կատարուած են, դժուար է ճշդիւ մատնացոյց ընել ժամանակը. բայց, յամենայն դէպս, Աղուանից Պատմութեան խմբագրութենէն յառաջ։*

Խմբագրութիւն: *Աղուանից Պատմութիւնը, զոր ունինք այսօր, կը ներկայանայ խմբագրուած ձեւի մէջ։ Խմբագիրը Աղուանից Պատմութեան Հայոց մանր եւ ընդարձակ ատաղձները, զորոնք գտած է հաւաքածոյի մը մէջ, ուզած է նոր դասաւորութեամբ եւ նոր նիւթերու յաւելումով «Աղուանից Պատմութեան» վերածել, նմանութեամբ Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութեան։ Բայց առ այս պակաս է իրեն ոչ միայն պատմական հմտութիւնը, այլ եւ պատմագրելու արուեստը. իր կարգին նաեւ պատմական աղբիւրները։ Ան ունի իրեն աղբիւր*

Մովսէս Քերթողահայրը, որմէն իր Պատմութեան առաջին Գիրքին մէջ. շատ հաւանօրէն նաեւ Յովհաննէս կաթողիկոսի պատմագիրքը. ուստի խմբագրութիւնը Թ. դարէն ոչ յառաջ կատարուած է. հաւանօրէն 950էն ետքը։

Վերնագիրը։ Պատմութեան վերնագիրը ձեռագիրներու Ա. եւ Բ. խումբերը գրեթէ միօրինակ ունին «Պատմութիւն Աղուանից», նաեւ «Պատմութիւն Արեւելեայս Աղուանից նահանգիս»։ Արդէն 950ին լսած էր Անանիա Մոկացի կաթողիկոսը «Աղուանից Պատմութեան» գոյութիւնը Աղուաններու քով, բայց երբ ուզեց աչքէ անցնել զայն, գլացան Աղուանները տրամադրել անկէ օրինակ մը կաթողիկոսին։ Կը տեսնուի ասկէ, թէ ան հազուագիւտ էր տակաւին, եւ կը պահուէր ընդ գրուանաւ։

Բաժանմունքը։ Էջմիածնի Թ. 1531 ունի հետեւեալ բաժանումները.

Ա. Հատուած, գլ. Լ.։

Բ. պատմութիւն արեւելեայս Աղուանից նահանգիս։

Բ. (= Գ.) Հատուած Պատմութեան Աղուանից։

Երկրորդ խումբի ձեռագիրները ճոխացած են իւրաքանչիւր հատուածի կամ գիրքի գլուխներու ցանկերով։ Ա. Հատուածի վերջաւորութեան կը կարդանք. «Կատարեցաւ գիրք առաջին պատմութեանցս Աղուանից»։ Բ. Հատուածի վերջը կ՚ըսուի. «Կատարեցաւ

չարած երկրորդ միջակ Պատմութեան Աղուանից»: Կը յաջորդէ. «Երրորդ ցանկք Պատմութեան Աղուանից»:

Բ. խումբի այս չեղումները Ա. խումբէն շատ կամայական կ'երեւան: Բայց ուշագրաւ է «Ցարած Բ. միջակ Պատմութեան Աղուանից», այսինքն ըստ Փաւստոսի «միջին». որով Գ.ը կ'ըլլայ ժամանակակից պատմութիւնը: Աւելի հարազատ պէտք է համարել «հատուած»ներու բաժանումը, որ կը համապատասխանէ Մ. Խորենացւոյ «հատած»ին (Գ. 2. «Հատած Գ. աւարտարանութիւն մերոց հայրենաց»). «Հատուած» համազօր է «հատոր» բառին:

Իւրաքանչիւր հատուած ստորաբաժանուած է գլուխներու յատուկ խորագրանութիւններով: Անոնք խմբագրէն են:

Գրուածքիս կը պակսին նախաբան եւ վերջաբան, ուր սովորաբար տեղեկութիւն կու տայ հեղինակը, թէ իր անձին եւ թէ չարժառիթին մասին, որով ձեռնարկած է գործիս: Մեզի անծանօթ կը մնան հեղինակին անունը, որպիսութիւնն եւ ծննդավայրը:

Հեղինակը: Գրութիւն մը, որ գոյութիւն ունի, պէտք է ունեցած ըլլայ իր մատենագիրն ալ: Եւ եթէ հեղինակը լռած է իր անունը, անոր յիշատակը աւանդութիւնը կարող էր պահպանած ըլլալ իր ծոցը: Արդեամբք ալ ԺԲ. դարու վերջերէն սկսած Աղուանից պատմութեան պատմագիրը կը յորջորջուի Մովսէս. այս շրջանէն է «Ցարն

հայրապետաց», որ կը յիշէ անոր մականունն ըստ ծննդավայրին՝ «Մովսէս Դասխուրանեցի». նոյնը կը հաստատէ Վանական վարդապետ († 1251). «Աղուանից պատմագիր՝ Մովսէս եւ գեղջն (անուն) Դասխորէն»: Գիւղին «Դասխորէն» անունը կը պահանջէր ածանցական ստորոգելի Դասխորենցի. եւ որովհետեւ «Դասխուրանեցի» ընթերցուածը աւելի հին է, հարկ է գիւղանունը ենթադրել Դասխուրան. ոչ առաջին եւ ոչ երկրորդ գրչութեամբ ծանօթ է տեղս այլուստ:

Ի՞նչ աղբիւրէ գիտեն Մխիթար եւ Վանական պատմագրին անունն եւ մականունը: Հաւանօրէն գրաւոր կամ անգիր աւանդութենէն: Մխիթար, որ շարունակած է Աղուանից կաթողիկոսներու շարքը Պատմութեան դադրած կէտէն սկսեալ, ցոյց կու տայ Աղուանից քաղաքական եւ եկեղեցական իրաց հմտութիւն, որ գրաւոր աղբիւր կ'ենթադրէ: Աւելի ուշ Կիրակոս Գանձակեցի, որ Վանականի աշակերտներէն էր, կ'անդրադառնայ պատմագրին Դասխուրանցի յորջորջումը, ինչպէս նաեւ Մխիթարի գրուածքը, եւ Մովսէսը կը ներկայացնէ «Կաղանկատուացի». զոր կ'իւրացնէ Մխիթար Այրիվանեցի «Կաղանկատուացի» ընթերցուածով: Կիրակոսի ազդեցութեան տակ գտնուած է Ղունկիանոս դպիր, որ 1761ին Աղուանից Պատմութեան իր օրինակութեան Յիշատակարանին մէջ երեք անգամ շեշտած է. «շարադրեցաւ ի Մովսէս գերիմաստ վարդապետէ Կաղանկա-

*տացող, ի վաղնջուց ժամանակաց», «զոր շարադրեալ է քաջ գիտնական եւ գերիմաստ վարդապետն Մովսէս Կաղանկատուեցի» եւ «արարեալ է Մովսէս վարդապետն գիտնական եւ Կաղանկատուացի»։ Նոյնը կրկնած է Շահխաթունեանց 1829ին իր արտագրութեան ճակատը փոքրիկ բարեփոխութեամբ. «Պատմութիւն Աղուանից արարեալ Մովսիսի Կաղանկատուացւոյ ի նոյն ազգէ եւ յաշխարհէ» (տե՛ս վերը). ասկէ առնուած է ԺԹ. դարուն կրկին արտագրութիւններու ճակատը։*

*Ուսկի՞ց ուսած է Կիրակոս Գանձակեցի, որ կը գրէր իր Պատմութիւնը ԺԳ. դարու երկրորդ կէսին, թէ Կաղանկատուացի էր Մովսէս, յորջորջում մը, որ անծանօթ էր մինչ այն. մինչեւ իսկ իրեն, երբ կը շարադրէր Աղուանից կաթողիկոսներու յաջորդութիւնը. վասն զի կը գրէր. «այս սուրբն Շուփհաղիշոյ եկաց եպիսկոպոս. բայց վասն առնս այսորիկ յառաջ կարգեցոյ՝ երկմտութիւն գոյ մեզ.* զի որ գրեաց զՊատմութիւնն Աղուանից՝ *զայս անուն կարգէ յաւուրս Վաչագանայ բարեպաշտի լեալ» (էջ 98)։ Տեղն էր պատմագիրը ի՛ր անունով յիշելու, բայց լռած է։ Այս լռութեան համար պատճառ մ'ըլլալու է։ Ինծի կ'երեւայ, թէ Մովսէս պատմագրի Կաղանկատուացի ըլլալը հետեւցուցած է բանասիրօրէն։ Ան կարդացած է Աղուանից Պատմութեան Բ. 11 գլուխը, ուր կ'ըսուի, թէ Պարտաւի բնակիչները Խազարներու առջեւ փախուստի դիմեցին. Թշնա-*

*մին հետապնդեց զանոնք. անոնց մէկ մասին համար «առ ստորոտով լերինն՝ որ է յանդի-*մանն գեղջն մեծի Կաղանկատուաց, *որ ի նմին յՈւտի գաւառի՝* յորմէ եւ ես» (*էջ* 107 *էմին*): *Շատ բնական էր պատմագրին այս տողերէն հետեւցնել, թէ ան Կաղանկատուաց գիւղէն էր ծննդեամբ: Բայց միտ չէ դրած, որ այս գլուխի պատմիչն էր Վիրոյ կաթողիկոս, ուստի եւ խօսքը անոր մասին իմանալու էր:*

*Զարմանալի է, որ նախորդ քննիչները, Պատկանեան, Աճառեան եւ Մանանդեան, որոնք մերժած էին այս, նախորդ եւ հետեւորդ գլուխներու մէջ եզակի եւ յոգնակի առաջին դէմքով պարբերութիւնները Մովսէսին մերձեցնել, այս կէտին մէջ տեղիքը Մովսէսի մասին դրուած ընդունած են. Մանանդեան նոյն իսկ կը պնդէ, թէ «յորմէ եւ ես» կը յարաբերէ Ուտի գաւառը եւ ոչ Կաղանկատուաց գիւղը:*

*Գիւղին անունը չորս անգամ յիշուած է Աղուանից Պատմութեան մէջ.*

*էջ* 103. A *Կաղանկատուոց.*

*էջ* 107. A *Կաղմանկայտուայ.* D *Կաղանկա-տուայ.*

*էջ* 227. A *Կաղանկատուայ (Հայապատում, Բ. 228. «Կաղանդուայ») վանք», յԵրու-սաղէմ):*

*էջ* 244. A *Կաղկանտրուած.* D *Կաղանկա-տուայ:*

*Շահնազարեան իր տպագրութեան մէջ չորս անգամ ալ ուղղագրած է «Կաղանկայ-*

տուաց» եւ ապա «Կաղանկայտուացի», որ ձեռագրական հիմ չունի: Կիրակոսի ընթերցուածը «Կաղկանտուացի» պէտք է ուղղել: Անմեկնելի է, թէ ինչպէս E. Boré անունը տառադարձած է Galkantouni: Գիւղ-ատե-նիս տեղը ցոյց կու տայ Մ. Վ. Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Բ., էջ 345, այսպէս. «Կաղակատ. է աւերակ մեծի գեղջ յարեւմուտս հարաւոյ մայրաքաղաքին Բարդայ (խմացիր Պարտաւոյ) ի ծայր հեղեղատի մեծի, որ իջանէ յարեւմտից եւ համանեւով գգաշան Կուր. արդ է ձմերանոց Տաճկաց բնակաց ի Մեծ Կունէս»: Իսկ Մ. Բարխուդարեան, Պատմութիւն Աղուանից, էջ 31. «Այժմ մի քանի տուն մահմեդականներ են բնակում Կաղանկատու գիւղի աւերակում, որ գտնւում է Դիւզական աւերակ գիւղի եւ Մատաղիս չէն գիւղի մէջեւ Թարթառ գետին ձախ կողմում Պատալի կամրջի (Դաշ քեօրփի) մօտ» (այսպէս Բազմավէպ, 1897, էջ 577):

Կը մնայ ակնարկին տալ, թէ Մխիթար Գոշ եւ Կիրակոս Գանձակեցի ի՞նչ աղբիւրէ իմացան, թէ Աղուանից Պատմութեան հեղինակը «Մովսէս» կը կոչուի, երբ ինքն պատմագիրը թագուցած է իր անձն ալ, անունն ալ: Կա՞յ աւանդութիւն մը, որ շրջան ընէր բերնէ բերան: Չգիտենք: Բայց գիտենք որ Աղուանից Պատմութիւնը կ'աւարտի «տէր Մովսէս, ամս վեց, յառաջնորդութենէն Փարիսոսոյ վանաց» (Գ. 24, էջ 278): Ուստի սա

*Աղուանից վերջին կաթողիկոսն էր Պատմութեան ծիրին մէջ։ Վերջինեալ պատմագիրներուն ձեռքը ա՛յս ընագիրը կը գտնուէր։ ԺԲ.—ԺԳ. դարուն, երբ Պատմութեան ընթերցողները հետաքրքրուեցան, թէ ո՞վ է անոր անանուն հեղինակը, ընական կարգով պիտի ենթադրէին, թէ Աղուանից Պատմութեան պատմիչը Աղուանից կաթողիկոսներէն մէկը, այս պարագային մէջ՝ վերջին Մովսէս կաթողիկոսը պէտք է եղած ըլլայ։ Անշուշտ պատահական զուգադիպութիւն մը չէ, որ վերջին կաթողիկոսն ու Պատմութեան հեղինակը «Մովսէս» կը կոչուին։ Այս Մովսէս նախ եղած է Փարիսոսի վանքին վանական, եւ ապա արժանացած է կաթողիկոսութեան աթոռի վրայ բազմիլ. ուստի վաստակաւոր մըն էր, շատերու մէջէն ընտրեալ մը։ Իբրեւ այդպիսի կարող էր աշխատասիրել «Աղուանից Պատմութիւնը»։*

*Եւ եթէ այս Մովսէսը հարկ է մականունով մը զանազանել համանուններէն, նախընտրելի է «Դասխուրանցի» անուանել, որ երկու հաւատարիմ վկաներու կնիքը կը կրէ։*

Ժամանակը։ *Աղուանից Պատմութիւնը Ա.—Գ. հատուածներու մէջ կ՚ենթադրէ մէկ խմբագիր, որ աշխատած է ձեռքի տակ գըտնուած հին ատաղձները դասաւորել, պակասները ըստ կարելւոյն լրացնել տրամադրելի աղբիւրներէ եւ տալ ամբողջին պատմական երկասիրութեան մը, Աղուան ժողովուրդի պատմագիրքի մը կերպարանք. Ծննդա–*

*բանութեամբ, «Միջակ» պատմութեամբ եւ Աւարտաբանութեամբ, ինչպէս յօրինուած էր Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը: Թէ ամբողջի վրայ մէկ ձեռք գործած է, բաւական է նկատի առնել Գ. 23 գլուխը, ուր կը գրէ խմբագիրը. «Զանուանս արքայից* վերագոյն գրեցաք *ի Բաջէն Վաչականայ մինչեւ ցԲարեպաշտն Վաչական՝ տասն թագաւորք»: Այս գլուխին մէջ նկատի առնուած են Ա. 15 եւ Բ. 17 գլուխները: Այս իրողութեամբ երբ խմբագրին ժամանակը ստուգել ուզենք, մեր ուշադրութիւնը պիտի դարձնենք երեք գիրքերու պատմական բովանդակութեան եւ անոր ժամանակագրական վերջին եզրին: Արդ Գ. գիրքի 23 գլուխը կ'աւարտի քաղաքական պատմութեամբ, յիշելով Յովհաննէս Սենեքերիմի թագաւոր պսակուիլը, որ տեղի ունեցած է 1004/5ին: Յաջորդ գլուխը նուիրուած է Աղուանից կաթողիկոսներու յաջորդութեանց, վերջին կաթողիկոսն է Մովսէս, 1002—1008, Յովհ. Սենեքերիմի կենդանութեան:*

*Թէպէտ Անանիա Մոկացի 950ին ունէր իր ձեռքին տակ Աղուանից Պատմութիւնը, բայց, ինչպէս վերագոյն առիթ եղաւ ըսելու, չենք կրնար հաստատել թէ այն նո՛յն ծաւալն ունէր, ինչ որ հասած է մեզի: Կէտ մը, Աղուանից եկեղեցւոյ միանգամ վերաճանաչումը Հայոց կաթողիկոսի նախապատուութիւնը, զոր ներկայ խմբագրութիւնը (Ուխտանէսի հետ) Աբրահամ կաթողիկոսի*

օրով տեղի ունեցած կը համարի, Անանիա զայն Կոմիտաս կաթողիկոսի օրով դնէ։ Ուսկից կրնանք հետեւցնել թէ Անանիա ուրիշ բնագիր մ'ունէր իր առջեւ։

Բայց Ուխտանէս ինչպէս կ'երեւայ, կը ճանչնար ներկայ խմբագրութիւնը. ստ ծննդեամբ հաւանօրէն Աղուանից աշխարհէն էր. գտնուած է հոն իր հասուն տարիքի մէջ ալ եւ տեղեակ էր անոր աշխարհագրութեան։ Իր Պատմութեան մէջ, Ա. 68 կը գրէ. Տրդատ «իջեալ ի դաշտն Գարգարացւոց ի սահմանս Աղուանից, յորում եւ [զ]միջակտուր զԲաղացն (տպ. Բաղացն) արար Թագաւորն [Մ. Խոր. Բ. 85]. զոր այժմ ոչ երբեք կոչի աշխարհն Բաղաց (տպ. Բաղասց), զոր կարծեմ փոխել անուանն. ո՛չ յիշի որպէս ձորայն ի Դարբանդ. բայց է բլուր մի յաշխարհին Ուտիացւոց՝ մերձ առ ստորոտով լերինն՝ որ կոչի Արաթիւն, որ դեռ եւս կոչի բլուրն այն Բաղազարերդ» (էջ 96)։ Այսպէս նաեւ Բ. 64. «Մայր եկեղեցեացն (Աղուանից) Գիսու եկեղեցին այն առ ստորոտով Ամարասու, ի գաւառին որ կոչի Դարգու, մերձ ի դաշտն Պարտաւ քաղաքի, որ կոչի Փայտակարան» (էջ 121)։ Ինչպէս հաւանական է, նաեւ Ծաթերու մկրտութիւնը, որուն պատմութիւնը գրած էր Գ. գրքի մէջ (այժմ անհետացած), կատարուած է յոյն որթոդոքսներէ Աղուանից աշխարհի սահմանի վրայ։ Այս տեղիքները ցոյց կու տան, թէ Ուխտանէս թէ համակիր է Աղուանից եւ թէ ծանօթ

անոնց Պատմութեան։ Ան մինչ իր Պատմութեան Ա. գրքին մէջ, զոր գրած է Հայաստանի սահմանին մէջ, բոլորովին անծանօթ կ'երեւայ «Աղուանից Պատմութեան», Բ. գրքին մէջ ընդարձակ յառաջբերութիւններ կ'ընէ։ Կրնանք ասկէ հետեւցնել թէ շատ ուշ ձեռք անցուցած է զայն։ Ե՞րբ։ Դժուար է ըսել. գիտենք միայն որ ան վախճանած ըլլալու է «ԺԱ. դարու սեմքին վրայ» (տես իմ Կիւրիոն կաթողիկոս, Վիեննա 1910, էջ 56), թերեւս իր հայրենի աշխարհին մէջ, ուստի կարող էր տեսած ըլլալ Աղուանից Պատմութիւնը իր նոր խմբագրութեան մէջ։

Խմբագիրը իր աղբիւրներու թուին մէջ ունէր նաեւ Մովսէս Խորենացւոյ Պատմութիւնը, որմէ օգտուած է։ Հ. Վ. Հացունի այս խնդրութիւնը չահագործել փորձեց, ապացուցանելու համար թէ Մ. Խորենացի Ե. դարու պատմագիր է, այն համոզմամբ թէ Մ. Կաղանկատուացին ալ Է. դարու հեղինակ է։ Այս երկին սխալներու մէջ պիտի չիյնար ան, եթէ կանխաւ իրացուցած ըլլար քննադատներու այն վճիռը, թէ 850էն յառաջ գոյութիւն չունէր Մ. Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը, իսկ 1003էն յառաջ Մովսէս Դասխուրանեցւոյ (Կաղանկատուեցւոյ) Աղուանից Պատմութիւնը։ Զարմանալի չէ այնուհետեւ, թէ ինչո՞ւ Ստեփանոս Ասողնիկ անծանօթ մնացած է այս պատմագիրքին։

# Բ.

## ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

### 1. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

1. *Աղուանից պատմութիւնը ժողովածու մըն է Աղուանից քաղաքական եւ եկեղեցական պատմութեան հայոց այլեւայլ գրուածքներու, գրուած զանազան հեղինակներէ Զ.—Ժ. դարերուն։ Իւրաքանչիւր հեղինակ ունեցած է անշուշտ իր աղբիւրները։ Անոնց վրայ անդրադառնամ երբ քննութեան առնեմ այդ մանր մասնագիրները մի առ մի։*

*Այս զանազան գրութիւնները դասաւորուած են Պատմութեան մէջ ոչ խիստ ժամանակագրական կարգով։ Այս դասաւորութիւնը կատարած է Ժ. դարու երկրորդ կէսին Մովսէս Դասխուրանցի։ Ան ոչ միայն այդ գրուածքներու լոկ դասաւորողն եղած է, այլ եւ աշխատանք տարած է զանոնք օղակելու իրարու հետ այլուստ քաղած տեղեկութիւններով, նոյն իսկ ջանացած է տալ ամբողջին պատմական նկարագիր մը նոր յաւելուածներով, հատուածաբաժանումներով (Հին, Միջին եւ Վերջին պատմութիւն), գլխակարգութիւններով եւ խորագրութիւններով։ Իրեն օրինակ առած է Մովսէս Քերթողահայրը, իցի՛ւ նաեւ անոր խոհականութիւնը, փոյթն եւ արուեստը։*

*Մ. Դասխուրանցի լոկ խմբագիր մըն է, ուստի ոչ պատմագէտ եւ ոչ պատմագիր։*

Թէպէտ ցու կը յայտնէ, թէ Աղուանից հին պատմութեան համար չէ գտած աղբիւրներ, պատճառ բերելով «Արեւելեայց բազմազգութիւն եւ կտակարանացն հրկիզութիւնք» (Ա. 8). բայց նաեւ Միջին եւ Վերջին շրջաններու համար սակաւ եղած են իր աղբիւրները, ոչ թէ անոնց հրկիզութեան, այլ իր անփութութեան պատճառաւ։ Ան բաւականացած է այս ու ան մանր մատենագիրներու հաղորդած ուղիղ եւ սխալ տեղեկութիւններով. չէ հետապնդած հաւաքել քաղել յիշատակարաններ, արձանագրութիւններ, անգիր աւանդութիւններ, ձեռք բերել հայ պատմագիրները՝ Փաւստոս, Ագաթանգեղոս, Կորիւն, Ղ. Փարպեցի, Սեբէոս, Ղեւոնդ, Թովմա Արծրունի, Յովհ. Դրասխանակերտցի եւ այլն, Աղուանից եւ Հայոց դիւանները քրքրել, ուր պիտի գտնէր անաշխատ գոնէ 768ի ի Պարտաւ գումարուած ժողովին կանոնները։

Իր անծանօթութիւնը այս աղբիւրներու պատճառ եղած է իր անտեղեկութեան կարգ մը անցքերու եւ դէմքերու։

Կրնայինք ըսել, որ գոնէ իր ժամանակակից կեանքէն հաղորդէր մեզի մանրամասնութիւններ քաղաքական եւ եկեղեցական պատմութեան շուրջը, կամ Աղուանից բազմազգութեան որպիսութեան մասին։ Բոլորովին լուռ է Մոկացի Անանիա կաթողիկոսի Աղուանք այցելութեան եւ այն տեղ յուզուած խնդիրներու մասին։

Խմբագիրը բարւոք համարած է ձեռքի տակ ունեցած բնագիրները անփոփոխ զետեղել, քան անոնցմէ օգտուելով պատմագիրք մը յօրինել. եւ այն տակաւ գլուխներն ալ, որոնք իր գրչէն են, մեծ մասով քաղուածքներ են հարազատ եւ անհարազատ աղբիւրներէ. իսկ ուր ինքնակաց է, արտայայտած է մտքեր, որոնք հակասութեան մէջ են յաճախ բերուած բնագիրներու հետ։ Ինքը, խմբագիրը հակաքաղկեդոնական է. իսկ Աղուանից Եկեղեցին Զ. եւ Է. դարերուն քաղկեդոնական էր, եւ իբրեւ այդպիսի բաժնուած Հայոց Եկեղեցւոյ Միութենէն. զայս կը մերժէ խոստովանիլ։ Աղուանից եւ Վրաց Եկեղեցիները ի սկզբանէ հետէ կը ստանային իրենց եպիսկոպոսները Հայոց եպիսկոպոսական ձեռնադրութեամբ. Թէպէտ զայս կ'ընդունի խմբագիրը՝ բայց Նախնեկեղեցին կը ճանչնայ Աղուանիցը, ուստի նաեւ նախապատուութիւնը Աղուանից եպիսկոպոսներուն կը սեպհականէ։ Զայս ապացուցանելու համար Թոյլ կու տայ անձին նոյն իսկ վաւերագիրներ խարդախել։

Նման ձեռնմխութիւններ կը տեսնուին նաեւ ուրիշ աղբիւրներու մէջ, որոնցմէ կ'օգտուի։ Մեր ուսումնասիրութեան ընթացքին առիթ պիտի ունենանք նշաւակելու նման տեղիքներ։

Աղուանից Պատմութեան մէջ խմբագրին ձեռքէն կը համարիմ հետեւեալ գլուխները.

Ա. 1—4, 6, 8, 9, 12—15:

Բ. 2—3, 8, 47:

Գ. 15, 17, 23—24:

Խմբագիրը ձեռքի տակ աղբիւր ունեցած է.

ա. Հիպպողիտոս Հռոմայեցւոյ Ժամանակագրութիւնը.

բ. Մ. Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը.

գ. Եղիշէի Պատմութիւնն Հայոց պատերազմի.

դ. Թղթոց Գիրքը:

Կարեւոր կը համարիմ ի մերձուստ քննութեան առնել այս աղբիւրները:

1. Հիպպողիտոս Հռոմայեցի. Լատիներէ եւ Հայերէ կոչուած Բոստրացի, հեղինակած է Գ. դարու առաջին կէսին յունարէն լեզուով զանազան աշխատութիւններ, որոնց թուին մէջ նաեւ Ժամանակագրութիւն մը, կոչուած Liber generationis հայերէն թարգմանութեան մէջ «Ազգահամարք երից որդւոցն Նոյի»: Պահուած է յունարէն, լատիներէն եւ հայերէն. ամէնն ալ անանուն. հայերէն ձեռագիր մը, որ առկէ քաղուածքներ կը պարունակէ, խորագիր կը կրէ. «Բանք Փիլոնի»: Ներկայիս գիտնոց ընդհանուր համոզումն է, թէ անոր հեղինակն է Հիպպողիտոս, գրուած 234ին:

Հայերէն թարգմանութիւնը կատարուած է Ե. դարու առաջին կէսին, յոյն բնագրէն: Պահուած է մեզի միայն Ա. մասը Զմմառի

*Վանքին Թ. 83 ձեռագրին մէջ, օրինակուած ԺԲ. դարուն: Բարեբախտաբար ունինք այս գրութենէն ընդարձակ քաղուածքներ Էջմիածնի Թ. 2679 ձեռագրին մէջ, գրուած* 971*ին (Հրտ. Հ. Բ. Սարգիսեան, Անանուն Ժամանակագրութիւն, Վենետիկ* 1904. *եւ Ա. Աբրահամեան, Անանիա Շիրակացու Մատենագրութիւնը, Երեւան* 1944, *էջ* 357—399): *Հիպպոլիտոսի գործին նոր հրատարակութիւն մը պատրաստած եմ, հիմ առած Զմմառի Թ.* 83 *եւ Էջմիածնի Թ.* 2679:

*Աղուանից Պատմութեան խմբագիրը առկէ՝ քաղած է Աղուանից Ծննդաբանութիւնը, Ա.* 1—3 *գլուխներու մէջ, որոնք վերնագիր կը կրեն.* 1. *«Որ ինչ յԱդամայ մինչեւ ցնոյ ծնունդք ազգաբերութեանց»:* 2. *«Գիր ազգաբանութեան Յաբեթի եւ ծննդոց նորին»:* 3. *«Թէ ո՛ր ազգ են, որ գիտեն զգրութիւն»: Այս վերջինը փոխ առնուած է Հիպպոլիտոսէն եւ կը հայի միայն առաջին երեք տողերուն. շարունակութիւնը մինչեւ «մինչ ի Տրապոն» նոյնպէս նոյն աղբիւրէն է:*

*Խմբագրին գրչէն են հետեւեալ ընդգծուած տեղիքները. «ազգակից են Կեառուրացւոց (Հմմ. Կեաթիացւոց)*, ուստի Աղուանք» (*Ա.* 2). *«Մարք, Հայք,* Աղուանք» (*Ա.* 3):

*Սկզբնագիրը բազմօք աղաւաղուած է հոս, մանաւորապէս ազգաց անունները: Այս քաղուածքները Հիպպոլիտոսի գործոց*

Բերլինեան հրատարակութեան համար գերմաներէնի թարգմանած է J. Marquart, որ յիշեցինք վերագոյն։

2. Մովսէս Խորենացի։ Հնագոյն պատմութեան համար կարեւոր աղբիւր ծառայած է Խմբագրին՝ Խորենացւոյ Հայոց պատմութիւնը, որ կը յիշէ իսկ յանուանէ. «Յայսմ վայրի նպաստաւորէ մեզ Քերթողահայրն Մովսէս» (Ա. Ա.)։ Իրմէ քաղած է խմբագիրը իր տեղեկութիւնները Ա. 3—6, 12, 13, 15 եւ Բ. 3 գլուխներու համար։ Իր ժամանակագրութիւնը յեցած է Մ. Խորենացւոյ տուեալներու վրայ։ Ստացած թուականները կ'երեւայ թէ ձեռագիրներու մէջ խանգարում կրած են։

Ա. 3 Հիպպողիտոսի ժամանակագրութենէն հանած հատուածներուն կը կցէ. «Ի Յաբեթէ ցՏիգրան՝ թագաւորք ԻԴ (կարդա՛ ԽԴ, ճշգագոյնս՝ ԽԵ[1])... յԱրշակայ մինչեւ ցԱրտաւան ԺԳ (կարդա՛ ԺԴ) եւ ամք ՆԾ (կարդա՛յ ՆԿ, ճշգագոյնս՝ ՆԿԵ)[2]... Պարսից եւ Ասորւոց տիրեցին ՄԾԲ ամօք յառաջ քան զգալ Կենարարին[3]»։ Ուրիշ աղբիւր է «եւ յետ դարձի գերութեանն Հրէից ի Բաբելոնէ ՄՀ ամօք[4]»։ «Ի Վաղարշակայ մինչեւ յԱր-

[1] Համմտ. Մ. Խոր. Ա. 5, 19, 22։
[2] Անդ, Բ. 68, 69։
[3] Անդ, Բ. 26։
[4] Եւսեբիոս Կեսարացի իր Քրոնիկոնին մէջ (էջ 232) Արշակունեաց հարստութեան սկիզբը կը նշանակէ Աբրահամեան թուականի 1766ին եւ Հրէից գերեդարձը 1496ին (էջ 202), ուստի ճշգիւ 270 տարի ետքը։ Այս հաշուով եթէ Արշակունեաց սկզբնաւորութիւնը տեղի

տաշիր Վռամշապհոյ որդի Թագաւորք ԻԶ. խոկ ամք ՌԻ» (կարդա՛ ԾԻ): Այս ժամանակագրական տեղիքները առնուած է խմբագիրը գումարելով պարթեւ եւ հայ թագաւորներու գահակալութեան տարիները, զորոնք գտած է Մ. Խորենացւոյ Պատմութեան մէջ:

Իրեն համար թանկագին գիւտ էր Մ. Խորենացւոյ Ա. 8 գլուխը, ուսկից կ՚իմանայ, թէ ինչպէս «գլխաւոր ոմն ի Սիսական տոհմէ, Յաբեթական ծննդոց կարգի հրամանաւ Վաղարշակայ, Առան անուն, որ ժառանգեաց զդաշտս եւ զլերինս Աղուանից» (Ա. 4). «զի ի սկզբան(է) աշխարհագործութեան մարդկութեանս [որ] զմեծ լերամբն Կովկասու բնակելոցն չունիմք ինչ ասել սոյգ ի պէտս յօդոյ մինչեւ զՎաղարշակ արքայ Հայոց» (Ա. 4):

3. Եղիշէ, Պատմութիւն Հայոց պատերազմին. Ներկայ խմբագրութեամբ (Վենետիկ 1859):

Անկէ առնուած են Ա. 10 (Եղիշէ, էջ 153—155). Բ. 2 (Եղիշէ, 53—61):

4. Գիրք Թղթոց (Թիֆլիս 1900):

Անկէ հանուած են Բ. 7 (Թուղթ Յովհաննիսի Հայոց կաթողիկոսի առ տէր Աբաս Աղուանից կաթողիկոս). Բ. 49 (Պատաս-

---

կ՚ունենայ 1766ին մինչեւ Քրիստոսի ծնունդը (Ամ Աբրահամու 2015) կը առաջնորդէ ճշդել ՄԾ կամ ՄԾԲ, այն է 250. որով ՄԾԲ կարող է խմբագիրը Եւսեբիոսէն առած ըլլալ:

*խանի Թղթոյն Մխիթարայ Ամարասայ եպիսկոպոսի ի Հայոց)։ Բ. 47 (համառօտ մը Աբրահամ կաթողիկոսի Շրջաբերականէն)։*

5. Խմբագիրն եւ Աղուանից արքայացանկն եւ իշխանացանկը։

*Խմբագիրը կը խոստովանի. «Պատմութիւն ճշմարիտ ասել քան զնախագահեալն Առանայ ի Վաղարշակայ տանս Աղուանից ինչ ոչ գտաք մինչեւ զքաջն Վաչագան» (Գ. 6). այլուր կը գրէ նոյնիմաստ. «ըստ կարգի գրոցս յԱռանայ մինչեւ զՈւռնայր Աղուանից արքայ եւ զՏրդատ Հայոց արքայ ոչ գտաք, այլ հարեւանցի գրեցաւ որ ինչ ի պէտս էր անդէն լինել» (Ա. 8 վերնագիր), թէպէտ «յոյժ ցանկալի էր ըստ կարգաց գիտել զպատմածս որ ինչ յԱռանայ նախագահութենէն ցայսօր գործք» (Ա. 8). ուստի «թիւ աւուրցն յԱռանայ մինչեւ զՔաջն Վաչագան, որ էր ի մեծ ազգէն Արշակունեաց, չէ յայտ» (Ա. 15)։*

*Աղուանից նախագահ իշխանին Առանի ծառը կ՚իջեցնէ Յաբեթէն մինչեւ Տիգրան (ըստ Մ. Խորենացւոյ Ա. 5, 22, Բ. 8). «ի սոցա ծննդոց կարգեցաւ Առան նախագահ Աղուանից» (Ա. 15)։ Առանի յաջորդները մինչեւ Քաջն Վաչագան անծանօթ են։ Վաչագան «էր ի մեծ ազգէն Արշակունեաց»։ Յաջողած է խմբագիրը գտնել ասոր յաջորդներու անունները մինչեւ Բարեպաշտն Վաչագան, թուով տասը. ասոնք են.*

1. Վաչական (Ա.) Քաջ,
2. Վաչէ (Ա.),
3. Ուռնայր,
4. Վաչական (Բ.),
5. Մրհաւան,
6. Սատոյ,
7. Ասայ,
8. Եսուաղէն (Արսուաղէն),
9. Վաչէ (Բ.),
10. Վաչական (Գ.) Բարեպաշտ:

Ի՞նչ աղբիւրէ հանած է խմբագիրը այս անունները: Չկայ որ և է ակնարկութիւն: Այս 10 թագաւորներէն պատմութեան ծանօթ են միայն երկուքը՝ Ուռնայր (370) և Արսուաղէն (415): Վաչէ Բ. և Վաչագան Գ. կը յիշուին միայն Աղուանից Պատմութեան մէջ Ե. դարու երկրորդ և Զ. դարու առաջին կէսին:

Աղուանից աղբիւրները (Թուղթ Գիւտայ) Ուռնայրը կը համարին Տրդատ Բ.ի ժամանակակից (Ա. 11), ըստ աւանդութեան 302ին (տակէ Ա. 8 վերնագիրը): Փաւստոս և Մ. Խորենացի կը յիշեն Ուռնայր թագաւոր մը իբր 370ին: Ուստի հարկ է ոչ մէկ, այլ երկու Ուռնայր ենթադրել: Բայց այսպիսի զանազանութիւն չէ նկատած խմբագիրը, որով երեւան կը բերէ իր անհմտութիւնը ժամանակագրութեան: Ան գիտէ Ուռնայրը քեռայր Պարսից Շապուհ թագաւորի (Ա. 9). անշուշտ կ'իմանայ Շապուհ Բ. (309—379), որ թագաւոր հռչակուած էր արդէն խան-

ձարուրքին մէջ։ Անոր նիզակակիցն էր Ուռնայր 369ին։ Խմբագրին աղբիւրն է հոս Մ. Խորենացի, բայց աս չի գիտեր թէ Ուռնայր քեռայրն ըլլայ Շապուհի[5]։ Տարակոյս չկայ որ այս ազգակցութիւնը խմբագրին խելապատակէն հնարուած է, որ միշտ կը ձգտի Աղուանից թագաւորներն եւ իշխանները «ի թագաւորական զարմէ» սերեցնել. Վաչագան Ա. էր «ի մեծ ազգէն Արշակունեաց». անոր սերունդէն է նաեւ Ուռնայր, որ նաեւ Սասանեան տան փեսայ է. Վաչէ Բ. նոյնպէս փեսայ է Յազկերտ Բ.ի եւ քեռայր Պերոզ Ա.ի. վերջապէս Վաչագան Գ. «որդի Յազկերտի, եղբօր Վաչէի, «ի թագաւորական զարմէ» ծնած մողակրօնիկ։

Արքայացանկին Թ. 5, 6, 7 Մի(ր)հաւան, Սատոյ եւ Ասայ նոր անուններ են պատմութեան մէջ. ասոնք առնուած են անշուշտ Ը.—Ժ. դարու Աղուան ազնուականներու անուանացանկէն. Սատոյ կը յիշուի 768ի Պարտաւի ժողովի կանոններու յառաջաբանին մէջ. «Վարդան (ի) Սատոյեան»։ Միրհաւան կը յիշուի Բ. 17, իբրեւ տեղանուն։ Ասայ այլուստ անծանօթ է։ Յամենայն դէպս

[5] Բրոսէ. Additions, 471, ծ. 1 կը գրէ, թէ «Աս (Ուռնայր) կին առած էր Պարսից Շապուհ թագաւորին քոյրը Ասայ, էջ 5»։ Ակնարկած աղբիւրը Աղուանից Պատմութեան իր ձեռագիրն է։ Բայց այդ Պատմութեան մէջ չկայ այդպիսի տեղիք։ Աճառեան, Անձնանուններու Բառարան, Ա., 220, առանց շրջահայեցողութեան կրկնած է զայն։ Ինչպէս Justi ուղիղ նկատած է (էջ 42), Բրոսէ հոս շփոթումի մը զոհ եղած ըլլալու է։

հնարուած անուններ են Թ. 1, 2, 4—7, կասկածելի Թ. 9—10: Այս վերջին երկուքին պիտի անդրադառնամ ապա միւսանգամ:

Այս 10 Թագաւորները խմբագիրը կը ներկայացնէ Յաբեթական գծէ հայկազնեան եւ եռանշահիկ. Բ. 17 կը գրէ. «Զնախնական ազգս Հայկազնեայց զեռանշահիկս, զոր վերագոյն գրեցաք ի մատենիս»: Եռանշահիկներու ազգը տակակտոր կ'ընէ Վարդան «ի Միհրական տոհմէ» է. դարուն: Այս կոտորածէն կը պրծի միայն Զարմիրհն Եռանշահիկ, որ «փեսայացեալ էր Միհրական ցեղին», այսինքն առած էր Վարդանի դուստրը կնութեան:

Զարմիրհէն շառաւիղած տոհմը կը ներկայանայ Պատմութեանս մէջ «յազգէ Թագաւորաց» (հմմտ. Գ. 10):

Միհրանեան տոհմի ծագման պատմութեան համար աղբիւր ցոյց կու տայ. «ի ստոյգ եւ ի բուն պատմագրաց այսպէս ծանեաք»: Կ'ակնարկուի անշուշտ Սեբէոսի Պատմութիւնը. որ մանրամասնօրէն պատմած է 590ին եւ յաջորդ տարիներու դէպքերը: Պատմականն է. Խոսրով Բ. Ապրուէզ պատանեկան հասակին կը հռչակուի Թագաւոր, հօրը, Որմիզդ Դ.-ի կենդանութեան: Կ'ապստամբի Վահրամ Չոբին, Միհրան տոհմէ, եւ կը քալէ հօր բանակով Տիզբոնի վրայ: Թագաւորին քեռորդիները Բինդոյ եւ Վստամ կ'առնեն Խոսրովը եւ կը դիմեն փախուստի: Բինդոյ կէս ճանապարհին կը վերադառնայ Տիզ-

րան եւ կը սպանէ Որմիզդը, որպէս զի Վահրամ չչահագործէ անոր անունը հակառակ Խոսրովի։ Փախստականները կ'ապաստանին Մաւրիկ կայսեր. որ կու տայ անոնց յունական զօրք յետս մղելու ապստամբը։ Վահրամ կը պարտուի. ապաստանարան կը գտնէ Թուրքերուն քով. ուր եւ կը սպանուի Խոսրովի թելադրութեամբ։ Խոսրով կը կասկածի իր քեռորդիներու հաւատարմութեան վրայ. կը սպանէ Բինդոյն. իսկ Վստամ Պարսկաստանի հարերը կը հռչակէ ինք զինքը թագաւոր. հաւանօրէն մինչեւ 596։

Խմբագիրը, որ կը լռէ Վահրամ Չօբինի սպանման մասին, կը գրէ շարունակելով պատմութիւնը. «Յետ բազում ամաց լինի վրէժխնդիր արեան հօր իւրոյ Որմզդի. կոտորէ զերկոսեան քեռիսն իւր զԲնդոյ եւ զՎստամ. եւ ի նոյն ազգէ իբրեւ արս վաթսուն։ Ուստի լեալ փախստական Միհրանն այն ազգային Խոսրովու (այսինքն նախարար մը Միհրան տոհմէն, «ի Սասանեան Խոսրովու ցեղէն». Բ. 17 վերնագիր), միաբանէ ընդ իւր զկողմս աշխարհացն եւ առեալ երդս իբրեւ 30.000 անցանէ ի կողմն Աղուանից, հասանէ յՈւտի գաւառ մերձ ի Խաղխս [եւ] յաւելու ի Թշնամիսն»։ Պարսից աւագանին կը զգուշացնէ Թագաւորը, թէ Միհրան, որ միայն կասկածելով Խոսրովէն զինած է փախուստի, կարող է ասով իր Թշնամի Խազիրներու դէմ զօրացնել։ Ասոր վրայ Խոսրով սուրհանդակ մը կ'ուղարկէ հրովարտակով Միհրանի. ուր

կը գրէ. «Եղբայր իմ եւ հարազատ, մի՛ լիցի քեզ հեռանալ յինէն թշնամութեամբ. եթէ ոչ հաճեցար ընդ իս բնակել, ուր հրովարտակդ իմ հասանէ, երկիրդ այդ քեզ լիցի ի բնակութիւն, որչափ եւ հասանեն գնացք ոտից քոց»։ Միհրան հրովարտակը կը ստանայ Գարդման գաւառին սահմանը. հոն այլ կանգ կ՚առնէ. կը շինէ «յիւր անուն քաղաք մի կոչելով զնա Միրհաւան»։ Կը գրաւէ Գարդմանը։ Ասիկա Վահրամ Զարեհի մէջին մէկ նոր փոփոխակը չէ՞։ Իրմով սկիզբ կ՚առնէ Գարդմանի մէջ նոր տոհմ մը.

1. Միհր(ան).

2. Արմայէլ.

3. Վարդ Ա.

4. Քաջ Վարդան.

5. Վարդ Բ., որ կ՚ունենայ երեք զաւակ. Վարազման, Ծուչիկ տիկին, Վարազ-Գրիգոր, առաջին իշխան Աղուանից. որ կը մկրտուի Վիրոյ կաթողիկոսէն։

6. Վարազ-Գրիգորի որդիներն են ի Գորիզխոսյ (Բ. 25). Վարազ-Պերոժ, Ջուանշիր, Յեզուտ-Խոսրով, Վարազման (Բ. 17, 25)։ «Գորիզդուխտ» կարդա՞լ Գորանդուխտ։

7. Վարազ-Պերոժ.

8. Վարազ-Տրդատ.՝ որդիք՝ Գագիկ, Վարդան, Մարիամ (Գ. 12).

9. Վարդան.

10. Ներսեհ Պժնդակ.

11. Գագիկ։

*12. Սանփանոս եւ Ազրամէն քոյր նորա (Գ. 23):*

*13. Վարազ-Տրդատ Բ. «Եւ ի նոյն ամի (821) առէր Ներսեհ ի Փիղիպեան սպան զՎարազ-Տրդատ ի Սանփանոսեան եւ զորդի նորին ի մօրն գոգ գենին եւ զամենայն ստացուածս նորա յափշտակեցին» (Գ. 20):*

*Միհրական տոհմի այս ազգաբանութիւնը ինձ կը թուի, թէ հնարուած է խմբագրէն (եթէ ոչ Ջուանշէրի վէպին հեղինակէն) եւ չունի պատմական հիմ: Միհրանէն մինչեւ Ջուանշէր 7 սերունդ կը ներկայացուի, բայց 596—653 հազիւ 57 տարուան միջոց բաց է. իսկ այս 57 տարիներուն մէջ անկարելի է 7 սերունդ ենթադրել:*

*Միհրան տոհմի եւ ոչ անձի կամ պաշտօնի անուն է: Եւ եթէ Միհրան մը գաղթած է Աղուանք, ան ունեցած ըլլալու էր իր անձնանունը: Նկատի առնելով, որ խմբագիրը ձգտում կը ցուցնէ Աղուանից ինչպէս թագաւորները, նոյնպէս իշխանները արշակունի եւ սասանեան ծագումէ սերած հաւատացնել, կարելի է մտածել, թէ ան որ եւ է կռուան գտած ըլլալու է Միհր կամ Միհրան անունը նոր իշխանական տան նախահայր ընտրելու: Առ այս գրգիռ կարող էր տալ Ուտի գաւառի Միրհաւան անունը (Բ. 17), որ կ'ենթադրէ իր հիմնադիրը Միհր կամ Միհրան: Արքայացանկին մէջ զետեղած էր ան թագաւոր մը Միրհաւան անուն: Որովհետեւ*

7 սերունդի համար 57 տարիները անբաւա-կան են, կարելի է որ խմբագիրը աղբիւրի մը մէջ երեւան բերած ըլլայ Միհրան մը, որ Խոսրով Թագաւորի օրով գործած է Աղուանից աշխարհի մէջ: Այսպիսի Միհրան մը 540ին կը յիշուի Գրիգոր Մանաճիհր Ռաժիկի մկրտութեան մէջ իբրեւ անոր հօրեղբօր որդին, որ անձնանունով հաւանօրէն Վահրամ կը կոչուէր[5]: Այս Միհրան հրամանատարն էր Առանի, այն է Ճորայ պահակի պարսկական զօրագունդին, Խոսրով Ա.-ի օրով: Խմբագիրը շփոթած է Խոսրով Ա. Անուշարուանը Խոսրով Բ. Ապրուէզի հետ: Հարկ է այսպէս իմանալ, եթէ չենք ուզեր մեղադրել Խմբագիրը իբրեւ անգէտ ժամանակի մասին: Ուշագրաւ է եւ այն որ Է.—Ը. դարու շրջանին Աղուան աւագ իշխանները Վարազ-Գրիգոր, Վարազ-Պերոժ, Վարազ-Տրդատ, Վարազման եւ նման պարսկական անուններ կը կրեն: Միհրի որդւոյն անունը Արմայէլ (պարսկ. Armāil) Աժդահակի գրոյցէն ծանօթ ըլլալու էր. նոյն անունը կը յիշուի նաեւ Վրաց հնագոյն շրջանի արքայացանկին մէջ (Ius'i, Iran. Namenbuch, 26—27): Միհր—ուան նմանութեա՞մբ Արա—ուանի:

Թէ խմբագիրը ո՛րքան անհաստատ ժամանակագրական հողի վրայ կը տատանի, կը տեսնուի Գ. 10 հատուածէն, ուր կ'աշխատի

[5] Այս Միհրանի մասին տես իմ Եղիշէ վարդապետ, Բ. 561 եւ շար.:

700ին ի Պարտաւ գումարուած ժողովին ներկայ աւագներու տոհմանունները լուսաբանել. «...Վախտանգ ի Վարազմանեան. և նախնի է սոցա Քաջն Վարդան ի Միհրական տոհմէն, որ յաւուրս Վաչականայ Աղուանից արքայի յԱղուէն ժողովոյն յարքայէն նախագահ եղեալ՝ ընտրեցաւ ի Գարդման»: Այս ժողովի Կանոններու Յառաջաբանին մէջ չի յիշուիր Վարդան: Եւ սա եթէ իր նախագահութիւնը Վաչագան թագաւորէն ընդունեցաւ, պէտք է այս դէպքը տեղի ունեցած ըլլայ իրր 530—560 տարիներու մէջ, երբ ապրած ըլլալու է «Վաչագան արքայ»: Բայց բուն խմբագրին Միհրան, Միհրական տոհմին նահապետը 596էն ետքը Աղուանից աշխարհին մէջ հաստատուեցաւ:

Այս պանծացուած Քաջ Վարդանն էր, բուն խմբագրին, որ շինեց Գարդմանայ բերդը, և հոն հրաւիրելով ճաշի «զնախնական ազգս Հայկազնեայց զԵռանշահիկս, զոր վերագոյն գրեցաք ի մասունս» (Կ՛ակնարկէ անշուշտ Ա. 15 գլուխը), կը կոտորէ նենգօրէն 60 Եռանշահիկ իշխաններ, և «միայն թողուր ի նոցանէ զփեսայացեալն իւրում ցեղին զՋարմիրհն եռանշահիկ: Այսպէս եղեւ նոցա (Միհրականաց) տիրելն Աղուանից» (Բ. 17): Զուր է ամէն փորձ ճշդելու այս դէպքին ժամանակը:

Այս «Եռանշահիկ» անուանակոչութիւնը «Հայկազնեայց»՝ առաջին անգամ այս տեղ երևան կու գայ և կը կրկնուի ապա: Կ՛իմա-

նայ խմբագիրը բառս ի Ռան (վրական) կամ Առան (պարսկական) անունը, որով կը կոչուի Աղուանից աշխարհը. ուստի Առան-շահ-իկ = Եռան-շահ-իկ, կազմուած նմանութեամբ Երանշահրիկ (Երան աշխարհի հպատակ) յորջորջումին, հոս Առան-շահ-իկ = Աղուան արքայական իմաստով:

Նոյն խմբագրի ձեռքը կը տեսնեմ նաեւ Գ. 20 գլխուն մէջ, ուր Վարազ-Տրդատ Բ.ի սպանութիւնը յիշելով կը ծանօթագրէ. «Այս Վարազ-Տրդատ ի Միհրականն տոհմէ էր, որ զԱղուանս ժառանգեցին որդի ի հօրէ տանելով. սա ութերորդ էր ի Վարազ-Գրիգորէ՝ առաջին իշխանէ Աղուանից» (Գ. 20): Այս հատուածը մասն է Գ. 23ի «Զայս Վարազ-Տրդատ եւ զորդի նորա Ստեփաննոս...»:

Ինչպէս քաղաքական, նոյնպէս եկեղեցական պատմութեան ժամանակագրութիւնը խախտ է: Այս կէտի մէջ ունեցած է ան աղբիւր Աղուան հեղինակները, որոնք Աղուանից առաքեալ ներկայացուցած են Ս. Թադէոսի աշակերտը՝ Եղիշէ անուն: Կ'ըսուի թէ Քրիստոսի Համբարձումէն ետքը «մերոցս արեւելեայցս փրկեցաւ սուրբ առաքեալն Թադէոս»: Սա կը նահատակուի Արտազ գաւառին մէջ: «Եւ աշակերտ նորա սուրբն Եղիշա դառնայ յԵրուսաղէմ»: Հոն կը ձեռնադրուի (անշուշտ եպիսկոպոս) «ի ձեռաց սրբոյն Յակոբայ եղբօր Տեառն... եւ վիճակ առեալ իւր զԱրեւելս՝ ճանապարհ արարեալ յԵրուսաղեմէ ընդ Պարս՝ մտանէ ի Մազ-

քութս, խոյս տուեալ ի Հայաստանեայց[6]: Եւ սկիզբն առնէ քարոզութեան ի Զողայ»: Կը հանի Ուտի եւ կը նահատակուի Զերդունի դաշտի վրայ (Ա. 6): «Յետ բազում ժամանակաց» կը յայտնուին նշխարքները. գլուխը կը պահուի Ուռեկան աւանի մէջ, ուրկէ ապա կը փոխադրուի Ներսմերհայ սուրբ ուխտը: Իսկ «յետ բազում ժամանակաց Վաչագան արքայ կը կանգնէ սիւն մը «ի գրի նահատակութեանն» (Ա. 7):

Այս գրոյցը հնարուած է հաւանօրէն Զ.—Է. դարու մէջ, երբ Աղուանից եկեղեցին սերտ յարաբերութեան մէջ էր Երուսաղէմի հայրապետներու հետ, ունէր նաեւ վանք մը Ս. Յակոբին մէջ: Հնարուած է Եղիշէ առաքեալ, ապացուցանելու համար, թէ առաքելական է Աղուանից եկեղեցին եւ եպիսկոպոսապետը ինքնագլուխ: Աւելի յառաջ ծագած ըլլալու է Ս. Թադէոսի վկայաբանութիւնը, նոյն նպատակով: Վրաց եկեղեցին նոյնպէս, թէեւ շատ ուշ (ԺԱ. դարուն), ցոյց կու տայ իր Առաքեալը Անդրէաս:

Այնու որ Եղիշէ նախ իբրեւ աշակերտակից Թադէոսի կու գայ Հայաստան, առաքելոյն նահատակութենէն ետքը կը վերադառնայ Երուսաղէմ եւ միանգամ կ'առաքուի Աղուանից աշխարհը, բնականաբար

[6] Ինչո՞ւ համար «խոյս տուեալ ի Հայաստանեայց». անշուշտ կա՛մ վախնալով Սանատրուկ թագաւորէն եւ կամ հաւանականօրէն՝ յատկապէս Աղուանից առաքեալ նկատուելու համար:

Հայոց տարեթիւը նախ էր քան Աղուանիցը։ Եւ սակայն Թմբագիրը նախադասութիւնը կը վերագրէ Եղիշէի, երբ կը գրէ.

«ԽԳ. ամ էր թուականին Հռոմայ (43 + 247 = 290), յորժամ լուսաւորեցան Հայք ի հաւատս. եւ Աղուանից լուսաւորութիւնն Մ եւ Հ ամ յառաջ էր (290—270 = 20)։ Իսկ յետ ՃՁ ամ լցելոյ հաւատալոյն Հայոց (290 + 180 = 470) յաղագս ժողովոյն Քաղկեդոնի եղեւ հանդէս ժողովոյ ի ժամանակս Բաբգենի Հայոց կաթուղիկոսի» (այսինքն 508)։ Յոյնք եւ ամենայն Իտալիա, Հայք եւ Աղուանք եւ Վիրք միաբանեալ նզովեցին զժողովն Քաղկեդոնի եւ զտումարն Լեւոնի հրամանաւ բարեպաշտ թագաւորացն Հոռոմոց՝ Զենոնի († 491) եւ Անաստասայ (491—518)։ Եւ յետ ՁԷ ամաց անցելոյ (470 + 87 = 557) ի ժամանակս Աբրահամու Հայոց կաթուղիկոսի (608—610) բաժանեցան Վիրք ի Հայոց միաբանութենէ ի ձեռն Կիւրիոնի, այլ եւ Յոյնք եւ Իտալիա ընդ նոսա. իսկ Աղուանք ոչ բաժանեցան յուղղափառութենէ եւ ի միաբանութենէ Հայոց» (Բ. 47)։

Գեղեցիկ նմոյշ մըն է հաստուածոյ Թմբագրին հետեւած ժամանակագրութեան եւ քաղաքականութեան համար։

Նկատմամբ քրիստոնէութեան քարոզութեան Աղուան աղբիւրները կը պատմեն թէ երբ լսեց Ուռնայր թագաւոր Գրիգորի եւ Տրդատի մասին՝ հետեւակով մը գնաց Հայաստան, ինքն ալ ընդունելու քրիստոնէու—

թիւնը եւ մկրտուեցաւ իր հետեւակներով Ս. Գրիգորէն։ «Ի նմին ժամանակի շնորհեցաւ նոցա այր մի երանելի՝ ձեռնադրել յեպիսկոպոսութիւն, ի Հռոմ քաղաքէ, որ եկեալ էր ընդ Տրդատայ արքային։ Այսու երկնաւոր բարեօք լցեալ էին Ուռնայր արքայ, եմուտ յաշխարհն Աղուանից, ...ընկալան ամենեքեան զզրոշմն երկնաւոր» (Ա. 11)։ Այս դէպքը կրկնուած է Ա. 9, մանաւոր շեշտով մը, թէ Հայք եւ Աղուանք «ի միում ժամանակի» ընդունեցան քրիստոնէութիւնը։ Բայց որ եւ է խօսք չ՛ըլլար այն (անանուն) եպիսկոպոսի մասին, որ Հռոմէն եկած էր։ Ուռնայր Թագաւորի մահէն ետքը «խնդրեցաւ յԱղուանից մանուկն Գրիգորիս ի կաթողիկոսութիւն իւրեանց (Հմմտ. Խոր. Գ. 3), զի Ուռնայր արքայն մեր խնդրեաց ի սրբոյն Գրիգորէ նորին ձեռնադրութեամբն լինել եպիսկոպոս աշխարհին իւրոյ։ Որ եւ այսու կանոնաւ կացին աշխարհն Հայոց եւ Աղուանից համակամ եղբայրութեամբ եւ անքակ ուխտիւ մինչեւ ցայսօր» (Ա. 9)։

Խմբագրին են այս տողերը. որ զարմանալի կերպով անուշադիր եղած է Գիւտ եպիսկոպոսի այն տեղիքին, ուր Հռոմայեցի եպիսկոպոս մը Աղուանից առաջին եպիսկոպոս կ՛ուղարկուի։ Ուռնայրի մահէն ետքը կ՛ընդունին Աղուանք Ս. Գրիգորիս իբրեւ կաթողիկոս։

Հայոց եւ Աղուանից յարաբերութեան նկատմամբ նոյն միտքը կը կրկնուի բազ-

միջս. բայց հետաքրքրական է հետեւեալը. «Իսկ Աղուանք ոչ քակեցան յուղղափառութենէն եւ ի միաբանութենէն Հայոց: Որոց շրջաբերական թղթով վասն Կիւրիոնի դիմադարձութեանն՝ Աբրահամ... պատմէ նախ յԱղուանս, տայ գիտութիւն եւ գրէ պատճէն ի Թղթին, եթէ Յառաջագոյն քան զՀայոց աթոռակալութիւնն կացեալ աթոռակալութեանն Աղուանից. եւ ընդ մեզ համաձայն գոլով՝ նոցա կամակցութեամբ նզովեցաք եւ ընկեցաք զԿիւրիոն ըստ հրամանի հարցն՝ մեք եւ Աղուանք. եւ զնոյն ի վերայ Վրաց հրամայեցաք, ամենեւին մի հաղորդել ընդ նոսա...» (Բ. 47):

Աբրահամ կաթողիկոսի 609ին հրատարակած Շրջաբերական Թուղթը պահուած է Թղթոց Գիրքին մէջ, ուր հետեւեալն է յառաջ բերուած անցքը.

«Յառաջագոյն քան զմեզ կացեալքն յաստիճանի կաթողիկոսութեանն՝ յԱղուանս, իսկ մեք ի Վիրս առ Կիւրիոն, որ կաթուղիկոսն անուանի, եւ նորին աթոռակիցս (գրեցաք)...: Վասն որոյ եւ զյառաջագոյն սահմանն վարդապետացն մերոց, զոր ի վերայ Հռոմին հատին... մեք զնոյն ի վերայ Վրաց հրամայեցաք, ամենեւին մի հաղորդել ընդ նոսա...» (էջ 193—194):

Ընդգծուած բառերը միայն Շրջաբերականէն հանուած են Խմբագրին քով: Ի՞նչ նպատակով խարդախած է Խմբագիրը կա–

*թողիկոսին տողերը, մանաւորապէս «Յառաջագոյն քան զմեզ կացեալքն յաստիճան կաթողիկոսութեանն (գրեցին) առ Աղուանս», որով կ՚ակնարկէ Յովհաննէս Բ. կաթողիկոսի (թերեւս նաեւ Մովսէս կաթողիկոսի) թուղթն առ Աղուանս»: Ո՞ր հայ կաթողիկոսը թոյլ պիտի տար իրեն գրել. «Յառաջագոյն քան զհայոց աթոռակալութիւնն կացեալ աթոռակալութեանն Աղուանից»: Խմբագիրը անգէտ կը ձեւացնէ ինքզինքը, թէ Արաս կաթողիկոսի օրով տեղի ունեցած էր Աղուանից «քակտումը» «ի միաբանութենէն Հայոց»: Բայց զարմանալի կերպով յառաջ կը բերէ Յովհաննէս Բ. կաթողիկոսի եւ Վրթանէս Քերթողի թուղթերն առ Աղուանս, որոնց նպատակն էր բերել զանոնք ի միութիւն:*

*Խմբագիրը բուն Հակաքաղկեդոնական մըն է: Բայց միաժամանակ Աղուանից եկեղեցւոյ նախապատուութեան պաշտպան: Ան կ՚ընդունի թէ Աղուանից կաթողիկոսը իր ձեռնադրութիւնը պէտք է ընդունի — բատ սովորութեան — Հայոց կաթողիկոսէն, բայց տալ չի ուզեր իր նախապատուութենէն: Իր համոզումն է թէ Աղուանից եկեղեցին «ոչ քակտեալ յուղղափառութենէն Հայոց»: Այս կէտին տեսակէտներէ, ստիպուած էր ան զոհ ձգել իր աղուան հայրենակիցներն եւ պարսաւանքի չենթարկուիլ իր հայ ընթերցողներէն. չարծարծել յանթեղի ծածկուած կրակը, դաւանաբանական եւ*

*իրաւատական մեծերը, որոնք ժամանակ ժամանակ յուզուած էին հեռաւոր եւ մերձաւոր անցեալի մէջ եւ պիտի ծայր առնուին ապագային: Այս զգուշութիւնը հարկադրած է գիրքը ձեռքի տակ գտնուած ոչ աննշանակ թուով վաւերագիրներէ օգտուիլ չափաւորապէս: Կ'երեւայ թէ գտնուած է ան նաեւ դրաքնական հակազդեցութեան տակ (Բ. 47): Թէ նման մարմին մը գոյութիւն ունեցած է անցեալին մէջ կարելի է ենթադրել. յամենայն դէպս ապագային մէջ գործեցին այդպիսի ձեռքեր Պատմութեան մէջ աւերներ:*

*Ամբողջին է նաեւ Գ. 24 Աղուանից հայրապետներու շարքը Եղիշէ առաքեալէն մինչեւ 1006 տարին:*

*Եղիշէի յաջորդները մինչեւ Գրիգորիս անյայտ մնացած են: Գրիգորիսի յաջորդ կը նշանակուի Ծուփհաղիշոյ, որ Պատմութեան մէջ (Ա. 23, 26) կը յիշուի Վաչական Գ.ի օրով, ուստի Զ. դարու մէջ: Արդէն Կիրակոս Գանձակեցի նկատած էր այս հակաժամանակագրական կէտը. «բայց վասն առնս այսորիկ յառաջ կարգեցայ՝ երկմտութիւն գոյ ինձ» (էջ 98): Նաեւ Ծուփհաղիշոյի 9 յաջորդները երկրայական են. անոնց անունները չեն յիշուած Պատմութեան մէջ. իսկ 10երորդը՝ Երեմիա ծանօթ է մեզի Կորիւնէն (եւ անկէ առեալ Մ. Խորենացիէն), որ գահին վրայ էր արդէն իբր 415ին: Անկէ ետքը կը յիշուին սատամով մը.*

| | |
|---|---|
| *Արաս* | *ամս* 44· |
| *Վիրոյ* | *ամս* 34· |
| *Զաքարիա* | *ամս* 15· |
| *Յովհաննէս* | *ամս* 37։ |

*Այս տեղ նպատակ չունիմ Աղուանից կաթողիկոսներու յաջորդութիւնը քննութեան առնել։ Յիշեցի այս չորսը, ցոյց տալու համար միայն ժամանակագրութեան թերութիւնները։*

*Արասի աթոռակալութեան տարիներէն կը յիշուի 552 տարին. ուստի անոր 44 տարիները պէտք է զետեղել իբր 550—595 շրջանին մէջ։ Անոր յաջորդն էր առանց տարակուսի Վիրոյ կաթողիկոս, իբր 596—630։ Եթէ Զաքարիա, ինչպէս կ'ըսուի, ձեռնադրած է Սիւնեաց Վրթանէս եպիսկոպոսը (իբրեւ յաջորդ Պետրոսի), անոր կաթողիկոսութիւնը պէտք է եղած ըլլայ իբր 560ին։ Այս դէպքին հարկ է Վիրոյին յաջորդն համարել Յովհաննէսը, որ կը յիշուի միայն այս տեղ։ Այս այն շրջանն է, երբ թէ Աղուանից եւ թէ Սիւնեաց եկեղեցիները բաժնուած էին Հայոց միութենէն։ Այս կէտին պիտի անդրադառնամ յետոյ։*

*Խմբագրին պէտք է վերագրել նաեւ նախնաբար ինքնակայ գրութիւններու գլխաբաժանումները. այսպէս Վիրոյ Կաթողիկոսի Պատմութիւնը բաժնուած է ութը (Բ. 9—16) եւ Ջուանշէրի վէպը 18 (Բ. 18—36) գլուխներու։ Համանորէն նաեւ Սուրբերու Նշխար–*

*նոյն յայտնութեան եւ փոխադրութեան պատմութիւնները սկզբնապէս ուրոյն գրութիւններ կ'ենթադրեն, ապա բաժան բաժան զետեղուած, ըստ ժամանակագրութեան, Ա. եւ Բ. գիրքերու մէջ:*

*Այս հարցերը պիտի զբաղցնեն զմեզ յաջորդ գլուխներու մէջ:*

## 2. ԵՂԻՇԷ ԱԹՈՌԱԿԱԼ ԵՒ ԳԻՐՔ ՆՇԽԱՐԱՑՆ (Ա. 6, 7, 9)

*Աղուանից Պատմութեան մէջ* (Բ. 48) *յառաջ կը բերուի Սողոմոն Մաքենոցաց հօր մէկ գրութիւնը գրուած առ «Սողոմոն ոմն միանձնեայ, որ յետոյ Հայոց եղեւ կաթողիկոս»* (791—792), *լի հակաժամանակագրական տեղեկութիւններով: Այս տեղ կ'ըսուի թէ Աբրահամ կաթողիկոսի օրով* (609—610) *Աղուանները յանձն չառնելով Հայոց «զահերձուածութիւնն ի վերայ Աղուանից» «զայլ ոմն երեւեցուցին կանխաւ առաքեալ՝ եկեալ յաշխարհն Աղուանից՝ Եղիշէ անուն, յաշակերտաց Տեառն՝ ձեռնադրեալ ի ձեռանէ Յակոբու եղբօր Տեառն, քարոզեալ անդ եւ եկեղեցի շինեալ նախկին քան ի Հայս, առաջին մայր եկեղեցեացն Արեւելից զԳիսոյ եկեղեցին նորին հիմնադրեալ եւ զինքեանս նմա աւանդեալ՝ դարձան ի Հայոց առ ինքեանս՝ չլինելով ընդ ումեք իշխանութեամբ»* (Բ. 48, *էջ* 311/12)*: Այս տեղի կ'ունենայ ժամանակ մը, երբ Հայք Յունաց իշխանութեան*

տակ էին, 591էն ետքը, հաւանօրէն 630—650 շրջանին: Ասկէ հին գրաւոր յիշատակարան չունինք Եղիշէ առաքեալի մասին:

Սաղմոն հօր յառաջ բերած աւանդութիւնները գրեթէ բառ առ բառ առնուած են Աղուանից Պատմութեան Ա. 6էն: Այս աւանդ կը պատմուի թէ Եղիշէ առաքելակից մըն էր Թադէոսի եւ անոր հետ հասած Արտազ: Երբ կը նահատակուի Ս. Թադէոս, Եղիշէ կը վերադառնայ Երուսաղէմ, կը ձեռնադրուի (անշուշտ եպիսկոպոս Աղուանից) եւ կ'երթայ Աղուանից աշխարհը՝ «Ճանապարհ առարեալ ընդ Պարս, մտանէ ի Մազքութս՝ խոյս տուեալ ի Հայաստանեայց. եւ սկիզբն առնէ քարոզութեան ի Ջողայ (Ճորայ պահակ)... եւ անտի եկեալ յՈւտի գաւառն... եկեալ ի Գիս, կանգնեաց զեկեղեցի եւ մատոյց զանարիւն պատարագն...: Յայսմ տեղւոջ եղեւ սկիզբն արեւելեայցս եկեղեցեաց, մայրաքաղաքաց եւ լուսաւորութեան տեղի»: Կը նահատակուի Զերդունի դաշտակի մէջ:

«Յետ բազում ժամանակաց» կը յայտնէ Եղիշէ ինքնին իր նշխարները: Գիւղի Ռուսկանցի Ստեփանոս քահանայ կը տանի իր գիւղը. «եւ ապա անտի փոխեցին ի Ներսմերհայ սուրբ ուխտն, որ այժմ կոչի Ջրվշտիկ»: «Իսկ յետ բազում ժամանակաց բարեպաշտն Վաչական Աղուանից արքայ կանգնեաց զսուն ի գրի նահատակութեանն. եւ սենեկապանն արքայի մենակեաց եղեալ՝ ի վերայ սեանն կատարի» (Ա. 7):

*Վաչական արքայի Վարքին մէջ յիշատակութիւն չէ եղած այս սրբին մասին։ Մեզի անծանօթ է առ հասարակ թէ վկայագիրը, որուն անունը չէ յիշուած, ե՞րբ եւ ի՞նչ աղբիւրներու հիման վրայ յեցած գրած է Վկայաբանութիւնս եւ վկային նշխարաց յայտնութիւնը, ինչպէս եւ փոխադրութիւնը։*

*Ս. Թադէոսի վկայաբանութեան մէջ, որ Զ. դարուն գրուած է, որ եւ է խօսք չէ եղած Եղիշէի մասին։ Ս. Գրիգորիսի Վկայաբանութեան մէջ (Ա. 14), որ յօրինուած է աղուան հեղինակէ մը, հաւանօրէն Ը. դարուն, կը յիշուի Ս. Թադէոս, բայց լռուած է Եղիշէ առաքեալի մասին (տե՛ս վարը)։*

*Աղուանից Պատմութեան մէջ կը յիշատակուի Եղիշէ յատկապէս այն հատուածներու մէջ, ուր Խմբագրին գրիչը կը տեսնուի։ Կասկածելի է Սողոմոն Մաքենոցաց հօր գրութեան մէջ Եղիշէի հայոց հատուածի հարազատութիւնը։ Յամենայն դէպս Վկայաբանութիւնս «յայտնուած է» յընթացս Ը. դարուն, թերեւս առթիւ նշխարաց փոխադրութեան «ի Ներամերձայ սուրբ ուխտն, որ* այժմ *կոչի Ջրվշտիկ»։*

*Վկայաբանութեանս սկզբնաւորութիւնը՝ «Պատմութիւն ճշմարիտ — տիրեաց կողմանցս Աղուանից։ Իսկ» կը պատկանի Խմբագրին. իսկ «ի հասանել ժամանակի — ի Սանատրկոյ արքայէն Հայոց» հատուածը փոխ առնուած է — ինչպէս ինծի կը թուի —*

*Ս. Գրիգորիսի Վկայաբանութենէն* (*Ա.* 14), *որուն սկզբնաւորութիւնը կը կազմէր:*

### 3. ՎԱՐՔ ՎԱՉԷԻ ԱՂՈՒԱՆԻՑ ԱՐՔԱՅԻ (Ա. 10)

*Աղուանից Պատմութեան մէջ անյարմար տեղ զետեղուած է Վաչէ Բ.ի վարքը: Զետեղուած է Գիտ Եպիսկոպոսի Ա. եւ Բ. Թուղթերուն հետ (Ա.* 11) *ընդ մէջ Ա.* 9 *եւ* 12 *գլուխներու, ուր կը պատմուի Ուռնայր Աղուանից արքայի եւ Տրդատ Հայոց Թագաւորի մասին, ասոր Ե. դարու դէպքը Դ. դարու դէպքերու միջեւ:*

*Այս ամբողջ գլուխը փոխառութիւն է, գրեթէ բառ առ բառ, Եղիշէի Պատմութեան Ը. Յեղանակէն* (*էջ* 153—155, *ըստ* 1859*ի տպագրութեան*)*: Մինչ Եղիշէ կը խօսի լոկ «Աղուանից արքայի» մասին, այստեղ «Աղուանից արքայն» կ'անուանուի* «Վաչէ»*: Ինչո՞ւ Եղիշէ անյիշատակ թողուցած է արքային անունը. եւ ուսկի՞ց, ի՞նչ աղբիւրէ գիտէ Աղուանից պատմագիրը անոր «Վաչէ» անունը եւ անոր եղբօր «Յազկերտ» յորջորջումը* (*Ա.* 17)*: Զուր է ամէն հարցաքննութիւն:*

*Աղուանից պատմագիրը Եղիշէի հատուածին մէջ աւելցուցած է նաեւ «ըստ հայրենի* աւանդիցն (*Եղիշէ «հաւատոցն»*), *զոր* Ուռնայր հաստատեաց եւ անօրէն *Յազկերտ...»*. *եւ վերջաւորութեան՝* «այս եղեւ վարք նորա»:

*Այս յաւելուածները այն գրչէն են, որ գրած է Ա. 9 գլուխը: Նոյն ձեռքը պիտի տեսնենք քիչ յետոյ նաեւ Ա. 11ի մէջ: Եթէ անաշխատ կարող ենք հաստատել զայս. բայց աշխատանք պիտի պահանջէ այն հարցը, թէ ամբողջ այս հատուածը ի մասին «Աղուանից Թագաւորի» ի՞նչպէս մուտ գտած է Եղիշէի Պատմութեան մէջ:*

*Այժմեան Եղիշէ կամ անոր խմբագիրը, որ Ղազար Փարպեցին իրեն առաջնորդ ունեցած է, նաեւ այստեղ, 457—462 տարիներու համար, օգտուած է իր աղբիւրէն: Ղազար կը գրէ.*

*«Եւ կեցեալ Յազկերտի Թագաւորին Պարսից զչափ ժամանակի կենաց իւրոց՝ վախճանէր ի փառաւոր (ա՛յսպէս): Եւ Թագաւորեցին նորա երկու որդիքն, հակառակելով ընդ միմեանս. եւ դիմեալք ի վերայ միմեանց պատերազմաւ՝ յաղթահարեալ սպան կրսերն զաւագն եւ ինքն թագաւորեաց, որում անունն էր Պերոզ: Եւ ի նմին ամի Թագաւորութեանն իւրոյ առաքեաց զՅըզդասվշնասպ զիւր դայեակորդին, զոր կարի յոյժ սիրէր առաւելապէս, եւ հրաման ետ արձակել զնախարարսն Հայոց ի կապանաց եւ կարգել նոցա ռոճիկ ի Հրեւ» (108). «... պարգեւեաց դառնալ կալուածոցն յաշխարհս Հայոց. որք եկեալ ի տունս իւրաքանչիւր յամի Զ. Թագաւորութեանն Պերոզի» (110):*

*Ղազար, որ Յազկերտի «ԺԶ» տարին (456) յիշած էր, յուսալի էր, որ հոս ալ մա–*

հուան տարին յիշէր, որ է, ըստ Եղիշէի՝ ԺԹ. տարին, անշուշտ փոխ առած Փարպեցիէն: Այս պատճառով ալ կը թուի ինձ, թէ բնագրին անիմաստ անդիքն «ի փարսուում» ապականութեան արդիւնք մըն է. եւ պէտք է վերականգնել սրբագրութեամբս. «ի Թժերորդում». կարդա՛ յիննեւտասներորդում:

Յազկերտի երկու որդիները Որմիզդ եւ Պերոզ կռուեցան իրարու հետ գահին շուրջը. Որմիզդ գրաւած էր գահը. Պերոզ դիմեց Հեփթաղներու թագաւորին օգնութեան. որ յանձն առաւ օգնել իրեն ի գին Տալական գաւառին: Յաջողեցաւ կրտսերը բառնալ երէցը գահէն եւ արեւէն (459/60): Պերոզ կը հաշուէ իր գահակալութեան սկիզբ 457/58էն: Փարպեցւոյ արտայայտութիւնը «ի նմին ամի թագաւորութեան իւրոյ առաքեաց զՅրդավշնասպ գիր գայլ[ա]կորդին» պէտք է անշուշտ իմանալ՝ ուղարկեց 459/60ին «իր գայեակին որդին»: Պերոզ արձակեց նախարարները իր թագաւորութեան Զ. տարւոյն, այն է 462/63ին: Թէ 459—462 տարիներուն Պարսկաստան ներքին խռովութիւններու մէջ գտնուած է, այս մասին Փարպեցի որ եւ է ակնարկութիւն չէ ըրած:

«Եղիշէ» կը կրկնէ Փարպեցւոյ պատմածները իր ոճով, սակայն ինչ ընդլայնուած: Նախարարներու «յուծումն ի կապանաց» վերագրած է Յազկերտի. ինչ որ Փարպեցի Պերոզի բարեացակամութեանն գիտէ: Թէ Որ-

մինչ Պերոզի «Ռահամ դայեակի» ձեռքով սպանուած է, անծանօթ է Փարպեցւոյ: Փարպեցին չունի նաեւ «Ազուանից արքայի» ապստամբութեան շուրջը պատմուած միջադէպքը: Եթէ այս տեղեկները փակագծի մէջ առնենք, Եղիշէ կը գտնէ իր համաձայնութիւնը Փարպեցւոյ հետ: Ուստի ունինք մեր առջեւ ընդարձակ հատուած մը Եղիշէի մէջ, որ նորամուտ կ'երեւայ:

Աւելի ըմբռնելի ընելու համար մեր այս տեսութիւնը կարեւոր կը համարիմ յառաջբերել քաղուածաբար Եղիշէի այս տեղիքները. նորամուտ մասերը, որոնք առաւելապէս Ազուանից արքային կը հային, կը ներկայացնեմ շղագիր:

Եղիշէ, էջ 150—155 խօսած է ընդարձակ կալեալ նախարարներու վրայ: Կը պատմէ թէ Յազկերտ իր թագաւորութեան վերջին տարիներուն զիջողաբար վարուած է նախարարներու հետ, արձակած է անոնց կապանքները. խոստացած է նոյն իսկ «արձակել զնոսա յաշխարհն» (151—153): Բայց յապաղած է անոնց արձակումը թագաւորին մահուամբ (457): Հակառակ այս իրողութեան, նոյն Եղիշէ կը հաստատէ, թէ անոնք իրենց տառապանաց մէջ կը տուայտէին, «գազանաբար գետնախշտիք լինէին զինն ամ եւ զվեց ամիս» (էջ 150), ուստի 451 + 9·6 = 461/62, երբ Պերոզն էր Պարսից թագաւորն, իր թագաւորութեան հինգերորդ տարւոյն: Այս տեղ կամ Եղիշէ կամա հեռացած է Փարպեցւոյ ժա-

ժամանակագրութիւնէն, և կամ իր խմբագիրը խառնակած է սկզբնական բնագիրը (Հմմտ. Փարպ., էջ 108):

Եղիշէ կը գրէ շարունակութեան մէջ.

1. «Եւ մինչդեռ անդէն մեծաւ խնդութեամբ շրջէին (նախարարք արձակեալք ի կապանաց) ի կարաւանին առաջի թագաւորին (Յազկերտի):

2. Ի նմին ժամանակի հասանէր վախճան կենաց թագաւորին, յիննեւտասներորդի ամի թագաւորութեան իւրոյ:

3. Եւ ընդ հակառակս ելեալ երկու որդիք նորա (Որմիզդ եւ Պերոզ)՝ ի վերայ աթոռութեանն կռուէին: Սաստկանայր գործ դառնութեան պատերազմին զերկուս ամս (458—459):

4. [Եւ մինչ դեռ նոքա յայնմ խռովութեան էին, ապստամբեաց եւ Աղուանից արքայն. վասն զի քեռորդի էր նոցա (Որմզդի եւ Պերոզի) եւ ըստ կարգի հայրենի հաւատոցն՝ քրիստոնեայ էր յառաջ եւ Յազկերտ արքայից արքայ բռնի մոգ արար: Եւ նորա զտեալ ժամանակ անձինն պարապոյ, հարկեցաւ զանձն ի մահ դնել. յաւ համարեցաւ մեռանել ի պատերազմի, քան ուրացութեամբ ունել զթագաւորութիւնն:]

5. Վասն այսր ամենայնի յապաղումն եղեւ չարձակելոյն նոցա յաշխարհն:

6. [Իսկ կրտսեր որդւոյն Յազկերտի դայեակն Ռահամ անուն ի Միհրան տոհմէն,

թէպէտ եւ եւս զգունդն Արեաց ընդ երկուս բաժանեալ, սակայն կիտովն գազանաբար յարձակեցաւ ի վերայ երէց որդւոյ թագաւորին, հա՛ր, սատակեաց զգունդն. եւ ձերբակալ արարեալ զորդի թագաւորին՝ անդէն ի տեղւոջն հրամայէր սպանանել: Եւ զմնացեալ զօրսն ածէր հաւանեցուցանէր, եւ առնէր միաբանութիւն ամենայն Արեաց զնդին. եւ թագաւորեցուցանէր զիւր սանն, որում անուն էր Պերոզ:

6. Զի թէպէտ եւ Արեաց աշխարհին առնէր (Պերոզ) մեծապէս խաղաղութիւն, սակայն Աղուանից արքայն ոչ կամէր նուանել անդրէն ի ծառայութիւն (արքայից արքային). այլ խրամատեաց զպահակն Ճորայ եւ անցոյց յայսկոյս զզօրսն Մասքթաց. միաբանեաց զմնացեալ թագաւորս զլեռնորդեայսն. եւ ընդդէմ եկաց պատերազմաւ Արեաց զնդին. եւ բազում վնաս արար զօրացն արքունի:

8. Թէպէտ եւ երկիցս եւ երիցս ետուն հրովարտակս աղաչանաց, ոչինչ կարացին ածել զայրն ի հաւանութիւն:

9. Այլ գրով եւ պատգամաւ յանդիմանէր զնոսա, վասն զուր աւերածի աշխարհին Հայոց: Յիշեցուցանէր նոցա զմահ նախարարացն եւ զչարչարանս կապելոցն: Ի վերայ անչափ սիրոյ եւ վաստակոց փոխանակ կեանս առնելոյ, զարեւ հատէք, ասէր: Լաւ լիցի ինձ, ասէ, զնոցա չարչարանսն յանձն իմ առնուլ, քան թողուլ զքրիստոնէութիւնն:

10. Եւ իբրեւ տեսին (Սասանեանք), թէ ոչ բռնութեամբ եւ ոչ սիրով կարացաք ածել ի հաւանութիւն, զանձս սաստիկս եդուն տանել յաշխարհն Խայլանդրաց. բացին զդրունս Ալանաց եւ հանին զունդ բազում ի Հոնաց եւ կռուեցան տարի մի ընդ Աղուանից արքայի:

11. Թէպէտ եւ թօթափեցան եւ գրուեցան զօրքն իւր ի նմանէ, սակայն զնա ոչ կարացին հնազանդել:

12. Այլ եւ հարուածք եւս մեծամեծք հասին ի վերայ նոցա (Պարսից), էր որ կռուով եւ էր որ ախտիւ չարչարանօք:

13. Եւ յայնչափ ժամանակաց ընդերկարել պաշարմանն, մեծ կէս աշխարհին աւերեցաւ, այլ ոչ ոք ի նմանէ երկմտեալ բաժանեցաւ:

14. Յղեաց առ նա դարձեալ թագաւորն Պարսից. «Զքոյրդ իմ, ասէ, եւ զքեռորդիդ ի բաց տուր ածել, զի ի բնէ մոգք էին եւ դու քրիստոնեայ արարեր, եւ աշխարհդ քեզ լիցի»: Իսկ սքանչելին այրն ոչ ի տէրութեանն վերայ կռուէր, այլ յաստուածպաշտութեանն: Զմայրն եւ զկինն ետ տանել. եւ զաշխարհն բովանդակ ի բաց եթող. եւ ինքն զաւետարանն առ եւ յաշխարհէն ի բաց կամէր գնալ:

15. Զայս իբրեւ լուաւ թագաւորն, կարի զեղջ եւ ապաշաւ անկանէր ի միտս նորա. եւ զամենայն վնաս իրացն զհարքն իւրով արկանէր: Անդուստ երդումն կնքէր եւ տայր տանել առ նա, եթէ «Յաշխարհէդ միայն մի գնար, եւ զինչ ասես, առնեմ»:

16. (Իսկ նա) խնդրեաց զմանկութեան սեպհականն, զոր հօր իւրոյ շնորհեալ էր նմա ի տղայութեանն, հազար երդ։ Ա՛ռ զայն ի թագաւորէն եւ նստաւ ի նմա միայնակեցօք հանդերձ։

17. Եւ այնպէս հանապազորդեաց զինքն յաստուածային պաշտամանն, զի եւ չյիշէր ամենեւին, թէ եւ թագաւոր լեալ իցէ յառաջ։

18. Եւ այս ամենայն յերկար խռովութիւնք, որ եղեն մինչեւ ի հինգերորդ ամն Պերոզի արքայից արքայի, պատճառք եղեն չարճակերպ նախարարացն։

*19. Այլ եւ ոռճկա եւ ի տաճար մտանել յարքունիս մեծապէս տատանեցոյց քան զամեայ սովորութիւնն։ Եւ ի նմին Է. ամին զրագմաց նոցա անդրէն զհետեան շնորհեաց. եւ այլոցն առ յայն խառնեցաւ՝ յամի Զ. միանգամայն արձակել զամենեսեան կենօք եւ պատուով։*

*20. Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի»։*

*Եղիշէի այս ընդարձակ հատուածին մէջ Փարպեցւոյ ժամանակագրութիւնը խտացուած է։ Սկզբնագիր Եղիշէի մէջ պատմուած էր անշուշտ կալեալ նախարարներու կեանքը համաձայն Ղազարի։*

*Որմիզդ եւ Պերոզ եղբայրներու կռիւը, ինչպէս § 2—3էն կը տեսնուի, ներկայացուցած էր Եղիշէ հետեւելով Փարպեցւոյ։ Ուրիշ գրչէ է § 6, որ § 3ի ընդլայնումն է.*

«Ռահամ գաստառակ որդւոյն Յազկերտի, ի Միհրան տոհմէ» կ'երեւայ թէ առնուած է Վահրամ Զօրինի վէպէն: Թ. 4, 7—17, Աղուանից Թագաւորի «մարքը», ինչպէս կ'անուանուի Դասխուրանցւոյ քով, եկամուտ է, ներս առնուած այն գրչէն, որ աղճատած է Եղիշէի սկզբնագիրը: § 18 կրկնութիւնն է § 5ին:

§ 1 իր շարունակութիւնը ունի § 19ի մէջ, գրուած հետեւողութեամբ Փարպեցւոյ:

Աչքի կը զարնէ հատուածիս անխնամ շարադրութիւնը: Լեզուն ունի թերի կազմեր. պատմուածքը կը կրէ խակամիտ գրողի նկարագիր: Աղուանից արքայն օգտուելով Պարսկաստանի ներքին քաղաքական կռիւներէն՝ կը բարձրացնէ ապստամբութեան դրօշը իր մօրեղբայրներու դէմ. կը թօթափէ մազակրօնին գէնը, զոր բռնի ընդունած էր (450ին): Ան չէր ձգտեր որ եւ է քաղաքական նպատակի ի նպաստ իր ժողովուրդին: Զայրացած էր միայն, որ Հայերը ենթարկուած են բազմաթիւ զրկանքներու: Ընդհարումները Պարսից հետ կը շարունակուին Պերոզի գահակալութենէն ետքն ալ: Աղուանից արքայն դեռ չէր ընկճուած: Պերոզ կը հարկադրուի տեղի տալ. «Զքոյրդ իմ, ասէ, եւ զքեռորդիդ ի բաց տար ածել... եւ աշխարհդ քեզ լիցի»: «Իսկ սքանչելի այրն ոչ ի տէրութեանն վերայ կռուէր, այլ յաստուածպաշտութեանն»: Թէպէտ յաղթական էր, բայց «զմայրն եւ զկինն ետ տանել, եւ զաշխարհն բովանդակ

ի բաց երթոց. եւ ինքն զԱւետարանն առ եւ յաշխարհէն ի բաց կամէր գնալ»։ Ի վերջոյ կը զիջի առնել այն «Հազար երդ» պարունակող հողամասը, որ ստացած էր իր հօրմէն եւ կ՚առանձնանայ այն տեղ ճգնելու։ «Աղուանից արքայի» վարքին այս վերջաւորութիւնը չի՞ յիշեցներ Պատմութիւնն որդւոց Թագաւորին Հռոմայ», կամաւոր աղքատացելոյն, որ «առեալ 1300 դահեկան եւ ուխտարան մի փոքրիկ» կ՚առանձնանայ Եգիպտոսի անապատը (Վարք Հարանց, Ա., էջ 361) իբրեւ ճգնաւորակից այնտեղ ճգնողներու։ Այս Պատմութեան թարգմանիչն է Գագիկ, հայրն Աստամափանքի 873ին։ Կան նոյն պատմութեան եւ այլ խմբագրութիւններ (անդ, էջ 126—161, 369—390)։ Յամենայն դէպս նկատի առնուած է հոս Մատթ. ԺԹ. 29, աւետարանական խրատը. զոր յառաջ բերուած կը գտնեմ Ա. 11 (տե՛ս վարը)։

Բայց այսպիսի «աստուածպաշտութեան» համար կ՚արժէ՞ր երկրին զօրքը ոտք հանել, Ճորայ պահակը խրամատել. Մասքթաց գրոհը հրաւիրել եւ «մեծ կէս աշխարհին» աւերել։ Եւ երբ ձեռնթափ կ՚ըլլայ Պերոզ Աղուանից աշխարհէն, ինքը կամաւ կը յանձնէ զայն Սասանեանց քմահաճոյքին։

Ոչ գրութեան ոճն Եղիշէին է եւ ոչ այլ բարեպաշտ միամտութիւնը. բայց կարի քաջ Եղիշէի խմբագրերը։

Եթէ ենթադրենք, թէ Պերոզ հալածած ըլլայ «Աղուանից արքայն», այս հալածանքը

միայն անոր կրօնափոխութեան համար կրնար ըլլալ, այսինքն արքայն քրիստոնեայ էր եւ եղած մոգակրօնին, ապա դարձեալ քրիստոնէութիւնը վերընդունած: Պերոզի պահանջքը, թէ «Զքոյրդ իմ եւ զքեռորդին ի բաց տուր ածել, զի ի բնէ մոգք էին եւ դու քրիստոնեայ արարեր, եւ աշխարհդ քեզ լիցի». գոյս միայն կարող էր ենթադրել:

Յամենայն դէպս եթէ Հայաստանի սահմանի վրայ Պարսից եւ Աղուանից մէջ այնպիսի երկարատեւ եւ բուռն պատերազմներ տեղի ունեցած ըլլային, Ղ. Փարպեցի գոնէ հարեւանցի ակնարկութեամբ մը յիշած պիտի ըլլար:

Հատուածիս մէջ ուշադրութեան արժանի կէտերս այս կան: Կ'ըսուի թէ Աղուանից արքայն «խորամանկեաց զՊահակն ճորայ եւ անցոյց յայս կոյս զզօրսն Մասքթաց»: Փաւստոս (Գ. 5—6) Մասքութները յայս կոյս ճորայ պահակին գիտէ: Իսկ Փարպեցի յայն կոյս Պահակին գտնուած ժողովուրդը «հոն» կ'անուանէ. այսպէս նաեւ Աղուանից պատմիչը: Եղիշէ (59) ճորայ պահակը անգամ մը «Պահակ Հոնաց» անուանած է, որուն պահպանութիւնը, կ'ըսէ, յանձնուեցաւ «ի ձեռն Վահանայ, որ էր յազգէ թագաւորացն Աղուանից» (Համաձայն Փարպեցւոյ, էջ 66):

Կ'ըսուի դարձեալ, թէ Պերոզիկ «զանձն ստասիկս եսուն տանել յաշխարհն խայլանդրաց, բացին զդրունս Ալանաց. եւ հանին զաւրս բազում ի Հոնաց եւ կռուեցան ընդ

մի ընդ Աղուանից արքային»։ Խայլանդրաց աշխարհն եւ ժողովուրդը Եղիշէի քով միայն կը յիշուին. «Դադարեցին Խայլընդուրք ելանել ընդ պահակն Ճորայ» (11). «Հոն մի, որ էր յազգէ Թագաւորացն ի Խայլանդրաց աշխարհէն, Բէլ անուն» (110)։

Տակաւին չէ յստակացուած, թէ ո՞ր ժողովուրդը կ'իմանայ Եղիշէ այս անունին տակ։ Անունս կազմուած է անշուշտ Խայլըն–դուր մասերէ, ունինք անոր մերձաւոր՝ անունս. «Վղընդուր Բուլկարք» (Մ. Խոր. Բ. 6)։ Այս ժողովուրդին հայրենիքը գիտէ Մ. Խոր. Բ. 9. «ի գաւառ մեծի լերինն Կաւկասու յաշխարհին Բուլղարաց»։ Աշխարհացոյցն ունի «ըստ հիւսիսոյ (Կովկասու) ազգ Թուրքաց եւ Բուլղարաց, ըստ անուանց գետոցն կոչեցեալ Կուփի Բուլղար... Ողխոնտոր Բլկար» են։ Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, Leipzig 1903, էջ 57, 500) անունս հետ համեմատութեան կ'առնէ Բիւզանդացւոց յիշած Οὐννογουνδοῦροι բուլղար ժողովուրդը։

Եղիշէ «Խայլանդրաց աշխարհը» կ'են-թադրէ յայնկոյս Ճորայ պահակին, իսկ ժողովուրդը «Հոն»։ Անոնց ելքը դէպի յայսկոյս Ճորայ պահակէն է (էջ 11)։ Իսկ այս տեղ որովհետեւ Ճորայ պահակէն Մասքութք եկած էին, Խայլանդրաց աշխարհի Հոներուն առջեւ Ալանաց դուռը, այն է Դարիալ, կը բացուի։ Թէպէտ յիշատակածին ոչ մէկն եւ ոչ միւսը պատմական են, սակայն ակներեւ է,

որ հոս Եղիշէ եւ խմբագիրը կը հակասեն իրարու։

Ի՞նչ աղբիւրէ կարող էր առած ըլլալ խմբագիրն այս տեղեկութիւնները։

Այն պարագայէն որ Աղուանից արքայն կը ներկայացուի Որմիզդ եւ Պերոզ արքայազուններու քեռորդի, ուստի Յազկերտ Բ.ի դստեր որդի, կարելի է հետեւցնել, թէ խմբագիրը հոս աղուան աղբիւր մը ձեռք բերած է։ Աղուան պատմագիրներու անտարբերութիւն էր, իրենց թագաւորներն եւ իշխանները պարթեւ-սասանեան տոհմէն սերեցնել։ Վաչական արքայ որդին էր Յազկերտի, եղբօր Վաչէ արքային, որոնք Յազկերտ Բ.ի դստեր որդիներն են։ Վաչէի հօր անունը չէ յիշուած։ Այս Վաչէ նոյն է Եղիշէի «Աղուանից անանուն թագաւորին» հետ։ Ան 458ին ապստամբած է Պարսից դէմ։ Այսպիսի յանդուգն խիզախութեան համար ան պէտք է առնական հասակի մէջ գտնուած ըլլայ. գոնէ 30ամեայ մը։ Այս ենթադրութեամբ անոր ծնունդը պիտի իյնար 427ին, ուստի Յազկերտ Բ.ի գահակալութենէն 10 տարի յառաջ։ Կորիւն (ԺԱ. 1—6) իբր 415ին կը յիշէ Աղուանից Արսուաղէն թագաւորը իբրեւ «այր երկիւղած յԱստուծոյ», որ այնքան սիրայօժար ձեռնտու եղաւ Մաշտոցի Աղուանից աշխարհի լուսաւորութեան համար։ Կամ Արսուաղէն եւ կամ իր որդին պէտք է հայրն եղած ըլլայ Վաչէի։ Բայց եթէ Վաչէ Արսուաղէնի թոռնիկը համարուի, անոր ծնունդը

հարկադրաբար 450էն ետքը պիտի ենթադրուի. երբ սկիզբ եղաւ քրիստոնէութեան հալածանքի Հայաստանի, Վրաստանի և Աղուանից աշխարհին մէջ: Այս դէպքին ժամանակը թոյլ պիտի չտար կնութեան առնելու իր քոյրը, ըստ պարսկական օրէնի: Դարձեալ ե՞րբ քրիստոնեայ մկրտուեցաւ, երբ բռնաբար մոգակրօնիկ եղաւ և ե՞րբ միւսանգամ քրիստոնէութիւնը վերընդունեցաւ: Այս նկատի առնելու է, որ Աղուանից պատմագիրներու քով ոչ թէ տարին 365 օր ունի, այլ ամիսը:

Եթէ ուշադրութեամբ հետեւինք «Աղուանից արքայի» պատմութեան, պիտի տեսնենք հոն երկու ձեռք. մին կը պատմէ Պերոզի գահակալութիւնն և Աղուանից արքայի ապստամբութիւնը. Պերոզ կը ջանար քաղցրութեամբ շահիլ ապստամբ թագաւորը, որ ի վերջոյ անձի կու տայ: Իսկ միւսը կը սատակացնէ նախ արքայազուն եղբարց ներքին կռիւները և ապա Աղուանից արքայի բանակին ստուարացումը Մազքթաց զօրքով և Պերոզի զօրքին առումը Հոնաց նիզակակցութեամբ: Առաջինը կը խօսեցնէ երկու թագաւորները եղակի դէմքով, երկրորդը յոգնակի դէմքով և յաճախ անքերական ոճով:

Առաջին գրիչը աղուան է, հաւանօրէն նո՛յն Վաչականի պատմիչին հետ. երկրորդը Եղիշէի խմբագիրը: Մովսէս Դասխուրանցի հետեւած է Եղիշէի խմբագրին, տեղիս տեղիս յապաւումներով և տեղիս տեղիս կցկե-

յով Թմբագրին անհարթ ոճը։ Իր գրչին է «Ուռնայր»ի յիշատակութիւնը եւ Աղուանից արքայի Վաչէ անունը։

Այս հատուածի մէջ այն տեղիքը, ուր կ'ըսուի, թէ Աղուանից արքայն «զմայրն եւ զկինն եւ տանել… եւ ինքն… յաշխարհէն ի բաց կամէր գնալ». եւ Պերոզի պատասխանը, թէ «Յաշխարհէս միայն մի գնար եւ զինչ ասես առնեմ». եւ արքային խնդիրը, թէ տուր ինծ այն «հազար երդը», զոր հայրս շնորհած էր ինծ, ինչ որ կը տանայ եւ կը մնայ. շատ նման է այն պատմուածքին, զոր կը կարդանք Աղուանից Պատմութեան Բ. 17։ Խոսրով Բ. Պարուէզի օրով, իրր 592ին, Միհրան, ազգակից Խոսրովու, կասկածելով թագաւորին մրցմնդրութենէն՝ «առեալ երդս իւրեւ 30.000» կը դիմէ փախուստի։ Երբ կ'իմանայ զայս թագաւորը, կը փութայ սուրհանդակով հասնիլ իրեն հրովարտակ մը. «Եղբայր իմ եւ հարազատ, մի լիցի քեզ հեռանալ յինէն թշնամութեամբ…։ Ուր հրովարտակդ իմ հասանէ, երկիրդ քեզ լիցի ի բնակութիւն»։ Սուրհանդակը կը գտնէ զինքը Գարդման գաւառին մէջ։ Միհրան կը զետեղուի այն տեղ։

Պատահականութեա՞ն պէտք է վերագրել այս նմանութիւնները։ Վերջինիս մէջ առանց տարակուսի Վահրամ Չոբինի դէպքին մէկ տարբերակը ունինք։ Վահրամ ի Միհրան տոհմէ փորձեց յինքն կորզել Սասանեանց գահը. երբ պարտուեցաւ, դիմեց բանակին

հետ փախուստի. Սեբէոս կը գրէ. «Եւ ոչ ա-րքեք կարացին գտանել զհետս Վահրամայ. զի գերծաւ եւ գնաց այսպէս փախստական եւ չոգաւ եւ անկաւ ի Բահլ շահաստան. որպէս (բան է)՝ ի բանակն Թուրքաց ապաստան ի նո-ցանց եղեւ» (էջ 40. Պատկ.)։ Ըստ արաբա-կան աղբիւրներու՝ Վահրամ փախ-ստական հասաւ Խորասան, ապա գնաց Թուր-քերուն քով. այն տեղ ի բանակն Թուրքաց սպանուեցաւ (Nöldecke, Tabari, էջ 289)։ Իր չուրջը կազմուեցան ապա զանազան վէպեր։ Ուստի զարմանալի պէտք չէ երեւայ, եթէ Աղուանք ալ պարծին, թէ հիւրընկալը եղած են Վահրամ Միհրանի։ Տաբարի Վահրամը կ՚անուանէ Չոբին («փայտեայ»). այս յորջոր-ջումը ծանօթ է նաեւ Աղուանից պատմագրին (Բ. 17)։

Անհաւանական չէ, եթէ բանք թէ նոյն վէպին ուրիշ մէկ տարբերակն եղած ըլլայ Եղիշէի վերյիշեալ հատուածն ալ։

Որմիզդ եւ Պերոզ եղբարց քեռորդին է «Աղուանից Թագաւորը». Թահամ զայեակն Պերոզի կը սպանէ Որմիզդ Գ.ը՝ ի նպաստ Պե-րոզի։ Աղուանից արքայն կ՚ապստամբի. ծանր կռիւներու դուռ կը բացուի։ Աղուա-նից արքայն կը խորհի հեռանալ երկրէն եւն։ 590ին ապստամբութիւն մը կը ծագի Տիզբոն. Որմիզդ Դ. կը կալանաւորուի եւ կը կուրա-ցուի։ Վնդոյ եւ Վստամ եղբարք թագաւոր կը հռչակեն իրենց քեռորդին Խոսրով Բ. Փա-րուէզ. Վահրամ ի Միհրան տոհմէ կ՚ապստամ-

րի Խոսրովի դէմ եւ կը քալէ Տիգրանի վրայ ի խնդիր Թագին։ Վնդոյ եւ Վստամ իրենց քեռորդւոյն հետ կը դիմեն փախուստի․ Վնդոյ կը սպանէ Որմիզդը։ Կը վերադառնան Թագաւորին հետ յունական բանակով․ կը բախին Վահրամի հետ․ վերջինս պարտուած կ'երթայ փախստական։ Խոսրով Բ․ դահը ապահոված՝ կը սպանէ Վնդոյն․ իսկ Վստամ կ'ապստամբի արքայից արքայի դէմ․ կռիները կը շարունակուին հինգ տարի․․․։ «Բահամ դայեակ» կարող է նոյնացուիլ թէ Վահրամի եւ թէ Վստամի հետ․ վերջինս իբրեւ քեռորդի կարող է նկատուիլ որպէս դայեակ։ Որմիզդ Գ․ եւ Դ․ երկուքն ալ սպանուած են դահին վրայ։ Վիպական պատմուածքի մէջ հերոսներու դէմքերը դիւրաւ կարող են փոփոխուիլ։

Զարմանալի է, որ այս արքայն Աղուանից բոլորովին անյիշատակ մնացած է Բ. 2։

4. ԳԻՒՏ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ Ա. ԵՒ Բ. ԹՈՒՂԹԵՐՆ ԱՌ ՎԱՉԷ ԵՒ ԵՂԻՇԷԻ ՆԵՐԲՈՂԵԱՆՆ Ի ՔԱՋՆ ՎԱՐԴԱՆ (Ա. 11)

Աղուանից Պատմութեան Ա. 11 գլուխ կը ներկայացնէ երկու թուղթ գրուած Գիւտ եպիսկոպոսէն Վաչէ արքային։

«Գիւտ եպիսկոպոսի» անձին շուրջը չէ հաւաքուած որ եւ է տեղեկութիւն։ Որովհետեւ Վաչէ արքայի ժամանակը ցոյց կը տրուի Պարսից Պերոզ թագաւորի (457—484)

որով եւ այս շրջանին կը յիշուի Ղ. Փարպեցիէն Գիւտ եպիսկոպոս Արահեզցի, որ վարած է ժամանակ մը Հայոց կաթողիկոսութիւնն եւ ապա գահընկէց եղած Պերոզի հրամանով (Փարպ. 110), ուստի «Գիւտ եպիսկոպոս» պէտք է նոյնացուի Գիւտ եպիսկոպոս-կաթողիկոսին հետ եւ թղթերուս գրութեան ժամանակը դնեցուի 460—470 տարիներու մէջ:

Բայց տեսանք վերագոյն, թէ Եղիշէի «Ագուանից արքայն», զոր Ագուանից պատմագիրը «Վաչէ» կ'անուանէր, պատմական անձնաւորութիւն չէր. հետեւաբար չէր կրնար «Գիւտ եպիսկոպոս» անոր թուղթեր գրած ըլլալ: Կը մնայ եզրակացնել. ինչպէս Վաչէի վարքը, նոյնպէս թուղթերս կեղծիք են: Այդ կեղծարարն ունեցած է ձեռքի տակ Ագաթանգեղոսի Պատմութիւնը, որ գրուած է 490ին. ուստի ան 490էն ետքն է: Ա. թուղթին մէջ կը յիշուի Ուռնայր արքայ Ագուանից, որ լսելով Տրդատի դարձն ի քրիստոնէութիւն, կ'այցելէ հետեւորդներով Վաղարշապատ, կ'ընդունի քրիստոնէութիւնն եւ Հայոց եկած եպիսկոպոսի մը հետ կը վերադառնայ իր երկիրը: Այս միջադէպը անծանօթ է ինչպէս Ագաթանգեղոսի, նոյնպէս Վաչականի կենսագրին, որուն գրչին է նաեւ Ա. 14 գլուխը: Այս կենսագիրը 570էն ետքն է, համաձայն Ը. գլխու սկիզբն ասուած: «Ագուանից Ուռնայր արքայն» առաջին անգամ կը յիշուի Հայոց պատմութեան մէջ 369ին, որ Ծա-

պուհ Բ. արքայից արքայի բանակին մէջ կը կռուի Հայոց Պապ թագաւորի դէմ (Փաւստոս Ե. 4)։ Այս դէպքը գիտէ նաեւ Աղուանից պատմագիրը, օգտուելով Մ. Խորենացիէն (Խոր. Գ. 37, Մ. Դասխ. Ա. 13)։

Թէ ինչպէս այս Ուռնայրը Տրդատի ժամանակակից ներկայացուած է այդ պատմագիրը, զմեզ չի հետաքրքրեր հոս. յամենայն դէպս այս նոյնացումը կատարուած է 850էն ետքը եւ 950էն յառաջ, վասն զի Մոկացի Անանիա կաթողիկոս կարդացած է թուղթս 950ին (Արարատ, 1896, էջ 67)։

Մենք հասանք այնպիսի շրջան մը, երբ խմբագրուած կը համարուէր Եղիշէի Հայոց պատերազմի Պատմութեան մէջի հասած օրինակը։

Կ'ըսուի թէ այս Թուղթերը գրած է «Գիւտ եպիսկոպոս», ուստի մէկ հեղինակ. բայց ուշադիր ունկնդրելով անոնց՝ կը զգանք, թէ երկու հնչիւններ կը հանեն մեր լսողութեան, թէ հագագով եւ թէ շեշտով զանազան։ Հերոս մը նկատի առնուած է հոն, որուն կ'ուղղուին հիացախառն ներբողական արտայայտութիւններ։ Մին կը բարբառի հռետորական ոգեւորութեամբ, բայց մտերմօրէն, եղակի երկրորդ դէմքով. երկրորդը պատմական խոհերով եւ յոգնակի երկրորդ դէմքով, ուստի աւելի քաղաքավարօրէն, քաջալեր կը հանդիսանայ։ Լեզուի եւ ոճի այս զանազանութիւնը ակամայ ենթադրել կու տայ մեզի, թէ խմբագիր գրուածք մ'ունինք մեր առջեւ։

Գրութիւն մը, որ իբրեւ խմբագրութիւն կը նշանակուի, կ՚ենթադրէ, թէ մէկէ աւելի հեղինակութիւններու միացումն է, կատարուած յապաւումներով, տեղափոխութիւններով եւ յաւելուածներով:

1950ին նկատի առնելով Եղիշէի տեղիքը. «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի», գրած էի. «ինձ կը թուի, թէ Եղիշէ իր խոստումը կատարած է ինքնուրոյն գրուածքի մը մէջ: Այդ գրութիւնը կը ներկայացնեն այն երկու յանուն Գիւտ կաթողիկոսի Թուղթերը, որոնք գրուած են Աղուանից Վաչէ թագաւորին...: Ոճն եւ լեզուն Եղիշէինն են. կան նոյնանման արտայայտութիւններ[1]»:

Այժմ, երբ ի մերձուստ քննութեան կ՚առնեմ այս Թուղթերը, երեւան կու գայ, որ անոնք ոչ թէ նոյնութեամբ, այլ խորքով միայն Եղիշէին կը պատկանին: Ուշադրութեամբ հետեւելով այդ խմբագիր Թուղթերու այն հատուածներուն, որոնք Եղիշէի կնիքը կը կրեն, կը գտնենք թէ այն տեղ Քաջն Վարդանի դէմքն է, որ կը ցցուի մեր առջեւ, ճշդիւ այն գծերով, ինչպէս նկատած էինք զայն Եղիշէի Հայոց պատերազմի Պատմութեան մէջ. սուր ի ձեռին հայ բանակին առջեւ խիզախած Խոսրով Ա.-ի բանակներու դէմ: 571—573 տարիներու հայկական ապստամբութեան պա–

¹ Ակինեան, Եղիշէ վարդապետ եւ իր Պատմութիւնն Հայոց պատերազմին, Հանդ. Ամս. 1950, էջ 421—422 = արտատպ. Գ., էջ 388:

բաղդատիր, հայ բնագրին ստորադասը կը ներբողուի հոն:

Այս պատկերին առջեւ տարակոյս չի մնար այնուհետեւ թէ ե՞րբ յօրինուած է Եղիշէ այս ներբողը կամ ճառը եւ ի՞նչ նպատակով: Նախնաբար կը կազմէ ան վերջաբանը Եղիշէի Հայոց պատերազմի Պատմութեան Է. գլխանիկի վերջաւորութեան, իբրեւ լրացուցիչ մաս Նախաբանին: Իսկ «Գիրս եպիսկոպոս» գտած ըլլալու է զայն ներկայ խմբագրութեան Ը. գլխանիկի վերջը, հաւանօրէն մերձեցուած անունուն «Աղուանից արքայ»ին: Ինչպէս առած է ան Աղուանից Պատմութեան մէջ Աղուանից արքային վարքը մանր փոփոխութիւններով եւ «Վաչէ», «Ուռնայր» անուններու յաւելումով, նոյնպէս ներբողը վերածած է Թղթերու եւ նուիրուած է հոն «Ուռնայրի» դարձի կեղծ պատմութիւնը:

Այս նոր յայտնութիւնը կը հարկադրէ զիս ամբողջութեամբ յառաջ բերել այս տեղ Ա. Թուղթը եւ Բ. Թուղթէն ինչ ինչ տեղերներ, որոնք սերտիւ կապ ունին Ա. Թղթին հետ եւ կը թուին նոյնպէս Եղիշէի վերջաբանէն առնուած ըլլալ:

Հրատարակութեան համար բնագիր առած եմ Էջմիածնի Թ. 1531 հնագոյն ձեռագիրը, որ գրուած է 1289ին: Աչքի առաջ ունիմ Խաչիկ Վ. Դադեանի համեմատութիւնները: Նկատի չեմ առներ Ա. եւ Բ. խմբերու այն օրինակները, որոնք Թ. 1531էն ծագած են:

*Այն տեղիքները, որոնք յայտնապէս խմբագրին ձեռքն են, կը ներկայացնեմ շղագիր։ Կան անշուշտ խմբագրէն մանր յաւելուածներ եւ այլ հատուածներու մէջ. այսպիսիներէն ինչ ինչ տուած եմ նոյնպէս շղագիր։*

## Թուղթ Գտայ եպիսկոպոսի առ արքայն Վաչէ։

1. *Երկնաւոր շնորհօքն Աստուծոյ ողջոյն։*

2. *Ի ձեռս սուրբ սիրոյ քո առաքինութեան ի կամս կամաց անձին իմոյ բղխեցին միտք իմ երկնաւոր գործութեամբն. յօժարեցի պատմող լինել բանին. եւ ահ անկաւ ինձ մեծ եւ ահագին եւ բարձրագոյն քան զերկինս երկնից եւ խորագոյն քան զներքին կիսագունդն. եւ յամենայն կողմանց շուրջ պաշարեաց զիս ի վեր եւ ի վայր, ի վերջ եւ յառաջ, յաջ եւ յահեակ. փախչել ոչ կարեմ եւ խորամուխ լինել երկնչիմ, եթէ գուցէ ընկղմեցիմ որպէս Պետրոս առաքեալ՝ ի ծով անդնդային։*

3. *Բայց եթէ տէր Յիսուս ձեռն կարկառուցու յօգնականութիւն՝ յայս սակաւս քաջալերեսցայց եւ յանմուխս մխեցայց։ Քանզի բան ունիմ մտաց գործի, եթէ զացի ինչ հիթանիւթ (ի) հողեկիր [յառաքինութենէ] արանց քաջաց, որք զհրեշտակս ածին ի զարմացումն եւ անգիր օրինօք անձամբ անձին օրէնք եղեն եւ զատանց օրինաց Տէրն ի վեր*

*ծանեան եւ գեղեայն գիտացին ընդ օրինօք, եւ տանց տաճարդի, մարգարէի ուրուք կամ երկնաւոր հրեշտակի, աստուածատես եղեն:*

*4. Արդ աՀա (յորմէ) երկուցեայն էի ի կեանս սիրով մօտիմ եւ յուսով մերձենամ եւ Հաւատովք աներկբայ Հաստատիմ. եւ սկսանիմ ուստի արժանն է սկսանել:*

5. Որպէս յառաջագոյն սէրն Քրիստոսի բնակեաց ի նախնոյն ձեռուս Ուռնայրի, նախանձ երկնաւոր եբեր ընդ Տրդատայ Հայոց արքային, իբրեւ լուաւ զմեծամեծ սքանչելիս Աստուծոյ, որ ի ձեռն սրբոյն Գրիգորի նշանօք եւ արուեստօք գործեցան յաշխարհին Հայոց՝ վաղվաղակի դառնալ ի բազում շուղաց մոլար ճանապարհին առ ճշմարիտն Աստուած ծանօթութեամբ եւ բարեկամութեամբ ի բաց ընկեցին զծանրատաղտուկ զլուծն հեթանոսաց. թեթեւացան, թօթափեցան, թեւակոխեցան, թռեան եւ ի յերկինս ճգնեցան:

6. Զայս լուեալ քաջին Ուռնայրի՝ ոչ դլաց եւ ոչ դադարեաց եւ ոչ ի ձեռն ծառայական հրեշտակին, այլ ինքնին մեծ թագաւորն մեծամեծօք, նախարարօք եւ բազմազունդ զօրօք գայր հասանէր յաշխարհն Հայոց, յանդիման լինէր սկայազօր թագաւորին:

7. Իսկ նորա եղբայրաբար սիրով, բարեկամութեամբ ընկալեալ՝ բոլոր զինքն առաջի առնէր նմա, զներքին եւ զարտաքին խորհուրդս մերկանայր եւ դնէր առաջի նորա

հանդերձ սրբովն Գրիգորիւ եւ ամենայն բազմութեամբ զօրացն Հայոց:

8. Խոնարհէր թագաւորն ձեր, անկանէր եւ պատէր զոտիւք եւ ձեռօք, պատմէր զամենայն մոլորութիւն հեթանոսաց եւ ինքն խոստովան լինէր վասն աղիտագործ մեղացն անցելոց:

9. Քաջալերէր զնա սուրբն Գրիգորիս ի գալուստ մարմնաւորութեանն Որդւոյն Աստուծոյ, որ ի թողութիւն եկն եւ ոչ ի դատապարտել. ի կեցուցանել եւ ոչ ի մեռուցանել· եւ յառաջանցելոց ի հողոյ կեանս խոստացաւ:

10. Զայս ամենայն իբրեւ լսէր թագաւորն ձեր, ինքն եւ ամենայն զօրքն որ ընդ նմա զաւուրս քառասուն պահոց աւանդէին զանձինս խրատեանն. ի բաց հրաժարելով յառաջին ստգտանելի գործոց: Եւ յաւուրն յիսներորդի իբրեւ ուրացան ի սատանայէ եւ յամենայն գործոց նորա եւ խոստովանեցին զսուրբ Երրորդութիւն՝ էջ թագաւորն յամենասուրբ ջուրն եւ ամենայն զօրքն ընդ նմա: Եւ կատարեաց զնոսա քահանայն ի վերստին ծնունդ ի յերկնաւոր Երրորդութիւնն: Ելին ամենեքեան Հոգւովն սրբով:

11. Ի նմին ժամանակի շնորհեցաւ նոցա այր մի հրամանելի ձեռնադրեալ յեպիսկոպոսութիւն ի Հոռոմ քաղաքէ, որ եկեալ էր ընդ Տրդատայ արքային:

12. Այսու երկնաւոր քարոզ եկն Ուռնայր արքայ, եմուտ յաշխարհն Աղուանից·

ուստ եւ կատարեաց զնոսա առաքելական կանոնօք: Ընկալան ամենեքեան զդրոշմն երկնաւոր եւ գրեցան ի դպրութիւն կենացն:

13. *Հալածեցան դեւք աշխարհիս, խափանեցան զոհք եւ ձենձերք, ամաչեաց մոլորութիւնն, բարձրացաւ ճշմարտութիւն, թագաւորեաց լոյսն աներեւոյթ, մերժեցաւ կամաւոր խաւարն:*

14. *Կարգեցան երախայրիք եկեղեցւոյ, տասանորդեցան պտուղք կալոց եւ հնձանաց, անդոց եւ չարանաց եւ ամենայն ընտանի անասնոց: Նաեւ զհող երկրին եւս ի նոյն վիճակեցոյց: Եւ հաստատեալ կայու կարգ ուղղութեան առ նախնեօքն ձերովք՝ հանեօք եւ հարքն քաջով երանելեաւ մինչեւ ի ժամանակս քո սքանչելի տէրութեանդ:*

15. *Վիճակն, որ հինն էր յաւուրցն առաջին մարդոյն, եւեւս զչքնաղ ծնունդ քոյոյ ընութեանց յառաջին ի հայրենիս հաստոցն, երկրորդ որ ի գոտոյ վիճակին, յոյժ կասկած ի միտս անկեալ չարասէր թշնամւոյն, եթէ գուցէ ընդ որ եղեւ մուտ կենաց յաշխարհս արեւելից, ընդ այն ծնունդ եմուտ ճշմարտութեան յաշխարհն արեւելից:*

16. *Տառապեցաւ, տագնապեցաւ, տարակուսեցաւ սատանայ քան յաւուրսն Յոբայ արդարոյ: Ժողովեաց, գումարեաց զզօրսն իւր խաւարայինս, յայտնեաց նոցա զախտն չար, որ տանջէրն զնա: Ամենեքեան զոյգ հարան եւ զօդացին: Ի միաբանութիւն եկեալ՝ ելս իրացն խնդրեցին: Մի այդպէս, ասեն, տագ-*

նայիր յանձն քո, ով քաջ, կանոն է մոլո-
րութիւնս մեր քան զճշմարտութիւն նորա։
Տկար գազանաւն առաջին մարդոյն յաղթե-
ցեր. մեծ թագաւորաւն ապայոյն չկարե՞ս
կալ առաջի։

17. Զայս առայքն եւ զհամատարած ծովն
շարժեցին (ի վերայ քո). իջին ի նա օդք մրր-
կածին, շարժեցին եւ յուզեցին զբազմութիւն
ալեաց նորա։ Սկսան մռմռել, եռանել, ամ-
բածանել, ապականել զդաշտս եւ զեզերս։

18. Եկն եհաս ի վերայ քո միանգամայն
բազմութիւն ազգաց հեթանոսաց, ահաւոր
գազանօք, խառնադրօշմ նշանօք, բազմա-
ձայն փողովք, զայրացող գոչմամբ, ան-
տառախիտ նիզակօք, ճառագայթաւոր սու-
սերօք, ոսկեզմրեալ վահանօք, թանձր եւ
սաստր մկնդակօք։

19. Հողեղէնք զհողեղէն[ս]ց երկեղացա-
նէին. ապականացուքն զանապական[ս]ց կա-
մէին կործանել. եւ անաստուածքն զաս-
տուածային շառաւեղ կամէին յարմատոյն
կորել։ Երկիցս եւ երիցս պարտեցան եւ ոչ
ամաչեցին։

20. Իսկ այն, որ նաւի յերկնից յերկինս
եւ տեսանէ զաշխարհս ամենայն յականելով
եւ կշռելով զպարի օրէնս եւ որ ընդդէմ իցեն,
եւես զրեց միայն օրինաւոր. թոյլ ետ պատել
շուրջ զբեւ առատիկ հնոցին. վառեցան, բոր-
բոքեցան եւ այրեցան իբրեւ զխուչք ի մէջ
հրոյ։ Նմանեցար երից մանկանցն ի հնոցին.
զզօրութիւն հրոյն չիջուցեր, զխաշարութիւն

կայծականցն ի կակղութիւն մարդի փոխեցեր եւ զմգձկութիւն ծխոյն ի ապխտակութիւն չուչանի չրջեցեր. զայրեցող բնութիւն հրոյն յարարող զօրութիւն սառուցեցեր. զերբորդն Աստուծոյ յերկնից յերկիր ածեր քեզ յօգնականութիւն:

21. Իմաստունքն նոցա յիմարեցան, քաջքն նոցա վատեցան, սպառնալիքն նոցա դադարեցան, նահատակք նոցա զօղեցան, բազմութիւնք սակաւեցան:

22. Երանի քեզ եւ երանի որ մերձ իցեն առ քեզ: Սակաւ էիր թուով եւ անթիւ եղեր բազմութեամբք. սակաւ էիր յայտնեօք եւ անթիւ եղեր անյայտնեօք:

23. Նիզակ քո նիզակ Յեսուայ եւ սպառազինութիւնք քո սպառազինութիւն սպարապետին Աստուծոյ, որ իջանէ ընդ նմա յաւուրն յարութեան նորա. ձայն որ զերկիր շարժէ, զվէմս զդրդէ, զգերեզմանս աւերէ, զմեռեալս յարուցանէ, զհողացեալն նորոգէ, զդատապարտեալս հատուցանէ. ոմանք ի ձախակողմն եւ ոմանք ի յաջակողմն: Այս Աստուծոյ միայն եւ նմա վայելէ. իսկ քեզ իբրեւ հաւատարիմ ծառայի եւ սիրելոյ եւ ժառանգաւորի արքայութեան՝ եւ շնորհս երկնաւորս, զի զաւուրն բերէ նմանութիւն:

24. Որ պարծէր ի չարն՝ տագնապեցաւ, որ խիզախէր ի մոլորութիւնն՝ յիմարեցաւ: Ամենայն ինչ քո գնդին կրկին է, եթէ զրահ[ի]ք էին պահապանք մարմնոյ, ընդ նմին զրահք հաւատոյ, եթէ սաղաւարտ էր ի գլու-

չութիւն սուսերի, ընդ նմին էր եւ սադաւարտ փրկութեան. եթէ վահան ունէիր ընդդիմահար յանձանց առաքինեաց, ընդ նմին ունէիր զվահան հաւատոյ համբերութեան. թէ նետ ի կորովից քոց թռչէր ուղղակի, ընդ նմին եւ աղօթք սուրբք խնդրուածոց քոց վաղվաղակի դեր ի վերոյ գտանէին քան զերկինս առաջի Աստուծոյ. եթէ շողայր սուսեր ի բազուկոց առաքինիս, յուսատրութիւն հաւատոց քոց ի մէջ հրեշտակաց փայլատակունս արձակէր. գրօշակք գրօշակք երկնաւորք եւ տէգ նիզակի քո ճառագայթաւորք իբրեւ զլար արծաթոյ արեգական:

25. Այս է, որ զահի հարեալ էի ի սկզբանէ պատմութեան, եթէ զիարդ կարացից բանիւ պատմել զայնմանէ, որ ի վեր քան զբանն գտանի. բանս չորեքնիւթէ այս աշխարհս ոչ առել:

26. < ոչ ունիմ գիտութիւն յաղքատութեանս իմոյ կազմութեանս, պատրաստութեանս, զի եւ ոչ նիւթ ինչ ճարտարեալ իմաստութեան համբերեալ՝ կարացից կցել զգեստ ինչ զովութեան քում ազնուականութեանդ: Մանաւանդ եթէ ամենայն հռետորական փիլիսոփայքն աշխարհին Յունաց ի մի տեղի գումարեսցին, եւ ոչ ինչ կարասցեն առել զարժանն [զովութեան քում հոգեւոր յաղթութեանդ]: >

27. Եւ այս վիճակ ոչ ամենեցուն, այլ որք քաջաղէս գեղերեցան յաստղաբաշխութեան ի թուականին, յերկրաչափականին,

յաստեղաբաշխականին, ի բժշկականին եւ այս ի ծայրս ծագաց հասին ի մարգարէականն, յառաքելականն, յաւետարանականն, որ է սկիզբն եւ ընձիւղումն: Եւ թէպէտ ունէի զայս ամենայն արհեստս նիւթականաց պատմոց, եւ էիր դու եւս երբեմն նիւթական, այլ զաննիւթոցն ունիս նմանութիւն:

28. Ընդ Արուսեկին կշռեցից զքեզ. դու պայծառագոյն քան զարուսեակն նշոյլս արձակես: Արուսեակն զվեց ամիս արուսեակ է եւ զվեց ամիս գիշերավար. դու աւուր աւուր արուսեակ եւ ի վեր քան զարուսեակ: <Արուսեակ> յայգուն պահի եւեթ երեւի, իսկ դու ի քսան եւ ի չորս ժամս՝ ի տունջեան եւ ի գիշերի:

29. Եւ եթէ զԼուսին ածից ընդ յօրինակ, յոյժ ծիծաղելի է իմաստնոց. երկոտասան անգամ ի տարւոջն վիժած, ժանգահար, մանգաղաձեւ, կիսազունդ, խոնաւալից, կիսաբոյս, հիւանդոտ, գիշերագնաց, խաւարասէր, յուսատեաց, ջղջիկանման, պակասընթաց, հրամանք, բազում անգամ ի թագուստ մտեալ. իսկ դու լիալոյն, բարձր, լուսատարար, աւետաբեր, հրեշտակակերպ, ուրախարար, քաջալերիչ, պայծառ, գեղեցիկ քան զամենայն հաստատակից ընկերս քո:

30. Ոչ ինչ բաւական քեզ բանեմ ասել, որ քան զԱրեգակն ի վեր գտանիս. ոչ զնա թշնամանեցից եւ զքեզ գովեցից, այլ զբնութիւն նորա պատմեցից քեզ. չեղագնաց, թիւրընթաց, կողմնաւոր, տաւերաչուք, հա-

*բաւարնակ, ձմեռնատանջ, ամառնակէզ, թօ-նուտ գարնանի եւ աշնուշ աշնանի, գիշերակուլ, տատաստածին, ծաղկաթարշամ, գալարացամաք. կենդանահալած ի տուրս ի մէջ աորէի եւ կիսաբաժին աւուրն ողջունի: Ցիրաւի ամա Յոյնք Ապողոնի կարդացին: Եւ ապա եթէ գգուցնաքեայ ճառագայթն ածցեա զմօքդ, ընդ նմին եւ զայն գիտասջիր. (զի) գիշերաւ է ծածկեալ, ամպովք է թագուցեալ, փոշւով մգգացեալ, մրրկօք ապեկոծեալ:*

*31. Դու արեգական նմանեցեր, ի Հօրէ զօրացար, ի յՈրդւոյ քաջալերեցար, ի սուրբ Հոգւոյն լուսաւորեցար: Ի գիշերի տեսանիս եւ ի տուընջեան թափ անցանեն ճառագայթք հաւատոց քոց: Ասացից քեզ բան ինչ սատկաւոր. Յամենայն կողմանց քաջացար, սրատեսիլ ես քան զարծուի, երագալուր քան զմի ի հանդրափանց: Ոչ միայն զերկինս տեսեր, այլ եւ զերկնից մեծն տեսեր եւ զփոքրն թողեր. զանցաւորս ետուր եւ զանանցն առեր:*

32. Ի բաց ընկեցեր զոսկիակուռ բազաւորութիւն, եւ ահա կայ պահի քեզ անձեռագործ պսակն, զոր ընդունելոց ես յամենասուրբ ձեռացն Քրիստոսի: Որ թողցէ վասն աւետարանին զհայր եւ զմայր եւ զքորս եւ զեղբարս եւ զամենայն ստացուածս իւր, զհարիւրապատիկն առցէ ընկալցի եւ զկեանս յաւիտենից յաշխարհին, որ ոչն անցանէ: Զայդ աղքատի ումեք դիւրագոյն է առնել, իսկ առն թագաւորի իբրեւ զքեզ, անհնար է:

Ապա եթէ արտաքէ ոք, որպէս եւ արարերդ, մարդկան անհաւատալի (է) եւ հրեշտակաց զարմանալի, (նաեւ) Աստուծոյ նմանելի, որպէս թողեալ զանթիւ բազում զօրս հրեշտակաց՝ եւ եկն ի գծուծ կերպարանս մարդկան ։

*33. Գտաւ քո գործդ այնմ անման․ նա եւ բոլոր աշխարհիս, բացեր զդուռն ողորմութեան․ (ի) քոյին խօսկ յաշխարհի հայրենի հաւատքն պահեցան, եկեղեցիքն չէն մնացին, վկայարանք (ի) խաղաղութեան, քահանայք ի քահանայութեան, պատարագք ի սեղանս, մարգարէք յընթերցուածս, առաքեալք ի մխիթարութիւնս, սաղմոսերգուք ի յօրհնութիւնս, կուսանք ի կուսութեան, կնքաւորք ի սրբութեան եւ ամենայն ոք յիւրաքանչիւր կարգի ։*

*34. Եհաս լուր առաքինութեան քո յարեւելից մինչեւ ի Գադերացիս, ի հարաւոյ մինչեւ ի հիւսիս ։ Գրեցաւ անուն մարտիրոսութեան քո յասկի տախտակին ընդ առաքելոյն եւ ընդ նախավկային, ընդ հայրապետսն եւ ընդ եպիսկոպոսսն, միանգամայն եւ ի դպրութեան կենացն եւ ի յերկինս ։*

*35. Զգոյշ լեր, սքանչելի, որ այսքան մեծամեծացն արժանի եղեր եւ յայսչափ բարձրութիւնս վերացար հասեր ։ Հաստատուն կաց ի յոյսն եւ անհաս ի սիրոյն, համբերող լեր ի հաւատս ճշմարտութեան, զի մի վիշապն մեռեալ զառուն շարժեսցէ ի վերայ կենացս մերոց․ զի թէ մինչ այդպէս էիր՝ յաղ-*

*թեցեր նմա, ի չափ հասեալ՝ գիտեմ թէ առ ատն կախեր զամենայն մեքենայս չարի նորա:*

36. *Այլ որչափ միտք զքեզ սիրեն եւ մարթ էր զայն ընդ բանիւ ընդ պատմութեամբ արկանել, բազում մագաղաթի ծախք լինէին:*

37. *<Եւ գումարեալ զբանս իմ ի մի տեղի խօսեցայց. եւ եթէ էիր մարդ եւ եղեր հրեշտակ, ունէիր ազգականս ի յերկրի եւ գտար եղբայր Քրիստոսի ի յերկինս. էիր մահկանացու եւ եղեր անմահ. ոչ թէ դու միայն ես անմահ, այլ վասն զի համարձակութիւն ունիս առ Քրիստոս, որ բազում մահկանացուաց կարէ առնել զկենդանութիւն: Յանկայի ես հրեշտակաց, փափագելի ես մարդկան, առաւել ցանկալի ինձ հեռացելոյս ի չլինելոյս մարտակից քեզ յաներեւոյթ պատերազմին ամենաչար սատանայի: Բայց արդ պաշտեմ (եւ) փարելի սահմ, չունել միտս ի մահ (եւ) չյիշել զիմ հեղգութիւն: Զի այն որ արարն զքեզ իմում որդեգրութեան արժանի, նոյն եւ շնորհեսցէ մեզ զքեզ առողջ հոգւով եւ մարմնով տեսանել յաշխարհի եւ վայելել ի քո շնորհալից վարուց առաքինութեան: Ողջ լինելով ի Քրիստոս՝ լիցիս մեզ բազում ժամանակս պարապեալ եւ լցեալ սիրովն Քրիստոսի. ամէն:>*

38. Բազում անգամ յառաջ եղի վասն քո սիրոյն գալ առ քեզ. եւ այժմ ի մերմէ բարեխօսութենէ եւ յամենայն սուրբ ուխտի եկեղեցւոյ յանձն արարեալ զքեզ Հոգւոյն սրբոյ՝ Տէր ընդ քեզ. ամէն:

Վերլուծում ։

1. Բ. Թուղթին մէջ ունինք տեղիքս. «բայց արդ զքեզ ի հաւան ածեալ քոյով ժուժկալութեամբդ՝ աղաչեմ զի ախորժ եւ անոյշ իմ ողջոյնս քեզ թուեսցի»։ Չեմ կրնար վստահաբար ըսել թէ գրութեանս այս սկսուածք Եղիշէին հարազա՞տ է. եւ տեղիքս ա՞յ սկսուածքը կ՚ակնարկէ ։

2. «Ի ճառս սուրբ սիրոյ քո առաքինութեան ի կամս կամաց անձին իմոյ ըղձեցին միտք իմ երկնաւոր զօրութեամբն». այս չափազանցութեամբ անիմաստ է։ Եթէ նկատենք պարբերութիւնս սկզբնաւորութիւնն Եղիշէի ճառերուն, այսինքն Պատմութեան վերջաբանին եւ Համեմատութեան դնենք Նախաբանին հետ, կը տեսնանք մանր սրբագրութիւններով հետեւեալը. «Զճառս (զայսոսիկ) ի սուրբ սիրոյ քոյոյ հրամանիդ եւ ոչ ի կամս կամաց անձին իմոյ ըղձեցին միտք իմ երկնաւոր զօրութեամբ» կամ շնորհօք։ Նախաբանին մէջ կ՚ըսուի. «հայեցեալ ի սուրբ սէր քոյոյ հրամանիդ» (6), «ընկալայք զհրաման պատուիրանի յանձնախանձ քոց բարուց բնութեանդ... ոչ ըստ կամաց... ճառագրեմք». ուստի «քո առաքինութեան» նախընտրաբար ըլլալու էր «քոյոյ հրամանիդ»։ Այսպէս նաեւ «յօժարեցի պատմող լինել բանիւ» նկատելու է յարասութիւն մը Նախաբանին. «զոր եւ մեք ըստ հրամանի քում ընկալեալ յօժարութեամբ ձեռնարկեցաք զայն ինչ...»։

3. «Բայց եթէ տէր Յիսուս ձեռն կա–

կատուցու յօղնականութիւն, յայս սակաւ քաջալերեցայց...»: Հմմտ. Նախարանին տե- ղիքս. «Եւ ահա մերարերիմք ընդ քեզ ճախ- րելով... փոքր ի շատէ ծծելով յանապական մերին օգոյն՝ անուցումք զգխտութիւն ի փրկութիւն անձանց» (6): Հմմտ. նաեւ Եղիշէ, Ը. յեղ., էջ 121. «Տէր Յիսուս... կարկատեա զամենազօր աջդ յօղնականու- թիւն»:

«Բան ունիմ մօտայ գործի». Եղիշէի ծննդական մտքի մէկ արտայայտութիւնն է (Հմմտ. Հանդ. Ամս. 1950, էջ 404—6 եւ Եղի- շէ, Գ., էջ 360—361): «Գտից ինչ հիւթանիւթ ի հոգեկիր յառաքինութենէ արանց քաջաց». Բառս «հիւթանիւթ» կիրարկած է Եղիշէ նաեւ Դատաւորաց գրքի մեկնութեան մէջ. «Թո- ղեալ զհիւթանիւթ մամոնային» (էջ 180): «Հոգեկիր» ածականը կ՚ենթադրէ «արանց քաջաց». ուստի «յառաքինութենէ» կա՛մ յա- ւելուած մըն է խմբագրէն եւ կա՛մ տեղա- փոխուած է. «յառաքինութենէ (իմացիր «յա- ռաքինութեանց) հոգեկիր արանց քաջաց»: Կը թուի թէ Եղիշէ հոս Կորիւնի Նախարանին ազդեցութեան տակ է:

4. Այս հատուածը կ՚երեւայ թէ աղ- ճատում կրած է. կը կարդամ «արդ յայն (Զ. ահա), յորում երկուցեալն էի ի կեանս (ի կա՞մս), սիրով (Զ. սիրոյ) մօտիմ...»: Իմինեան ունի. «արդ ահա յորմէ երկուցեալ էի՝ ի ձեռն սիրոյ մօտիմ»: Շարունակու- թիւնը «եւ սկսանիմ ուստի արժանն է սկսա-

*նել»․ այսպէս նաև Նախաբանին մէջ․ «արդ ... սկսցուք ուստի արժանէ սկսանել (էջ 6)։*

5—14 *խմբագրին գրչէն է։ Ուշադրութեան արժանի է «ի նախնոյն ձեռամ», «թագաւորն ձեր» և այլն։* «Գայր հասանէր *(Ուռնայր յաշխարհն Հայոց», և* «եկն *Ուռնայր արքայ* եմուտ *յաշխարհն Աղուանից... հալածեցան դեւք աշխարհէդ... նաև գեօղ երկրին ևս ի նոյն միաբանեցոյց... կայր կարգ ուղղութեան ու նախնեօքն* ձերովք... *մինչև ի ժամանակս* Էս *սքանչելի աւրութեանդ»․ այս տեղիքները շատ անկանոն քերականութեամբ ներկայացուած են։ Եթէ «Գիւտ Եպիսկոպոս» Հայաստանէն կը գրէր, պիտի ըսէր․ գայր... յաշխարհս․ «եմուտ յաշխարհս Աղուանից»․ ու նախնեօքդ* ձովք *և այլն։*

*Խմբագիրը ձեռքի տակ ունեցած է Ագաթանգեղոսը․ անկէ փոխ առած է* «սկայազօր *թագաւորը» (Ագ․ 108)։ Եղիշէի Ը․ յեղանակէն առնուած կ՚երևայ § 6 «Ոչ դրաց և ոչ դադարեաց»․ հմմտ․ Եղիշէ, էջ 144․ «մի դրար մի դադարեր» (Բ․ Մակաբ․ ԺԲ․ 2․ «ամենևին ոչ ապրին դրալ և դադարել նոցա»)։*

*Ըստ ուղիղ ժամանակագրութեան Տրդատ Բ․ թագաւորած է* 217—253 *տարիներուն․ իսկ աւանդութեան համաձայն* 287—336․ *վերջինս կը հետևի Աղուանից պատմագիրը։ «Ուռնայր արքայ Աղուանից» պատմութեան մէջ կը յիշուի 369ին (Փաւստ․ Ե․ 4․ Մ․ Խոր․*

Գ. 37. Մ. Դասխուր. 13)։ Թէ ի՞նչ ժամանակագրութեան հետեւեալ Ազուանից պատմագիրը այդ Ուռհայցը Տրդատի ժամանակակից գրած է, թէ հոս եւ թէ Ա. Ձ., անմեկնելի է ինձ։ Եթէ գիտակից ըլլար ժամանակի անհամաձայնութեան, վստահ եմ, թէ պիտի չվարանէր Թագաւորաց ցանկին մէջ նշանակել Ուռհայցի Ա. եւ Բ.։

Թ. 13 եւ 14 հատուածները կը թուի ինձ, թէ կը պարունակեն ինչ ինչ Եղիշէի գրչէն։ Թ. 3 հատուածին համաձայն Եղիշէ տրամադիր էր «հոգեկիր... արանց քաջաց» կեանքէն «հիւթանիւթ» ծաղկաքաղ հանել։ Պատմութիւնք Ագաթանգեղոսի, Փաւստոսի եւ Ղ. Փարպեցւոյ քով կարող էր իւրն «արանց քաջաց» սքանչելի դէմքեր ընծայել, օրինակ Արտաւազդ Մամիկոնեանէն, Մ. Գրիգորի եւ Տրդատի օրերէն։ Դժբախտաբար այս տեղիքները յապաւուած են, Ուռհայցի վրայ դարձնելու համար պատմութեան ընթացքը։

8—10, 13—14 հատուածները կը կազմէին նախնաբար Ա. 14 գլուխին մասը. ապա հանուեալ անկէ զետեղուած են այս Թուղթին մէջ պատշաճ բաժանումներով եւ փոփոխութիւններով։ Ա. 14ի հեղինակը հետեւողութեամբ Ագաթանգեղոսի պատմած է Հայոց դարձի պատմութիւնը մինչեւ Վրթանէսի եպիսկոպոսութիւնը (առանց Արիստակէսի յիշատակութեան)։ Այժմ Հռիփսիմեանց նշխարաց ամփոփումը եւ զետեղումը պատ-

մտնելէ ետքը, կ'ընդհատի շարունակութիւնը. այս ինքն Տրդատի բժշկութիւնը, ապաշխարութիւնը, մկրտութիւնը են. եւ ստուգով կը յիշատակուի Գրիգորի եպիսկոպոս օծուիլը: Այս պակաս մասերը հանուած եւ ագուցուած են Ա. Թուղթին մէջ, եւ են 8—10 եւ 13—14: Ասոնց դասաւորումը Ա. 14ի մէջ գիրքին պիտի ըլլայ, եթէ հետեւինք Ագաթանգեղոսի կարգին. այս ինքն Թ. 8, 9. ապա Գրիգորի եպիսկոպոսութիւնը, Թ. 10, 12, 13, 14, Վրթանէս. ի հարկէ փոփոխելով փոփոխուածները:

11. Այս հատուածը, որ ծանօթ եղած է նաեւ Անանիա կաթողիկոսին, կը պատկանի խմբագրի գրչին: Աղուանից Պատմութեան վերջին խմբագիրը անտեսած է տեղիքս Ա. 9 գլխուն մէջ: Զարմանալի կը մնայ միշտ, թէ ինչու անուն չէ տրուած այս ի քմաց հնարուած Հռոմէն եկած եպիսկոպոսին, որ Աղուանից հովիւ շնորհուած էր Տրդատէն եւ Ս. Գրիգորէն. ուստի Ս. Գրիգորիսէն յառաջ:

14. Տեղիքս «եւ հաստատեալ կալաւ կարգ ուղղութեան ընդ նախնեօքն քոյովք (Զ. ձեռովք)՝ հանեօք եւ հարցն քոյով երանելեաւ մինչեւ ի ժամանակս քո սքանչելի տէրութիւնդ», առանց տարակուսի խանգարուած է եւ կը պատկանէր սկզբնաբար Եղիշէի: «Հանեօք», եղ. ուղղ. հանի, «մայր հօր կամ մօր», չէր կրնար «նախնեաց» ապածանին մէջ տեղ գտած ըլլալ, պէտք է ըլլար

«հաւուք»: Եղիշէի սիրելի էր նախնիքն յիշել հաւով եւ հարց հաւով. այսպէս. «որ էր հայր հաւուն քոյ» (34). «հարքն մեր եւ հաւքն հարցն» (34). «Թոռունք... հաւուց» (40), «զհարց եւ զհաւուց» (108): Ուստի այս տեղ նախնարար եղած պիտի ըլլար. «առ նախնեօքն քոյովք, հաւուք հարցն եւ հաւուն եւ հարքն քոյով երանելեաւ»: Վեց սերունդ, որով Վարդան (իրր 600ին) ըստ աւանդութեան կ՚ունենար իր նախնիքն յանձին Արտաւազդի (իրր 300ին) Տրդատի եւ Ս. Գրիգորի օրով:

15. «Վիշապն, որ հին էր յաւուրցն առաջին մարդոյն, եւս զչքնաղ ծնունդ քոյոյ բնութեանդ յառաջին ի հայրենի հաւատոյն... յոյժ կասկած ի միտս անկաւ... եթէ գուցէ ընդ որ եղեւ մուտ կենաց յաշխարհս Արեւելից...»: Բնագիրը շատ խանգարուած կ՚երեւայ: Ինչպէս յաջորդ հատուածէն կը տեսնուի, միտքն է. ինչպէս որ քրիստոնէութիւնը մուտ գտաւ Հայաստան Տրդատ թագաւորի օրով, նոյնպէս կարող է այն մերժուիլ երկրէն ի ձեռն երկրորդ զոյգ թագաւորին, Խոսրով Ա. Անուշրուանին, որ տէրն է աշխարհին: Տպագիր օրինակներու մէջ կամայական փոփոխութեանց ենթարկուած է այս հատուածը:

16—24 հատուածներու մէջ Եղիշէն է, որ կը բարբառի, անոր ոգին է, որ կ՚արտայայտուի: Հակիրճ ակնարկով կը վերյիշեցնէ իր հերոսին 570—573 տարիներու

անցքերը, որոնց ընդարձակ նկարագրութիւնը տուած էր իր Պատմութեան մէջ: Յառաջ կը բերեմ իր Պատմութենէն տեղիքներ. «Զի՞նչ հատուցում մեք աստուածոյն փոխարէնս այսր մեծի յաղթութեանս...: Յայնմ ժամանակի առ հասարակ միաբան մոգք եւ քուրմք բարձին զձայնս իւրեանց եւ ասեն. Աստուածքն... ոչինչ են կարօտ խնդրել ի քէն... այլ զի բարձցես զամենայն ուսմունս մոլորութեան մարդկան եւ ի մի դարձուցես օրէնս զրադաշտական պատուիրանին: Հաճոյ թուեցաւ բանն առաջի թագաւորին եւ ամենայն մեծամեծացն...: Խորհուրդ ի մէջ առեալ՝ յաղթէր խրատն» (16): «Սկսաւ եղջիւր ածել անօրէնութեամբ, եւ զօտայով հոգին հանէր ընդ չորս կողմանս երկրի... նեղէր տագնապէր անխաղաղաւէր կենօք...» (էջ 7): «Կամէր հրդեհել զերկինս եւ զդաշտս առ հասարակ... մերթ չանթէր, գալարէր իբրեւ զօձ թիւնաւոր, մերթ պարզէր գոչէր իբրեւ զառիւծ զայրացեալ, զեղյր, զլորէր, տապալէր» (14). «իբրեւ զշարագեւ մի՝ ոչ եւս դադարէր յուզել, շարժել զբուք ձմեռնայն... նմանեալ խեկ էր ծովածուփ ալէկոծ խռովութեան... անդադրին յանդնդոց բարձրանալ, փրփրել, կուտկել վիշապաձայն որոտալով, գազանաբար գոչելով... որպէս փլեալ (սփռեալ) տարածանիցի համատարած ամենայն ի վերայ լերանց, խորոց, ձորոց, ապականել միանգամայն զլայնութիւն դաշտացն վայելչութեան: Մանչելով բարբառ

արձակեալ եւ սաք...» (34)։ «Ի գունդս գունդս զզագանան բաժանէր... նշանս բաշխէր, զդրօշս արձակէր. եւ ի ձայն մեծի փողոյն պատրաստ հրամայէր լինել. իսկ զգունդսն... ի մի վայր ժողովէր... ի ձօձել բազմախուռն նիզակացն... թանձրամխոքն յիմարէին... քաջքն խիզախէին... ի ձայն մեծ գալարափողոյն... եւ որք մնացեալքն էին վառեալք եւ ցրուեալք լինէին» (89—92) եւ այլն։

«Երկիցս եւ երիցս պարտեցան». Կ՛ակնարկէ 571—573 տարիներու ընդհարումները. Համմտ. Եղիշէ. «երկիցս եւ երիցս զփորձ առեալ կշտամբեցաւ» (66). «յերկուս եւ յերիս կռիւս Տէր ինքնին մեծաւ զօրութեամբ օգնեաց մեզ» (79)։

25. «Այս է, որ զահի հարեալ էի ի սկզբանէ պատմութեան». Կ՛ակնարկէ Թ. 2 եւ 4 հատուածները։ «Ի սկզբանէ» ուղղելու է անշուշտ «ի սկզբանն»։ Բնագիրը այս տեղ ալ աղճատուած է։

26. Այս հատուածը առնուած է Բ. Թուղթէն. կը համարիմ թէ նախնաբար այս տեղ կը գտնուէր, փոփոխելով փոփոխուածները։ Ձեռագրին «զի եւ ոչ նիւթ ինչ ճարտարեալ իմաստութեան համբերեալ կարացից կրկնեալ զգեստ ինչ գոլութեան» էմին ուղղած է «իմաստութեամբ համբերել կարացից ի կկել զգեստ գոլութեան». իսկ Ծահնազարեան «իմաստութեան իմ համբարեալ կարացից կկել զգեստ ինչ գոլութեան»։ «Կկել զգեստ»

ուղղուած է անշուշտ յեցած Ագաթ., Վարդապ., էջ 140 «մինն (ի բուսոց) զգեստս կկէ, գունակ գունակ ծաղկօք զերկիր զարդարէ ի գունազգոյն երանգս»․ որ կը պատշաճի ճշգիւ․ այս դէպքին հարկ է «համբերել» կարդալ «համբարեալ»:

27. «Բանս չորեքնիւթեայս», զոր տեսանք Թ. 25ի մէջ, հաւանօրէն աղերս մ'ունի այս հատուածին հետ: Այս տեղ Եղիշէ կը խոստովանի թէ «ունի» թուական, երկրաչափական, աստեղաբաշխական եւ բժշկական արհեստներու գիտութիւնը, անոնց կից նաեւ սուրբ–գրենական ուսմանց հմտութիւնը: Այս արուեստները Հայաստան բերաւ առաջին անգամ Անանիա Շիրակացի. եւ հաւանական է մտածել, թէ Եղիշէ աշակերտած ըլլայ Անանիայի, ինչպէս այլուր ուշադիր ըրած էի (Եղիշէ վարդապետ, Գ., էջ 349—351): Աստղաբաշխական արհեստին ծանօթութիւնը ցոյց տուած էր Եղիշէ իր Պատմութեան Ը. յեղանակին մէջ (էջ 129—130), ուր կը խօսի Արեգակի մասին: Նաեւ այս տեղ, Թ. 28—31, կը ճառէ հմտօրէն Արուսեակի, Լուսնի եւ Արեգակի մասին. իսկ Վարդապետութեան մէջ կը գրէ խօսելով տարրերայններու մասին. «Իսկ արդ ո՞ւմ նմանեցուցից կամ զո՞վ ածից տարացոյց. եթէ զամպս ասեմ… եւ եթէ զլուսին ասացից, լուսին լնու եւ պակասի… եթէ զաստեղս ասացից, ոչ մի փառս ունին, եւ ոչ միով պայծառութեամբ երեւին. այլ ոմն յոյժ եւ ոմն սակաւ, ոմն արուսեակ եւ ոմն

գիշերավար․․․։ *Աստեղք ոմն ի վեր, ոմն ի վայր, ոմն ի միջի․․․։ Արեգակն իշխանութիւն ունի աւուր տուընջեան․․․»* (էջ 349—350)։ Նաեւ այս տեղ, Թ. 28—31, կը ճառէ Համօրէն Արուսեակի, Լուսնի եւ Արեգակի յատկութիւններու մասին, որ յայտնապէս կը տեսնուի, թէ ան ծանօթ է Անանիայի Տիեզերագրութեան (Հմմտ. Լուսնի եւ Արեգակի մասին՝ Անանիայ Շիրակունւոյ Մնացորդք բանից, Պետերբուրգ 1877, էջ 49—62)։

34. «Եհաս յուր առաքինութեան քո յԱրեւելից մինչեւ ի Գադերոն (Չ. Գադարոն), ի հարաւոյ մինչեւ ի հիւսիս»։ Եղիշէ (էջ 55) ալ Յուստինոս կայսր գրուած Թղթին մէջ ունէր տեղիքս. «ունելով զեւրոպէ՝ անցին եւ արեւելին եւ Ասիացւոցն ի սահմանացն Սեթայ (այլ. Սերայ) մինչեւ ի կողմանս Գադերոնի», այս ինքն «ի կողմանս հարաւոյ»։ Երկու դէպքին ալ նկատի առնուած է Հիպողիտոսի Ժամանակագրութիւնը, ուսկից է. «յԹինակուրայ մինչեւ ի Գադերոն կողմն հարաւոյ» (Անանուն Ժամանակագրութիւն, էջ 4. Հմմտ. Ակինեան, Եղիշէ, Գ., էջ 67 եւ 388)։

«Գրեցաւ անուն մարտիրոսութեան քո յոսկի տախտակին ընդ առաքելայն եւ ընդ նախավկայն, ընդ հայրապետս եւ ընդ եպիսկոպոսն, միանգամայն եւ ի դպրութեան կենացն եւ ի յերկինս»։

«Ոսկի տախտակք» այն երկփեղկ տախտակներ (յն. τὰ δίπτυχαων, diptyques, Dip-

tychen) են, որոնց վրայ կը գրէր հին Եկեղեցին իր եպիսկոպոսներու, կենդանի և հանգուցեալ բարերարներու, մարտիրոսներու եւ խոստովանողներու անունները եւ կը յիշէր զանոնք սուրբ պատարագի ժամանակ պատարագիչի կողմէ, թելադրութեամբ սարկաւագին[1]: Դիպտիքոնները կ'ըլլային փայտեայ, մետաղեայ (ոսկի, արծաթ), նաեւ մագաղաթեայ[2]: Եղիշէ հոս «Ոսկի տախտակք» կը կոչէ զայն, այլուր նաեւ «Յիշատակարան» եւ «Ընդգիրք»: Ահա քանի վկայութիւններ. Փաւստոս Գ. 11. «Յորժամ զանուանս Սրբոցն կարդային»: Ղ. Փարպ. 5. Աղան Արծրունի «եղեալ ի Մատրանն ի Հազամակերտի. որոյ յիշատակարանն ընդ անուանս վկայիցն սրբոց պատմեալ քարոզի մինչեւ ցայսօր»: Եղիշէ. «Ընդգրոց յիշատակեցան նոքա (նախարարք կալեալք) եւ ոչ մի ոմնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի հեռաստանէ» (158): «Ոչ յիշեցաւ անուն նորա (Վասակայ) ի մէջ Սրբոց եւ ոչ մատեան յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն» (109)[3]: Այսպէս նաեւ 571ի կռուին մասնակիցներու անունները արձա-

---

[1] Հմմտ. «Առաքելոց սրբոց...» քարոզին մէջ. «... եղիցի յիշատակ ի սուրբ պատարագս աղաչեմք» (Գաթրճեան, Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, էջ 688—693):

[2] Dippel, Diptychen: Kirchenlexikon, 3. (1884 Freiburg) 1813—1817.

[3] Հմմտ. Հ. Յ. Գաթրճեան, անդ, էջ 102, ծան. 3:

նուիրուած են իբրեւ յիշեալ Յայտնութեան տօնին. «Ամենայն եպիսկոպոսունք եւ երիցունք պատուէր հրամանի տուեալ աշխարհին... զտօն պատերազմացն յաղթութեան խառնել ի սուրբ տօն Յայտնութեանն Քրիստոսի, զի անխափան կացցէ մեծ յիշատակարանս այս ընդ տարուածային ամանց տօնին» (62)։ Բաց աստի Եղիշէ կը գրէ ճառօրէն գրուածքը զօրավարի մը, որ թէեւ չէ նահատակուած, բայց ընդունած է նահատակի պսակը իր առաքինի վարքովը, «քանզի բազմադիմի է նահատակութեանց անուն» (Նախաբան, 6)։

32. Ուշադրութեան արժանի է հոս կոչումը Մատթէի Աւետարանին ԺԹ. 29էն. որուն մասին ակնարկութիւն ըրինք վերային։ Յայտնապէս «Վաչէի» հրաժարումն յաշխարհէ կ'ակնարկէ։

37. Այս հատուածը առնուած է Բ. Թուղթէն։ Տեղւոյս կը վերաբերի, փոփոխելով փոփոխուածները։ Ձեռագրին «արդ աղաչեմ փոխանակ առեմ» ուղղեցի «եւ փարելի առեմ». փոխառութիւն մըն է Դատաւորներէ. հմմտ. Ոսկ. Մատթ. Ա. 168 «այլ աղաչեմ եւ փարելի առեմ». նոյնպէս Ոսկ. Պաւղ. Ա. 652, 714 եւ այլն։

Մեր քննութիւնը կը յանգի եզրակացութեանս.

ա. Գիւտ եպիսկոպոսի երկու Թուղթերը կեղծիք են։

բ. *Թուղթերուս խմբագիրը տրամադրութեան տակ ունեցած է Եղիշէի Հայոց պատերազմի Պատմութեան վերջարանը:*

գ. *Այն ճարտասանական նախակրթութիւն մըն է, գրուած Եղիշէէն:*

## 5. ՎԱՉԱԿԱՆ ԱՐՔԱՅ ԱՂՈՒԱՆԻՑ

Յայտնութիւն նշխարաց սրբոց: Մատթէ երէց. Աբրահամ եպիսկոպոս Մամիկոնէից: Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց:

(*Ա*. 5, 6, 14, 16—26. *Բ*. 5:)

1. *Պատմագրին համաձայն Աղուանից աշխարհը* 30 *տարի առանց թագաւորի մնացած է, այսինքն Վաչէի հրաժարումէն մինչեւ Վաչագանի գահակալութիւնը* (Ա. 16): *Վաչէ գահէն հրաժարած էր Պերոզի Ե. տարւոյն, այսինքն* 462*ին. ուստի անիշխանութեան այս* 30 *տարիները կ'իյնան* 462—492: *Վաչական կը տիրանայ գահին Վաղարշ արքայի* (484—488) *օրով, հաւանօրէն* 485*ին: Հետեւաբար «*30 *տարիները» մօտաւորապէս ճիշդ են:*

*Վաչական Վաչէի Յազկերտ եղբօր որդին էր. Պերոզի օրով ակամայ ընդունած մոգական դէնը: Երբ կը շնորհէ Վաղարշ կրօնի ազատութիւն, Վաչական կը վերընդունի քրիստոնէութիւնը: Իր գահակալութիւնը կը զուգադիպի Վահան Մամիկոնեանի մարզպանութեան առաջին տարիներուն:*

Իր օրով կը վայելէ Աղուանից աշխարհը խաղաղութիւն. կը բարգաւաճի երկրին մէջ քրիստոնէութիւնը. կը բացուին դպրոցներ: Վաչական կը բանայ «զպիղծ աղանդն մանահատութեան» (Ա. 18): Այս շրջանին տեղի կ'ունենան «Յայտնութիւն նշխարաց սրբոյն Զաքարիայ հօրն Յովհաննու եւ երանելւոյն Պանտալէոնի» (Ա. 19). «Գիւտ նշխարացն սուրբ մանկանն Գրիգորիսի» (Ա. 20—23). եւ Գիւտ նշխարացն վկայից Դիղափոյտի, «որ ի ժամանակս Վաչականայ արքայի... յայտնեցան» (Բ. 5). կը բերուին Ս. Գրիգորի եւ Ս. Հռիփսիմէի եւ Գայիանեանց նշխարները (Ա. 21): Թագաւորս կը գումարէ յԱղուէն, թագաւորական ամարանոցի մէջ եկեղեցական ժողով, ուր կանոններ կը սահմանուին (Ա. 26):

Կ'ըսուի թէ իր օրով կենդանի էր «Եօթա-ղէն Աղուանից արքայի պոռնկորդին Խաճկո-րեկ», որ կողմնակալ մըն էր (Ա. 23):

Վաչական կը հետաքրքրուի իմաստա-սիրական–աստուածաբանական հարցերով. հարցումներ կ'ուղղէ Մաթէ երէցին, Մա-միկոնեաններու Աբրահամ (եւ Մխնեայ Պետ-րոս) եպիսկոպոսներու եւ կը ստանայ գրաւոր պատասխաններ (Ա. 24, 25):

Կը վկայէ Աղուանից պատմիչը, թէ «Քաջն Վարդան ի Միհրական տոհմէն, որ յաւուրս Վաչականայ Աղուանից արքայի յԱղուէն ժողովոյն յարքայէն նախագահ

*եղեալ՝ բնաւորեցաւ ի Գարդման. եւ Գատրիկ ի Քարդեան (նախնիք սորա) ի յարքայիցն Պարսից, որք ի նորին հրամանէ Վաչականայ արքայի բնակեցան յԱղբիղ գաւառի»* (Գ. 10)։

*Վաչականի մահուան ոչ պարագաները եւ ոչ տարին յիշուած են։ Իրմով կը վերջանայ Աղուանից Թագաւորութիւնը։*

*Այս տուեալները, զորոնք յառաջ բերի Աղուանից Պատմութենէն, դժուարաւ կը դիմանան քննադատութեան եթէ փորձենք մի առ մի վերլուծել։ Նախ չունինք որ եւ է վկայութիւն ժամանակակից հայ եւ օտար աղբիւրներու մէջ «Աղուանից Վաչական բարեպաշտ արքայի» գոյութեան մասին։ Այն ամէնը, ինչ որ կը պատմուի Աղուանից Պատմութեան մէջ յայնորէն՝ վիպական նկարագիր կը կրէ։ Չեմ գտներ հոն պատմական կորիզ։*

*Վաչական պէտք է ծնած ըլլայ իբր* 460*ին. գահակալած իբր* 485*ին, վախճանած իբր* 570*ին. ուստի իբր* 110*ամեայ։*

*Եթէ իր օրով կենդանի էր Խոճկորիկ կողմնակալն» որ Արսվաղէն արքային «պոռնկորդին» կը ներկայացուի* (Ա. 23), 560, *Յովհաննէս Բ. Հայոց կաթողիկոսի օրով, ըլլալու էր առնուազն* 140 *տարեկան, որովհետեւ Արսվաղէն կ՚ապրէր Ե. դարու առաջին քառորդին։ Անհաւատալի է առհասարակ, թէ արքայածին մը այսպիսի փաղաքշական անուն մը կրած ըլլայ։*

*Կը յիշուին Ս. Գրիգորի եւ Ս. Հռիփ–*

սիմեանց նշխարները, որոնք Հայաստանէն Աղուանք բերուած են: 618ին, երբ Կոմիտաս կաթողիկոս բացաւ Ս. Հռիփսիմէի տաճարը, գտաւ նշխարները կնքուած Ս. Գրիգորի եւ Ս. Սահակի կնիքներով: Աւելցուց անոնց վրայ իր ալ կնիքը: Ուստի 618էն յառաջ չէր կրնար Մատթէ երէց նշխարներ տարած ըլլալ Աղուանք: «Քաջն Վարդան ի Միհրան տոհմէն», եթէ նախադասն եղած է Աղուէնի ժողովին, կ՚ենթադրէ այդ ժողովը գումարուած Ե. դարու կէսին: Յովհաննէս Բ. կաթողիկոս ի Գաբեղենից (557—574) իր թուղթին մէջ առ Աբաս կաթողիկոս, գրուած իբր 568ին, որ եւ է ակնարկութիւն չ՚ընէր Վաչական բարեպաշտ արքայի մասին: Այդ նամակին տակ ստորագրած է նաեւ Աբրահամ Մամիկոնեաններու եպիսկոպոսը, որ ըստ պատմագրին թղթակիցն եղած է Վաչականին:

Հարկադրուած եմ ըսելու, թէ Վաչական անուն թագաւոր գոյութիւն չէ ունեցած Զ. դարուն:

2. Մատթէ երէց Դարահոջոյ, փոխնաւոր: Մատթէ երէց յաճախ կը յիշուի Վաչականի պատմութեան մէջ. Վաչական «գտանէր զամենասուրբ նշխարս Գրիգոր[իս]ի եւ յոյժ հռչակելոյն Հռիփսիմեայ եւ Գայիանեայ ի Դարահոջ գեղջ, որ էր ի նահանգին Արձախոյ, զոր էր բերեալ երիցուն Մատթէ անուն կոչեցեալ՝ ի Յոհաննէ

Հայոց կաթողիկոսէն, զոր ունէր նորին մատանեաւ կնքեալ» (Ա. 20)։ «Ընդ աւուրս ընդ այնոսիկ առաքեաց արքայ զՄաթէ երէցն Դարահօջոյ (այլ. Դարանահու) հանդերձ պաշտօնէութ ի Սուհառ՝ պաշտօն առնել եւ պատարագս մատուցանել յանուն սրբոցն, որ անդ յայտնեցան։ Եւ մինչդեռ զաւուօքն կատարէին զպաշտօն յանկալեաց, նիրհ անկանէր երիցուն Մաթէի. ձայն լսէր ուժգին ասելով. Զսուրբն Գրիգորիս խնդրեցէք ընդ արեւելս։ Որ եղեւ խակ...» (Ա. 21)։ Աղուէնի ժողովին մասնակից էր նաեւ «Մաթէ Դարահօջոյ երէց» (Ա. 26)։ «Մաթէ երէց Դարահօջոյ» կը յիշուի նաեւ Բերդոյ վանքի մէջ գումարուած ժողովին մէջ, 705ին (Գ. 13)։

Աղուանից Պատմութեան մէջ զետեղուած է գրութիւն մ՚ալ, որ կը կրէ վերնագիրս. «Հարցումն Վաչականայ արքայի Աղուանից զՄաթէ երէց գիտնաւոր» (Ա. 24)։

Հ. Մ. Զամչեան, Պատմ. Հայոց, Բ., 219, այս Մաթէ երէցը համարած է «աշակերտ երանելւոյն Յովհաննու Մանդակունւոյ», ըստ Ե. դարու վերջին քառորդին։ Իր աղբիւրն եղած է հաւանօրէն Ա. 20 գլուխը, յառաջ բերուած ճառընտիրներու մէջ։ Բայց Մաթէ երէց, որ բերած էր Ս. Գրիգորի եւ Ս. Հռիփսիմեանց եւ Գայիանեանց նշխարհները «ի Յոհաննէ Հայոց կաթողիկոսէն, զոր ունէր նորին մատանեան

*կնքեալ», կարող էր ըլլալ միայն այն համանուն երէցն, որ իբրեւ թղթատար ուղարկուած էր Սիւնեաց Վրթանէս եւ Աղուանից Աբաս եպիսկոպոսներու. իբր 568ին Յովհաննէս Բ. Հայոց կաթողիկոսէն (557—574), կը գրէ կաթողիկոսը. «յուխտէ մերմէ զհաւատարիմ այր Մատթէոս քահանայ առաքեցաք առ ձեզ» (Գիրք Թղթոց, 79), «բերել զգրեալսն մեր առ ձեզ» (անդ, 83)։*

*Որչափ ալ Մատթէոս քահանայի ժամանակակցութիւնը կը համապատասխանէ «Վաչական արքայի» գահակալութեան տարիներուն, եւ «Մատթէ երէց» կարող է նոյնանալ «Մատթէոս քահանայի» հետ, բայց եւ այնպէս Աղուանից Պատմութեան մէջ դերակատար «Մատթէ երէցն Դարահոջոյ» չեմ կարող պատմական անձնաւորութիւն համարիլ։ Ինչպէս տեսանք § 1 հատուածին մէջ, Հոփհոփմեանց նշխարներու առաքումն Յովհաննէս Բ. կաթողիկոսէն, «նորին մատանեաւ կնքեալ», չի կրնար պատմական ըլլալ։ Պատմուածքը յօրինուած է 620էն շատ ետքը։*

*Յիշեցինք նոյնանուն «Մատթէ երէց Դարահոջոյ», որ 705ին ներկայ էր Բերդոյ վանքի ժողովին։*

Բայց ոչ առաջինն եւ ոչ երկրորդը կարող է ըլլալ այն Մատթէ երէց գիտնաւորն, որ, ինչպէս կ՚ըսուի, պատասխանած է Վաչական արքայի հարցումներուն։

Այս պատասխանները պահպանած է մեզի Աղուանից Պատմութիւնը այսպիսի վերնագրի տակ (Ա. 24).

Հարցումն Վաչականայ արքային Աղուանից զՄատթէ երէց գիտնաւոր:

Հց. Աստ արքայ. Հոգիք հրաժարեալք ի մարմնոյ զգայո՞ւն են, թէ անզգայ. եւ կամ կենդանիքս ննջեցելոցն. զիա՞րդ կարեմք օգնել:

(Պատասխանի). Աղաչելով զԱստուած պահօք եւ աղօթիւք... վչ. եւ մեղացն շնորհէ զթողութիւն» (էջ 94—96, Ղուկ.):

Այս գրութիւնը նախնաբար եղած ըլլալու է մասն գրուածքի մը, որ կազմուած էր Հարցմամբ եւ պատասխանով: Այս տեղ երկու հարցումներ կ՚առաջարկուին եւ կը տրուին անոնց պատասխանները:

Աղուանից պատմութեան խմբագիրը, ինչպէս կ՚երեւայ, տեղափոխութիւններ կատարած է հոն: Նախնականն պէտք է եղած ըլլայ այսպէս.

ՀԱՐՑՈՒՄՆ. Հոգիք հրաժարեալք ի մարմնոյ զգայո՞ւն են, թէ անզգայ:

ՊԱՏԱՍԽԱՆԻ. [Եւ] որք ասացին անզգայ լինել զհոգին՝ ելեալ ի մարմնոյ, յանդիմանեմք զնոսա աստուածաշունչ գրոց վկայութեամբ... (էջ 94, տ. 23—96, 10):

ՎՉ. Թէ արդարեւ զգայուն են եւ առաւել իմաստնագոյն հոգիքն հրաժարելոց ի մարմնոյ:

ՀԱՐՑՈՒՄՆ. *[Եւ կամ] Կենդանիքս ննջեցելոցն զի՞րդ կարեմք օգնել։*

ՊԱՏԱՍԽԱՆԻ. *Աղաչելով զԱստուած պահօք եւ աղօթիւք եւ պատարագօք...* վջ. *Եւ թէ որք կատարեն զյիշատակ սրբոց... եւ մեղացն շնորհէ զթողութիւն։*

(*էջ* 94, *տ.* 12—15 *եւ* 96, *տ.* 11—16։)

*Այս դասաւորութիւնը կ'արդարացնէ էջ* 94, *տ.* 20. *«իսկ յորժամ ի բաց գնիցեն, որպէս եղեւն ասացեալ, սրատեսիկ եւ քաջիմաց եւ առաւել զգայուն լինին»։*

*Այս հատուածը կը պատկանի հաւանօրէն Ե. դարու երկրորդ կէսին թարգմանուած Ս. Հօր մը գրուածքին, զոր չեմ կարող այժմ յանուանէ յիշել։*

3. Աբրահամ եպ. Մամիկոնէից, *կը յիշուի Զ. դարու երկրորդ կէսին. հաւանօրէն յաջորդն է Տարօնի եպիսկոպոսական գահին վրայ Մերշապուհ Տարօնոյ եւ Մամիկոնէից եպիսկոպոսին, որ վախճանած պէտք է ըլլայ իրր* 560*ին։ Աբրահամ կը յիշուի իրր* 568*ին Յովհաննէս Բ. կաթողիկոսի Սիւնեաց Վրթանէս եւ Աղուանից Աբաս եպիսկոպոսներու գրած թղթերուն մէջ։ Աղուանից պատմագիրը յառաջ բերած է Աբրահամ եպիսկոպոսի անունով հատուած մը, այսպիսի վերնագրով.*

Երանելւոյն Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչական Աղուանից արքայ թուղթ սակս ննջեցելոց։

*Միտ դիր, ով սիրելի, զի եթէ գիտութեան եւ անգիտութեան յաղագս հոգւոցն ննջեցելոց ասիցեմք ինչ բանս. ո՞վ ոք այնպէս տխմարք, եթէ ոչ հանգուցեալքն...: Վչ. խնդրեմք զթողութիւն մեղաց յԱստուծոյ ներողութենէն»* (Ա. 25, էջ 9—97, *իբր* 21 *տող բան*):

*Աղուանից պատմագիրը «Թուղթին» առաջին հատուածն միայն յառաջ բերած է: Նոյնը ունինք Հայոց Կանոնագրքին մէջ երեք գլխակարգութեամբ: Հատուածներս Կանոնագրքին մէջ առնողը (Յովհ. Իմաստասէր) այս գլխակարգութիւնները իբրեւ ուրոյն գլուխ համարելով Ա. հատուած ներկայացուցած է: Ուղիղն է հետեւեալը.*

Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչական Աղուանից արքայ:

ա. *Եթէ ոչ են հոգիք ննջեցելոցն ի գիտութիւն աստի իրացս:*

բ. *Եթէ որ աղօթեն առ նշխարս վկայից Աստուած է ընդունիչ աղօթից եւ հատուցանող:*

գ. *Եւ եթէ հոգիք վախճանելոց ոչ են միմեանց ի ծանօթութիւն:*

Ա. *Միտ դիր, ով սիրելի, զի եթէ գիտութիւն եւ անգիտութիւն...*

Բ. *Եթէ ոք յաղագս վկայիցն Աստուծոյ ի տարակուսանս իցէ...*

Գ. *Իսկ յաղագս ծանօթութեան առ միմեանս...:*

կջ· Ըստ աւետարանին ընդունին հրաւիրեալք արքայութեան:

Ձեռագիրք, Վիեննա, Թ. 903, թղ. 116բ—118ա եւ այլն:

Հրատ. Կանոնագիրք Հայոց, Թիֆլիս էջ 198—201:

Լատիներէն թարգմանուած՝ Mai, X, 2, p. 299—300.

Թէ հատուածս Աբրահամ եպիսկոպոսի գրչէն է, չեմ ուզեր կասկածի ենթարկել: Բայց չկայ որ եւ է կռուան, գրուածքս «Թուղթ» նկատելու համար եւ «Թուղթս» Վաչական թագաւորի ուղարկուած ըլլալու համար:

Ձեռագիրներու մէջ Աբրահամի ընծայուած է նաեւ Եփեսոսի ժողովին պատմութիւնը այսպիսի վերնագրով.

«Թուղթ Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչագան արքայ Աղուանից. Պատմութիւն վասն ժողովոյն Եփեսոսի, որ եղեւ ի ժամանակս Թէոդոսի փոքու վասն ամբարշտին Նեստորի»: Նոյնը կը գտնուի նաեւ այս խորագրի տակ. «Երանելւոյն Փիլաքսիանոսի Նարովկայ սրբոյ եպիսկոպոսի պատճառ հաւատոյ վասն... սուրբ ժողովոյն Եփեսոսի... ի խնդրոյ տեառն Կոմիտասայ Հայոց կաթողիկոսի»: Բուն հեղինակն է Վրթանէս Քերթող, գրած իր Շրջաբերականին մէջ իբրեւ «Պատճառ ժողովոյն Եփեսոսի»: Այս մասին տես Ակինեան, Վրթանէս

*Քերդող եւ իր երկասիրութիւնները. Հանդ. Ամս.* 1910, էջ 39:

4. Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց (549—559/60): *Ունինք իր անունով գրուածքս, զոր կ'արժէ յիշել այս տեղ. թէեւ Աղուանից պատմիչը որ եւ է յիշատակութիւն չէ ըրած այս մասին:*

Հարցմունք յաղագս մարմնաւորութեանն Տեառն զանազանք Վաչականի Աղուանից իշխանի ընդ Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի եւ իմաստասիրի:

Հարցումն. *Սահմանել զաստուածութիւնն կարողութի՞ւն իցէ ումեք ընդ սահմանելիս*: Պատասխանի. *Հարկաւոր է ինձ յայսմ վայրի կրկին առնուլ զէմս...*»:

*Հրատարակած Գ. Տէր-Մկրտչեան, Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս. Վաղարշապատ* 1902, էջ 22—39 (*Արարատ* 1902, էջ 183—200):

*Գրուածքս կեղծիք մըն է Ը. կամ Թ. դարու. ծանօթ է* 714—717 *թարգմանուած գործերու (Կիւրղի Պարապմանց եւն). այս մասին խօսած եմ Հանդ. Ամս.* 1904, էջ 105—107:

5. «Սահմանադրութիւն կանոնական ի Վաչագանայ Աղուանից արքայէ եդեալ ի ժողովն որ Աղուէնն եղեւ:

Յամս Վաչականայ Աղուանից արքայի բազում հակառակութիւն լինէր ի մէջ աշխարհականաց, քորեպիսկոպոսաց եւ քա–

հանայից, ազատաց եւ ռամկաց։ Ապա կամ եղեւ արքայի առնել ժողով յԱղուէնն բազմամբոխ ատեան յամսեանն մարերի, որ օր ԺԳ. էր ամսոյն։

*Ես Վաչական Աղուանից արքայ եւ*
*Շուփհաղիշոյ արքեպիսկոպոս Պարտաւայ,*
*Մանասէ եպիսկոպոս,*
*Յունան Հաշուայ եպիսկոպոս,*
*Անանիա եւ Սահակ [եւ] Ուտւոյ քորեպիսկոպոսք,*
*Յովսէփ Կաղանկատուաց երէց,*
*Մատթէ Պարտաւայ երէց,*
*Թոմա Թաղաւորի դրան երէց,*
*Պաւղոս Գեղաձայ երէց,*
*Շմաւոն Յուայ քորեպիսկոպոս,*
*[Մատթէ Դարահոձոյ երէց],*
*Աբիկազ Բեթայ երէց,*
*Ուրբաթ Այրմանուշաց երէց,*
*Յովէլ եւ Պարպ եւ Միքէ եւ Յակոբ երիցունք եւ ազատ մարդիկ եւ նահապետք Արցախոյ եւ Բակուր Կաղանկատուաց նահապետ, եւ այլք բազումք, որք միաբան առաջի իմ եկին ի հանդէս ի հովացի տեղւոջ յԱղուէնն եւ կարգեցաք այսպէս՝*

ա. *Երիցունք, որք ի չէնս լինին...* (*Ա—ԻԱ. կանոնք*)։ *Կ՚աւարտի.*

*«Զայս պայման արարին եպիսկոպոսքն եւ քահանայք եւ ազատ մարդիկ առաջի արքային, թէ ի մեր եպիսկոպոսաց եւ յերի-*

ցանց եւ յեկեղեցւոյ բերանոյ օրհնեալ եղիցի Թագաւորն Թագուհեաւն եւ զաւակաւն հանդերձ եւ յամենայն աշխարհէս, որք աստ ժողովեալս էն, օրհնեալ եղիցին:

Եւ զայս հրամանս մատնեցին.

Մուծիկ արքայի հրամանատար,
Միհրաւրիկ հազարապետ,
Մարութ, Ազգապետք՝
Տիրադգ,
Ասպրակոս,
Շամայ,
Բակուր <Կաղանկատուց նահապետ>
Առատան,
Արշէս,
[Վարդան Քաջ] Գարդմանայ տէր,
Խուրս Գերմանոսան,
Խոպեան Փիրոզ նահապետ,
եւ ամենայն ազատք Աղուանից:

Վասն առաւել (հաստատութեան) գրոյս Վաչականայ արքային Աղուանից մատանին եդաւ ի վերայ:

Պատմ. Աղուանից, Ա. 26 (էջ 97—103):

Նոյնը Հայոց Կանոնագրքին մէջ. «Սահմանադրութիւն կանոնին Վաչագանայ Աղուանից արքայի եղեալ ի ժողովին որ յԱղուանս եղեւ:

Վիեննա Թ. 903, թղ. 142ա—144ա:

Թարգմ. լատիներէնի. A. Mai, Scriptorum veterum nova collectio e Vaticanis co-

dicibus edita, t. X, 2, Romae 1938, p. 314—316:

*Այս Կանոնները Յովհաննէս Օձնեցի իր Հաւաքած Կանոնագրքին մէջ չէ առած: Հաւանօրէն իրեն անծանօթ մնացած է ան: Բայց կցուած է ապա այդ Հաւաքածոյքին, յամենայն դէպս 1098էն յառաջ, երբ օրինակուած է մեզի ծանօթ հնագոյն Կանոնագիրքն Հայոց:*

*Կանոններուս նախաբանին եւ վերջաբանին համաձայն սահմանուած են անոնք ժողովի մը մէջ, որ գումարուած է Վաչական արքայի ամարանոցին մէջ որ յԱղուէն, անոր իսկ ներկայութեամբ եւ վաւերացուած արքայակնիք մատանիով:*

*Չկայ որ եւ է պատճառ կասկածելու կանոններուս վաւերականութեան մասին:*

*Ժողովքին գումարման ամիսն եւ օրը կը նշանակուի. «մարերի ԺԳ»: Դժբախտաբար չենք գտներ հոն որ եւ է նշմար ժողովքի գումարման տարւոյն համար, որ կը նշանակուի սովորաբար Պարսից Թագաւորներու գահակալութեան տարւով:*

*Նատի առնելով, որ ժողովը գումարուած է յԱղուէն «ի հովացի տեղւոջս», «յամսեանն Մարերի, որ օր ԺԳ. էր ամսոյն», կրնանք թերեւս հետեւցնել ասկէ, թէ ժողովը տեղի ունեցած է ժամանակ մը, երբ արքայական տունը եկած էր ամարանոց, որ սովորաբար գարնան վերջերը կը պատահի:*

*Արդ Մարերի ամիսը 336—459 տարիներուն կը համապատասխանէր յուլեան տոմարի Մայիս 31—1ին. իսկ 460—579 տարիներուն ապրիլ 30—1ին: Եթէ ամարանոց եկելու ամիս՝ մայիսը նկատի առնենք, հարկադրուած պիտի ըլլանք 415—459 շրջանի 44 տարիներէն մին ենթադրել ժողովին տարին: 415ին մերձաւորապէս այցելեց երանելին Մաշտոց Աղուանից աշխարհը, ուր գտաւ Թագաւորական գահին վրայ Արսվաղէն արքան եւ եպիսկոպոսապետական աթոռին վրայ Երեմիա եպիսկոպոսը, որոնք ամէն կերպ ձեռնտու եղան վարդապետին դպրոցներ բանալու երկրին մէջ եւ հայ նորագիւտ այբուբենը ուսուցանելու եւ մանկտին հայ գրականութեան ընտել եւ ծանօթ ընելու: Թէ քանի տարի այնուհետեւ ապրեցաւ մեծոգի Թագաւորը, չենք գիտեր: Մեզի անծանօթ է նաեւ, թէ ո՞վ յաջորդեց անոր գահին վրայ: Եթէ ենթադրաբար ընդունինք անոր մահը 430ին, եւ անոր յաջորդին գահակալութեան տարիները 430—450, յեցած այս Յիշատակարանին վրայ կարող ենք Արսվաղէն Թագաւորին որդին եւ յաջորդը անուանել Վաչական:*

*Ժամանակի այս միջոցը այն շրջանն է, երբ Պարսից Դուռը կը խորհէր փոքր Թագաւորները բառնալ եւ միահեծան իշխել Պարսկաստանի նոր միացած ժողովուրդներու վրայ: 426ին, Արտաշէս Թագաւորի մահէն*

ետքը անոր յաջորդ չնշանակեց պարսիկը։ Այսպէս հաւանօրէն նաեւ Աղուանքի մէջ Վաչականի մահէն ետքը։ Ղ. Փարպեցի 451ի դէպքերուն Աղուանից ներքին եւ արտաքին գործոց վերակացու կը ճանչնայ երկրին «հազարապետը» միայն։

Աղուանից եկեղեցւոյ հովուապետն էր 415ին Երեմիա եպիսկոպոս։ Վաչականի օրով կը յիշուի Շուփհաղիշոյ արքեպիսկոպոս։

Աղուէնի ժողովի կանոնները սերտ աղերսի մէջ են Շահապիվանի ժողովին կանոններու հետ (հմմտ. կան. Ժ = ԺԳ։ ԺԱ = Դ, Թ։ ԺԲ = ԺԱ։ ԺԵ = Բ։ ԻԱ = ԺԷ)։ Շահապիվանի ժողովը գումարուած էր 444ին։ Կ'ենթադրեմ թէ Աղուէնի ժողովը գումարուած ըլլայ անկէ ոչ շատ ուշ։ Հոս քանիցս կը յիշուի Կանոնագիրք մը («որպէս ի Կանոնան գրեալ է՝ պատուհաս դիցեն». ԺԵ. «կանոնիւք դատեսցին». ԺԶ. «որ ի կանոնս գրեալ է». ԻԱ.), որուն համաձայն կ'առաջնորդուին։

Այս եզրակացութիւնս կը հաստատեն հետեւեալ կէտերը. 1. Կանոնները գրուած են Ե. դարու առաջին կէսին գործածական գրական հայերէնով, զոր սովոր ենք դասական անուանել. հայերէն մը, որ միայն այդ շրջանին յատուկ է։ 2. Գրուածքս միակ յիշատակարանը կ'ընծայէ Ե. դարու առաջին կէսին Աղուանից աշխարհին մէջ գրական ճանչցուած հայերէն լեզուին. որ քերակա-

*նութեամբ կը նոյնանայ հայ Միջնաշխարհի գրական լեզուին հետ, կը տարբերի անկէ բառերով, որոնք յատուկ եղած են Հայ-աղուան ժողովուրդին. այսպէս «գայթանք առնել (գայթակղական գործ մ՚ընել. Դ), խոստակ (մանուկ. Զ). վամ (ԺԷ. ԺԹ. ՄԵ), մատանեմ (կնքել մատանեաւ) պայմանեմ, թագուհի (փոխ. դշխոյ) եւ այլն:*

գ. *Ազգապետներու շարքին յիշուած «Վարդան Քաջ Գարդմանատէր. Խուրս, Գերմանոսան» տեղիքը ես կը կարդամ ջնջելով «Վարդան Քաջ», այսպէս. «Գարդմանատէր Խուրս Գերմանոսան». իմացի՛ր* Խուրս որդի Գերմանոսի(*), տէր Գարդմանից: *Այս վերականգնումով միանգամ երեւան կու գայ Կորիւնի գովութեամբ յիշատակած «իշխանն Գարդմանից, որում Խուրսն կոչէին» (ԺԲ. 1). որ իբր 417ին հիւրընկալած էր Մաշտոց վարդապետը:*

*«Վարդան քաջ» գրուած է Աղուանից Պատմութեան խմբագրին, որուն համաձայն Միհրական տոհմէ «Վարդ ծնաւ զՔաջն Վարդան, որ շինեաց զբերդն Գարդմանայ զերիս ամս...» (Բ. 17). եւ երրորդ անգամ անդրադառնալով անոր կը գրէ. Վախտանգ Վարազմանեան. եւ նախնի է սոցա Քաջն Վարդան ի Միհրական տոհմէն, որ յաւուրս Վաչականայ Աղուանից արքայի յԱղուէն՝ ժողովոյն յարքայէն նախագահ եղեալ՝ բնաւորեցաւ ի Գարդման» (Գ. 10): Ժողովին նա-*

խագահն էր ինքնին Թագաւորը։ Խմբագիրը Կանոններու վերջը «ազգապետ»ներու չարքին գետեղելով «Վարդան Քաջը» մոռցած է առընթեր աւելցնելու թէ «յարքայէն նախագահ» կարգուած էր ժողովին (տես վերը § 2)։

Աղուէնի ժողովին այս Կանոնները վերագարձնելով Ե․ դարուն, կ՚ունենանք Շահապիվանի ժողովի Կանոններուն կից երկրորդ կանոնախումբ մը, յօրինուած Աղուանից աշխարհին մէջ։

Միաժամանակ Աղուանից պատմութեան համար կը յայտնուի Արսվաղէն թագաւորին յաջորդ մը Վաչական անուն։

Այն պարագան որ Միքայէլ Աղուանից կաթողիկոս, երբ քննութեան կ՚առնէր Շամքորի Բերդոյ վանքին մէջ 705ին Վարազոյ իշխանին մերձամուսնութիւնը երրորդ գծի վրայ Վարդուհեայ հետ (Գ․ 13) վկայութեան չէ կոչած Աղուէնի ժողովին Սահմանադրութեան ԺԷ․ կանոնը «Այր զերրորդ ազգի կին մի առասցէ»․ եւ դարձեալ Յովհաննէս Իմաստասէր կաթողիկոս Աղուէնի ժողովին Կանոնները իր կազմած Կանոնագիրքին մէջ չէ առած (իրր 725ին)․ ենթադրել կու տայ, թէ Ը․ դարու առաջին կէսին տակաւին Հրապարակի վրայ մատչելի չէին այս Կանոնները․ ուստի անոնք գտնուած ըլլալու են Ը․ դարու երկրորդ կէսին կամ Թ․ դարուն որ եւ է վանքի մը խուլ անկիւնը։

*Աղուանից պատմագիրը չկարենալով ստուգել պատմութեան համար այնքան թանկագին Յիշատակարանին գրութեան ժամանակը, այս Յիշատակարանին վրայ յեցած ստեղծած է Զ. դարուն համար անգոյ «Վաչական բարեպաշտ արքայ Աղուանից»:*

*Յիշատակարանս կը յիշէ Վաչականի մէկ «դուակը», դժբախտաբար առանց անունը տալու: Աղուանից պատմագիրը կը խօսի դստեր մը մասին, Խնչիկ անուն, տղայ հասակաւ, յոյժ սիրելի արքային»* (Բ. 23):

6. ՎԿԱՅԱԲԱՆԱԿԱՆՔ

1. *Մէկ գրչէ են* Ա. 5, 6 (*մասամբ*), 14—23 *գլուխները, նախնաբար գրուած իբրեւ մէկ ամբողջութիւն:*

ա. [*Ցուցումն բերմանց եւ պարարտութեանց սահմանացն Աղուանից, զինչ ունի ի պէտս մարդկան:*] *Խորագրութիւնս խմբագրէն է: Գրուած է իբրեւ նախաբանութիւն, սկզբնաւորութեամբս. «Բարեվայելուչ եւ ցանկալի է աշխարհն Աղուանից...»* (Ա. 5):

բ. [*Գիտութիւն երեւմանն Աստուծոյ մերոյ մերոյս արեւելեայց:*] *«Ի համանել ժամանակի երեւման Արեգականն արդարութեան...»* (Ա. 6): *Այս գլուխի առաջին հատուածը, մինչեւ «Թադէոս: Սա եկեալ ի Հայս յԱրտազ գաւառ, անդ առնու զվախճան մարտիրոսութեան ի Սանատրկոյ արքայէն Հայոց» իր շարունակութիւնն ունի* Ա. 14. *«(Ապա) եկն հռչակելի պատերազմողն եւ*

*երիցս երանելի Գրիգոր...» մինչեւ «Եւ անդ է ամեն նշխարք երանելեացն մինչեւ ցայսօր»* (էջ 40—50, *Ղուկասեան*)։

*Այս բաժնին մէջ կարճառօտիւ յիշելէ ետքը Թադէի առաքելութիւնն յԱրտազ, համաձայն Թադէի ծանօթ Վկայաբանութեան, որ խմբագրուած է Զ. դարու առաջին կէսին, կ'անցնի պատմել լայն չափով Գրիգորի Վարքը, հետեւելով Ագաթանգեղոսի* (էջ 40—45)։ *Տարունակութեան համար կ'օգտուի Փաւստոսէն* (էջ 45—49 = *Փաւստ.* Գ. 3, 5, 6, 7)։

2. Զաքարիայի եւ Պանդալէոնի նշխարները եւ անոնց գիւտը։ *Ս. Գրիգորիս երբ կը մեկնի Հայաստանէն աւետարանելու քրիստոնէութիւնը Աղուանից եւ Մասքութներու, իր հետ կ'առնէ «զմեծ քահանայապետին եւ մարտիրոսին Զաքարեայ, զհօրն Յովհաննու (Մկրտչին) ի պատուական արենէն, նշխարս զսրբոյն Պանդալէոնի, որ դաւանեաց զբարւոք դաւանութիւնն Քրիստոսի եւ պսակեցաւ ի Նիկոմեդիա քաղաքի»։ Այս նշխարներու մէկ մասը կը գետեղէ Աղուանից Յոփ քաղաքին մէջ, ուր կը կառուցանէ եկեղեցի մը, եւ միւս մասը կը պահէ քովը։ Նահատակուելէն ետքը իր աշակերտները կը բերեն մարմինը Ամարաս եւ հոն կը թաղեն. անոր հետ մէկտեղ նաեւ «զսուրբ արիւնն Զաքարիայ ի միում տապանէն չչի եղեալ եւ ի միւսումն չչի զերանելւոյն Պանդալէոնի*

*գնչխարս»: Յետ ժամանակաց Ցուի քաղաքը կը նուաճուի Պարսիկներէն. եկեղեցւոյն պաշտօնեաները կը նահատակուին. անոնց նշխարները Ասորի արեղաներ կը տանին Հակու:*

*Գրիգորիս հաւանօրէն Հայաստան գտած էր Ս. Զաքարիայի եւ Ս. Պանդալէոնի նշխարները. բայց թէ հոն ուսկի՞ց եւ որմէ՞ բերուած էին, չկայ որ եւ է ակնարկութիւն: Փաւստոս, որ պատմագրին գլխաւոր աղբիւրն է, խօսք չէ ըրած այս նշխարներու մասին:*

*Զաքարիա հայրն Յովհաննէս Մկրտչի նկատուած է «մարտիրոս». վասն զի իրեն մերձեցուած է Մատթ. ԻԳ. 35 եւ Ղուկ. ԺԱ. 51: Այս տեսութիւնը, զոր Յովհ. Ոսկեբերան անորոշ նկատած էր, Յայսմաւուրքներէն իբրեւ ստոյգ յառաջ բերուած է. որոնց ազդեցութեան տակ գտնուած է պատմագիրս: Ան ոչ միայն «մարտիրոս» ներկայացուցած է Զաքարիան, այլ եւ անոր «ընդ մէջ տաճարի եւ սեղանոյ» թափուած արիւնէն կաթիլներ իբրեւ նշխար պահպանուած գիտէ Աղուանից աշխարհին մէջ: Աղուանից պատմութեան այն տեղիքները, որ կը հային Զաքարիայի արիւնին, խնամով ի մի ամփոփած է, իբրեւ բարեպաշտ աւանդութիւն, Բոլլանդեան* P. Peeters, Acta Sanctorum novembris, t. III (1910, Bruxellis) 24—26.

3. Վկայաբանութիւն Ս. Պանտալէոնի (*Ամենառիւծ, նաեւ կոչուած* Panteleemon,

Ամենօրյա)։ Սուրբն Պանտալէոն վկայած է պատանի հասակին Մաքսիմիանոս կայսեր (286—305) օրով ի Նիկոմեդիա գլխատմամբ։ Իր վկայաբանութիւնն ունինք Հայերէն, թարգմանուած Ե. դարու առաջին կէսին, հրատարակուած՝ Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Բ., էջ 189—201. ուր կ'ըսուի թէ կայսեր հրամանն էր «զմարմին նորա այրել ի հուր. եւ արարին որպէս հրամայեաց։ Իսկ զնշխարս սրբոյն Պանտալէոնի բարձին քրիստոնեայք քաղաքին Նիկոմեդացւոց եւ թաղեցին արտաքոյ քաղաքին ընդ կողմն արեւելից ուր եւ վկայեաց սուրբն Պանտալէոն» (էջ 201)։ Նախ քան վկայելն «ձայն եղեւ յերկնից... զայսս պիղծս հալածեսցեն նշխարք ոսկերաց քոց. եւ որ ոք ապաւինեսցին ի քեզ՝ կատարեսցին խնդրուածք նոցա քոյով բարեխօսութեամբ» (էջ 200—201)։

Պատմագիրը օգտուած է այս վկայաբանութենէն. ասէ ուսած է թէ Պանտալէոն «զաւանեաց զբարուոք զաւանութիւնն Քրիստոսի եւ պսակեցաւ ի Նիկոմեդիա քաղաքի»։ Եւ երբ կը գրէ, թէ «որ յաշխարհին հեթանոսք էին, երթեալ ջերմեռանդք եւ ախոյեանք հող անունին յեկեղեցւոյն (Յովի քաղաքին), ուր նշխարք Սրբոցն կային, թէպէտ եւ հեթանոս էին, լինէր մեծ բժշկութիւն» (Ա. 19), յայտնապէս Պանտալէոնին եղած խոստումին արդիւնքն էր։

Առանց տարակուսի ու Զաքարիայի եւ

ոչ ալ Պանտալէոնի անունները անխորհրդածաբար ընտրուած են։ Ինծի կ'երեւայ թէ այս անունները հակադրուած են Ս. Յովհաննու եւ Ս. Աթանագինէի, որոնց նշխարները Ս. Գրիգոր բերած էր Հայաստան։

Պանտալէոն վկայի նախապատուութիւնը թերեւս յեցած է Աղուաններու «Պանտայ վանքէն», որ կառուցուած էր Երուսաղէմ։ «Պանտայ» աղաւաղուած է իբրեւ Պանտալէոն անունի կրճատուած ձեւը։ Այս վանքի մասին կը գրէ Անաստաս Վարդապետ Է. դարուն, իր «վասն վանորէից Հայոց որ յԵրուսաղէմ» աշխատասիրութեան մէջ. «Պանդայ վանքն, որ սուրբ Կարապետին է, յարեւելից կողմանէ ի Ձիթենեաց լերինն կայ, նոյնպէս արքունի ծախիւք շինեալ յանուն սուրբ Կաթողիկէին որ ի Վաղարշապատ քաղաքի, զոր Աղուանք ունին մինչեւ ցայժմ» (Հայապատում, Բ., էջ 227)։ Այս վանքին մէջ էր իբր 560/76ին Թովմաս աղուան վանական, որ կը յիշուի Յովհաննէս Երուսաղեմացւոյ առ Աբաս Թուղթին մէջ։ Աղուանից պատմիչը, որ օգտուած է Անաստասի գրուածքէն, աւելին գիտէ. «Պանդայ վանքն, որ յարեւելից կողմանէ Ձիթենեաց լերինն կայ. Պանտոն անն ձգնաւոր յԱղուանից եղեալ նախաշինող, եւ այժմ Պետրոս աղուան քահանայ ունի» (Բ. 52)։ Այս յաւելուածը ուշ ժամանակէ է։

4. «Կեանք եւ վարք եւ կարգաւորութիւնք Աղուանից, որ ի Վաչականէ արքայէ

եղան· եւ զիւտ նշխարաց սրբոց» (Ա· 16—23· էջ 52—94)։

*Վաչականի կը հային Գլ· 16—18· աղբիւրն է Ղ· Փարպեցի։ Պերոզ կը պատմուի Հեփթաղներէն· Վաղարշակ կը թագաւորէ· կը շնորհէ կրօնի ազատութիւն· Վաչական թագաւորական գահ կը բարձրանայ· կը վերընդունի քրիստոնէութիւնը· երկրին մէջ քրիստոնէական կարգ եւ սարք կը հաստատէ, կը բանայ դպրոցներ, եւ այլն։ Ձեւուած է նմանութեամբ Վահան Մամիկոնեանի վարքին· այն տարբերութեամբ որ Վահան սրով իր զէնքին եւ քաղաքականութեան՝ մարզպանութեան կը բարձրանայ, Վաչական անաշխատ կ'ընդունի Աղուանից արքայական թագը։ Վաչական խիստ միջոցներ ձեռք կ'առնէ ջնջելու հեթանոսութիւնը, բառնալու դիւթութիւնը, կախարդութիւնը եւ մատնահատութեան աղանդը։ Կը զգացուի հոս Կորիւնի եւ Շահապիվանի ժողովին որոշումներու ազդեցութիւնը։*

5· Յայտնութիւն Նշխարաց Ս· Զաքարիայի եւ Երանելւոյն Պանտալէոնի (Ա· 19)։

*Ցոլի մէջ նահատակուած վկաները կը յայտնուին եւ մատնանիշ կ'ընեն այն տեղը Ցոլի մէջ, ուր պահուած էին նշխարները։ «Եւ ապա բացեալ գտին զնշխարս երանելեացն· եւ գիր ի վերայ զայս օրինակ·* Ես Գրիգորիս բերի զայս սուրբս Զաքարիա զհայր Յովհաննու, եւ զՊանտալէոն Երանելի,

որ վկայեաց ի Նիկոմեդիա քաղաքի»։ Չէ *բացուած, թէ ինչ լեզուով եւ գրերով գրուած էր այս վկայականը։ Պեղում կատարողներն են Յակոբ երէց եւ Խոճկորիկ Նախարար. որոնք հաւանօրէն հայերէն կարդալ միայն գիտէին. ուստի պէտք է հաստատել թէ Գրիգորիս հայերէն տառերով եւ լեզուով արձանագրած էր վկայականս, Գ. կամ Դ. դարուն։ Այսքան միամտութիւն հեղինակին քով։*

*Գիւտին լուրը կը հասնի արքունիք։ Վաչական կը հասնի հոն եկեղեցականներու բազմութեամբ. չուին մէջ էին Թագաւորն, Թագուհին եւ Մանասէ դրան երէցը։ Առօք, փառօք եւ օրհներգութիւններով կը փոխադրեն Ս. Նշխարքները արքունիք, ուր եւ ի պահ կը դրուի։*

6. Գիւտ նշխարաց Ս. Գրիգորիսի Աղուանից կաթողիկոսի (*Ա.* 20—23)։

*Վաչական հետամուտ է այժմ Ս. Գրիգորիսի նշխարներու գիւտին. ան «տեղեկացեալ էր ի հնագրացն պատմութեանց (պատմութենէ), եթէ ի Վատնեայ դաշտին կատարեցաւ երանելին»։ Ակնարկուած աղբիւրը անշուշտ Փաւստոսի Պատմութիւնքն է. թերեւս նաեւ Աղուանից Պատմութեան Ա. 14 գլուխը։ Թագաւորը աղօթք եւ պահք կը յանձնարարէ ժողովուրդին։ Առած հետը նորագիւտ նշխարներն եւ Հայաստանէն նոր բերուած Ս. Գրիգորի, Հռիփսիմէի եւ Գայիա*

նէի մասունքները եւ բազմութիւն մը կղերական դասէն՝ կը մեկնի արքունական կառքերով դէպի Ամարաս: Արդէն այլ եւ այլ տեսանողներուն մատնանշուած էր Գրիգորիսի նշխարաց տեղը: Պեղումը կը յայտնաբերէ: Նշխարհները կը փոխադրուին մեծ շքաշուքով Գիւտական գիւղը: Այդ շուքին մէջ էր նաեւ «աւագ եպիսկոպոսապետն Տուփհաղիշոյ»:

Այստեղ կը վերջանան Վաչականի կեանքն եւ Գործը: 9—11 հատուածները մէկ հեղինակ կը մատնանշեն: Անոր անունը անծանօթ է. ժամանակը պէտք է ենթադրել Ժ. դարու երկրորդ կէսին. թերեւս ըլլայ մին այն դպրապետներէն, որոնք «ի սան խրում կարգեաց» Սահակ—Մեսրոպ, որ էր «խնդրող գրագիտութեան» (Գ. 23): Հեղինակը ունեցած է իր տրամադրութեան տակ Նորագիւտ Սահմանադրութիւնն Աղուէնի ժողովին. ան չէ կրցած ճշդել ժողովին գումարման տարին. ենթադրութեամբ համարած է Վաչականը Ե—Զ. դարու վերջին եւ առաջին կէսերուն: Վաչականէն ածանցած է Վաչէ նախորդ մը: Թագաւորէ մը, որ հետաքրքրուած է երկրին բարեկարգութեամբ, թելադրուած է յորինելու անոր վարքը կամ վէպը: Հոն չկայ որ եւ է պատմական հող, բայց կանոններէն, զոր համարեցանք 430—450 շրջանէն: Գրական տեսակէտէ սակայն գնահատելի պէտք է դատել վէպս, որ գրուած է ծաղկեալ ոճով:

*ժամանակի տուգման համար ուշադրաւ է տեղիքս. «քահանայապետ Թորգոմեան աշխարհին եւ* Ասքանազեան գաւառին» (*Ա*. 14, *էջ* 41)։ *Ասութիւնս «ասքանազեան գաւառ», ինչպէս այլուր (Կորիւն, Վարք Մաշտոցի, էջ* 67) *ապացուցած եմ, առաջին անգամ Յովհաննէս Դրասխանակերտցին մուծած է հայ գրականութեան մէջ. ուստի հեղինակս ծանօթ էր պատմագիր կաթողիկոսէն* 930*ին հրապարակ գրուած գործին*։

*Աղուանից Պատմութեան Ա*. 27—30 *գլուխներուն պիտի անդրադառնամ յետոյ, երբ քննութեան առնեմ Բ*. 29 *եւ յաջորդ գլուխները*։

7. Վկայք Դիզափայտ լերին։ *Մազքթաց Սանեսան արքայի որդիք Մոսէս, Դանիէլ, եւ Եղիա, որոնք աշակերտած էին Ս. Գրիգորիսի, հօրը ձեռքով կը նահատակուին սուսերահար,* 3870 *հոգւոյ հետ։ Կը յայտնուին անոնց նշխարները «ի ժամանակս Վաչականայ Աղուանից արքայի եւ Գանկայ Ամարասայ եպիսկոպոսին. եւ կը փոխադրուին նոյն լեռան Կատարոյ վանքը։ Վկայարանք կը հրդեհուին թշնամիներէն «յառաջ քան զանաշաւորին տեառն Արտայ», թէեւ վերնագրին մէջ կ՚ըսուի, թէ եղեւ «երեւումն նշխարացն յաւուրս հայրապետութեան Արտայ»* (*Բ*. 5)։

*Նմանութեամբ Հայոց Սուքիասեանց Բօշից*։

8. Տեսիլ Վեհիկի եւ յայտնութիւն նշխարաց սրբոց:

*Աբաս կաթողիկոսի առաջին տարւոյն* (551*) *Վեհիկ երեք տեսիլք կ'ընդունի յընթացս երեք տարիներու. կը յայտնուին* 1. *Պօղոս, ձեռքին խաչ*: 2. *Ս. Վարոս, որ կ'ըսէ. «Մեք եմք նշխարք ծածկեալ ի գաւառին Արցախոյ ի Մխանց առհմին ի վայրսն Կաղանտոյ. Նախավկայն է տէր Ստեփաննոս եւ Թէոդորոս նահատակ, սուրբքն Վարոս, Մամաս, Սարգիս, Գէորգ Վկայ, Կոզմաս եւ Դամիանոս. եւ մասն մի ի սուրբ Քառասնիցն»*: 3. *«Ես եմ Բաբիլա... որ չարչարեցայ ի խաչի. եւ խնդրեցի ի Փրկչէն մի կորնչիլ նշխարաց իմոց...»: Եօթը տարի ետքը կ'երթայ Վեհիկ «առ սուրբ հայրապետն Աբաս եւ կը պատմէ տեսածը: Եւ նա մարդիկ կ'ուղարկէ նշանակուած տեղը պեղումներ կատարելու: Կը յայտնուին նշխարները, որոնցմէ մաս մը Դանիէլ քահանայ կը բերէ Կաթողիկոսին* (Բ. 6): *Այս պատմուածքին տակ կայ յիշատակարանս. «Ես Աղբիանէ, որ զյիշատակս գրեցի, մաղթեմ յիշել զանարժանութիւնս իմ յընթերցողացդ. եւ զհայրապետն Աբաս մի մոռանալ, յորոյ ի ժամանակս լոյս աշխարհիս ծագեցաւ: Ընդ նմին եւ Վեհիկ կարապետ նոցին յիշեսցէ Տէր Աստուած ողորմութեամբն իւրով մեծաւ: Եւ որք յիշէքդ, ձեզ վարձս ընդ երանեալ վկայիցն հա-*

*տուեցէ Քրիստոս այժմ եւ յաւիտեանս․ ամէն»։*

*Ո՞վ է այս Աղբինէ․ օրինակո՞ղ մը, թէ չարագրող։ Պատմուածքը առաջին դէմքով է․ «Ես Վեհիկս», որ յայտնապէս գրուածքիս հեղինակը կ'ընթադրէ։ Բայց ով ալ ըլլայ հեղինակը, ան Արաս կաթողիկոսի ժամանակակից մը չի կրնար ըլլալ։ Լեզուն կը վկայէ, թէ չարագրողը Է․ դարէն ետքը պէտք է եղած ըլլայ․ ապացոյց «արտայայտեաց», «պարփակեալ» եւ այլ հելլենական դպրոցի հնարած բառերը։*

## 7․ ԱՂՈՒԱՆԻՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐԸ ԳՐԻԳՈՐԻՍԷՆ ՄԻՆՉԵՒ ՆԵՐՍԷՍ ԲԱԿՈՒՐ (340—702)

*Աղուանից Պատմութեան վերջը (Գ․ 24) զետեղուած է գլուխ մը, «Անուանք հայրապետացն Աղուանից, ամք եւ գործք նոցին» խորագրի տակ։ Առոր անանուն հեղինակը (Մովսէս Դասխուրանցի՞) կը յայտարարէ մուտքին մէջ, թէ «ի սկզբանցն հայրենեաց նախաշաւիղ առաջնորդացն գործք եւ ժամանակք եւ անուանք․․․ մեզ անյայտք եւ ոչ բերեալ ի լուր։ Զայս փոքր ի շատէ արտայայտեալ բացատրեցաք առ ի գիտութիւն այնոցիկ, որք փոյթ յանձին կալեալ իցեն զայսմ խնդրոյ»։*

*Հեղինակը նոյն չէ պատմագրին հետ․ ան ունեցած է ձեռքի տակ աղբիւր մը, որ անձանօթ մնացած է պատմագրին։ Կ'օգտուի Աղուանից Պատմութենէն, բայց եւ այնպէս*

կը չեղի անկէ ինչ ինչ կէտերու մէջ։ Գիտէ անուններ եւ գործեր, որոնք չեն յիշատակուած Պատմութեան մէջ։ Թ. 13—18 հայրապետներու գահակալութեան տարիները իրեն միայն սեպհական են։

Կարեւոր կը համարիմ այստեղ քննութեան առնել այս «Հայրապետաց անուններու» առաջին մասը, որ կը ներկայացնէ.

1. Գրիգորիս,
2. Տուփհապիչս,
3. Մատթէոս,
4. Սահակ,
5. Մովսէս,
6. Պանդ,
7. Ղազար,
8. Գրիգոր,
9. Զաքարիա (Ա.),
10. Դաւիթ,
11. Յովհաննէս (Ա.)։
12. Երեմիա. «ի սորա աւուրս արար գիր Աղուանից երանելին Մեսրոպ, որ եւ Հայոց եւ Վրաց եւս նշանագիր ջանիւ մեծաւ։
13. Արաս. ամս ԽԵ. յեպիսկոպոսութենէն Մեծիրանց. ի սկզբան թուականին Հայոց փոխեաց զաթոռ հայրապետութեանն ի Ձորոյ ի Պարտաւ։
14. Վիրոյ ամս ԼԴ.։
15. Զաքարիա Բ. ամս ԺԵ. «ձեռնադրեաց եպիսկոպոս Սիւնեաց զՎրթանէս ամի անուն, յանհաւանութենէ Հայոց»։

16. Յովհաննէս (Բ.) ամս Իէ. յեպիսկոպոսութենէ Ամարասայ:

17. Ուխտանէս ամս ԺԲ.:

18. Եղիազար ամս Զ. յեպիսկոպոսութենէ Շաքուոյ:

19. Ներսէս, ամս ԺԷ. յեպիսկոպոսութենէն Գարդմանայ:

Հայրապետացանկիս 1—12 անուններէն յիշուած են Աղուանից Պատմութեան մէջ միայն Թ. 1, 2 եւ 12: Թէ հեղինակը ի՞նչ աղբիւրէ առած է մնացած 9 անունները, մեզի անծանօթ են: Ուշագրաւ է, որ անոնցմէ 7ը սուրբ գրենական են: Ինձ կը թուի, թէ ստեղծուած են անոնք լոկ լեցնելու համար Գրիգորիսէն մինչեւ Արաս բաց մնացած դատարկութիւնը:

Գրիգորիս ծանօթ է Փաւստոսի Պատմութենէն (Գ. 6). որդին էր Վրթանէսի եւ կարգուած էր «կաթողիկոս կողմանցն Վրաց եւ Աղուանից»: Հոս «կողմանք Վրաց եւ Աղուանից» կ'ընդգրկէին յայնկոյս Կուրի մինչեւ Դերբենդ տարածուած երկրամասը, ուր կը բնակէին Ալանք եւ այլ լեռնականք: Գրիգորիս կաթողիկոսն էր Հայոց, յաջորդն Վրթանէսի, գահակալած 274—290: Այն ժամանակ այդ կողմանք Հայոց թագաւորի ազդեցութեան տակ էին: Ամարաս Հայաստանի հիւսիս արեւմտեան սահմանին վրայ կը գտնուէր. Գրիգորիս կարող էր առաքելական քարոզութեամբ յառաջամուխ եղած ըլլալ

մինչեւ Ալանաց ճամբարը եւ նահատակուած Վատնեայ դաշտին վրայ եւ թաղուած Ամարաս։ Որովհետեւ այն ժամանակ Ուտի եւ Արցախ եւ Փայտակարան Հայաստանի մաս կը կազմէին, Գրիգորիս այդ նահանգներու քրիստոնեայ ժողովուրդին ալ հովուապետն էր։ Ուստի կարելի չէ յատուկ իմաստով Աղուանից առաքեալ նկատուիլ։

Երեմիա (Թ. 12) պատմական անձնաւորութիւն էր. Մաշտոց վարդապետ երբ այցելեց Աղուանից աշխարհը, 415ին մօտաւորապէս, «հասեալ ի թագաւորական տեղին (ի Պարտա՞ւ)՝ տեսանէր զսուրբ եպիսկոպոսն Աղուանից, որում անուն Երեմիա կոչէին, եւ զնոցին թագաւոր, որում Արսուաղէն անուն» (Կորիւն, ԺԱ. 1), որոնք ամէն դիւրութիւն ընծայեցին իրեն, ուսուցանելու հայ գիրն եւ գրականութիւնը։ Երեմիայի մահուան տարին չգիտենք։

Շուփհաղիշոյ (Թ. 2)։ Անունս ասորական է, Šubha-Lišo, «Փառք Յիսուսի». կը յիշուին այս անունով 1. եպիսկոպոս Զարդէի (Ծաւղէից). Գ. դար (Sachau, Die Chronik von Arbella, S. 65). 2. եպ. Բալադի (497ին) եւ 3. եպ. Տահալի (576ին. Braun, Das Buch der Synhados, S. 92, 165). Թէ ի՞նչ ճանապարհով Աղուանք հասած է անունս, դժուար է ըսել. Աղուանից պատմագիրը գիտէ, թէ Ասորի ոմանք արեղայք ի Հակու վանք մը շինած են (Ա. 14)։

Պատմութեան հեղինակը այս Շուփհաղիշոյ «արքեպիսկոպոսն Պարտաւայ» (Բ. 27), կամ «աւագ եպիսկոպոսապետը» (Բ. 23) կը յիշէ Վաչական արքայի օրով եւ ներկայ Աղուէնի ժողովին, ուստի Զ. դարու առաջին կէսին (հմմտ. նաեւ Մխիթար Այրիվ. 63): Իսկ Հայրապետացանկին մէջ անոր անունը զետեղուած է անմիջապէս Գրիգորիսէն վերջը, իրր թէ անոր յաջորդն ըլլայ. «բայց վասն տանս այսորիկ յառաջ կարգելոյ՝ երկմտութիւն գոյ մեզ» կը գրէր Կիրակոս Գանձակեցի (էջ 98):

Վերագոյն ցոյց տուի, թէ Աղուէնի ժողովը պէտք է Ե. դարու առաջին կէսին գումարուած ըլլայ: Այս տեսակէտով Շուփհաղիշոյի ժամանակը հարկ կ՚ըլլայ զետեղել ընդ մէջ 425—460 տարիներուն մերձաւորապէս:

Աբաս կաթողիկոս իր պատասխանին մէջ առ Յովհաննէս Բ. կաթողիկոս յիշած է իր նախորդներէն Պետրոս եւ Գրիգոր, ինչպէս կը գրէ Narratio ի հեղինակը (G. Garitte, La narratio de rebus Armeniae էջ 38 («Երանելի եպիսկոպոսքն որ յառաջ քան զիս, Պետրոս եւ Գրիգոր այսպէս ասէին զՍուրբ Աստուածն, եւ ես ոչ յաւելում եւ ոչ նուազեցուցանեմ»): Այս երկու անուններէն երկրորդն ունինք Ցանկին մէջ, թ. 8, եթէ կարելի է նոյնացնել: Աբաս գահ բարձրացաւ 551ին. ուստի իր երկու նախորդք կարող են զետեղուիլ մերձաւորապէս 500—550 տարիներուն մէջ:

Ցանկիս մէջ յիշուած վերջին եօթը կաթողիկոսներու (Թ. 13—19) ժամանակագրութիւնը ճշդելու համար մեզի ստոյգ կռուան կարող ենք առնել Ներսէս Բակուրի մահուան տարին, որ է 700 թուականը: Այս տարիէն դէպի ետ ընթանալով կը ստանանք մօտաւորապէս պատկերս.

| | |
|---|---|
| 1. Աբաս | 551—595 |
| 2. Վիրոյ | 596—630 |
| 3. Զաքարիա Բ. | 630—644 |
| 4. Յովհաննէս Բ. | 644—667 |
| 5. Ուխտանէս | 668—679 |
| 6. Եղիազար | 679—684 |
| 7. Ներսէս | 684—700 |

Աբասի, Վիրոյի եւ Ներսէս Բակուրի համար ունինք ներքին եւ արտաքին աղբիւրներ, որոնք կը հաստատեն տրուած ժամանակագրութեան ճշդութիւնը, ինչպէս պիտի տեսնենք յետոյ:

Զաքարիա Բ.ի համար կ՚ըսուի թէ սա «ձեռնադրեաց եպիսկոպոս Սիւնեաց զՎրթանէս ոմն անուն յանհաւանութենէ Հայոց»: Տեղիքս առնուած է Պատմութեան Բ. 48էն, ուր յառաջ կը բերուին ի բանից Սողոմոն Մաքենոցաց հօր տողերս.

«ԶՀայս Պարսիկք եւ Յոյնք բաժանեալ էին (591). եւ տէր Մովսէս էր յաթոռն Ս. Գրիգորի ի Դուին. եւ կողմանք Յունաց հակառակ նմա նստուցին զՅովհան ոմն մերձ առ

նաւ: Իսկ զերկուամեայն հայրապետութեան խոտեցին տեարքն Սիւնեաց եւ ոչ հաւանեցան ընդ մի ոք յերկուցն՝ հրամանաւ եպիսկոպոսին իւրեանց առաջինւոյն Պետրոսի. որ հասեալ ի վախճան՝ պատուէր ետ վիճակին իւրում առնուլ ձեռնադրութիւն յԱղուանից եւ զմեռոն օրհնութեան՝ մինչեւ միացի աթոռն սրբոյն Գրիգորի: Վասն այնորիկ ձեռնադրեցաւ Վրթանէս յեպիսկոպոսութիւն Սիւնեաց ի Զաքարիա հայրապետէն Աղուանից, մինչեւ բարձաւ հակառակութիւնն եւ միաբանեաց Աբրահամ զհայրապետական աթոռն»:

Ե՛ւ մէկն ե՛ւ միւսը սխալ ժամանակագրութեան հետեւած են: Մխո չեն գրած, թէ Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսը, որ շատ յաճախ յիշուած է Ներսէս Բ. Աշտարակեցւոյ (548—557) թուղթերուն մէջ (Գիրք Թղթոց, 70, 72, 73, 76 եւն) վախճանած է իբր 558ին: Իսկ Հայաստանի յիշեալ բաժանումը տեղի ունեցած է 591ին: Եթէ պատմական է, թէ Վրթանէս իր եպիսկոպոսական ձեռնադրութիւնը Պետրոս եպիսկոպոսի պատուէրով ընդունած է Աղուանից կաթողիկոսէն, այդ կաթողիկոսն ըլլալու էր Աբաս եւ ոչ Զաքարիա: Վրթանէս Սիւնեաց աթոռին վրայ բազմած է (Պետրոսի իբրեւ յաջորդ) 560էն յառաջ. իբր 568ին Յովհաննէս Բ. կաթողիկոս գրած է թուղթ մը առ Վրթանէս եպիսկոպոս (Գիրք Թղթոց, 78), երբ Աղուանից

եպիսկոպոսն էր Աբաս: Սիւնեաց աշխարհի մտերիմ աղերսն Աղուանից կաթողիկոսին հետ սկսաւ այն ժամանակէն, երբ Սիւնիք նահանգը քաղաքականապէս բաժնուեցաւ մարզպանական Հայաստանէն եւ ենթարկուեցաւ Ատրպատականի շարհմարի: Այս միջոցին նաեւ Աղուանից Եկեղեցին խզած էր իր յարաբերութիւնները հակաքաղկեդոնական Հայոց կաթողիկոսին հետ, եւ առնչութիւն հաստատած Երուսաղէմի եկեղեցւոյն հետ:

## 8. ԱԲԱՍ ԱՂՈՒԱՆԻՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ
551—595

1. Աբաս Աղուանից միակ կաթողիկոսն է, որուն մասին խօսած են ներքին եւ արտաքին աղբիւրներ, որոնք են.

ա. Պատմութիւն Աղուանից, Բ. 4, 8. Գ. 24:

բ. Թուղթ Յովհաննէս Բ. Հայոց կաթողիկոսի առ Աբաս: Գիրք Թղթոց, Թիֆլիս 1901, էջ 81—84: Նոյնը Աղուանից Պատմութեան մէջ, Բ. 7:

գ. Թուղթ Յովհաննէս Բ. Երուսաղեմի պատրիարքին առ Աբաս:

Հրատարակեց Կարապետ Վ. Տէր Մկրտչեան, Արարատ, 1896, էջ 252—256: Գերմ. թարգմանուած՝ Brief des Johannes von Jerusalem an den albanischen Katholikos Abas, aus dem Armenischen übersetzt von A Vardanian: Oriens Christianus, 1912, S. 64—79.

դ. La Narratio de rebus Armeniae. Edition critique et commentaire par G. Garitte, Louvain 1952, (Corpus script. christ. orientalium, vol. 132).

Վերջինս ծանօթ եղած է Հայերէն բնագրով Աղուանից պատմագրին, Հաւանօրէն նաեւ Երրորդ. ան ունեցած է ուրիշ աղբիւր մ'ալ, ուսկից առած է «Եղիա, Բնոտ եւ Իբաս» (Բ. 8) անունները: Դժբախտաբար ի վիճակի չէ եղած պատմագիրս առարկայօրէն ներկայացնել պատմութիւնը. այլ եւ Հարկադրանքի մէջ գտնուած է ինչ ինչ քօղարկել կամ բարեքել:

Ես պիտի ջանամ կազմել այդ աղբիւրներէն նախ Արասի կենսագրութիւնը, որքան կարելի է, եւ ապա տալ աղբիւրները, տեղ տեղ քաղուածաբար, ինչ ինչ վերլուծումներով եւ լուսաբանութիւններով: Նկատի պիտի առնեմ միայն Աղուանից եւ Հայոց մէջ յուզուած խնդիրները: Հայոց եւ Վրաց, Հայոց եւ Սիւնեաց յարաբերութիւններու մասին խօսած եմ այլուր. կը յանձնարարեմ ընթերցողներուս մասնաւորապէս իմ երկու աշխատասիրութիւնները. Կիւրիոն կաթողիկոս Վրաց. պատմութիւն Հայ-վրական յարաբերութեանց է. դարու մէջ, Վիեննա 1910. եւ Թուղթ Մակարայ Բ. Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ. Նպաստ

մը Զ. դարու Հայոց եկեղեցական պատմու-թեան, Վիեննա 1930:

2. Աբաս կաթողիկոս: *Մեծիրանք Ար-ձախ նահանգին մէկ գաւառն էր: Գաւառին եպիսկոպոսն էր Աբաս. որ ապա, Խոսրով Ա.ի քսաներորդ տարւոյն (551/2) հրաւիրուեցաւ Պարտաւ, բազմելու Աղուանից եկեղեցւոյն նախագահական աթոռը:*

*Կը յիշուին իր օրով (568) Աղուանից եպիսկոպոսներն.*

*Մովսէս Բաղասականայ,*
*Գրիգոր Կապաղակայ,*
*Համամիկ Ամարասոյ,*
*Տիմոթէոս Շաքւոյ,*
*Յովհաննիկ Գարդմանոյ,*
*Ղեւոնդ Մեծկողմանց:*

*Կ'րսուի թէ իր օրով սովորութիւն եղաւ Աղուանից եպիսկոպոսապետը յորջորջել տիտղոսով, «Աղուանից, Լփնաց եւ Չողայ (Ճորայ) կաթողիկոս»: Բայց գիտենք մենք, որ 568ին Յովհաննէս Բ. Հայոց կաթողիկոս կը գրէր իր թուղթն առ «Աբաս Պարտաւայ եպիսկոպոս» (Աղուանից պատմիչն փոխա-ծած՝ «Աղուանից կաթողիկոս»). եւ Յով-հաննէս Երուսաղեմացի առ «Աբաս եպիսկո-պոս Աղուանից»: Թէ ինչու Աղուանից նախա-գահական աթոռը «ի Չողայ» Պարտաւ փոխա-դրած է, կը մնայ խնդրական:*

*Հաւանական է որ Աբաս եպիսկոպոսա-*

կան ձեռնադրութիւնն առած էր Աղուանից գլխաւոր եպիսկոպոսէն՝ Պետրոսէն. եւ երբ ինքը գլխաւոր եպիսկոպոս եղաւ, ծանոյց Հայոց Կաթողիկոսին։

Արաս 551—568 իբրեւ գաւառոց քրիստոնէական հաւատքին, որ ունէին Հոռոմք, Հայք, Վիրք եւ Աղուանք, անկաշկանդ յարաբերութեան մէջ էր թէ Հայոց եւ թէ Հոռոմոց, յատկապէս Երուսաղէմի Եկեղեցիներու հետ։ Ունեցած է թղթակցութիւններ Երուսաղէմի Եւստաթիոս (552—563), Մակար Բ. (564—575) եւ Յովհաննէս (575—592) պատրիարքներու հետ։

Իբր 557/8ին, երբ Սիւնեաց Վահան տանուտէրը բաժնուելով Մարզպանական Հայաստանէն, ենթարկուեցաւ Ատրպատականի մարզպանութեան, ինքնաբերաբար նաեւ Սիւնեաց եկեղեցին հեռացաւ Դուինի կաթողիկոսարանէն եւ յարաբերութիւններ մշակեց Պարտաւի կաթողիկոսին հետ։ Այս միջոցին վախճանեցաւ Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս. Կ'ըսուի, թէ յաջորդը Վրթանէս ձեռնադրուած է Աղուանից «Զաքարիա», իմացիր Արաս կաթողիկոսէն (տե՛ս վարը), իբր 557/8ին։

568ին գրեց իրեն Հայոց Յովհաննէս Բ. կաթողիկոս թուղթ մը, որով կը պարտադրէր Սրբասացութեան կցել «որ Խաչեցար» յաւելուածը, նզովել Քաղկեդոնի սահմանը, խզել յարաբերութիւնները Քաղկեդոնականներու

հետ: Աբաս տարբերելով թէ իր նախորդք Պետրոս եւ Գրիգոր նման յաւելուած մը չէին ճանչնար՝ մերժեց տեղի տալ կաթողիկոսի հրամաններուն:

Աբաս գահակալեց 44 տարի. ուստի եւ վախճանեցաւ 595ին, «կեցեալ սրբական վարուք»:

3. Աղուանից պատմագիրը Աբասի յիշատակին նուիրած է Բ. 4 եւ 8 գլուխները: Կը գրէ.

ա. «Յետ այսորիկ գերեցաւ ի Խազրաց աշխարհս Աղուանից. հրկէզ եղեն եկեղեցիք եւ կտակարանք:

բ. Այս յերկրորդ ամին Խոսրովու արքայից արքային, յորժամ սկիզբն հայ թուականին եղեւ. ի սոյն ամի փոխեցին զաթոռ հայրապետութեանն Աղուանից ի Զոդայ քաղաքէն ի մայրաքաղաքն Պարտաւ վասն հինահալած արշաւանաց թշնամեաց խաչին Քրիստոսի:

գ. Եւ նստուցին հայրապետ զտէր Աբաս ի գաւառէն Մեծիրանց. որ կալեալ զաթոռն ամս քառասուն եւ չորս, սրբական վարուք կեցեալ՝ փոխադրի յանմահ կեանս» (Բ. 4):

ա.) Այս տեղ ժամանակավրէպ մը կը գործէ պատմագիրը, երբ Աբաս կաթողիկոսի օրով կամ անկէ յառաջ կը յիշէ «Խազրաց» արշաւանք մը յԱղուանս: Նոյն սխալը կը կրկնուի նաեւ Բ. 11. «Սաստիկ ամբոխեալ էին Խազիրք ասպատակել յաշխարհս մեր

հրամանաւ Հերակլի»: Սեբիոս այն հիւսիսա-կան ազգը, որ օգնութեան եկաւ Հերակլի (628—629), կ՚անուանէ «Թետալացի» (էջ 23). Թետալացիք հոն Արեւմտեան Թուրքերն են: Խազիրք առաջին անգամ երեւան եկան 685ին. Անանուն ժամանակագրութիւնք կը դրէ. Յուստինիանոս Բ.ի առաջին տարւոյն «ար-բեցին հիւսիսային ազգն, որ ասին Հազիրք (Խազիրք) Հայոց, Վրաց եւ Աղուանից. եւ սպանին ի պատերազմի զիշխանս Հայոց, Վրաց եւ Աղուանից, յամեանն ամսի, որ օր տասն էր ամսոյն, ի ՃԼԴ թուականին Հայոց», այն է 18 օգոստոս 685 (հրտ. Հ. Բ. Սարգիսեան, էջ 80). արաբական աղբիւրները կը յիշեն երկրորդ արշաւանք մ՚ալ 799/800. հմմտ. Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, S. 5—6):

բ.) «Երկրորդ ամին Խոսրովու» հարկ է ուղղել «ի քսաներորդ ամին». հաւանօրէն «ի Ի ամին» ի Բ ամին կարդացուած է: Խոսրով Ա.ի քսաներորդ տարին է 551/2:

Կաթողիկոսական աթոռին փոխադրութեան զրոյցը կրկնուած է Գ. 24. «Տէր Աբաս, որ ի սկզբան թուականիս Հայոց փոխեաց զաթոռ հայրապետութեանն ի Ջորոյ ի Պարտաւ»:

գ.) Աբասի գահակալութեան տեւողութիւնը նոյնութեամբ կրկնուած է Գ. 24: Մխիթար Գօշի ընծայուած Ծարքն հայրա-

պետաց ունի փոխ. ԽԴ-ի «ԻԳ» (Հայապատում, Բ., էջ 384)։

Դ. Հայրապետաց ցանկին մէջ կ՚րսուի. «Տէր Արաս...։ Եւ առ սորա կալաւ սովորութիւն գրել ի պատրուակ թղթի Աղուանից, Լփնաց եւ Չողայ կաթողիկոս» (Գ. 24)։ Այս տեղիքը Մ. Գօշ ունի. «Եւ նախնեացն այսպիսի իմն սովորութիւն էր, զօրինակ պատրիարքի թղթոյն յաջորդէին այսպէս. Աղուանից, Լփնաց եւ Չոլայ կաթողիկոսէ» (Հայապատում, Բ., 384)։ Պատրիարք այլուստ անծանօթ ընթերցուած։

Այս տիտղոսը թէ կիրարկուած է Զ. դարուն՝ այլուստ վկայ չունինք։ Եկեղեցական գլուխներու տիտղոսներու մասին, Սողոմոն Մաքենոցաց հօր տեղեկատուութեան համաձայն վէճ եղած է Է. դարու առաջին քառորդին. «Ի սակս իմն դասակարգութեան գլխաւոր եկեղեցականք անձնահաճ կամաւ — ըստ նպերս բարուց Հայաստանեայց — կարգեցին զԱբրահամ պատրիարգ, եւ զԱղուանիցն՝ արքեպիսկոպոս, եւ զՎրացն մետրապոլիտ» (Բ. 48)։

Պատմագիրը Բ. 8 ամբողջութեամբ ներկայացուած է Յովհաննէս Բ. կաթողիկոսի թուղթն առ Արաս։ Կը յաջորդէ Բ. 8.

Ե. «[Հալածումն հերձուածողաց յԱղուանից, զոր տէր Արաս Աղուանից կաթուղիկոս ընդ գալ Թղթոյն արտասահմանեաց։]

Յայն փոյթ աղմկի սփռեալ տարածեցաւ ընդ ոլորտս երկրի համբաւ ժողովոյն Բաղկեղանի, որ ի ներքոյ Աստուծոյ զօրացաւ վարդապետութիւն նոցա, եւ գիրայուր գրութեամբն ներկեալ զրագմայ ազանց հոգւոյն: Եհաս դաւանութիւնս այս եւ յաշխարհս Աղուանից ի ժամանակս տեառն Աբրաամու Աղուանից կաթողիկոսի, որ յոյժ քննութիւն առնեալ ի բաց եպիսկոպոսօք, որք վերնագոյնք կան ի գրի, նոքօք հանդերձ հալածեաց ի տանէն Աղուանից զվարդապետս կրօնին այնմիկ զԹովմաս եւ զԲնուան եւ զԻրաս եւ զայլս ընդ նոսին զնմանեաց նոցին արար տարաբնակ ի հեռաւոր վայրս: Եւ այնու եղեւ խաղաղութիւն ուխտի եկեղեցւոյ ի ժամանակին յայնմիկ ողորմութեամբն Տեառն ամենակալի: Այլ մարմնաւորական պատերազմունքն կարի աճէին» (Բ. Ց, էջ 142—143):

գ. Այս տեղեկատուութիւնը կը լրացնէ Հայրապետաց ցանկի խմբագիրը. «Տէր Աբրաս...: Եւ առ սա գրեցին ի ժողովոյն Դունայ առել ՙմի ընութիւն աստուածութեան եւ մարդկութեան, յաւելուլ ի սուրբ Աստուածն անմահ ՙեւ խաչեցար[1],: Զի նոցա ուսեալ ի խնդրոյն Պրոկղի Կոստանդնուպոլսի հայրապետին, որ երկերիւր սուրբ հարքն

---

[1] Անդ Կիր. Գանձակեցի. «Եւ սա եւս գրեցին ի ժողովոյն Դունայ զՍուրբ Աստուածն անմահ եւ Խաչեցար եւ առել մի ընութիւն աստուածութեան եւ մարդկութեան» (էջ 98):

Եփեսոսի ժողովոյն առաջորդեցին ի սուրբ Երրորդութիւնն, եւ յետոյ ի Տիմոթէոսէ Աղեքսանդրու հայրապետէն եւ ի Պետրոսէ Անտիոքացւոյն դարձանն առ Անաստաս կայսրն ընդ ձեռն Յակոբայ Միջագետաց եպիսկոպոսի, որք զնոյն սահմանեցին ուղղափառացն 'անմահ եւ խաչեցար', սակս, որպէս եւ է իսկ. զի չէր յետ, ամփոփութիւն եւ ոչ հերձուածք կային յաշխարհիս, թէպէտ քննէս քննութեամբ այսորիկ» ([5]):

է. «Այս յետոյ առ Եզրի կաթողիկոսի. գնաց Ստեփանոս Գարդմանայ եպիսկոպոս առ նա եւ հաղորդեցաւ ընդ նմա. եւ Գարդմանն եւ Արձախ ընկալան զաւանդութիւնս զայս, զոր այժմ ամենեքեան ունիմք» (Գ. 24).

ե.) «Յոյն փայթ ազմկի» պէտք է իմանալ անշուշտ «յոյն շփոթ ազմկի»: Ինչպէս յետագայ վաւերագիրներէն պիտի տեսնուի, Արտա ոչ թէ «հալածեց». այլ պաշտպանեց Քաղկեդոնի ժողովին հետեւողները: Թովմաս անտարակոյս Դանդայ վանքի վանականն էր. իսկ «Բնատ եւ Իրատ» անուններն այլուստ անծանօթ են: Պատմագիրը կ'երեւայ թէ ունէր առ այս աղբիւր մը, որ մեզի չէ հասած: «Այլ մարզպանական պատերազմունքն կարի աճէին». ինձ կը թուի թէ ակնարկութիւն մըն է 571—590 տարիներու «Հայոց պատերազմի» մասին:

զ.) Այս հատուածը, որ պահուած է Աղուանից Պատմութեան բոլոր ձեռագիրնե-

րու մէջ, Մ. Էմին չէ առած իր հրատարակութեան մէջ. բայց ունի Շահնազարեանի տպագրութիւնը (Գ. 23)։ «ԵՒս առ գրեցին ի ժողովոյն Դունայ». կ'ակնարկուի Յովհ. Բ. կաթողիկոսի թուղթն առ Աբաս։ Յաջորդ պարբերութիւնը՝ «զի նոցա ուսեալ...» կ'ենթադրէ խմբագրին ձեռքը աղբիւր մը, որ կը պատմէր Երեք Սրբասացութեան սկզբնաւորութիւնը. այս աղբիւրն է Narratio de rebus Armeniaeի հայերէն բնագիրը, ուր կ'ըսուի. «Յետ ժողովոյն այնորիկ (Եփեսոսի) յօրինեցաւ Սուրբ Աստուածն յերանելոյն Պրոկղէ Հայրապետէ Կոստանդնուպօլսի առ ի գտանել ողորմութիւն ի Տեառնէ Աստուծոյ վասն աղետիցն ի վերայ հասելոց ի սասանութենէ։ Եւ յայնմ հետէ եւ այսր ընկալաւ ուղղափառն եկեղեցի զօրհնութիւնն զայն Երեքսրբենի եւ բարեբանութիւնն զոր ուսաք յԵսայեայ մարգարէէ» (§ 18—21)։ «Յաւուրսն յայնոսիկ... միաբանեալքն Դիոսկորոս եւ Եւտիքէս... զերկիրն լի առնէին աղմկաւ, մանաւանդ զՄիջագետս եւ զայլ աշխարհս, քանզի բռնադատէին ամենեւին իսկ նզովս կարդալ ի վերայ սուրբ եւ տիեզերական սինհոդոսին Քաղկեդոնի եւ խոստովանել ըստ Եւտիքեսայ մի բնութիւն ի Քրիստոս աստուածութեան եւ մարդկութեան, եւ չարչարել նմա անմահ բնութեամբն. նմին իրի իսկ ի Սուրբ Աստուածն, յօրհնութեան անդ սուրբ Երրորդութեանն երգել միանգամայն զԽր

Խաչեցարն, զոր փոքր մի յառաջ Թափիչն Պետրոս Անտիոքացի յաւելեալ էր յայն եւ նզովեալ էր ի սրբոց հարց յայնժամ եղելոց» (§ 40—45):

Հոս շփոթ է պարբերութեանս միտքը. «Եւ յետոյ ի Տիմոթէոսէ — Յակոբայ Միջագետաց եպիսկոպոսի»: Յակոբս անտարակոյս Համանուն Բարադէոսն է, որ գլուխն եղաւ Յակոբիկներու: Խանգարուած կ'երեւայ նաեւ «Թէպէտ քննէս մեր քննութեամբ պատրիկ». Թերեւս միտքն է. «Թէ պէտք լինէին քննութեան պծորիկ»:

Է.) Այս հատուածը շարունակութիւնն է նախորդին եւ կը հայի Եզր կաթողիկոսի օրով յուզուած խնդիրներու: Քաղուածք մըն է նոյնպէս նոյն Narratio-ի հայ օրինակէն: Յոյն բնագրին թարգմանութիւնն է. «Յետ աւուրց ինչ եկն Սանփանոս եպիսկոպոս Գարգմանայ եւ յանդիման եղեւ Կաթողիկոսին Եզրայ» եւ հաղորդեցաւ ընդ նմա (§ 124):

3. Վաղարշապատի ժողովը: Աղուանից Պատմութեան մէջ յիշատակութիւն չկայ բնաւ, թէ Զ. դարու սկիզբը Հայոց, Վրաց եւ Աղուանից եպիսկոպոսները ժողով մը գումարած եւ Վաղարշապատի մէջ, ինչպէս կը գրէ Յովհաննէս Դրասխանակերտցի կաթողիկոսը իր Պատմութեան մէջ. «Բաբգէն անդ ժողով եպիսկոպոսաց Հայոց, Վրաց եւ Աղուանից ի Նոր քաղաքի, ի սուրբ Կաթողիկէին ի մայրն եկեղեցեաց Հայոց» (էջ 36): Պատմու-

գիրս ժողովին տարին չէ նշանակած․ բայց որովհետեւ Եզրէն կաթողիկոս 5 տարի միայն վարած է կաթողիկոսութիւնը, այս հինգ տարիներու մէջ պէտք է գտնել, 605էն յառաջ կամ յետոյ, կամ թերեւս նոյն ինք այս տարւոյն։ Ժողովին նպատակը կը համարի հաւատոյ քննութիւնը․ կը համաձայնի Զենոնի Հենոտիկոնին եւ Անաստասի շրջաբերական թղթոյն եւ «խոտեցին զժողովն Քաղկեդոնի»․ «եւ այսպէս յայսմ ժամանակի մի հաւատ բարեպաշտութեան առ հասարակ հաստատեալ լինէր յաշխարհին Հոռոմոց, Հայոց, Վրաց եւ Աղուանից» (էջ 62)։

Իր աղբիւրն եղած է անշուշտ Աբրահամ Ա. Կաթողիկոսի Գ. Թուղթն առ Կիւրիոն, ուր կը գրէ․ «Եթէ չէք փոխեալ ի հայրենի հաւատոյ, որպէս բազում անգամ գրեցեր առ մեզ, եւ կ՚նզովես եւ դու զանիծեալ ժողովն Քաղկեդոնի եւ զպիղծ տումարն Լեւոնի, որպէս նախկին քո երանելին Գաբրիէլ կաթողիկոսն Վրաց նզովեաց ընդ երանելի հարսն մեր հանդերձ (քսան եւ երեք) աթոռակցօք իւրովք, որոց անուանքն են....։ Արդ այս երանելի եպիսկոպոսունքս որ յաշխարհէ ձերմէ էին եւ ընդ Աղուանիւք եւ ընդ Սիւնիւք (ա՛յսպէս) ի Հայս դիպեցան յաւուրս Բաբգենայ Հայոց կաթողիկոսի, յայն ժողովի, յորում անիծաւն ի նոցանէն միաբանութեամբ ժողովն Քաղկեդոնի եւ տումարն Լեւոնի։ Եւ զի պայման նամակն, որ հայերէն գրով էր,

յաղատամբութեանն կոչեաւ. եւ թարգմանեցաւ այս յՄերձայ քաղաքի ի հռոմ գրոց. քանզի եւ նորա ունէին ի մէնջ. եւ սաղղ եւ ատրր... չկարացին թարգմանել (զանուանս եպիսկոպոսաց եւ զվիճակաց)... կարէք զաղղ անուանս եպիսկոպոսարանացն գտանել... Քանզի եւ մեք զմերս այդ առաջամարթացաք զտանել. եւ մանաւանդ թէ զպայման նամակն խակ գտանիցէք դրով ձեռով» ի ձեր դիւանին (Գիրք Թղթոց, էջ 182—183)։

Պայման նամակիս բնագիրն եւ Հայոց եպիսկոպոսներու (ինչպէս եւ Աղուան եպիսկոպոսներու) անունները, որոնք նոյնպէս թարգմանուած են, պահուած չեն։ Եւ սակայն ցանկալի էր, որ գոնէ բնագիրը յառաջ բերուած ըլլար Թուղթիս մէջ, Վրաց եպիսկոպոսներու անուններէն աւելի կարեւոր։

Թղթոց Գրքի մէջ առնուած է Բաբգէնի անունով երկու թուղթ, մին սկզբնագիր, վաւերականութեան ամէն հաւաստիքներով. երկրորդը՝ կեղծիք Է. դարու, առ կանուխ։ Առաջին Թուղթը գրուած է «առ ամենայն եպիսկոպոսունս», կղերականս եւ «առ ամենայն հաւատացեալս Պարսից աշխարհի, որ ընդ Կաւատայ արքայից արքայի ընդ իշխանութեամբ էք», «ի Մեծաց Հայոց ի Բաբգէնայ Հայոց եպիսկոպոսապետէ եւ ի նորին (քսանեւչորս) աթոռակցաց» եւն։ Գրութեան նպատակը. «վասն զի (ի) ԺԲ. ամի Կաւատայ արքայից արքայի, մինչդեռ ես Բաբգէն

Հայոց եպիսկոպոսապետ ամենայն եպիսկոպոսօք և վանականօք և նախարարօք ժողովեալ էաք յԱյրարատ գաւառ, յոստանն Հայաստան աշխարհիս ի Դուին քաղաք, եկեալ հասին առ մեզ արք ոմանք... և կացեալ յառենի յանդիման ամենեցուն. ունէին գիր ի ձեռս, որով խոստովանէին ի միոյ ուղիղ հաւատոյ. ընդ բազում աշխատութեամբ գանձինս արկեալ, առ ի գտանել գճշմարիտ և ուղղափառ հաւատ սրբոյ Երրորդութեանն: Եւ վասն նորին համարձակութիւն առեալ Թագաւորական հրապարակ գԿաւատոյ արքայից արքայի, յորում առեալ իշխանութիւն, զի ըստ կամաց և խնդրոց ստուգութեան քրիստոնէութեան հաւատ յանձինս հաստատեսցի ըստ կանոնի և գիտութեան աշխարհին Հոռոմոց, Վրաց և Աղուանից...» (էջ 41—43):

Կաւատի ԺԸ. տարին է 595/6: Պարսկաստանէն եկողներն են Սիմէոն Բեթ-Արշամացու աշակերտութեան տակ մխարնեայ Ասորիները, որոնք Պարսկաստանի մէջ հալածուած էին Ասորի Նեստորականներէն. Երբ բողոքեցին անոնք արքայից արքային, պահանջեց ան, որ բերեն Պարսկաստանի քրիստոնեայ այլ եկեղեցիներէն վկայութիւն, թէ իրենց դաւանութիւնը նոյն է անոնց և Հոռոմոց դաւանութեան հետ, վասն զի կը բաղձար Թագաւորը, որ իր տէրութեան բոլոր քրիստոնեաները միևնոյն հաւատքը դաւա-

նէին։ Եւ այս հրամարտակ տուած Կաւատէն՝ եկան նաեւ Հայաստան, նոյն նպատակով։

Բաբգէն տուաւ անոնց գրաւոր Նիկիոյ ժողովին համառօտ հանգանակը[2], հաստատելով, որ «Զայս հաւատ Հռոմք եւ մեք Հայք եւ Վիրք եւ Աղուանք ունիմք»։

Այս թուղթը գրուած է Բաբգէն կաթողիկոսէն եւ իր աթոռակիցներէն։ Այս ժողովը, որ գումարուած է Դուին, միայն հայ եպիսկոպոսներու, վանականներու եւ ազատաց ներկայութեամբ, կրնայ նկատուիլ զուտ ազգային ժողով։ Ժողովը չէ գումարուած Ասորիներու խնդրանքին պատասխանելու համար, այլ ժողովականք հաւաքուած էին հոն արդէն երբ հասան յիշեալները։

Ի՞նչ նպատակով գումարուած էին ժողովականները։ Չկայ թուղթիս մէջ որ եւ է խօսք այս մասին։ 506 այն տարին է, երբ Հռոմայեցիք եւ Պարսիկք խոնջած պատերազմներէն՝ խաղաղութիւն կնքեցին։ Վահան Մամիկոնեան վախճանած էր. այժմ Մամիկոնեանց տէրն էր Վարդ։ Պատերազմներուն մասնակցած էին Հայոց, Վրաց եւ Աղուանից զօրագունդները։ Կաւատ, որ պատերազմէն յառաջ փորձած էր միանգամ հարկադրել Հայաստանի, Վրաստանի եւ Աղ-

---

[2] Այս հանգանակը, զոր յառաջ բերած է Բաբգէն Ե. դարու առաջին կէսի բնագիր թարգմանութեամբ, պահուած է նաեւ յոյն բնագրով Ս. Աթանասի մէկ նամակին մէջ առ Եւսեբեայ. տես Հ. Յ. Գաթըրճեան, Հանգանակ հաւատոյ, Վիեննա 1891. էջ 25—26։

ուանից աշխարհի քրիստոնեաները, որ գե-նիմացգեցն ընդունին, եւ այս պատճառով Վահան Մամիկոնեան մերժած էր մասնակցիլ պատերազմին, ի վերջոյ շնորհած էր կրօնի ազատութիւն:

Յաղթութեան առաջին տարւոյն երախ-տագիտութեան պարտքն ունէին այդ երեք կովկասեան ազգերը Վահան Մամիկոնեանի շիրմին ուխտի գալու. եւ ապա ի միասին խորհելու քրիստոնէական կարգերու վերա-մշակութեան մասին: Հաւաքուած էին հայ եպիսկոպոսներն եւ ազատները. եւ կը սպա-սէին անշուշտ Վիր եւ Աղուան եպիսկոպոս-ներու գալստեան:

Աչքի առաջ ունենալով այս հանգամանք-ները, չենք կրնար վաւերական ճանչնալ Բար-դէնի երկրորդ թուղթը, որուն լեզուի ան-հարթութիւնք եւ ժամանակավրէպ բառերը նկատի առնելով համարած էի, թէ ընագիրը կորսուած՝ է. գարու սկիզբը յունարէն ընա-գրէ թարգմանութիւն եղած ըլլայ[3]: Բայց այժմ բովանդակութիւնը քննութեան առնե-լով, կը թուի ինձ, թէ կեղծիք մըն է, հրա-պարակ հանուած է. գարու ընթացքին, եթէ ոչ աւելի ուշ:

Կ՚ըսուի հոս, թէ Սիմէոն երէց (Բեթ-Արշամացի) երկրորդ անգամ Բարդէն կաթո-ղիկոսի եկած ըլլայ ի խնդիր հաւատոյ. եւ

---

[3] Ակինեան, Դասական Հայերէնը եւ Վիեննական Մխիթարեան Դպրոցը, Վիեննա 76—81 եւ 103—104:

*պատմած ըլլայ, թէ Հայոց եւ այլ եկեղեցիներու Թուղթերը ընդունելի չեն եղած. որմէ՞, չէ յիշուած: Այժմ Հրապարակի վրայ ոչ թէ Պարականոնի Նեստորականներն են ախոյեան, այլ Հռոմէական պետութեան Քաղկեդոնականները: Ուստի բովանդակ Թուղթը կարելի է հակաճառական մը նկատել ընդդէմ Քաղկեդոնականներու, անկապ, անիմաստ: Բարգէնի բերանը կը դրուի ի մէջ այլոց. «այսոքիկ վարկիմք հաւատովք*, զոր եւ գրեցաք իսկ ձեզ յառաջագոյն Վրաց եւ Աղուանից միաբանութեամբ՝ իւրաքանչիւր աշխարհի գրով: *Եւ այժմ զնոյն երկրորդեցաք ի ձեռն Հաւատարմաց եղբօր ըստ Հաւատոյ՝ Սիմէոնի նախանձաւոր երիցու»* (էջ 51):

*Ընդգծուած տողերը ցոյց կու տան թէ Թուղթին ամբողջը տրամադրութեան տակ ունեցած է Աբրահամ կաթողիկոսի Գ. Թուղթն ու Կիւրիոն: Ան օգտուած է նաեւ* 548—556 *տարիներու մէջ ասորի Միաբնեաներու եւ Հայոց մէջ փոխանակուած թղթակցութիւններէն (Գիրք Թղթոց, էջ* 52—69). *ահա է հերձուածողաց ցանկը, յատկապէս «Ակակ,* Բարծումէ, *Բարէ, որք ի Պարսից աշխարհի,* նզովեն կանոնն *եւ հաւատ»* (50)=(53, 56) «Բարծումա, Հնծիհնա, *եւ որոց* կանոնն նզովս»: *«Երկրպագեմք Հանդերձ աստուածութեամբն զմարմնաւորութիւնն եւ Հանդերձ մարմնաւորութեամբն զաստուածութիւնն»* (էջ 48=56) *«երկրպագեմք եւ փա-*

*տուորեմք զաստուածութիւնն հանդերձ մարմնաւորութեամբն, զմարմնաւորութիւնն հանդերձ աստուածութեամբն»:*

*Եզրակացութիւն. ա. Բաբգէն մէկ թուղթ միայն գրած է Պարսից միաբնակ քրիստոնեաներուն 506ին:*

*բ. Վաղարշապատի ժողովը տեղի ունեցած է Բաբգէնի օրով, 506ին: Ժողովին Գործքը մեզի չէ հասած:*

*գ. Բաբգէնի օրով Քաղկեդոնի ժողովքին մասին խօսք չէ եղած:*

*դ. Բաբգէն կաթողիկոսի վերագրուած Բ. թուղթը կեղծիք է:*

4. Աբդիշոյ Յակոբիկ ասորի եպիսկոպոսն ի Դուին: *Բաբգէն կաթողիկոսէն ետքը մինչեւ 548 հինգ կաթողիկոսներ յաջորդեցին գահին վրայ: Այս 40 տարուան շրջանէն չունինք որ եւ է վաւերագիր, որ հաղորդէր մեզի տեղեկութիւններ Հոռոմոց, Հայոց, Վրաց եւ Աղուանից եկեղեցական յարաբերութեանց մասին: Բայց կարելի է մտածել, թէ Սիմէոն Բեթ-Արշամացի, որ գտաւ Բաբգէնի քով յօժար ունկնդրութիւն, նաեւ անկէ ետքը յարաբերութեան մէջ ապրած ըլլայ Հայոց հետ: Իսկ 550ին, երբ Ներսէս Բ. Աշտարակեցին էր Հայոց կաթողիկոս (548—557) 10 գլխով պատգամաւորութիւն մը կը հասնի Դուին խումբ մը ասորի վանականներէ, որոնք խնդրագիր կը ներկայացնեն*

կաթողիկոսին, հայցելով եպիսկոպոս ձեռնադրել Արդիշոյ երէցն Սարեբոյ վանքէն ի Սասուն: Այս խնդրագրին մէջ կը գրեն. «Հայր էք դուք մեր արդարութեան, եւ մեք որդիք եմք ձեր հաւատովք, զի հաւատ մեր եւ ձեր մի է, զոր քարոզեցին մարգարէք եւ առաքեալք եւ ուսուցին հարք ճշմարիտք» երեք տիեզերական ժողովոց. «Եւ այսպէս փառաբանեմք. Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ: Եւ նզովեմք զՆեստոր... եւ զԹէոդորիտոս եւ զժողովն Քաղկեդոնի եւ զտումարն Լեւոնի. եւ զԱպողինարիս եւ զՆուաքիոս եւ զՄակեդոս եւ զգիրս իւրեանց ապականութեան...» (Գիրք Թղթոց, 52—54): Ասկէ յայտնի կը դառնայ, թէ Յուլիանիտ էին այդ ասորիները եւ իրենց դէմ ունէին ոչ միայն Քաղկեդոնականները եւ Նեստորականները, այլ եւ ասորի Սեւերեանները: Եւ որովհետեւ չունէին եպիսկոպոս մը, որ ձեռնադրէ իրենց Թիկնածուն, դիմած են իբրեւ Սասունցի Հայոց կաթողիկոսին Ներսէսի, որուն աթոռակիցն էր Մեհրշապուհ Մամիկոնէից եւ Տարօնոյ եպիսկոպոսը: Տարօն դրացի էր Սասունի. եւ կարելի է ենթադրել, թէ Մեհրշապուհի գիտակցութեամբ դիմած ըլլան անոնք Հայոց կաթողիկոսին:

Ներսէս կաթողիկոս կը ձեռնադրէ Արդիշոյ երէցը եպիսկոպոս, որ ինք զինքը կը ներկայացնէ այսուհետեւ «եպիսկոպոս Ասո-

րեաց ուղղափառաց», այս ինքն Յուլիանիտաց:

Այն հաւատոյ դաւանութիւնը, զոր խոստովանած էին Ասորիները, նոյնութեամբ կրկնած է Կաթողիկոսը իր պատասխանին մէջ, հանդերձ նզովքներով: Թէ ե՞րբ տեղի ունեցաւ Հայոց եւ Յուլիանիտ Ասորւոց մէջ հաւատքի այս միութիւնը — «մի հաւատ մեր եւ ձեր մի է» — ճշդիւ կարելի չէ որոշել ժամանակը. բայց այն ստոյգ կը թուի թէ 548էն ի վեր Հայոց եւ ասորի Յուլիանիտներու հաւատը մի ըլլալով, խզուած էր այն հաւատքէն, զոր ունէին Բարդէնի օրով «Հոռոմք, Հայք, Վիրք եւ Աղուանք»:

Արդիշոյ եպիսկոպոս Ասորեաց ուղղափառաց Ներսէս եւ Յովհաննէս կաթողիկոսներու օրով, ուստի 550—570 շրջանին, ստէպ կ՚երեւար Դուինայ կաթողիկոսարանին մէջ. ան ներկայ էր Հայ եպիսկոպոսներու շարքին մէջ, երբ կարեւոր որոշումներ տալ պէտք ըլլար: Ան հեղինակութիւն էր. գիտէր հայերէն եւ կը շարադրէր աստուածաբանական թուղթեր եւ վճիռներ:

Ունինք իրմէ.

ա. ՅԱրդիշոյէ եպիսկոպոսէ Ասորեաց առ տէր Ներսէս Հայոց կաթողիկոս Թուղթ ողջունի (էջ 59—61):

բ. Արդիշոյի եպիսկոպոսի Ասորեաց ուղղափառաց առ տէր Ներսէս կաթողիկոս Հայոց

եւ առ աթոռակիցս նորին յաղագս անիծեալ Նեստորականաց հերձուածողաց (62—65):

գ. Նորին Աբդիշոյ եպիսկոպոսի յաղագս Նեստորականաց եւ ամենայն հերձուածողաց:

դ. Նորին Աբդիշոյ եպիսկոպոսի յաղագս նզովից զամենայն հերձուածողս, որք էին հակառակ Ուղղափառաց (68—69):

Գիրք Թղթոց, էջ 59—69:

Գ. եւ Դ. գրուածքները մուտ գտած են նաեւ Հայոց Կանոնագիրքին մէջ իբրեւ «Խոստովանութիւն ժողովոյն Անտիոքայ». այսպէս Վիեննա, Թ. 256, թղ. 100բ—101ա: Համմ. նաեւ Վենետիկ, Թ. 206 (ձառընտիր), թղ. 21ա (Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 158):

Չենք կրնար ենթադրել, թէ հաւատոյ այս նոր դաւանութիւնը, որ ընդունուած էր Դուինոյ Կաթողիկոսարանէն, նաեւ Վրաց եւ Աղուանից համաձայնութիւնը գտած ըլլար: Պատմութիւնը կը վկայէ, թէ ոչ միայն Վիրք եւ Աղուանք, այլ եւ Սիւնիք մերժեցին խոստովանիլ զայն: Խզեցին անոնք իրենց յարաբերութիւնը Դուինի հետ եւ դարձուցին իրենց աչքը Երուսաղէմին:

5. Երուսաղէմ: Կիւրիոն Վրաց կաթողիկոսը երբ Աբրահամ կաթողիկոսէն մեղադրուեցաւ, որ Քաղկեդոնի ժողովն եւ Լեւոնի տումարը ընդունած է, պատասխանեց թէ մեր նախնիք եւ մենք, ինչպէս եւ դուք «զհաւատս զԵրուսաղէմի ունէին, եւ մեք եւ դուք

նոյնպէս». ուստի նաեւ այժմ «զհաւատ զԵրուսաղէմի ունիմք եւ կալցուք» (Գիրք Թղթոց, 167)։ Երուսաղէմի սրբավայրերը իրենց կը ձգէին վաղ ժամանակներէ ի վեր քրիստոնեայ հաւատացեալները, մօտաւոր եւ հեռաւոր աշխարհներէ։ Ուխտաւորներէն ոմանք կը հաստատուէին հոն, կը շինէին վանքեր, եւ այսպէս կը բարգաւաճէր հոն վանական կեանքը։ Կը յիշուին Ե. եւ Զ. դարերէն բազմաթիւ վանքեր, որոնք շինուած էին Երուսաղէմի եւ շրջակայից մէջ Հայերէն, Վրացիներէն եւ Աղուաններէն, ամէնն ալ բնակուած վանականներէ։ Անաստաս վարդապետ, որ Է. դարու երկրորդ կէսին Համազասպ Մամիկոնեանի խնդրանքով կազմած էր Երուսաղէմի հայ վանքերու Ցուցակը, կը յիշէ 70 վանք։ Եւ խօսելով վանականներու վրայ, կը գրէ, թէ «բազում նեղութիւնս եւ տանջանս կրեցին Հարքն Հայոց եւ վանորայքն ի պատրիարգացն Հոռոմոց...։ Եւ միաբան ժողովեալ ամենայն Հարքն եւ առաջնորդք մենաստանացն եւ խրճթաւոր միայնակեացքն, անձինք իբրեւ հինգհարիւր, գրեցին առ Երանելին Կաթողիկոսն Յոհան (557—574) եւ առ այլ աթոռակալսն, եթէ զի՞նչ պարտ իցէ առնել. հաւանե՞լ նոցա եւ ունել զտեղի բնակութեան իւրեանց, եւ թէ՝ թողուլ եւ ելանել անտի. զի հրաման թագաւորին խստանայր ի վերայ սորա քաղաքին եւ հայրապետացն, զի մի բնակեցեն անդ[ր] ի

Հայոց կրօնաւորաց եւ Յակոբիկ ասորի կամ յեգիպտացւոց. այլ միայն որք ողջ ունին զհաւատս Թադաւորին եւ զՅորնայի (այս ինքն զծագումն Քաղկեդոնի) սահմանադրութիւնն: Եւ գրեաց կաթողիկոսն Հայոց, թէ վասն հաւատոյ մասին մի՛ հնազանդիք դոցա, այլ թողէք եւ արտաքս գնացէք ի քաղաքէ այտի: Եւ բազումք թողին զմենաստանս իւրեանց եւ գնչս եւ ի բաց գնացին» (Հայապատում, Բ., էջ 229):

Այդ վանքերէն մէկն էր, ըստ Անաստաս վարդապետին, «Գանդայ վանքն, որ սուրբ Կարապետին է, որ յարեւելից կողմանէ ի Զիթենեաց լերինն կայ, նոյնպէս արքունի ծախիւք շինեալ, յանուն սուրբ Կաթուղիկէին որ ի Վաղարշապատ քաղաքի, զոր Աղուանք ունին մինչեւ ցայժմ» (անդ, 227): Զայս կը յիշէ նաեւ Աղուանից պատմիչը (Բ. 52) ի բանից Անաստասի. «Անուանք վանօրէից, որք յԵրուսաղէմ են շինեալ յԱղուանից անուն...: Գանդայ վանքն, որ յարեւելից կողմանէ Զիթենեաց լերինն կայ. Գանոն ոմն ճգնաւոր յԱղուանից եղեալ նախաշինող. եւ այժմ Պետրոս աղուան քահանայ ունի»:

Այստեղ կը նստէր իբր 550էն ի վեր Թովմա աղուան վանական: Զինքը կը յիշէ Երուսաղէմի Յովհաննէս հայրապետ իր առ Աբաս Թուղթին մէջ այսպէս. «Աստուածասէր Թումաս երանելւոյ Գանդայ վանաց վանական...» «Բարեպաշտ եւ աշխատասէր Թումաս, որ

*ոչինչ պէտս ունի ի ձէնջ պատուի եւ մեծութեան, բայց միայն ողւոյ ձերոյ փրկութեան»: Սա մտերիմ յարաբերութեան մէջ անգւոյն Հայրապետներու հետ, յորդոր կարգացած է Նուարդէս, Մակար եւ Յովհաննէս պատրիարքներուն թուղթեր գրելու եւ հրահանգներ տալու Աղուանից եւ Սիւնեաց եկեղեցիներուն: Ան թարգմանած է անոնց թուղթերը հայերէնի եւ Աղուանից եւ Սիւնեաց թուղթերը յունարէնի, եւ այսպէս միջնորդ եղած է երկու կողմերու թղթակցութիւններուն. մինչեւ իսկ անձամբ թղթատարի դերը կատարած: Իր անունին ծանօթ է Աղուանից պատմիչը, երբ կը գրէ թէ Արսու «հայածեաց (*) ի տանէն Աղուանից զվարդապետս կրօնին այնմիկ՝* զԹովմաս *եւ զՆեղիոյն եւ զԻնոան եւ զԻրասն» (Բ. 8): Վերջին երեք անունները անծանօթ են այլուստ:*

6. Յովհաննէս Բ. կաթողիկոս Գաբեղինեցի: *Այն թուղթերն եւ թելադրութիւնները, որոնք կը հանէին Աղուանից եւ Սիւնեաց աշխարհները, կը յուէին Դուին: Այս միջոցին Սիւնիքը բաժնուած էր քաղաքականօպէս Մարզպանական Հայաստանէն. երբ նաեւ եկեղեցին հեռացած Դուինի կաթողիկոսարանի իրաւասութենէն եւ յարաբերութեան մէջ մտած Աղուանից եպիսկոպոսապետի եւ Երուսաղէմի պատրիարքութեան հետ: Այս շրջանին էր, որ մտահոգուելով Դունոյ աթոռը, փորձեց իր նախկին իրաւասութիւն*

արժեցնել Սիւնիքի եւ Աղուանից վրայ։ Յովհաննէս Բ. կաթողիկոս գրեց երկու Թուղթ, մին Սիւնեաց Վրթանէս եպիսկոպոսին եւ միւսը Աղուանից Արաս եպիսկոպոսին։ Առաջին թուղթին մէջ կը յիշուին 6 խորհրդակից եպիսկոպոսներ, անոնց թուին մէջ նաեւ «Արցիշոյ Ասորեաց ուղղափառաց եպիսկոպոս»։ Իսկ երկրորդ թուղթին մէջ 10 եպիսկոպոսներ, անոնց թուին մէջ դարձեալ Արցիշոյ եպիսկոպոս։

Սիւնեաց կը յիշեցնէ կաթողիկոսը 554/5 տարւոյ Դուինի ժողովը, որ գումարուած էր Խուժիկ-Նեստորականներու (Մանիքեցիներու) համար եւ թէ ինչպէս «միաբանութեամբ գլխոց Նեստորիանոսի եւ զԲադկեցանիոսի եւ զայլ հերձուածողս ի մեր սուրբ եկեղեցւոյս նզովիւք հալածական արարաք... այսման արարաք ամենեւիմբ հեռանալ ի հաղորդութենէ նոցա»։

Այս ժողովի գործը հասած է մեզի. հոն խօսքը Խուժիկ-Նեստորականներու, այսինքն Գաւղիկեաններու մասին է, եւ որ եւ է ակնարկութիւն չէ եղած «Բադկեցանիններու եւ այլ հերձուածողներու» մասին։

Շարունակութեան մէջ կը գրէ Կաթողիկոսը «ի հաւատարիմ մարդկանէ լուաք, եթէ պիղծ Նեստորականք բազումք եւ ի ձեր աշխարհիդ բնակեալ են. եւ դուք զդոսա ի սուրբ եկեղեցիս ընդունիք եւ ընդ նոսա հաղորդիք... զլուսաւոր եւ զճշմարիտ հաւատ զոր

մեք եւ զուք ընկալաք եւ այժմ ունիմք, զհոգեւոր սէր զոր ընդ ձեզ ունէաք, սատանայ քան զամենայն զայդ հոգ յանձին կալաք հեռացուցանել եւ ի ձէնջ զչարի որոմանն սերմանս...: Զպիղծ Նեստորիանոսաց եւ զայլ հերձուածողս որ յաշխարհիդ ձերում են, նոյնպէս եւ ի սրբոց եկեղեցեաց եւ ի ձեր հաղորդութենէ նզովիւք ի բաց մերժեցէք» (Գիրք Թղթոց, էջ 78—80):

Այստեղ Նեստորականք եւ Քաղկեդոնիտք նոյնացուած են:

Մատթէոս քահանայ, որ Թուղթս տարած է Սիւնիք, թղթատարն եղած է նաեւ առ Աբաս Թուղթին:

Այսունից գրուած Թուղթը կը սկսի.

«Լուսոյ եւ ճշմարտիչ աստուածաբանաց սրբելի եղբարց եւ աթոռակցաց մերոց Աբասու Պարտաւայ եպիսկոպոսի, Մովսէսի Բաղասատու եպիսկոպոսի, Գրիգորի Կապաղականու եպիսկոպոսի, Համամայ Ամարասու եպիսկոպոսի, Տիմոթէի Բաղասականու եպիսկոպոսի, Ամբակումայ Շաքէոյ եպիսկոպոսի, Յոհանկայ Գարդմանայ եպիսկոպոսի, Ղեւոնդի Մեծկողմանց եպիսկոպոսի, ի Յովհաննիսէ Հայոց կաթողիկոսէ, յԱբրահամայ Տարօնոյ եւ Մամիկոնենից եպիսկոպոսէ... յԱրդիշոյէ Ասորեաց ուղղափառաց եպիսկոպոսէ...»:

«Քանզի եհաս առ մեզ յաւր դժնդակ համբաւոյ, եթէ են ոմանք զայլք յափշտակողք զգեստու ոչխարաց, որք եկին յաշխարհ ձեր

ի վանաց պղծոյ Պետրոսի, որ անուամբ Աղքատասէր կոչի եւ գործով քրիստոսատեաց եւ ուրացող զսուրբ Երրորդութիւնն. զչար որոմն անիծելոյն Նեստորի եւ զժողովոյն Քաղկեդոնի անարգելաբար սերմանեն յոգիս անմեղաց, թիւրելով զնոսա յուղղափառ հաւատոյ...»: Կը յաջորդէ հաւատոյ Հանգանակ մը, որ հաստատապէս ընդունելի է նաեւ Քաղկեդոնականներու համար: Բայց ոչ չարունակութիւնը, որ Միաբնեայց յատուկ է. «Այսպէս հաւատամք եւ երկրպագեմք եւ փառաբանելով ասեմք. Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ: Իսկ զոչ խոստովանողսն այսպէս նզովեցին սուրբ հարքն, նմանապէս եւ մեք նզովեմք զինս զամենեսեան եղեալ հերձուածողս եւ զնորս. զԱրիոս... եւ զպիղծն Նեստոր եւ զԹէոդորոս եւ զԹէոդորիտոս եւ զանօրէն ժողովն Քաղկեդոնի եւ զՏումարն Լեւոնի, որ լրբաբար յանդգնեցան ասել երկուս բնութիւնս եւ երկուս դէմս ի վերայ միոյ Քրիստոսի Աստուծոյ...: Նզովեմք... եւ զՍեւերոս եւ զգիրս ապականութեան նորա...»: «Եթէ ոք եկեսցէ առ ձեզ եւ զվարդապետութիւնս զայս ոչ ունիցի, մի՛ ընդունիցիք զնա ի տուն եւ մի բանիւ ողջոյն ասել նմա... զայնպիսին ի տանց եւ ի սահմանաց ձերոց հալածել եւ զմահաբեր վարդապետութիւն նոցա ամենեւին ոչ առնել արժանի լսելութեան»:

Անշուշտ խոհեմագոյն գործած պիտի ըլլար Կաթողիկոսը եթէ նախ ինքն ի գործ դրած ըլլար այս զգուշութիւններն եւ ճանապարհ ցոյց տուած ըլլար Արդիշոյ եպիսկոպոսին երթալ իր «Ասորեաց ուղղափառաց» եւ անոնց քով արժեցնել իր աստուածաբանութիւնը։ Այսպէս անաչառ վերահաստատուած պիտի ըլլար այն հաւատն, զոր Հռոմք Հայք, Վիրք եւ Աղուանք ունէին երբեմն։ Այդ Յուլիանիտ Ասորիէն ուսան Երից Սրբասացութեան մէջ «որ խաչեցար» յաւելուածը եւ դարձեալ Քաղկեդոնի ժողովը եւ Լեւոնի տումարն մերժել եւ Թէոդորետոսը հերձուածողներու թուին մէջ նզովել, այն Թէոդորետոսը, զոր մեր նախնիք 453/5 տարիներուն իրենց բարի խորհրդատուն ճանչցած էին եւ իր հրահանգները խնդրած էին[4]։

Կաթողիկոսը կը վերջացնէ իր Թուղթը· «Արդ վասն զի հարքն ձեր հաւատակից էին հարանց մերոց եւ դուք մեզ, հաճոյ թուեցաւ գալ ի ձէնջ այսր եպիսկոպոսաց երից կամ աւելեաց, լսել ի մէնջ յանդիման զճշմարիտ վարդապետութիւնն[5]»։

---

[4] Ակինեան, Կարմիրն Վարդան, Վիեննա 1951, էջ 151—153։

[5] Գիրք Թղթոց, էջ 81—84։ Պատմ. Աղուանից, Բ., 7 (էջ 137—142)։ Թղթիս «Աստուածախնամ ըր» յառաջ բերուած՝ Կնիք՝ Հաւատոյ, 136—139· նոյնը «Աստուածաբանութիւն Հայոց զոր գրեցին առ ժողովն Եփեսոսի» խորագրով՝ Էջմիածին, Թ. 3111. թղ. 24ա եւ 3771, թղ. 562բ։

*Աբաս պատասխանեց այս Թուղթին, ինչպէս* Narratio *(տես վարը) կը հաւաստէ։ Պատճէնը չէ հասած մեզի։*

7. Յովհաննէս Երուսաղէմի հայրապետին Թուղթն առ Աբաս։ *Այս երկու Թուղթերուն պատճէնները (Թերեւս Թովմաս, Եղիա, Բնաս եւ Իրաս վանականներու ձեռքով) կը հասնին Երուսաղէմ։ 575ին Երուսաղէմի հայրապետ կ'ընտրուի Յովհաննէս։ Թովմաս կը ներկայանայ հայրապետին եւ կը հաղորդէ այդ նամակներու բովանդակութիւնը, խնդրելով իրմէ յորդորական-վարդապետական Թուղթ մը Աբաս եպիսկոպոսին համար։ Յովհաննէս ընդառաջ կու գայ անոր խնդրանքին, թէեւ ակամայ, որովհետեւ տրամադիր չէր Թղթակցիլ արտասահման, ուրիշ պետութեան (Պարսից) տակ ապրող անձի մը հետ։ Գրութեան տարին չէ նշանակուած. բայց կը զգացուի թէ 575էն ոչ շատ վերջը գրուած ըլլալու է։ Հռոմայեցւոց կայսրն է այս շրջանին Յուստինոս Բ. (565—578, հոկտ. 5), որ 574էն սկսեալ իրեն գահակից ունէր Տիբերիոս Բ.։ Կ. Պոլսոյ պատրիարքն էր Յովհաննէս Գ. Անտիոքացի (565—577)։ Հայոց կաթողիկոսը՝ Յովհաննէս Բ. վախճանեցաւ Կ. Պոլիս, հաւանօրէն 574/6ին։ Դուինի կաթողիկոսը՝ Մովսէս Բ. Եղիվարդեցի (574°—604)։ «Հայոց պատերազմը» կը շարունակուէր տակաւին։*

*Այս նամակին հայերէն թարգմանու-*

*թիւնը հոգացած է Թովմաս եւ ուղարկած Կաթողիկոսին։ Այս նկատմամբ որ եւ է խօսք չէ բրած Աղուանից պատմագիրը, բայց նամակը առնուած է Թղթոց գրքին մէջ։ Անոր հրատարակութիւնը կը պարտինք Կարապետ Վ. Տէր-Մկրտչեանի. ուսկից կու տամ այս տեղ քաղուածքներս.*

*«Այս թուղթ Յոհաննու Երուսաղէմի եպիսկոպոսի է առ Աբաս Աղուանից կաթողիկոս։*

*Սրբոյ եւ աստուածասիրի եղանելոյ հոգեւոր եղբօր եւ պաշտօնակցի մերոյ Աբասայ եպիսկոպոսի Աղուանից՝ ի Յոհաննէ եպիսկոպոսապետէ Երուսաղէմի։ — Աստուածասէր Թովմաս եղանելոյ Պանտոյ փանայ վանական բազ ամփոփութեանն՝ որպէս յառաջ քան զմեզ յաջորդեալքս սուրբ աթոռոյն Յակովբայ Եղբօր Տեառն առեալ էր գիր հաւատոյ եւ Կարգաց եկեղեցւոյ, նոյնպէս եւ ի մէնջ խնդրեաց եւ մատոյց առմարս երկուս ժողովոյ, որ առանց Քրիստոսի ժողովեալ էր ի Հայս հակառակ սրբոյ եկեղեցւոյ. եւ զանձինս իւրեանց ի ժառանգութենէն Քրիստոսի ի բաց հանին։ Զմին, զոր առաքեալ իսկ էր ի ձեր աշխարհդ, զի որոգայթեսցէն զձեզ յիւրեանց կորուստն. եւ զմիւսն Սահման հաւատոյ իւրեանց ամբարշտութեանն։ Յարում եւ ուսոյց զմեզ վասն բարեաւէր կամաց Երանութեան քում, եթէ ընդ բարւոք ճանապարհ հաւատոյ եւ ուղիղ ընթանաս, զոր մեր*

յուսայ յայժ ուրախ եղաք: Բայց յուսաք թէ ոմանք յիշխանութենէդ քումմէ ընկալան զայնպիսի անուն եւ անեղծական բանս խաբէութեան. եւ Սրբութիւնդ քո ոչ ել ի վերայ նոցա: Ո՞չ գիտես եթէ... ոչ է արժան տալ գիտաւս Աստուծոյ Նեստրի եւ Նեսերի եւ Պետրոսի Անտիոքացւոյ եւ Յուլիանոսի Ալիկառնացւոյ եւ ոչ գրաջութիւն Աստուծոյ Արգիշցի տարւոյ, որ եղեւ առաջնորդ կորըստեանն Հայոց եւ կամ ժողովոյն Հայոց...:

«Զորս ես նզովեցի եւ հալածեցի. եւ (ի) քաղաք(ի)ս դեռ սրբէր վանք (այլ. զվանսն) մի Հայոց մինչեւ հալածեալքն առ Թագաւորն գնացին[4] աւելով եթէ Հալածեաց զմեզ հայրապետն Երուսաղէմի: Իսկ Բարեպաշտութիւն նորա գրեաց առ մեզ, եթէ Բարիոք արարեր բաս կանոնաց գիրըդ խնդրելով. զի եթէ այդպիսեացդ թոյլ ոք տայցէ իրեանց ամբարշտութեան եւ այլ ճարակ աստ գտանեն, զոր դժուար ոք կարէ ուղղել, մանաւանդ զարտաքին ազգդ[5], որ ոչ կարեն իմանալ զմիտս գրոց. եւ բաս յառաջընթկայ սովորութեան իւրեանց պշարափառութիւն իբրեւ զբարեպաշտութիւն համարին: Այլ եւ Հերձուածդ իսկ Հայոց անգրուն է եւ ըստ բազում Հերձուածս միաւորի: Եւ իբրեւ ի գրոց ինչ ոչ կարացին ցուցանել իշխանքն Հայոց, առ ի աղաչանս առաքեցին, եթէ

[4] Տիբերիոս Բ.:
[5] Պարսից Հպատակ Հայերը:

առաջին Թագաւորքն զվանս զայն մեզ իբրեւ զպարգեւ շնորհեցին նովիմբ ուսմամբն: Որոց արարի պատասխանի, թէ Անհնար է Թագաւորաց հերձուածս պարգեւ շնորհել: Եւ ապա իբրեւ ոչինչ եւս գտեալ՝ լռեցին: Բայց զուխմով հրամանաւ զհերձուածողսդ հան եւ զվանսդ ուղղափառաց տուր. եւ յեկեղեցին որք կամէին ըստ եկեղեցւոյ լինել, եթէ եւ ձեռնադրեալ զհերձուածսն նզովեն, մի արգելուք, այլ սիրով ընկալարուք, քանզի աղէտք են:

Այնպէս եւ ի հայրապետէ նորա[6] գիր ընկալայ, եթէ Բարեպաշտ Թագաւորս մեր ինձ ասաց, եթէ Վասն եկեղեցւոյ իւրաց գիս աշխատ գի՞ առնէք. մեզ արտաքին իրաց եւ պատերազմաց է հոգալ. եկեղեցւոյ եւ ճշմարիտ հաւատոյ գործ եպիսկոպոսաց է. քննեցէք եւ հաստատուն պահեցէք եւ զիս եւ զաշխարհս: Իսկ ես կոչեցի զիշխանս Հայոց եւ բազում ինչ խօսեցայ: Եւ նոքա զԿեսարիա կալան բարուրս: Եւ ես ասեմ. Թէ Կեսարիայն հաճոյ է ձեզ, երթայք, ի Կեսարիայն կացէք. բայց յերկուս քաղաքս Թագաւորականս յայտնի հերձուածողի ոչ տամք բնակել, ի յԵրուսաղէմ Երկնաւոր Թագաւորին եւ մերս երկրաւոր. եւ վասն այլ տիեզերաց իւրաքանչիւր եպիսկոպոսունք դատապարտին եթէ անփոյթ առնեն: Եւ ապա Հայք հաղորդեցան[7]

---

[6] Յովհաննէս Գ. Անտիոքացի պատրիարք Կ. Պոլսոյ:

[7] Հմմտ. Յովհ. Եփեսացի, Եկեղ. Պատմ., Բ., 23. Ակինեան, Եղիշէ, Գ., էջ 304/5:

եւ եթէ մնայ ոք՝ հաղորդիլ ունի: Բայց դու տէր, ըստ թագաւորի հրամանին զիմանդ կարգաւորեա եւ մաքուր պահեա զքաղաքդ,:

Եւ ես նոյնպէս կարգաւորեցի որպէս թագաւորն հրամայեաց, այլեւայլ վանորայդ որ ի քաղաքիս եւ որ արտաքոյ, զոր միանգամ ծանուցին՝ ըստ եկեղեցւոյ կարգաւորեցի: Եւ ես թէպէտ եւ չյօժարէի յայլոց ի թագաւորութիւն[8] այդպիսի ինչ գրել, բայց յորժամ չարալուր գիրն Հայոց ի լսելիս իմ եհաս, հարկաւորեցայ գրել. քանզի մեզ զահն Տեառն գիտելով չափ, ո՛վ եղբարք, ոչ է պարտ ծուլանալ...: Նոյնպէս եւ Սրբութեանդ ձերոյ պարտ է հոգալ եւ վարդապետել զհաւատացեալ ձեզ յԱստուծոյ հօտդ ամենայն զգուշութեամբ...»: Կու տայ հաւատոյ հանգանակ մը: «Եւ վասն զի Հայք յԱսորեաց խաբեցան, որ եկին արտաքոյ սրբոյ եկեղեցւոյ վասն նզովելոյ նոցա զսուրբ ժողովն Քաղկեդոնի եւ անկան յաղանդն Յուլիանոսի Ալիկառնասացւոյ, որ է սա ի բուսոյ որոմանն Դէոսկորի եւ Եւտիքի եւ Թէոդորոսի...: Իսկ այլքս, որ ի սոցանէ բուսան, այսինքն Տիմոթէոս Եղուրոս եւ Պետրոս Ծանրախօս, զոր(ս) Աղեքսանդրացի հայրապետս կոչեն, որք աքսորեցան վասն չար ամպարշտութեան իւրեանց...: Եւ դարձեալ Գայիոս, եւ Սեւեր եւ Պետրոս Անտիոքացի եւ Յուլիանոս Ալի-

[8] Խոսրով Ա. Պարսից † 579:

կանոնացի, որք նորաձեւ իմն մուծին յաղանդն Եւտիքի... եւ եղեն պատճառք կորըստեան անձանց իւրեանց եւ աշխարհի, զորոյ բարբաջմունս, որով այժմ հեռացան Հայք յեկեղեցւոյ, ասասցուք...: Իսկ զսուրբ եւ զտիեզերական ժողովն Քաղկեդոնի, զոր նզովեցին Հայքդ, որք մոլորեցան ի ձեռն Աբդիշոյի ասորւոյ եւ ելին արտաքոյ սուրբ եւ կաթուղիկէ եկեղեցւոյ...: Բայց ձեզ ոչ է պարտ զհետ Ասորեստանեայցդ մոլորել այլ գալ զհետ պատուիրանաց տիեզերական եկեղեցւոյ Ս. Յարութեանն...:

Թէպէտ եւ ոչ գիտութեամբ ունիք զմիոս հերձուածոյդ Դիոսկորի եւ զԱնտիոքացւոյն, որ զԱնմահ Խաչեցարդ աւելադրեցին ի Ս. Երրորդութեան ձայնի եւ իբրեւ ընդ պատրուակաւ մուծին զաշխարհ ի միոս Եւտիքի հերձուածոյն: Եւ բազումք թէպէտ եւ ոչ գիտեն զմայր հերձուածոյդ, այլ ունին ի սովորութենէ իբրեւ զուքդ, պարտ է ձեզ լսել աշխատաւորաց, յորժամ ծանուցին...:

Բայց վասն քո Երանութեանդ լուաք, եթէ կամակից ես բարւոյ. եւ ընկալար Թուղթս երկուս ի Մակարայ եւ յՇնադորայ ի ձեռն բարեպաշտի եւ աշխատասիրի Թումասու, որ ոչինչ պէտս ունի ի ձէնջ պատուի եւ մեծութեան, բայց միայն ոգւոց ձերոց փրկութեան. վասն որոյ եւ զիս թախանձեաց գրել ըստ օրինակի նոցա, որ յառաջ քան զմեզ էին նախընկալք աթոռոյս Յակոբայ առաքելոյ. եւ

եւ ոչ յապաղեցի ծանուցանել զբարեպաշտութիւն կամողացդ բարեպաշտութեան:

Ոչ միայն զմերս (Թուղթ) առաքեցաք, այլ եւ զՊատճառս չորից ուղղափառ ժողովոցն գրել հրամայեցաք, զի գիտիցէք, եթէ վասն որո՞ց հերձուածոց ժողովեցան եւ զինչ սահմանեցին: Եւ վասն յաւելադրութեան Անտիոքացւոյն հրամայեցաք գրել զերանելեաց չորից հայրապետացն՝ զՇամոյն եւ զայլոց ուղղափառ եպիսկոպոսաց, որ զԱնտիոքացւոյն չարափառութիւնն յանդիմանեցին գրով վկայութեամբ: Եւ վասն Յուլիանոսի Ալիկառնացւոյ հերձուածոյն, որ զմարմինն Քրիստոսի օտարացոյց ի մերմէ բնութենէս եւ անապականացու անուանեաց մինչեւ ցխաչելութիւնն եւ վասն այսր հերձուածոյ հրամայեցաք գրել զերանելեաց եպիսկոպոսացն, զՇամոյն եւ Անտիոքայն զարքեպիսկոպոսացն: Ընդ նոսին եւ զԹուղթսն Կիւրղի արքեպիսկոպոսին, որ զՆեստորի չարափառութիւնն յանդիմանեաց: Զայս ամենայն թարգմանել եւ գրել հրամայեցաք աշխատասիրի Թումասու քահանայի եւ առաքել քում Բարեպաշտութեանդ. զի ոչ միայն իմով գրով, այլ քան զմեզ լաւագունից թղթովք ուսուցանիցես զեպիսկոպոսակիցս քո, որ զիպող եւ ճշմարիտ վկայութեամբ են հաստատեալ ի սուրբ աւետարանէն եւ յառաքելոցն թղթոց, եթէ ոք կամիցի երկիւղիւն Աստուծոյ ընդունել: Բայց միայն դու մի թագուցաներ

*եւ նենգէր զճշմարիտ վարդապետութիւն եկեղեցւոյ...:*

*Բայց լուաք, թէ ոմանք յիշխանութենէդ քումմէ բարեպաշտից նեղութիւն եւ հալածանս հասուցանեն... եւ դուք լսէք եւ ներէք այդպիսի անօրէնութեան... որ քաւ եւ մի լիցի. այլ մեծաւ սրտմտութեամբ սաստել այնպիսեացն... զի ոչ են այնպիսիքն տեսուչք եկեղեցւոյ, այլ գայլք ապականիչք: Եւ Բարեպաշտութեանդ քում ոչ է պարտ տալ ձեռնադրութիւն առանց մեծի քննութեան. քանզի ուսաք, եթէ միտս ունիս եւ գիտութիւն եւ պատիւ եւ սէր եւ սաստ ի Թագաւորաց. եւ կարող ես ամենայնիւ ըմբերանել որ ի քէն ձեռնադրեցան եւ անուղղայս գնայցեն...: Բայց այլոց աշխարհականաց ազատաց պարտ է մեղմով վկայել եւ զբարեպաշտութիւն ծանուցանել...:*

*Զայս ամենայն ոչ թէ ուսուցանել, այլ յիշեցուցանել գիտութեանդ քում կամեցայ:*

*Ողջ լեր Տէրամբ, Բարեպաշտօնակից մեր, եւ մեք ողջ եմք յողորմութենէն Աստուծոյ»:*

*Արարատ*, 1896, *էջ* 252—256:

*Հայոց եւ Սիւնեաց եւ Աղուանից մէջ յուզուած այս դաւանաբանական թեր եւ դէմ վէճերը արծարծուեցան նաեւ Գուգարքի մէջ, որ Վրաստանի կը պատկանէր: Այս մասին կը պատմէ* Narratio:

*«Եւ եղեւ ժողով մեծ ի Կոստանդնուպօ-*

լիս ընդդէմ Հերետիկոսաց ոմանց, զոր կոչեմք Հինգերորդ ժողով (573°)։ Եւ զի միաբանեցան (Հայք) ընդ նոսա, կոչեցին զսուրբ զբունս Սրբոյն Սոփիայ կից յանուն նոցա, որ եւ մինչեւ ցայսօր անուանեալ կոչի Դուռն Հայոց։ Յայնժամ ուրեմն նզովեցին զՈրոգէնէս, զԵւագրիոս, զԴիդիմոս, զՆեստորեանս, զՅակոբիկեանս, զՅուլիանեանս, զԳայիանեանս եւ առ հասարակ զամենեսեան, որք միանգամ զՆեստորի հերձուածն յանձինս բարձեալ բերէին։ Իբրեւ դարձան նոքա յաշխարհն Հայոց՝ ոմանք մնացին յօժարութեամբ ընկալեալ զմիաբանութիւնն. իսկ այլք ընդդէմ դարձան, յաւուրս Յովհաննու կաթողիկոսի. զորոց չէ այժմ խօսել մի ըստ միոջէ։ Արդ գրեցին (սոքա) թուղթ առ Աբաս կաթողիկոսն Աղուանից աշխարհին պէս զայս ձեւ օրինակի. Եկ, միաբանեաց ընդ մեզ ի հաւատս. ասա՛ զմի բնութիւն Քրիստոսի Աստուծոյ եւ (յաւե՛լ) ի Սուրբ Աստուած անդր զՈր խաչեցար վասն մեր։ Այլ նա չա՛ռ յանձն եւ անդրէն պատասխանի արար. Պետրոս եւ Գրիգորիոս, որք յառաջ քան զիս կացին, այսպէս ասէին. ե՛ւ ես ոչինչ յաւելից ի վերայ եւ ոչ բարձից ինչ ի բաց։ Գրեցին զնոյն օրինակ եւ առ Վիրս (եւ առ Սիւնիս). սակայն եւ նոքա յաճախագոյնս ընդդէմ բարբառեալ՝ չառին յանձն. բայց միայն Ուտիք, այս ինքն դաւառքն (կոչեցեալք) ըստ բարբառոյն Հայոց՝ Տաշիրք, Ձորափոր եւ Գարդմանք, եւ ոմանք

յԱրձախայ (Հաճեալ Հաւանեցան)։ Ցաւուրս
յայնոսիկ պէսպէս յուզմունք լինիէն ի պատ-
ճառս ապստամբութեան նախարարաց ընդ
բազում աւուրս, եթէ ի Հոռմէական (բաժ-
նին Հայոց) եւ եթէ ի Պարսկականին. յոյզք եւ
խնդիրք դհաւատոց, յաւուրս Կաթողիկո-
սացն Յովհաննու եւ Մովսիսի. եւ յերկա-
րեալ ձգէին մինչեւ յառաջին ամն Խոսրովու
որ թագաւորեաց ի ձեռն Մաւրկայ կայսեր՝
մեծաւ զօրու Հոռմոց» (Garitte, La narratio,
§ 89 եւ էջ 216—219. Հմմտ. ՀԱ. 1953,
էջ 470)։

Կ՚ակնարկէ 570—578 տարիներու Հայ-
կական ապստամբութիւնը եւ յետագայ պա-
տերազմական շարժումները մինչեւ 591։

Աղուանք դաշնակից էին Հայոց. բայց
չկրցան մասնակցիլ կռիւներուն, որովհետեւ
Պարսից բանակը հաւաքուած Փայտակա-
րան, կաշկանդած էր ամէն շարժում։ Այս
մասին տես իմ Եղիշէ, Գ., էջ 57—59, 207։

Խոսրով Բ. գահ բարձրացաւ 591ին։ Նոյն
տարւոյն կնքուեցաւ խաղաղութեան դաշինքը
Պարսից եւ Հռոմայեցւոց մէջ։ Ինչպէս կ՚երե-
ւայ Աղուանից աշխարհը մեկուսի մնաց քսա-
նամեայ պատերազմներէն. բայց մասնակցե-
ցաւ Վահրամ Միհրեւանդակ Չոբինի ապս-
տամբութեան։

Արաս վախճանեցաւ 595ին։ Աթոռին
վրայ յաջորդ ունեցաւ Վիրոյ կաթողիկոսը։

## Գ. ՎԻՐՈՅ ԱՂՈՒԱՆԻՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ

պատմիչ Հերակլի եւ Ջեբու խաքանի արշաւանքներուն եւ սպանման Խոսրով Բ. Պարսից արքային
596—630

*Աղուանից կաթողիկոսներու Գաւազանագրքին մէջ կ'արձանագրուի, թէ Աբաս կաթողիկոսի յաջորդն եղած է «Տէր Վիրոյ, ամս ԼԳ., այր սուրբ եւ պայծառացեալ առաքինութեամբ. հայ թվ. ՀԵ» (այն է փրկչական* 626. *Հայապատում*, 384):

*Իսկ «Անուանք Հայրապետացն Աղուանից» ունին «Տէր Վիրոյ ամս ԼԴ»* (Գ. 24): *Որովհետեւ իր նախորդն Աբաս վախճանած էր իբր* 595*ին, այս* 33 *կամ* 34 *տարիները պէտք է զետեղել ընդ մէջ* 595—631 *տարիներու*:

*Վիրոյ Ուտեցի էր, ծնած Կաղանկատուաց գիւղը. իր Պատմութեան մէջ յիշելով այդ գիւղը, կը գրէ. «Հասեալ... յանդիման* գեղջն մեծի Կաղանկատուաց, *որ ի նմին յՈւտի գաւառի*, յորմէ եւ ես» (*Բ*. 11, *էջ* 155):

*Իր օրով*, 602*ին*, *Փոկաս սպանեց Մաւրիկ կայսրը եւ բռնագրաւեց կայսերական գահը: Պարսից Խոսրով Բ. արքայից արքայ, որ կը յարգէր Մաւրիկը իբրեւ իր «հայրն» եւ իր բարերարը, շարժեց սասանեան բանակները Փոկասի դէմ, որպէս թէ վրէժխնդիր Մաւրիկի սպանութեան: Կայսերա-*

կան քաղաքները. Եղեսիա, Երուսաղէմ, Աղեքսանդրիա... ետեւէ ետեւ ինկան թշնամւոյն ձեռքը. պարսկական բանակը յառաջացաւ մինչեւ Կ. Պոլիս:

Այս միջոցին, 603/4ին, ապստամբեցաւ թագաւորին թիկունքը Աղուանից աշխարհը: Խոսրով չարաչար խորտակեց Աղուանից դիմադրութիւնը: Ապստամբութեան պարագլուխները դատուեցան խստօրէն. «Կորեան, անկան բազումք ի նոցանէ, ոմանք ի սուր եւ ոմանք ի խեղութիւնս անդամոց, ոմանք տարագրեալք յաշխարհս հեռաւորս»: Ապստամբութեան պատասխանատու համարուեցաւ նաեւ Կաթողիկոսը. «յանցական գտեալ ընդ ապստամբողս մեծամեծաց իշխանաց աշխարհին Աղուանից»: Վիրոյ կը դիմէ փախուստի, կ՚ապաւինի Շիրոյ թագուհւոյն բարեխօսութեան, որ կ՚առնէ զանիկա իր պաշտպանութեան տակ. կը միջնորդէ թագաւորին քով. եւ «մեծաւ ջանիւ կարաց գտանել ի պարգեւի զկեանս նորա ի թագաւորէն», բայց պայմանաւ, որ «յամս կենաց իւրոց՝ ոչ դառնալ նմա յերկիր իւր, այլ կալ նմա ի գիրպահւոյն առ Դրանն: Եւ ոչ արգելոյր ի նմանէ զհաս իշխանութեան աթոռոյ նորա եւ ոչ զանուն կաթողիկոսութեան եբարձ ի նմանէն» (Բ. 14, էջ 171. Հմմտ. նաեւ էջ 176 Դաւ.):

Զարմանալի է, որ այս ապստամբութեան մասին ոչ Սեբէոս եւ ոչ ալ Աղուանից

պատմիչը ակնարկութիւն ըրած են. բայց առ այս կը հային Կիւրիոն Վրաց կաթողիկոսի տողերս, ուղղած Սմբատ Վրկան մարզպանին 606/7ին, երբ ան Դուին կը գտնուէր: Կը գրէ Կիւրիոն, թէ Յուրտաւի Մովսէս եպիսկոպոս «վասն չար գործոց իւրոց գաղտ ի գիշերի փախստական գնաց եւ յապստամբս (Աղուանից) չոգաւ առ Վահրամ. եւ այնպէս չարութեամբ գիտաց առնել, զի սակաւիկ ինչ պիտեցաւ եւ դեռ զքաղաքս առնուլ տայր եւ Արեւաց աշխարհին մեծ զեան հասուցանէր (171)»: Մովսէս եպիսկոպոս այսպէս կը ջատագովէ ինք զինքը. «Զեմ առ Վահրամ երթեալ. այլ եւ այսու եւս անգուման առնեմ զտէրդ (այս ինքն զՍմբատ), զի Վահրամայ առ իս գրեալ էր, թէ ի սրտի մեծ պակասութիւն է ձեր ի սրբոյ եկեղեցւոյդ հեռանալդ. բայց մինչ գնացէք, ճանապարհ առ մեզ պիտէր առնել. զի եւ եկեղեցւոյն մեծ բաժին կայ աստ (իմացիր յԱղուանս), որով զանձն ունել մարթ էր (այսինքն՝ կրնայիր օրապահիկդ հոգալ): Զայս թուղթ տեառն Կաթողիկոսի (Աբրահամու) ցուցեալ է (իմ). եւ քեզ տեառն ցուցանեմ: Եւ ես անդրէն պատասխանի արարի. Արդ, ասեմ, ապա անտի զի՞ գնացի, զի առ ձեզ գայի. զի հաւատ ձեր (Աղուանից) եւ նոցա (Վրաց) մի է» (Գիրք Թղթոց, 173): Այս վերջին տողերը ամէն կասկած կը փա-

բառէ ի մասին Վահրամի. ան աղուան ապստամբներու գլուխն էր[1]:

Վիրոյ մնաց Տիզբոն 25 տարի, մինչեւ Խոսրով Բ.ի սպանութիւնը (628/29): Պահեց ան կաթողիկոս տիտղոսը. կը ստանար Աղուանքէն «գհաս իշխանութեան». այնպէս որ այս 604—628 տարիներուն Աղուանից եկեղեցին կը կառավարուէր տեղակալներով: 609ին հրատարակեց Աբրահամ Կաթողիկոս իր Շրջաբերականը, որով կը նզովէր Վրաց Կիւրիոն Կաթողիկոսը: Կ'երեւայ թէ այս Շրջաբերականին մէկ պատճէնը հասած է Պարտաւ եւ Մխիթար Ամարասի եպիսկոպոսը իր աթոռակիցներու հետ գրած է պատասխան մը, որ առիթ ընծայած է Վրթանէս Քերթողին գրելու յանուն Աբրահամ կաթողիկոսին իր երկարաբան թուղթն առ Աղուանից Մխիթար Ամարասի եւ Սիմէոն Մեծ կողմանց եպիսկոպոսներ[2]:

Իր ժամանակը օգտագործեց Վիրոյ հմտանալու պարսիկ լեզուին եւ ծանօթանալու պահլաւ վիպասանութեան: Կը գրէ ինքն իր մասին երրորդ դէմքով. «Էր... այր հանճարեղ եւ իմաստուն, զօրաւոր ի բանս իմաստութեան. եւ լեզու նորա իբրեւ գրիչ երագագրի ի պատմութիւնս խօսից խորհրդա-

---

[1] Հմմտ. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, Վիեննա 1910, էջ 207—209. այսպէս իմանալու է, ինչ որ գրած եմ հոն ի մասին Վահրամի:

[2] Գիրք Թղթոց, 196—211. շարունակութիւնը՝ Արարատ, 1896, էջ 487:

կանանց եւ ի մասուր խօսս թագաւորաց եւ մեծամեծաց: Նաեւ խոնարհախօսութիւն նորա քաղցրալուր ռամկաց եւ խանդիճագանձ ժողովրդոց. որ երկայնէր զխօսս իւր համեմատեալ ընդ ձայն ի մատանց եւ ընդ տաղս նոցա: Ծաղէր, յօրինէր գուսանս բերանոյ իւրոյ՝ զոր օրինակ զմարգարէս յանէլ յեռուցու, մանաւանդ ի թարգմանութեան յեղուին Պարսից վարժեալ» (Բ. 14):

Թէպէտ կը դասուէր Վրթ «ի գիտաւոյ առ Դրանն Մաւրիկ», բայց այս բանտարկութիւնը ոչ այլ ինչ էր, բայց եթէ աքսորականի. այսինքն պիտի չհեռանար Մայրաքաղաքէն: Ունէր իր վրայ Շիրին քրիստոնեայ եւ բարեպաշտ թագուհւոյն հովանին. կը վայելէր անձին ազատութիւն. կ'ընդունէր այցելութիւններ եւ տեղեկութիւններ Աղուանից աշխարհէն եւ կու տար հրահանգներ:

604ին նուաճած էր Խոսրով Երուսաղէմը եւ Զաքարիա հայրապետն եւ այլ հաւատացեալներ Տիզբոն գերի վարած: 612/13 տարւոյն այցելեց Տիզբոն Հայոց Կոմիտաս կաթողիկոս. նոյն տարւոյն գումարուեցաւ այսպէս կոչուած Պարսից ժողովը: Սեբէոսի Պատմութեան մէջ գտնուած է այս ժողովի մասին տեղեկատուութիւն մը, որուն համաձայն ժողովին ատեան նշանակուած էր Սմբատ Վրկան մարզպան, ներկայ էին բազմաթիւ եպիսկոպոսներ, Զաքարիա հայրա-

պետ Երուսաղէմի, Կոմիտաս կաթողիկոս եւ այլն: Կ՚ըսուի. «Իսկ որք զՔաղկեդոնին եւ զՎրաց եւ զԱղուանից կաթողիկոսն եւ այլ բազում եպիսկոպոսունք ի Յունաց կողմանէ...» (էջ 122 Պատկ.): Այս տեղիքը Ասողնիկ ունի ըստ ձեռագրին «Վիրոյ (այլ. Իվերիոյ) եւ Աղուանից կաթողիկոսն, որ էր Փայտակարան, ի դրան արքունի» (էջ 96 Մալխ.): Նորայր Բիւզանդացի, Տեղեկութիւն ի գիրս Պատմութեան Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողիկ կոչեցելոյ, Մոսկուա 1892, էջ 29), Ասողնիկի «Վիրոյ» ընթերցուածէն կը հետեւցնէր, թէ Աղուանից Վիրոյ կաթողիկոսը ներկայ էր ժողովին: Իսկ Հ. Ա. Վարդանեան կ՚առաջարկէ «Վիրոյ» կարդալ Վիրիոյ (Հանդ. Ամս. 1912, էջ 284): Ստ. Մալխասեան, Սեբէոսի «զՎրաց» ձեռագրին մէջ գտած է «զՎիրս» ընթերցուածով. եւ ուղղած է բնագրին մէջ «զՎիրոյ զԱղուանից կաթուղիկոսն» (Երեւան, 1939, էջ 124). առանց բացատրութիւն տալու թէ ինչո՞ւ անտեսած է «եւ ... եւ», զորոնք ունի Պատկանեանի տպագրութիւնը: Մալխասեան հետեւած է Ասողնիկին եւ Նորայրին: Յամենայն դէպս ուղղագոյն ընթերցուածն է այս. իսկ «որ էր Փայտակարան, ի դրան արքունի» Ասողնիկի յաւելուածն է, Վիրոյի ինքնութիւնը յստակացնելու համար. իմանալու է. «որ էր արգելական ի դ. ա.»: Վիրոյ քաղկեդոնիկ էր եւ համաձայն Երուսաղեմացինե-

*րու հետ: Այս առիթով տեսակցութիւն ունեցած էր ան անշուշտ Կոմիտաս կաթողիկոսին հետ:*

*Տիզբոն կը մնար Սմբատ Վրկան մարզպան Շնումն յորջորջուած. կային հոն նաեւ Հայ նախարարներ. որոնց հետ անտարակոյս տեւական յարաբերութեան մէջ էր Վիրոյ:*

*Համանորէն այս 25 տարիներուն մէջ պէտք է ներկայացուցած ըլլայ իր խնդիրքը Խոսրով Թագաւորին ի մասին Գարդմանի իշխանին. «Սա խնդրեաց ի Խոսրովայ Պարսից արքայէ գրել ի պատիւ Գարդմանայ տեառն իշխանաց Աղուանից ի վերայ թղթոց* առ կուսակալս աշխարհին, *զոր դեռ եւս* (900°) *գրեն»* (Գ. 24, էջ 392, Դաւ.): *Այս առանձնաշնորհութիւնը ստացած ըլլալու է Վիրոյ, երբ Վարազ-Գրիգոր «առաջին իշխան Աղուանից» ընտրուեցաւ, «որ էառ զմկրտութիւն ի Վիրոյէ Աղուանից կաթողիկոսէ»* (Բ. 17), *անշուշտ ի Տիզբոն:*

624*ին սկսաւ Հերակլ կայսր իր Ա. արշաւանքը, որուն նպատակն էր թշնամին իր երկրին մէջ սասանեցնել: Գ. արշաւանքին յաջողեցաւ յեղափոխութիւն յարուցանել Տիզբոնի մէջ, ուր* 628 *փետրուար* 25*ին սպանուեցաւ Խոսրով եւ յաջորդ հրատարակուեցաւ իր որդին Կաւատ. որ բացաւ բանտերը եւ թողութիւն շնորհեց բանտարկեալներուն, անոնց կարգին նաեւ Վիրոյի: Վիրոյ կը գրէ ինքնին երրորդ դէմքով. «Իբրեւ ել նա յար-*

*քանուստ եւ եկն ի սահմանս ծննդեան իւրոյ, փարէր անկանէր ամենայն ուրեք զգրամբք եւ զյատակօք եկեղեցեաց իւրոյ վիճակին. հեղոյր յորդէր զարտասուս եւ կրկնեալ զծունր՝ թանայր զգետինն. եւ դարձեալ ի յանելն քաջալերէր զինքն եւ մխիթարէր զորս ընդ ինքեան էին՝ գոհանալով զԱստուծոյ, որ եզերծ զնա ի ժանեաց առիւծոյն եւ շնորհեաց նմա տեսանել միւսանգամ զյարկս սրբոց եկեղեցեաց»* (Բ. 14) :

Անցած էին պանդխտութեան 25 տարիները եւ ողջամբ վերադարձած հայրենի աշխարհը։ Բայց ժամանակի դէպքերը չներեցին իրեն վայելել անդորրութիւն:

Կաւատ Նորընտիր թագաւորը ուղարկած էր Հերակլ կայսեր դեսպաններ խնդրելու խաղաղութիւն: 628/9ի ձմեռը Ջեբու Խաքան իր երկրորդ արշաւանքը ի գլուխ կը հանէ. Տփխիս կը պաշարուի եւ կը նուաճուի: Վերադարձին իր որդին, որ Շաթ պատուանունը կը կրէր, կ'ուղարկէ Աղուանից աշխարհը, նուաճելու իր իշխանութեան տակ: Շաթ կը ղրկէ պատգամաւորներ Աղուանից պարսիկ մարզպանին եւ Վիրոյ կաթողիկոսին, առաջարկելու, որ ինքնակամ ենթարկուին խաքանի իշխանութեան: Մարզպանը թէպէտ կը մերժէ այդ առաջարկը, բայց անձամբ կը դիմէ փախուստի: Իսկ կաթողիկոսը, որ նոր էր դարձած իր 25ամեայ բանտարկութենէն, չուզեց ինքնակամ քա-

դաքական քայլ մ՚առնել, որ զինքը երկրորդանգամ մեղադրանքի տակ պիտի ձգէր: Փորձեց գաղտնօրէն սուրհանդակ մը ուղարկել Բարձրագոյն Դուռ եւ Թագաւորին հրամանը հարցնել: Արքունիքը քաղաքային կռիւներով զբաղած, չկրցաւ հրահանգ մը տալ: Զուր տեղ պատասխանի սպասեց Կաթողիկոսը: Այս միջոցին Շաթի բանակը գրոհ կու տայ Աղուանից սահմաններէն ներս: Վիրոյ, նախարարներն եւ ժողովուրդը կ՚ապաստանին լեռներ եւ ձորեր: Թշնամին կը հետապնդէ Կաթողիկոսը: Ի վերջոյ խորհրդով նախարարներու կը համակերպի ներկայանալու անձամբ Շաթի (629 մարտ—ապրիլ): Բռնաւորը կը պատկառի Վիրոյի անձնաւորութեան առջեւ. անոր կը շնորհէ երկիրը, պայմանաւ, որ իրեն հպատակ մնայ: «Մեղմ եւ ողոք բանիւք բաշ հոգեւոր իմաստութեան իւրոյ դարձոյց զսիրտս նոցա ի խնդիր իւր. եւ ել հրամանս այս... զի արձակեսցին ամենայն գերեալքն». զորոնք «ժողովեալ երամ երամ ածէին ի դուռն Կաթողիկոսին: Իսկ նա իբրեւ հաւ ի վերայ ձագուց զթացեալ՝ զգեցուցանէր զմերկսն եւ կերակրէր զկարօտեալսն եւ տայէր յիւրաքանչիւր տունս»: «Եւ մեծացաւ անուն նորա ի մէջ բազմութեան թշնամեացն մինչեւ յօրն, յորում այց արար Աստուած ի ձեռաց նորա ժողովրդեան իւրում փրկութեան» (Բ. 14):

Գարնան կարելի չէր եղած մշակել եր-

*կիրը. որուն հետեւութեամբ Աղուանից աշխարհը կը գումարուին «զօրավարք երեք. Սոփի, Սուրն եւ Մահն գործակից նոցա» (Բ. 15). տիրեց սաստիկ սով. եւ ապա համաճարակ հիւանդութիւն եւ խայտամահ: Ժողովրդական հովուապետը «ողբայի սուգ առի, կ՚ըսէ, աւուրս բազումս ի վերայ անցից խայտամահացն...: Ես Վիրոյ Աղուանից եւ Լփնայ եւ Ջողայ կաթողիկոս, թողում ասել զայն ամենայն զպէսպէս զաղբայիս, զմարմնոյ սեւութիւնս եւ զկնտութիւնս գլխոց»:*

*Նոյն տարւոյն վերջը Ծաթ կը շարժէ իր բանակը նուաճելու Հայաստանն ու Վրաստանը: Բանակը կը գտնուէր այս երեք աշխարհներու միջեւ կազմուած կիրճերուն մէջ, երբ կը հասնի հիւսիսէն Ջեբու Խաքանի հրամանը իր որդւոյն, կասեցնել իր բանակին ոչ-թուրք ազգերն եւ շտապ վերադարձ: Հրամանը կը կատարուի (տե՛ս վարը): Աղուանից աշխարհը շունչ կ՚առնէ:*

*«Դու մի յապաղեր սատակել զազգդ որ ընդ քեզ են. եւ ջանա՛ ապրել ի ձեռաց դոցա. զի մի ի յառաջագոյն լսել զոյս զեղեալքս՝ վաղվաղակի սպառել զքեզ: Այլ ես կորեայ եւ անդուատեցայ» (Բ. 16):*

*Այսպէս կ՚աւարտի Վիրոյի Պատմութիւնը: Բայց Նախարարնին տեղիքը, նշանք մեծամեծք եւ զարմանալիք, «որով զԹշնամին մեր պարտեաց հզօր եւ մարդասէր աՏն*

Աստուծոյ եւ անկան տապաստ առաջի աչաց մերոց» (Բ. 9) ցոյց կու տայ մեզի, թէ Վիրոյ հաւատարիմ եղած է իր խոստումին եւ հասած է բարեաւ իր նպատակին:

Կիրակոս Գանձակեցի կը գրէ, թէ Վիրոյ «շինեաց քաղաքս հինգ յանուն Շաթի՝ զՇաթար, զՇամքոր, զՇաքի, զՇիրուան, զՇամախի, զՇապորան» (էջ 99): Հաւանօրէն ժողովրդական ստուգաբանութեան վրայ յեցած:

Վիրոյ վախճանեցաւ 630/631 տարւոյն: Իր յաջորդն եղաւ Զաքարիա կաթողիկոս[1]:

ԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Պատմութիւն Վիրոյ կաթողիկոսի:

Աղուանից Պատմութեան մէջ գոհար մըն է գրութիւնս, արժէքաւոր իր արժանահաւատութեամբ, վսեմ իր ոճով: Հեղինակն է Վիրոյ կաթողիկոս, որ գրած է իբրեւ ականատես եւ ականջալուր:

Որովհետեւ հարկադրուած էր իր ընթերցողներուն ներկայացնել իր անձն եւ

[1] Կը պատմէ իր մասին, թէ Պարտաւի եկեղեցւոյն վանականն էր: 627ին երբ Հերակլի բանակը Աղուանից սահմանին մօտեցաւ, Պարտաւի բնակիչներէն կրցողը փախաւ: Մնացին չքաւորները, անոնց հետ Զաքարիա. որ իր խոնարհութեան տակ սուտ թշուառները: «Ուստի յետոյ ձգեցաւ գործ նորա եւ վկայեալ յամենեցուն՝ կարգեցաւ յաջորդութիւն աթոռոյն Աղուանից» (Բ. 10): Այս հատուածը (էջ 149. տ. 25—150, տ. 10 Լոնտ.) կը համարիմ երկրորդ ձեռքէ ներմուծուած, Վիրոյ կաթողիկոսի մահէն ետքը:

պատմել իր կատարած դերը պատմութեան մէջ, առանց անափառութեան, ան խօսած է իր մասին երրորդ դէմքով. բայց ուր կը մթագնէր երրորդ դէմքը պատմութեան իմաստը, արտայայտուած է քողազերծ՝ առաջին դէմքով, նոյն իսկ իր անունով[1]։

Անոնք, որոնք չեն անդրադարձած հեղինակին արտայայտութեան այս արուեստին, համարեցան թէ Աղուանից պատմիչը ունեցած է իրեն աղբիւր Վիրոյի Յիշատակարանները։ Այս կարծիքի յանգած է նաեւ Ն. Ադոնց (Անահիտ, 1939, Թ. 4—5, էջ 28—29)։

Վերագոյն (էջ 24) յիշեցի թէ հիներէն մէկը «Պատմութիւն Վիրոյ կաթողիկոսի» յորջորջած է Աղուանից Պատմութիւնը, եթէ ոչ բովանդակն, գոնէ անոր մէկ մասը, որուն սկիզբը զետեղուած էր Վիրոյի գրութիւնը։

Գրուածքս հաւանօրէն խորագրուած էր. «Պատմութիւն յաղագս յարուցման ազգաց բարբարոսաց եւ պէսպէս անցից աշխարահեծ տագնապին, որ անցին ընդ աշխարհս Աղուանից»։ Այս ինքն նպատակ ունէր պատմել այն անցքերը, որոնք տեղի ունեցան

---

[1] «Ես Վիրոյ Աղուանից եւ Լփնաց եւ Չողայ կաթողիկոս թողում աստ...» (Բ. 15, էջ 189 Ղուկ.)։ «Եւ զի սկսայ ասել... յաղագն մերոց իմ գրագում ճառոց ածել օրինակ...։ Այլ մեք ի նոյն դարձցուք ի կարգ բանիցն....» (Բ. 16)։ «Եւ արդ քանզի ընկղմեցան մերոյ իմ եւ գրագեցան խորհուրդք իմ ի տխեղծական հարուածոցս եւ մտացս զկարգ բանին...» (Բ. 9)։

Աղուանքի մէջ բարբարոս ազգերու արշաւանքի ժամանակ: Այս պատմութեան նախերգանք եղած է 625—630 շրջանի Հերակլի արշաւանքներու եւ Խոսրով Բ.ի սպանութեան եւ Հիւսիսի ազգերու արշաւանքներու պատմութիւնը. ինչպէս մտածել կու տան հեղինակի հետեւեալ խորհրդածութիւնները.

«Ո՜վ սքանչելի պատմութեանս, զոր հանդերձեալ եմ հնչեցուցանել ի լսելիսն տիեզերաց՝ մօտաւորաց եւ հեռաւորաց. որում ոչ համեմատին (Ձեռ. –տէ) ոչ զարուցն առաջնոցն նշանագիրք ազգի ազգի պատերազմաց եւ խռովութեանց, որք... կանխաւ գրոշմեցան, նաեւ ոչ արտաքնոցն յարմարական ճարտարախօս առասպելացն երկրաւոր, ջնջաւոր, իմաստասիրական յօրինուածքն կարող են հանդոյն սմա զտանել...: Եւ արդ քանզի ընկղմեցան միտք իմ եւ նուաղեցան խորհուրդք իմ ի տիեզերական հարուածոցս եւ մոռացայ զկարգ բանին, որ հանդերձեալ էր արկանել հիմն եւ սկիզբն առնել ժամանակաց եւ անցից, որ անցին ընդ աշխարհս Աղուանից... սակայն եւ այժմ առ անգամ մի թողեալ զահ եւ զերկիւղ, որ դեռ զմեզս ունի, ի նոյն կարգ դարձցուք. զի տեսանեմք զբազումս զի կան եւ կամին լսել եթէ զինչ արդեօք կարիցէ բովանդակել զանցիւ հարուածս բարբարոսական թշնամեաց շուրջանակի զմեօք. ապա եւ ընդ նմին զնշանս մեծամեծս եւ զարմանա–

լիս, որով զթշնամին մեր պարտեաց հզօր եւ մարդասէր աջն Աստուծոյ եւ անկան տապաստ առաջի աչաց մերոց: Եւ զի անցեալ ժամանակն յետս զիւրն պահանջէ ի մէնջ պատմել, սկսայց յառաջին ԺԸ. նահանջէն՝ ի Յայտնութենէն (տպ. յայտնութեան) Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, <որ է ԺԸ> Մեհեկանի ամսոյ, յԼԵ յամէն խոսրովու Որմզդեան արքայից արքայի:

*Ժամանակաշրջանը, զոր կ'ընարէ Վիրոյ, կ'ընդգրկէ 625 յունուար մինչեւ 630 ուսար 6½ տարիներու դէպքեր:*

*Պատմութեան ծրագիրն եւ բաժանումն է.*

*Ա. Դիպուածք ժամանակաց յԺԸ. նահանջէ (էջ 232—259):*

*Բ. Անթիւ հարուածք բարբարոսական թշնամեաց շուրջ զմեօք (259—280):*

*Գ. Նշանք մեծամեծք եւ զարմանալիք (280—285):*

*Սկզբնագիրը չունէր գլուխներու բաժանում. բայց կար հին հաւանօրէն հատուածներու բաժանում:*

*Այժմեան օրինակը, որ զետեղուած է Աղուանից Պատմութեան մէջ, բաժնուած է 8 գլուխներու ուրոյն խորագրութիւններով (Բ. 9—16): Ասոնք Խմբագրէն են, անխնամ լեզուով, անքերական չարադասութեամբ: Ժ. գլուխը կը կրէ խորագրութիւնս. «Յաղագս տասնեւութն նահանջէն սկիզբն պատմագրաբար որ եղեւ»: Հոս «ԺԸ. նա-*

հանջէն սկիզբն» առնուած է Թ. գլխի վերջին պարբերութենէն. «սկսայց յառաջին ԺԸ. նահանջէն։ Իսկ «որ եղեւ» անիմաստ է. սկզբնագրին մէջ էր անտարակոյս բնագրին մասը, զոր ուղղելով կը կարդամ. «Եւ եղեւ իբրեւ լցաւ ժամանակն»։ ԺԱ. գլխի խոստարաթիւնը «վասն գումարելոյ Աստուծոյ ընդ արքային Յունաց եւ յաղթահարելոյ զնա ամս բազումս սրով եւ գերութեամբ աշխարհին Հռովմայեցւոց», կը պատշաճէր Ժ. գլխին։ Այսպէս նաեւ ԺԵ. գլխինը. «Վասն սատակացեալ սովոյն, որոյն եւ գերութեանն ի միասին» պէտք է ուղղել «եւ մահուն». առնուած է բնագրէն. «Սովն, սուրն եւ մահն գործակից նոցա»։

Վիրոյ իր Պատմութիւնը դասաւորած է ժամանակագրօրէն, ելակէտ ընտրելով ԺԸ. նահանջը.

«Սկսայց յառաջին <ամէն> ԺԸ. նահանջին (Ձ. նահանջէն), ի Յայտնութենէն (Ձ. յարութեան) տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, <որ օր ԺԸ է> մեհեկանի ամսոյ, յԼԵ. ամէն Աստուծոյ Որմզդեան արքայից արքայի»։

Վիրոյ նկատի առած է հոս 532 տարեկացոյց բոլորակի (cyclus) նահանջները, որոնք չորս տարի անգամ մը կը փոփոխուին։ Այս բոլորակը կը սկսի 552 յուլիս 11ին։ ԺԸ. նահանջին առաջին տարին է 624, յուլիս 23. այս տարւոյն Յայտնութեան տօնը կ'իյնայ

յուլեան տոմարի 625 յունուար 6ին, որ է հայկական շարժական տոմարին մարերի 18: Ուշադրութեան արժանի է, որ Վիրոյ եկեղեցական տարւոյ Նահանջները իբրեւ Թուական կը կիրարկէ, նմանութեամբ Ողոմպեականին, ԺԸ. նահանջ, առաջին տարի: Իրեն անծանօթ է տակաւին Հայոց Թուականը, որ իր սկիզբն ունի 552 տարին, նոյն 532 բոլորակի առաջին տարին. այլապէս պիտի ըսէր «ի Թուին Հայոց ՀԲ»: Միաժամանակ ուզած է Վիրոյ յուլեան 625 տարին ելակէտ առնել, որ յունուար 1ով կը սկսի:

Բնագիրը հարազատ չէ պահուած. երբ կը շեշտուի ԺԸ. Նահանջին առաջին տարին, կը պահանջուի որ Նահանջ սեռական եւ ոչ բացառական ըլլայ: Ձեռագիրը փոխանակ Յայտնութեան ունի Յարութեան. բայց երբ մեհեկանի ամիսը կը յիշէ, հարկադրուած ենք Յայտնութիւնը իմանալ: Ամսոյն օրը «ԺԸ» դուրս ինկած է հաւանօրէն «ԺԸ. Նահանջի» ազդեցութեան տակ: 625ին յունուար 6 կը համապատասխանէ մարերի ԺԸ.ին[2]: Խոսրով Բ. գահ բարձրացաւ 590 ամառը. ուստի ԼԵ. տարին է 624/5:

Պատմութեան բովանդակութիւնն է.

ԼԵ. ամ Խոսրովու (624/5). Ա. Արշաւանք Հերակլի, էջ 232—238:

---

[2] Հմմտ. Անանիա Շիրակացի, Մատենագրութիւնք, էջ 265:

ԼԶ. ամ Խոսրովու (625/6). Զինակցութիւն Հերակլի Հիւսիսական ազգերու հետ եւ Բ. Արշաւանք Հերակլի, էջ 248—249, 28:

ԼԷ. ամ Խոսրովու (626/7) Ա. Արշաւանք Թուրքաց, էջ 239—257 Թղթերու ետեւառաջութիւն կայ. տես վարը:

ԼԸ. ամ Խոսրովու (627/8). Գ. Արշաւանք Հերակլի, Բ. Արշաւանք Թուրքաց:

Ա. ամ Արտաշրի. 628/9 Դ. արշաւանք Թուրքաց:

Բ. ամ Արտաշրի 629/30 Ե. արշաւանք Թուրքաց:

ԵՏԵՒԱՌԱՋՈՒԹԻՒՆՔ

Զարմանալի է, որ ոչ Էմին, ոչ Ծահնազարեան, ոչ Պատկանեան եւ ոչ ալ Ն. Ադոնց (Անահիտ, 1939, Թ. 3—4, էջ 25—26) անդրադարձած են Թղթերու այս ետեւառաջութիւններուն, որոնք վաղ ժամանակ պէտք է տեղի ունեցած ըլլան: Եթէ ընթերցողները ժամանակագրութեան ուշադիր եղած ըլլային, դիւրին պիտի ըլլար գտնել այս խանգարումները:

էջ 239, տ. 8—251, 25 (ըստ Ծահնազարեանի հրատարակութեան) պէտք է վերադասել այսպէս.

1. էջ 238, տ. 22 (ի նմանէն) կը շարունակուի էջ 248 1 (ապա այնուհետեւ) մինչեւ 251, տ. 25 (կարճին Համայեցւոց [տուրկանն դարձաւ յաշխարհ իւր]: Կը շարունակուի

2. էջ 239, տ. 4 [*սաստիկ — գնացեալ ասեն եթէ դուք*] (*որ հրամանաւ եկիք*) *մին-չեւ* 240, տ. 12 (*այժմիկ*). *կը շարունակուի՝*

3. էջ 244, 6 (*եւ յետ այսր*) — 247, 15 (*գնացին*)։ *Կը շարունակուի՝*

4. էջ 240 12 (*եւ այսպէս*) — 244, 5 (*ի նոյն իշխանութիւն*). *կը շարունակուի էջ* 251, 26 (*«իսկ կայսրն հիւսիսոյ», իմացիր Հոռոմոց Հերակղ*)։

*Տեղափոխութիւն կրած են* 14 *թուղթեր. մէն մի թուղթ ըստ Շահնազարեանի տպա-գրին* 26 *տող կը բովանդակէր. այսպէս*

239, 8—240, 12 1 *թուղթ.*
244, 6—247, 15 6 *թուղթ.*
240, 12—244, 5 7 *թուղթ.*

284, 17 (*զօրաց*) *կը շարունակուի՝ էջ* 285, 6 (*այլ մեք*). — 22 (*անդաւակեցայ*)
284, 18 (*անդէն*). — 285, 7 (*նման*)։

*Այս ետեւառաջութեան պատճառաւ հար տեսած է խմբագիրը մանր յաւելուածներ մուծել բնագրին մէջ կապակցելու համար անկապ նախադասութիւնները։ Այսպիսի նորամուտ տողեր են հետեւեալները.*

ա. էջ 239, տ. 1—5. [*«Սաստիկ ամբոխիւ եկին Խազիրք ասպատակել յաշխարհս մեր հրամանաւ Հերակղիոսի. եւ պատգամաւորք առ նոսա Խոսրովու Պարսից արքայի (գնացեալ ասեն), եթէ դուք»*] *ո՞յր հրամանաւ եկիք»*։

*փակագծի մէջ առնուածը, «գնացեալ աեան» Շահնազարեանի յաւելուածն է, քառակուսի փակագծի մէջ դետեղուածը խմբագրին ձեռքն է: Անտեղի են յաւելուածները, վասն զի «այր հրամանաւ» շարունակութիւնն է 251, տ. 24ի, ուր կ՚ըսէ Խոսրով Շահ արքայորդւոյն պատգամաւորին, թէ Հերակղ իմ ծառաս է, որուն («այր») հրամանով եկիք յաշխարհս իմ»: Ուստի հարցական դերանուն չէ «այրը»: Յաւելուածիս մէջ Հիւսիսականք «Խազիրք» կ՚անուանուին. ասոնք կը յիշուին Ագուանից Պատմութեան մէջ նաեւ այլուր (Բ. 1, 4, 17. Գ. 4 եւ այլն): Բայց ծանօթ է, որ Խազիր ժողովուրդը պատմութեան մէջ առաջին անգամ 685ին երեւան եկան: Ուստի խմբագիրը այս թուականէն ետքը պէտք է մուծած ըլլայ «Խազրաց» յիշատակութիւնը Ագուանից Պատմութեան եւ Վիրոյի այս Պատմութեան մէջ: Ուշադրութեան արժանի է, որ Վիրոյ երբ «բարբարոս ազգերու» կամ «հիւսիսականաց» արշաւանքները կը յիշէ, անոնց ցեղական զանազանութիւնը չի դներ յանուանէ: Սեբէոս այս հիւսիսականները կ՚անուանէ «Թետալացիք», որոնց հետ նոյն կը համարի Մազգութներն, Հեփթաղները, Թուրքերը եւ առ հասարակ լեռնականները: Այսպէս նաեւ Բիւզանդական պատմագիրները, որոնք «Թուրք» անունով կը ճանչնան, վասն զի Խազարք կամ Խազիրք ենթակայ էին Թուրքերու Խաքա-*

*նին, եւ տակաւին իբրեւ անկախ, իշխող ժողովուրդ պատմութեան բեմի վրայ չէին երեւցած։*

բ. *Նման յաւելուած մըն է նաեւ էջ* 251, *տ.* 24—25 *«տուրկանն դարձաւ յաշխարհ իւր», որուն իմաստը հասկանալի չէ ինձ։*

գ. *էջ* 247, 14—15. *«եւ դարձուցեալ զերեսս իւրեանց՝ նովին սպառնալեօքն գնացին». որ կրկնութիւնն է էջ* 240, 12—13*ի։*

դ. *Յաւելուած կ'երեւայ նաեւ տեղիքս. «Քանզի բառնալոց էր թագաւորութիւնն ի տանէ Սասանականացն եւ տալոց էր ի ձեռս որդւոց Իսմայէլի»* (*Բ.* 14)։ *Վիրոյ վախճանած է* 630/31*ին. հոս կը շօշափուին դէպքեր, որոնք տեղի ունեցած են* 642—651 *տարիներուն։ Սասանեան վերջին թագաւորն էր էր Յազկերտ Գ.* 632—642, † 651/2։

ե. *Բ.* 10 *խօսելով Խոսրով Բ.ի մասին կը գրէ. «Այլ առաւել եւս ազորէր ընդ ծով եւ ընդ ցամաք եւ զգեղեցկաշէն քաղաքս Հռովմայեցւոց բնակչօքն իւրովք հանդերձ խաղացուցանէր ի կողմանս Պարսից վասն անշինաց իւրոց։* Նմանապէս եւ զճարտարս ի նոյն ձեւ օրինակի նստուցանէր եւ անուանէր զոմն առաւել քան զԱնտիոք քաղաք. եւ զայլս յիւր անուն զառաւելն ի վերայ յաւելեալ» (*էջ* 146—147 *Ղուկ.*)։

*Ընդգծուած պարբերութիւնս նախորդին հետ սերտիւ կապուած չէ. բնագիրն ալ անաղարտ չէ պահուած։ Նոր-Անտիոքը կա-*

ուցած է Խոսրով Ա. Անուշրուան, Անտիոքի բնակիչներու եւ արուեստագործ շինութիւններու փոխադրութեամբ (540ին): Սեբէոս կը գրէ. «Ա՛ռ մարտիւ զԱնտիոք [Գիսիդացւոց] եւ գերեալ նստոյց առ Թագաւորական կայանին՝ շինեալ քաղաք եւ անուանեալ զնա Վեհ Անջատոք Խոսրով. զոր անուանեալ շահաստան ի նոկ[նոյ] կոչեն» (Սեբ. 28. հմմտ. Յուշարձան, էջ 300—301): «Առաւել քան զԱնտիոք» թարգմանութիւնն է «Վեհ-Անջատոք»ի: Կարելի չէ ենթադրել թէ Խոսրով Բ.ի ժամանակակիցը Խոսրով Ա.ի շինութիւնը Խոսրով Բ.ի վերագրած ըլլայ: Անտարակոյս խմբագրէ մուծուած անպէտ յաւելուած մըն է: Տես եւ էջ 207, ծ. 2:

Վիրոյ գրած է Պատմութեան Ա. մասը ինչպէս ականջալուր եւ ականատես: 625—627 տարիներու դէպքերը լսած է ան Տիզրոն. իսկ Խոսրովի սպանման պարագաները լսած եւ տեսած է անձամբ: Բ. եւ Գ. մասերը նոյնպէս ականատեսի եւ ականջալուրի նկարագրութիւններ են:

Որովհետեւ Սեբէոսի Պատմութենէն թղթեր ինկած ըլլալով Հիւսիսականաց (Թետալացւոց) արշաւանքին հայող հատուածը կորսուած է, մասնաւոր արժէք կը ստանան Վիրոյի տուած տեղեկութիւնները:

Վիրոյ, թէպէտ ազուանահայ, ծագեցուց հայ գրականութեան համար փոքրիկ, բայց ոճով ճնաշխարհիկ եւ պատմական ար-

*ժէքով գնահատելի աշխատութիւն մը, որ պատիւ կը բերէ Է. դարուն հայ մշակոյթին, կից Եղիշէի. ան հետեւող մը եղած էր դասական գրականութեան, հեռու պահելով ինքզինքը Յունարան դպրոցի նորասիրութենէն (հմմտ. Ակինեան, Դասական հայերէնը, Վիեննա* 1932, *էջ* 81—82)։

*Վիրոյի Պատմութեան մասին անդրադոյն նկատողութիւններ տես.*

*Ն. Ադոնց, Քննութիւն Մ. Կաղանկատուացու, Անահիտ* 1939, *Թ.* 3—4, *էջ* 22—31:

*Հատուածիս վերջը պիտի անդրադառնամ Ջերու Խաքանի արշաւանքներուն առանձին գլխով:*

2. Ս. Գրիգորի Վարքը.

*Այսպէս ըսուած «Պարսից ժողովի» պատմութեան մէջ, որ գումարուած է իբր* 613*ին, կ՚ըսուի, թէ «դիպեցան անդ արք երկու եպիսկոպոս(ք) յաշխարհէն Հայոց... Կոմիտաս Մամիկոնէից եպիսկոպոս եւ Մաթէոս Ամատունեաց. ունէին պատրաստական անդ ընդ իւրեանս զԳիր սրբոյն Գրիգորի» (Սեբէոս, էջ* 121)։ *Այս գիրքն էր Ագաթանգեղոսի մատեանը։ Աղուանից Պատմութիւնը* (*Բ.* 1) *«արեւելից կողմանց» անգիր գրոցներէն «յիշեցուք, կ՚ըսէ, սատանոր զՃապհոյ Պարսից արքայէ Որմզդեան»։ Իշխանք Հայոց մեծաց «մատուցին առաջի թագաւորին զԱգաթանգեղոյ Պատմութիւնն ցանկալի. եւ հրամայեաց ընթեռնուլ եւ թարգմանել ի պար-*

սիկ գիր եւ ի լեզու։ Եւ իմացեալ եթէ զսկիզբն յԱրտաշրէ առնէ, ի նախնոյն իւրմէ, առաւել զուարճացեալ եւ ներբողումն գրոցն առնելով՝ դնէր ի վերայ աչաց իւրոց խանդաղատելով»։

Ագաթանգեղոս խմբագրուած է 490ին․ ուստի Շապուհ Բ. Որմզդեանի օրով անոր մասին խօսք չէր կրնար եղած ըլլալ։ Զրոյցը Խոսրով Բ. Որմզդեանը շփոթած է Շապուհի հետ։ Երբ Կոմիտաս եպիսկոպոս Պարսից Դուռը հասաւ, գտաւ հոն բազմաթիւ հայ իշխաններ։

Կոմիտաս, որ Ագաթանգեղոսի մատեանը հետը բերած էր, կարող էր զայն թագաւորին ցուցուցած ըլլալ։ Թագաւորը կը լսէ, թէ Ագաթանգեղոս իր Պատմութիւնը սկսած է Արտաշիրէն։ Կը հետաքրքրուի եւ կը հրամայէ թարգմանել զայն պարսկերէնի։ Անշուշտ հայ թարգմանը չէր կրնար բնագրին ի մասին Արտաշիրի աննպաստ տեղիքները ներկայացնել թագաւորին։ Հարկ էր Գրիգորի Նոր Վարք մը խմբագրել։

Այժմ երբ ունինք մեր առջեւ յունարէն (եւ ասկէ արաբերէն) Գրիգորի վարքը եւ անոր սկիզբը Արտաշիր Բաբականի վիպական պատմութիւնը, յիշեալ զրոյցը կրնանք մերձեցնել ա՛յս Վարքին։

Տիգրոնի մէջ նման Վարքի խմբագրութեան համար միակ մարդ Վիրոյ կաթողիկոս միայն կարելի էր նկատի առնուլ, որ հմուտ

*հայերէնի եւ պարսկերէնի, տեղեակ պարթեւ-պարսիկ վիպասանութեան եւ պալատական ճաշակին ընտել, ընդունակ էր նման գործ մը ստանձնել եւ ի գլուխ հանել:*

*Եւ զարմանալի չէ որ այս մասին «արեւելից կողմանց» զրոյցներու մէջ արձագանգ կը լսենք:*

*Նորագիւտ յունարէն Գրիգորի Վարքի այս վերագրումը Վիրոյ կաթողիկոսին, լոկ ենթադրութիւն մըն է, հաւանական, բայց կարօտ անդրադոյն ապացոյցներու:*

*Այս նկատմամբ տե՛ս իմ Արտաշիր Բաբականի վէպը յունարէն Ագաթանգեղոսի մէջ եւ Ս. Գրիգորի նորագիւտ յունարէն վարքը. Հանդ. Ամս.* 1947, *էջ* 567—581 = *Մատենագրական Հետազօտութիւններ, հատոր Ե.* (*Վիեննա* 1953), *էջ* 49—73:

ՋԵԲՈՒ ԽԱՔԱՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԻՒՍԻՍՈՑ

1. *Խոսրով Բ.ի բանակները ողողած էին* 603—625 *տարիներուն Բիւզանդական հողամասերը եւ կը սպառնային մայրաքաղաքին: Հերակղ կայսր տեսնելով որ անբաւական են իր ուժերը դիմադրելու Սասանականին, կ՚առաջարկէ իր դահլիճին օգնութեան կոչել հիւսիսի ազգերը. «խրամատել զմեծ լեառն Կովկասու, որ փակեալ ունի զկողմանս արեւելից հիւսիսոյ, բանալ զդրունս Ջողայ (Ճորայ), հանել զազգս ազգս բարբարոսաց եւ նոքօք վանել զԹագաւորն*

*Պարսից, զհպարտն Խոսրով»: Դահլիճը կու-տայ իր հաւանութիւնը կայսեր: Պատգամա-ւոր կուղարկուի հանճարեղ եւ իմաստուն նախարար մը Անդրէ անուն, «խոստմամբ «անհամար գանձուց», առ «գազանաբարոյ, ոսկէսէր ազգն գիսաւորաց», առ «յաջորդ արքային հիւսիսոյ, որ էր երկրորդ թագա-ւորութեանն նորա եւ անուն իւր Ջեբու խա-քան»:*

*Սա շլացած իրեն եղած խոստումներէն յանձն կ՚առնէ նիզակակցիլ Կայսեր. եւ «ա-ռաքէր ընդ նախարարին ընդ այնմիկ, առ ի հաստատել զխորհուրդ պայմանին այնորիկ, արս հեծեալս ընտիրս... թուով իբրեւ հա-զար մի»: Ասոնք սրարշաւ կ՚անցնին Ճորայ պահակէն, կ՚ընթանան Կուրի եզերքով, մի-ջամուխ կ՚ըլլան Վրաստան եւ կը հասնին Եգերք (Փոթի), անկէ կը նաւեն դէպի Բիւ-զանդիոն: Դաշինքը կը կնքուի:*

*Կայսրը կը թոյլատրէ Խաքանին «առ-նուլ ասպատակաւ զամենայն աշխարհս որք ընդ հնազանդութեամբ Պարսից արքայի». տանել «զաշխարհս զայսոսիկ երեսին՝ Աղուանից, Լփնաց եւ Ջողայ յիւր սեպհական ժառանգութիւն յաւիտենական»* (184)*. կը խոստանայ վարձատրել հարուստ գանձով:*

*Իսկ Խաքան կը պատրաստուէր սպանել Խոսրովը, որ վերադարձնէ իր նուաճած հո-ղերը եւ գերիները Կայսեր: Այս կը պատահի Խոսրովի ԼԶ.* (625) *տարւոյն* (159—162):

*Թէոփանէս այս խաքանը կ'անուանէ Ζιέβηλ, որ նոյն է Արեւմտեան Թուրքերու Թոնգ Ջաբղու Խաքանին հետ, զոր չին աղբիւր մը Ծէ—հու—քան կը կոչէ, իշխած 619—630*[1]։

*Սեբէոս, որ կը խոստանար պատմել «զդիմելն Հերակլի ի կողմանս հիւսիսոյ առ արքայն Թետալացւոց (եւ) զյուզարկումն անհուն բազմութեանն ազգաց», այժմ, իր Պատմութենէն թղթեր ինկած ըլլալու պատճառաւ, կը հաղորդէ մեզի հետեւեալ տողերը միայն «... ապա ապստամբեալ գնացին (Թուլա՞ն զօրքը) ի ծառայութենէ մեծին Խաքանայ, արքային կողմանցն հիւսիսոյ ի ձեռն (՞) Ճենաստանն Ճեպետխոյ. ապա գնացեալ յԱրեւելից յԱրեւմուտս ընդ կողմանս հիւսիսոյ խառնել ընդ զօրացն Ճեպետխոյն այնորիկ. հրամանաւ թագաւորին իւրեանց Խաքանայ. եւ եկեալ ընդ պահրակն*

---

[1] J. Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, Leipzig 1903, S. 498. *Արեւելեան Թուրքերու առաջին Խաքանն էր* A-po-k'an (*որ կը յիշուի* 585. 587 *տարիներուն*), *ակզբնաբար հիւսիսոյ կողմանց Խաքան, անոր երկրորդ յաջորդն եղաւ* Taman, *կոչուած* Ni-kue-Ču-lo-k'an (600*էն ետքը*)․ *երբ բաժնուեցաւ պետութիւնը, մէկ մասը առաւ* Tüng'so-še, *կոչուած* Ša-po-lo-*Tie-li-še*-k'an *եւ միւս մասը* Jo-ko-še, *կոչուած* L-pi-'*Tu-lu*-k'an 619—630*ին հիւսիս-արեւելեան կողմանց Խաքանն էր* I-pi-Ša-po-lo-se *še-hu*-k'an (*Զիեբու Խաքան. Հմմտ.* J. Marquart. Historische Glossen zu den alttürkischen Inschriften: Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes (=WZKM), 12 (1898), 165.

ձորայ զօրօք բազմութեան գնացին յօգնականութիւն թագաւորին Յունաց» (Սեբ. 68—69):

Հոս «ձեպետխոյ» սեռական հոլովով է եւ կ'ենթադրէ ուղղ. ձեպետուխ: Այլուր կը յիշէ նոյն հեղինակը ձեմբուխ անունը հետեւեալ կապակցութեամբ. Սմբատ Վրկան մարզպան 608ին կ'ուղարկուի Քուշանաց արքային դէմ ի Կոմշ եւ կը յաջողի վանել Քուշանները. «յայնժամ թագաւորքն Քուշանաց խնդրեցին իւրեանց օգնական ի մեծէն խաքանայ, արքայէն կողմանցն հիւսիսոյ. եւ եկն եւ ամբոխ երեսուն բիւրոյ ի թիկունս օգնականութեան նոցա». Կ'անցնին Վեհռոտ գետը, ասպատակ կը սփռեն ընդ արեւմուտս. կը պաշարեն այն քաղաքագիւղը, ուր կը գտնուէր Սմբատ: Այս միջոցին հրաման կը հասնի «ի մեծէն Խաքանայ առ ձեմբուխ. անցին զգետովն եւ դարձան անդրէն ի տեղի իւրեանց»: Իսկ Սմբատ «զինեալ գնայր ի վերայ ազգին Քուշանաց եւ արքային Հեփթաղեայ»: Մենամարտի մէջ Սմբատ կը սպաննէ Քուշանաց արքան եւ կը յառաջանայ «մինչեւ ի Բահլ շահաստան Քուշանաց» (Սեբ. 65—67): Սմբատ կը վերադառնայ յաղթական առ Խոսրով եւ կը վախճանի 617ին:

ձեմբուխ նոյն է անշուշտ ձեպետուխի հետ, եւ կարդալու է ձեբուխ (ձեբուղ), որ կը համապատասխանէ Ζιέβηλ, Ջեբու, Ջաբղու ձեւերուն: Սա կը ներկայանայ այս

կոխնրու մէջ իբրեւ զօրագլուխ, քիչ յետոյ կը հանդիսանայ իբրեւ երկրորդը «մեծին Խաքանին», նոյնպէս Խաքան տիտղոսով[2]:

2. Տաթ եղբօրորդի Խաքանից: Վիրդ կը գրէ. «Ի մտանել ամին ԼԷ. տաճկաց թագաւորն հիւսիսոյ գնուստացեալ զօրսն պատերազմող(ս), զօրավար կարգեալ զեղբօրորդին իւր, որում ի պատիւ իշխանութեանն իւրեանց Տաթ անուն կարգային. որ եկեալ արշաւեաց յամենայն սահմանս Աղուանից եւ ընդ մասն ինչ Ատրպատականի» գերելով, գերփելով եւ աւարառելով: Ապա կը բանակի Երասխի եզերքը: Ասկէ կ'ուղարկէ պատգամաւորութիւն մը Խոսրով Բ.ի եւ կը յայտարարէ յանուն հիւսիսոյ թագաւորին, թէ ինքը նիզակակից է Հերակղ կայսեր հետ. եւ կը պահանջէ Խոսրովէ, որ ետ քաշէ իր բանակները կայսերական հողամասերէն, վերադարձնէ գերիներն եւ Ս. Խաչը: Այլապէս «խաղացից ընդ ամենայն սահմանս քո սրով իմով, զոր օրինակ խաղացեր դու սրով քով ի սահմանս նորա» (Կայսեր. 161—162): Խոսրով պատասխանեց նոյնպէս սպառնալից: «Այսպէս սպառնալեաց պատգամաւ դադարեցին յամին յայնմիկ եւ դարձան անդրէն ընդ նոյն Դուռն» (152). տանելով իրենց հետ հարուստ աւար:

---

[2] Սեբէոսի այս տեղիքներու մասին հմմտ. J. Marquart, WZKM 12, էջ 157—200, յատկապէս 190—192:

Ուշադրութեան արժանի է հոս, որ այս առաջին արշաւանքին զօրավար կարգուած է Խաքանին եղբօրորդին, որ շաթ (šad) տի-տղոսն ունէր: Իւր անունը չէ յիշուած: Այլուստ ալ ծանօթ չեն պատմութեան ոչ Ջեբու Խաքանին եղբայրն եւ ոչ ալ եղբօր-որդին: Բայց չին հեղինակ մը[3] կը պատմէ թէ Տա-տու շաթ, Ծէհու խաքանին երէց որ-դին գերադաս եղած է 630 մարտէն յառաջ իր երկրորդ կնոջմէ, զրդմամբ իր առաջին կնոջմէ ունեցած կրտսեր որդւոյն, որ տեգին տիտղոսն ունէր, եւ հօրը սպանութենէն ետքը անոր շաթ տիտղոսը իւրացուց: Մենք պիտի տեսնենք քիչ յետոյ, թէ Ջեբու Խա-քանին որդին, շաթ տիտղոսով, հօր հետ էր 628 եւ 629 տարիներու արշաւանքներուն եւ Աղուանից աշխարհը կը գտնուէր 629—630 տարիներուն, երբ հայրը կը վախճանէր:

Ուստի շատ հաւանական է, որ Տա-տու շաթ եղած ըլլայ Խաքանին եղբօրորդին[4]:

Մովսէս Բ. կը յիշեցնէ Ճաթի պատգա-մաւորին. «Երթ առ Թագաւորին քում (այ. քոյ) եւ եղբօրն իմում Խաքանայ, եթէ ի վաղնջուց հետէ ի նախնեացն իմոց եւ յինէն մեծարեալ եւ պատուեալ էր առնդ ձեր իբրեւ եղբօր մերոյ սիրելոյ. վասն որոյ ու-ստերօք եւ դստերօք ընդ միմեանս պատուա-

---

[3] Hoei-Li, Vie et voyages de Hiouen-thsang, tad. par Stanislas Julien.

[4] Հմմտ. J. Marquart, Eranšah, Berlin 1901, S. 84—85, 311—312.

*տեալ էաք ի խնամութիւն: Արդ ոչ էր պարտ եւ արժան քեզ թողուլ զանդամս քո եւ խոտորել ի բանս ծառային իմոյ կորճին (այս ինքն՝ Կայսեր) Հոռոմայեցւոց, որ հրամանաւ եկիք յաշխարհս իմ»* (էջ 162—163 *եւ* 152):

*Արաբական աղբիւրներու համաձայն Խոսրով Ա. Անուշարուան բարեկամական յարաբերութիւն ստեղծելու համար Կովկասեան Թուրքերու հետ առաջարկած է Խաքանին ամուսնութիւն. Խաքանը ուղարկած է Խոսրովին իր դուստրը, իսկ Խոսրով փոխանակ իր դստեր առաքած է իր կանանոցէն ստրկուհի մը: Ըստ Մասուդիի Խոսրովի որդին Որմիզդ Դ. Սինջիբու խաքանի դուստրը մայր ունէր. ուրիշներու համաձայն Որմզդի մայրը Դերբենդի մօտակայ Խազարներու թագաւորին դուստրն է*[5]*: Սեբէոս կը գրէ թէ Որմիզդի մայրն «դուստր էր Խաքանայ մեծի արքային Թետալացւոց, կին Խոսրովայ. հօր սորա (կնոջն) անուն Կայէն. որ (Որմիզդ) թէպէտ եւ ի հայրենեաց մեծագոյն, եւս առաւել մեծագոյն եւ գաղանագոյն ի մայրենեաց կողմանէ»* (*էջ* 36):

3. Զօրակոչ: *Շաթ վերադարձաւ հարուստ աւարով: «Իբրեւ ետես իշխան տէր նոցա զայն ամենայն աղխ գերութեան աւարաց, մարդոյ եւ անասնոյ եւ անօթոց ոսկեղինաց եւ հանդերձից պատուականաց, խոր-*

[5] J. Marquart, WZKM, 12, S. 199—200.

*հեղաւ ի մալ խրում՝ յայն կոյս (ծորայ) ինքն իսկ խրամի գալ ելանել։ Ազդ առնէ այնուհետեւ ամենեցուն որք ընդ ձեռամբ իւրով էին՝ տոհմից տոհմից եւ ազգաց ազգաց, լեռնականաց եւ դաշտականաց, յարկաբնակաց եւ բացօթեկաց, ծովամխաց եւ ցամաքայնոց, գլխագերծաց եւ գիսաւորաց, զի ընդ ակնարկել նորա՝ պնդակազմ պատրաստական գտանիցին»* (152)։ *Այս ազգերը քիչ յետոյ կը նկարագրէ Պատմիչը «ժանտատեսիլ, ժպրհերես, լայնադէմ, անարտեւանուն... ի ձեւ իգական գիսարձակս... պնդաքարշք, կորովաձիգք»* (154)։ *Այլուր կու տայ անոնց կենցաղին նկարագրութիւնն* (182—185) *եւ սեպհական սովորութիւնները* (193)։ *Յատկութիւններ, որոնք տեսնուեցան յետոյ մոնղոլ—թաթարական արշաւանքներու ժամանակ։*

*Վիրոյ կաթողիկոս յանուանէ չի յիշեր այս ազգերը, նաեւ հաւաքական անունով բնորոշած չէ զանոնք բացի «ազգք ազգք բարբարոսաց»* (159), *«բարբարոսական թշնամիք»* (144). *անգամ մը անուանած է Ջեբու Խաքանը «Թագաւոր Հոնաց»* (158)։

*Բիւզանդացիք կոչած են զանոնք* Թուրքեր. *«Արեւելեան Թուրքեր. զորոնք Խազարներ կ'անուանեն» կը գրէ Թէոփանէս խոստովանող (տե՛ս վարը)։ Սեբէոս կու տայ անոնց* Հեփթաղք, Թետալացիք *եւ* Բուշանք, *ա-*

նունները։ Իսկ Աղուանից Պատմութեան խմբագրողը խազիրք։

Վերոյ երկիցս գործածած է «ազգ գիտաւորաց» (132, 160), «ի ձեռ իգական գիտարձակս»։ Զ—Է. դարուն այսպէս կը կոչուէին Աւարները[6]։

Խազարք կամ խազիրք, որոնք այդ ազգերու մէջ ցեղ մը կը կազմէին, պատմութեան մէջ առաջին անգամ երեւան կու գան Է. դարու երկրորդ կէսին, Հայոց քով 685ին։ Այս տեղ կարեւոր կը համարիմ ի մի ամփոփել այն վկայութիւնները, զորոնք կը գտնեմ Հայ, ասորի եւ յոյն աղբիւրներու մէջ։

ա. Անանուն ժամանակագրութիւնը (որ Անանիա Շիրակացւոյ կը վերագրուի) կ'աւարտի 686ին այսպէս. «Յուստի(նի)անոս (Բ. 685—695, միւսանգամ 705—711) որդի երրորդ Կոստանդնի. ամս Բ։ Ի սորա առաջին ամին աւերեցին հիւսիսային ազգն, որ ասին Հազիրք (Խազիրք), Հայոց, Վրաց եւ Աղուանից եւ սպանին ի պատերազմի զիշխանս Հայոց, Վրաց եւ Աղուանից, յամսեանն Սահմի, որ աւր տասն էր ամսոյն (=16 օգ.), ի ՃԼԴ (685) թուականին Հայոց[7]»։

բ. Նոյն դէպքը կը պատմէ Ղեւոնդ. «Գրիգոր իշխանն Հայոց (Մամիկոնեան)...

---

[6] Հմմտ. Marquart, Osteurop., էջ 43—44, ծն. 4։

[7] Հրտ. Հ. Բ. Սարգիսեանի, Վենետիկ 1904, էջ 80։ Անանիա Շիրակացու մատենագրութիւնը, հրտ. Ա. Աբրահամեանի, Երեւան 1944, էջ 399։

ի ժամանակի պատերազմին որ ի մէջ Տաճկաց՝ դադարեցին ի հարկատուութենէ նոցա Հայք, Վիրք, Աղուանք, ծառայեալ նոցա ամս 30 (+ 651 = 681). եւ եղեն աւուրք ապստամբութեան նոցա ամք Գ: Եւ ի չորրորդում ամին (685) տիրեցին ի վերայ աշխարհիս Հայոց հիւսիսային ազգն, որ ասին Խազիրք. եւ սպանին ի պատերազմին զիշխանն Գրիգոր եւ զբազումս ի նախարարացն եւ զիշխանսն Վրաց եւ Աղուանից. եւ ինքեանք ասպատակ սփռեալ ի վերայ աշխարհիս՝ առին զբազում գաւառս եւ գաւանս. եւ առեալ զաւար եւ զգերութիւն գնացին յաշխարհն իւրեանց» (էջ 15—16 հրտ. Եզեան):

գ. Այս հատուածին յարատութիւնը կը համարիմ Մ. Խորենացւոյ Բ. 65. Վաղարշ Թագաւոր Հայոց. «Ի սորա աւուրս միաբանեալ ամբոխութիւն ի հիւսիսականացն, զԽազրաց ասեմ եւ զԲասլաց, արտաքս քան զԴրունն Ճորայ եկեալ, առաջնորդ եւ թագաւոր ունելով ինքեանց զՎնասեպ ոմն Սուրհապ, որք անցեալ վտարին այսր զԿուր գետով»: Վաղարշ կը կոտորէ անոնցմէ մաս մը. Մնացեալները հետապնդելով «անցանէ ընդ կապանն Ճորայ». Թշնամին յանկարծ ետ դառնալով կը յարձակի Վաղարշի վրայ. Հայոց թագաւորը կը սպաննուի:

դ. Մովսէս Խորենացւոյ, ուրիշներէ Անանիա Շիրակացւոյ ընծայուած Աշխարհացոյցը. «Սարմատացւոց աշխարհ... եւ ընա-

*կին ի Սարմատիա ազգք բազումք, որք են այսոքիկ. Խազիրք, Բուլք, Բասիլիք...* (էջ 604)։ *«Իսկ ի հիւսիսոյ նոցա Հոնք եւ քաղաք նոցա Վառաչան եւ այլք ընդ նմա. եւ Թագաւորն հիւսիսոյ է Խաքան, որ է տէր Խազրաց եւ դշխոյն Թագուհի կին Խաքանայ ի Բասլաց ազգէն»* (605)։

Ե. *Միքայէլ Ասորի իր ժամանակագրութեան մէջ կը պատմէ թէ կային երեք եղբայրներ, որոնք Զ. դարու երրորդ քառորդին ներքին Սկիւթիայէն ճանապարհ կ'ելլեն* 30.000 *սկիւթացիներու հետ, կը հասնին Հռոմայ սահմանը։ Այդ եղբայրներէն մին Բուլղարիոս անուն կ'առնէ* 10.000 *այր եւ բաժնուելով եղբայրներէն, կ'անցնի Դանուբն եւ կը խնդրէ Մօրիկ կայսրէն հող եւ կը հաստատուի հոն. ասոնք կոչուեցան Բուլղարներ։ «Իսկ միւս երկու եղբարք կ'երթան Ալանաց երկիրը, որ Բարսալիա կը կոչուի. անոր քաղաքները չինուած էին Հոռոմներէն, որոնք Կասպիա են, զորոնք Դուռն Թուրքաց* (Toraje) *կ'անուանեն (իմացիր Ճորայ)։ Անոնց բնակիչներն էին Բուլղարք եւ Պուգուրք. որոնք ժամանակ մը քրիստոնեայ էին. բայց որովհետեւ օտար ժողովուրդ մը այն կողմերու իշխանութիւնը ձեռք առած էր, կոչուեցան անոնք Խազարք երէց եղբօր անունով, որ Խազարիկ կ'անուանուէր։ Այս ժողովուրդը հզօր էր եւ ընդարձակուեցաւ»* Chronique de Michel le Syrien, Paris

1901, հատոր Բ., էջ 364. հմմտ. նաեւ Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, էջ 485—491: Նոյն հատուածը փոխ առած է նաեւ Բարհեբրէոս իր Ասորական ժամանակագրութեան մէջ[8]:

Աս հատուած կը կարծուէր թէ Միք. Ասորի այս տեղիքը առած է Յովհ. Եփեսացւոյ Եկեղ. Պատմութենէն (Marquart, անդ, 56). բայց երբ հրապարակ ելաւ ասորի բնագիրը, տեսնուեցաւ որ Միքայէլի յաւելուածն է այն, զետեղած Եփեսացիէն առնուած քաղուածքներու մէջը (անդ, էջ 486):

Գ. Թէոփանէս Խոստովանող, իր ժամանակագրութեան մէջ, կը գրէ թէ Հերակղ հրաւիրեց τοὺς Τούρκους ἐκ τῆς ἑῴας, οὓς Χάζαρεις ὀνομάζουσιν ի նիզակակցութիւն, քիչ յետոյ ալ կը յիշէ ὁ λαὸς τῶν Τούρκων (Chronogr. էջ 315—316):

Այս տեղիքները ցոյց կու տան, որ Խազարք կամ Խազիրք իբրեւ ցեղանուն իշխող ժողովուրդի մը՝ 685էն յառաջ ծանօթ չէին ոչ Հայոց, ոչ Յունաց եւ ոչ ալ Ասորւոց:

Թէոփանէս, որ յօրինած է իր ժամանակագրութիւնը Թ. դարու առաջին տասնամեակին, երբ Թուրքերը «Խազարք կը կոչուին» կ՚ըսէ, կ՚արտայայտուի Թ. դարու ըմբռնումով, այսինքն Հիւսիսային Թուրք անուանուած ժողովուրդը Է. դարու երկրորդ

[8] Bar-Hebraei chronicon syriacum, Ա.—Բ., Լայպցիգ 1789. հրտ. P. J. Bruns եւ G. G. Kirsch, S. 95.

կէսին Հրապարակ եկան Խազարք անունով։ Նոյնպէս Միքայէլ Ասորի, որ վախճանած է 1199ին, ունեցած է ձեռքի տակ ոչ թէ Յովհ. Եփեսացւոյ Եկեղ. Պատմութիւնը, այլ անհաւատալի աղբիւր մը, որ ծանրակշռութիւն չի կրնար ներկայացնել առ խնդիրն։

Հաւանօրէն 640էն ետքը, երբ Հիւսիսի թագաւորութիւնը մեծ յեղաշրջութիւն կրած էր, պետութեան սանձը անցաւ Խազար ցեղին։

Ուստի ժամանակացոյց կարող է ծառայել մեր ձեռքը Խազիր կամ Խազար անուն՝ ճըշդելու համար ժամանակն որ և է գրութեան, որ կը յիշատակէ այս յորջորջումը։ Այսպէս Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը, Աշխարհացոյցը և Աղուանից Պատմութիւնը չեն կրնար 650էն յառաջ գրուած ըլլալ։

4. Ա. Արշաւանք Զաբու խաքանի (628)։ — Հերակլ և Զեբու ժամադրուած էին հանդիպելու իրարու Տփղիսի առաջ։ «Յամին ԼԸ (627/8 ձմեռը), որ ամ էր տագնապի աղետից սպանմանն Խոսրովու, եկեալ նոյն ինքն Զեբու Խաքան, ունելով ընդ իւր և զորդին իւր. և զհամար զօրուն նորա ոչ ոք կարէր արկանել ընդ թուով»։ Ան անցաւ Ճորայ պահէն, մտաւ Աղուանից աշխարհը. յառաջացաւ դէպի Տփղիս։ Հասաւ հոն նաև Կայսրը իր բանակով, «առ նիզակակից օգնականն իւր»։ Խաքանն և Կայսրը «յոյժ բերկրեցան ի տեսանել զմիմեանս»։ Խոսրով իմացած էր,

որ երկու պետեր ժամադրուած են Տփղիսի առաջ. եւ աճապարած էր քաղաքին պաշարումէն յառաջ հասցնել հոն օգնական զօրք, զօրավար Շահրապղականի[9] առաջնորդութեամբ:

Պաշարումը երկարեցաւ: Տփղիսեցիք կը դիմադրէին քաջաբար: Տեղի ունեցաւ խորհրդակցութիւն: Կայսրը խորհուրդ տուաւ Խաքանին, որ վերադառնայ իր աշխարհը, որովհետեւ իր բանակը պիտի չկարենայ տոկալ ամառուան օդին, մանաւանդ երբ ռազմաճակատը փոխադրուի Տիզբոնի առաջ: Որոշուեցաւ լքել պաշարումը, յաջորդ տարուան թողլով քաղաքին նուաճումը: Պաշարեալները երբ իմացան թշնամիին մտադրութիւնը՝ անխոհեմութիւնը գործեցին նախատելու Խաքանը. որ հեռացաւ զայրութով եւ վրէժխնդրական ոգւով (157—159):

5. Բ. արշաւանք Խազարի: Յաջորդ տարին (628/29 ձմեռ) շարժեց Ջեբու Խաքան իր բանակը միւսանգամ. խաղաց դէպ ուղիղ Տփղիսի վրայ, զոր պաշարեց: Բերդաքաղաքը չունէր այս անգամ պարսկական ընտրանի զօրքը: Հազիւ երկու ամիս կրցաւ դիմակալել: Մտաւ բարբարոս բանակը քաղաքը եւ դատեց չարաչար. կոտորեց իշխան-

---

[9] Անուանս եւ անձին մասին տես C. J. Dowsett, The name and the role of Σαρβλαγγας or Šahraplakan: Byzantion 21 (1951), 311—321 եւ F. Justi, Iranisches Namenbuch, Marburg 1895, S. 287.

ներն եւ բերդականները, բնաջնջեց քաղաքացիները, աւարեց անյագօրէն: «Հրամայեաց (Խաքանն) բառնալ անտի զաւարն ամենայն. ինքն չուեալ հանդերձ զանձիւքն դառնայ ի տեղի իւր» (172—174):

6. Շաթ որդին խաքանի Աղուանից աշխարհի մէջ: Ջեբու Խաքան այս տարի ալ հետը առած էր իր Շաթ որդին: Վերադարձի ժամանակ կը յանձնէ պատերազմիկ զօրքը «ի ձեռս որդւոյն իւրոյ Շաթայ հանդերձ դաստիարակօք արամբք քաջօք՝ երթալ հրամայէր ի սահմանս Աղուանից»: Յանձնարարած էր իրենց, որ «եթէ եղցեն մեծամեծք եւ առաջնորդք աշխարհին ընդ առաջ որդւոյն իմոյ եւ տացեն ի ձեռս զաշխարհն իւրեանց ինձ ի ծառայութիւն... Թողացուցէք եւ դուք նոցա կեալ եւ ծառայել ինձ». այլապէս «մի խնայեսցէ ակն ձեր ի նոսա»:

Շաթ հրամանիս համաձայն ուղարկեց պատգամաւորներ Պարտաւի պարսիկ մարզպանին եւ Աղուանից Վիրոյ կաթողիկոսին, ինքնակամ անձնատուր ըլլալ եւ խնայել արիւնհեղութիւնը. այլապէս որոշած է ինքը զէնքի ոյժով ի գլուխ հանել նուաճումը: Պարսիկ մարզպանը մերժեց անձնատուութիւնը, բայց ինքը գիշերախառն դիմեց փախուստի: Կաթողիկոսը, որ նոր էր վերադարձած 25ամեայ բանտարկութենէն, չուզեց պատասխանատուութիւնը յանձն առնել եւ մատնել աշխարհը Շաթին: Ուղարկեց սուրհանդակ

*մը Պարսից Դուռը, հարցնելու Թագաւորին հրամանը: Արտաշիր էր գահին վրայ, Տիզբոն քաղաքային կռիւներու մէջ: Մինչ այս գոռհ կու տան Բարբարոսները Աղուանից աշխարհ. Ժողովուրդը առանց դիմադրութեան կը դիմէ խուճապով փախուստի: Այս շփոթի մէջ կը հարկադրուի կաթողիկոսը ներկայանալ Շաթի ճամբար, ուր կ՚ընդունուի սիրով: Արձակերասանակ բանակը կը ցրուի. գերիները կը վերադարձուին: 629 տարւոյն կ՚իշխեն երկրին մէջ սով եւ համաճարակ հիւանդութիւններ:*

*Աղուանից աշխարհը նուաճուած էր: «Յերկրորդ ամի Արտաշրի որդւոյ Կաւատայ Պարսից արքայի, մինչ դեռ եւս անկէր նա զիշխանութիւնն ըստ կամս իւր», ուստի 629 սեպտ.—630 ապր. 27, «իշխանն հիւսիսոյ զօրանայր բռնութեամբ յամենայն հրամանս իւր». պահանջեց ժողովուրդէն հարկ, «զդիդրաքմայն ըստ սովորութեան աշխարհագրի Պարսից թագաւորութեանն», որ ծանր էր կողոպտուած ժողովուրդին համար:*

7. Շաթ կ՚արշաւէ Հայաստանի եւ Վրաստանի նուաճելու համար: *Շաթ «եդ ի մտի խորում ի ժամանակս ամառնային (ուստի 630 յունիս-յուլիս) վարել յաշխարհն Հայոց եւ գնոստ եւս սահմանակցօքն նորա ածել ի հնազանդութիւն իւր», անշուշտ 602ի սահմանին մէջ: Կը կազմէ բանակ մը 3000 զօրքով եւ կը կարգէ «իշխան նոցա զՉորպան*

Թարխանն... առաքէր զնա յառաջագոյն քան զինքն, զի պատրաստեսցէ առաջի նորա աներկլեղ զճանապարհս նորա եւ քննեսցէ վասն հպարտացեալ զօրավարին Պարսից, որ զեռ եւս ունէր զաշխարհն Պաղեստինացւոց: Եւ ինքն տակաւ չուեաց զհետ նորա բառ կազդուրեալ բազմութեան իւրոյ» (190—191). 630 ապրիլէն յառաջ:

Խօսքը Շահ-Վարազի (Խորեանի) մասին է. սա 629 յուլիսին յԱրաբիսոս հանդիպում մ'ունեցած էր Հերակլի հետ. եւ պայմանաւորուած, որ ան քաշէ պարսիկ զօրքը հռովմէական սահմաններէն եւ վերադառնայ Տիզբոն, թագաւորէ եւ կնքէ խաղաղութեան դաշինք[10]:

Զարդան Թարխան միջամուխ կ'ըլլայ Հայաստան. կը լսէ հոն Շահ-Վարազի յառաջխաղացութիւնը. կը սպասէ անոր դարանակալ: Շահ-Վարազ, «որ հրապարակախօս լինէր ի մէջ զօրաց իւրոց եւ կարծիս տայր կարել զչուիլն Սասանականին եւ զիւր թագաւորելն», կ'ուղարկէ թշնամւոյն վրայ Հոնահր, որ «իշխանն էր զնդին Տաճկաձիոց». զօրաց թիւն էր 10.000. իսկ ինքը կը մեկնի Տիզբոն: Բախումը տեղի կ'ունենայ Գեղամայ ծովու եզերքը. կը ջախջախի պարսկական բանակը: Շահ-Վարազ լսեց Հոնահի պարտութիւնը՝ Տիզբոնի առաջ կամ մէջը:

[10] Nöldeke, Tabari, S. 302, 387.

8. Կոտրած Շաթի բանակին մէջ. Ջեբու խաքանի մահը. վերադարձ: *Շաթի չուն գանդագագնաց մտած էր «ի կիրճս ճանապարհաց երից աշխարհաց՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից», երբ հասաւ «հասանէր բօթ ահագին ի հիւսիսական աշորեիչ ծովէն, որ է նա ինքն Ջեբու Թաքան, առ գիշախանձ կորիւն իւր Շաթ, թէ 'Հասին ի վերայ իմ հէնք եւ ոչ յաւելուս տեսանել զերեսս իմ. եւ փոխանակ զի ոչ կացի ես յակատանի, այլ ձգտեցայ յանպատշաճ թագաւորութիւն, որ ոչ էր ինձ անկ, վասն այն յամբարտաւանիլն իմում եւ յայմ բարձրութենէ անկայ: Եւ արդ դու մի յապաղեր սատակել զազգ որ ընդ քեզ են. եւ ջանա ապրել ի ձեռաց դոցա, զի մի ի յառաջագոյն լսել դոցա զեղեալքս՝ վաղվաղեսցեն պատառել զքեզ. այլ ես կորեայ եւ անզաւակեցայ»* (194—195):

*Այս պատգամը ստանալուն պէս «անդէն դարձոյց զերեսս իւր կաթայն հիւսիսոյ (Շաթ) յետս ընդդէմ որդւոցն իւրոց. սկսաւ ողբել իւրովք ընդ ինքն, ցանել զեանոյն բարկութեան իւրոյ ի վերայ կորեանց իւրոց եւ սուժիլ ընդ միոյ զհազարս եւ ընդ երկուց զբիւրս»* (193—194):

*Այս կապակցութեամբ հարկ է Բ.* 16 *գլխին վերջին երկու էջերու մէջ թղթերու յետառաջութիւն ենթադրել, ինչպէս վերագոյն յիշեցի, էջ* 284, 17 *(զօրաց) իր շարունակութիւնն ունի էջ* 285, 6 *(այլ մեք)* —

22 (անդաւակեցայ) տողերը. որ կը շարունակուի իր կարգին էջ 284, տ. 18 (անդէն) — 285, տ. 7 (նման)։

Շաթ պատերազմիկ գործը յանձնած էր Զորպան Թարխանի։ Այդ գործը կազմուած էր զանազան ցեղերէ։ Իր շուրջը ունէր Շաթ արքունական ստանիկ թիկնապահներն եւ հաւատարիմները։ Գիտցաւ ան անշուշտ րոպէին լրջութիւնը եւ անոր համաձայն դասաւորեց իր հաւատարիմները. այս ինքն կիրճին մուտքն եւ երբ վակերով յարձակեցաւ այլացեղ եւ վտանգաւոր գործին վրայ եւ կատարեց սակաւ կորուստով։ Այս պատահած ըլլալու է մայիս—յունիսին։ Իր վերադարձը սակաւաթիւ մնացորդներով պէտք է եղած ըլլայ նոյն տարւոյ յունիսին։

Ջերու Խաքանի մահուան մասին տեղեկութիւններ կը հաղորդէ Հօէյ—Լի՝ Հիուէնցանգի վարքին մէջ, որ հասած է մեզի Սիիւ—քիի խմբագրութեամբ 648ին։ Այս ճանապարհորդը հանդիպած է Խաքանին 630 մարտին, անոր մայրաքաղաքին մէջ, որ է Հվօ, ապա կոչուած Գունդուզ։ Խաքանը քիչ յետոյ արշաւանք մը կը կատարէ դէպի Բահլ, կը գրաւէ մենաստան մը, որուն թանկագին իրերը աւարել կ'ուզէ։ Նոյն գիշերը երազի մէջ կը տեսնէ Պի—շա—մէն աստուածը, որ կ'ըսէ. Ո՞ր ոյժի վրայ վստահացած կը յանդգնիս կործանել այս մենաստանը. եւ կը

մէջ նիզակը անոր փորն եւ կողը թափանցանց: Խաքանը ընդոստ կ'արթննայ քունէն, կը զգայ հարուածին պատճառած ցաւը. կը պատմէ եւ կը խնդրէ կանչել կրօնաւորները. բայց ան անոնց գալէն յառաջ կը փչէ հոգին[11]»:

Թէ այդ մահաբեր հարուածը Ջեբու Խաքան երազի՞ մէջ, թէ պատերազմի դաշտի վրայ ընդունած է, կը մնայ խնդրական. յամենայն դէպս այն ատրջանքը, զոր յայտնած է մահէն յառաջ շատ համաձայն կը հնչէ այն մահասարսուռ բօթին, որ լսուած է «ի կիրճս ճանապարհաց երից աշխարհացն», զոր յիշեցինք: Ջեբու Խաքանի խոստովանութիւնը, թէ «հասին ի վերայ իմ հէնք... զի ոչ կացի ես յակատամանի, այլ ձգտեցայ յանպատշաճ թագաւորութիւն» կը հաստատեն չին աղբիւրներ, որոնց համաձայն մանր թագաւորներ կամ իշխաններ խնդրած են Չիներու օգնութիւնը ընդդէմ Թունգ–չէ–հուի[12], որ օր աւուր կը ձգտէր նոր նուաճումներու:

Խաքանի որդին Շաթ դարձաւ անշուշտ իր սակաւաթիւ տոհմակիցներով հայրենի տունը եւ գրաւեց իշխանութիւնը: Ինքն է անտարակոյս այն Սէ–չէ–հու Խաքանը, որ

---

[11] Ed, Chavannes: Journal Asiatique, serie 9, t. 18 (1901), 553—555.

[12] Deguignes, Geschichte der Hunnen und Türken, übersetzt von Dühert, I, 597. Marquart, WZKM, 12, S. 192.

633ին, ըստ չին աղբիւրին, շարժեց բանակը Սողդիանէի վրայ, թերեւս իր հօրը արեան վրէժը լուծելու համար, բայց տուժեց, ինքն ալ, իր կեանքը:

Այսպէս միայն կարելի է հաշտեցնել հայկական եւ չինական աղբիւրներու իրարմէ խոտորող տեղեկութիւնները[13]:

## 16. ՋՈՒԱՆՇԻՐ, ՎԱՐԱԶ-ՏՐԴԱՏ, ՏԷՐ ԻՍՐԱՅԷԼ. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Աղուանից Պատմութեան մէջ ընդարձակ գլուխներ նուիրուած են Ջուանշէր եւ Վարազ-Տրդատ իշխաններու եւ Իսրայէլ եպիսկոպոսի: Այս գլուխները մէկ գրչի արտադրութիւններն են: Անոնք բովանդակութեամբ պատմական եւ ողբախօսական միպատանութեան փորձեր են, նկարագրով՝ ճարտասանական կրթութիւններ:

Անանուն հեղինակը ունեցած է իր գրադարանին մէջ Փաւստոսն, Կորիւնը, Ագաթանգեղոսը, Ղ. Փարպեցին, Եղիշէն, Սեբէոսը, Մ. Խորենացին, Թովմա Արծրունին, Յովհաննէս Դրասխանակերտցին (930) եւ այլ ժամանակագրական եւ վկայաբանական—հայրաբանական գրութիւններ: Այս գրուածքներէն ծաղկաքաղած է ոչ միայն պատմական տեղեկութիւններ, այլ եւ բա-

---

13 J. Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, S. 498.

ներ եւ ճարտասանական ստութիւններ։ Ի բերան ուսած կ՚երեւայ Կորիւն եւ Ագաթանգեղոսը։ Զարմանալի չէ այնուհետեւ, եթէ հեղինակիս «ծաղկազարդ վարդապետութիւնն եւ քաղցրուսոյց խրատները», «ախորժարար» յանկի եղած են ունկնդիրներուն (Բ. 41)։

Վիպագիրը հայրենասէր աղուան մըն է, ոչ ազատ կուսակցական ձգտումներէ եւ ազգամոլութենէ։ Ան նկրտած է սեւեռելու ի պարծանս իր ժողովուրդին պանծալի հերոսներ, քաջարի սպարապետներ, խոհեմազարդ քաղաքագէտներ, ամենապայծառ դէմքեր, աստուածատես առաքեալներ։ Ան կը բուսցնէ հայրենի հողէն կենսատու խաչեր, որոց մասունքներ, բարեզարդելու Աղուանից վանքերը, ուխտատեղի վերածելու Աղուանից աշխարհը։ Աշխարհ մը, ուր հիմնուած է հիւսիսային կողմանց նախնեկեղեցին, առաքելական աջով, ուր զարգացած է անկախ նուիրապետութիւն, որ ընդարձակած է իր սահմանները մինչեւ Հոնաց աշխարհը Թափանգանց. աշխարհ մը, որ եւ քաջութեամբ եւ փառօք, եւ նուիրապետական իշխանութեամբ եւ սրբութիւններու առատութեամբ ի վեր է քան Հայոց աշխարհն եւ Եկեղեցին։ Ան պրկած է իր գրչի աղեղը նպատակակէտ ընտրած երկինքի աստղերը։

Թէ Աղուանից Պատմութեան Ա. 27—30, Բ. 29—33 եւ Բ. 17—28, 29—31 եւ 33—45

մէկ գրչի գործ են, ուշադիր եղած էր արդէն Ն. Ադոնց (Անահիտ, 10, Թ. 3, էջ 77)։

### 11. ԳՈՐԾՔ ՔԱՋՈՒԹԵԱՆՑ ՋՈՒԱՆՇԻՐ ԻՇԽԱՆԻ (Բ. 17—28. 34)

Վիրոյ կաթողիկոսի Պատմութեան իբրեւ շարունակութիւն կը ներկայացուի Ջուանշիրի Գործքը, որ 631—685 տարիներու Աղուանից պատմութիւնը կը դիտէ կազմել։

Որչափ ալ ջանք տարած է մատենագիրը իր հերոսը իբրեւ Աղուանից փառքը հանդիսադրել, եւ ատ այս արուեստ չէ խնայած, բայց անփոյթ գտնուած է իր կառուցուածքին պատմական հիմերը հաստատուն դարձնել։ Այս պատճառով ալ իր գեղեցկաշէն շինուածքը պատմաքննական առաջին իսկ փորձին կը խախտի եւ կը փլուզուի, նոյն իսկ կասկածի կ'ենթարկուի իր հերոսին պատմական գոյութիւնը։ Այդ հերոսը ռազմադաշտէ ռազմադաշտ կը վազէ, մերթ յաղթական, արքունիքէ արքունիք կը դիմէ դաշինքներ կնքելու, պատիւներէ պատիւներու կը բարձրանայ, յետոյ ո՞ւրը, Ե՞րբը, Թագաւորնե՞րը, դաշնակիցնե՞րը։ Զարմանալին այն է որ այդ համբաւուած հերոսին անունը ոչ հայ, ոչ յոյն եւ ոչ արաբ պատմագիրներու քով արձագանգ գտած է։

Ն. Ադոնց, որ առաջին փորձն ըրաւ «գտնել պատմական հետքեր այս վիպական

որոմներից» (Անանիա, էջ 6), շատ տակաւ անաղարտ հատիկներ գտաւ հոն։

Հետեւինք մենք պատմուածքիս ընթացքին։

Ջուանշիրի Գործքին նախաբանն է Բ. 17. զոր վերլուծեցինք վերագոյն (Բ. 1, 5)։ Վիպագրին նպատակն էր ցոյց տալ, թէ Աղուանից իշխանները արենակից են Հայկազնեանց, Պարթեւաց եւ Սասանեանց։ Մինչեւ Է. դարու առաջին քառորդը կ՚իշխէին Աղուանքի մէջ Միհրականք։ Իբրեւ առաջին «իշխան Աղուանից» տրուած արինէ երեւան կու գայ իբր 630ին Վարազ-Գրիգոր, թոռն Ջարմիհր եանշահիկին, որդին Վարազմանի։ Սա «էառ զմկրտութիւն ի Վիրոյէ Աղուանից կաթողիկոսէ». այս ինքն իշխանական տունը, որ մոգական դենին կը հետեւէր, ընդունեցաւ քրիստոնէութիւնը։ Վարազ-Գրիգոր պատմական անձ է, կը յիշուի Յովսէփ անապատականէ («յիշխանութեանն Աղուանից Վարազ-Գրիգորի Գարդմանայ տեառն» Բ. 50)։ Սորա որդիներն են Վարազ-Փերոժ, Ջուանշիր, Յեղուա-Խոսրով եւ Վարազման» (Բ. 17)։

Խոսրով Բ.ի մահուան Դ. տարւոյն կը թագաւորէ Յազկերտ Գ. (632—641)։ Իր օրով կ՚արշաւեն Արաբները Պարսկաստան։ «Յայնժամ որ միանգամ[այն] ի ձեռս թագաւորութեանն Պարսից էին զօրավարք եւ իշխանք... զօրաժողով լինէին կալ ընդդէմ

*օտարազգի թշնամւոյն»: Վարազ–Գրիգոր «ըստ սեպհականն իւր լինելոյ Արտաշրական տոհմի» «փոխանակ իւր պատշաճ համարէր» իր Ջուանշիր որդին*[1] *ուղարկել ի դուռն արքային:*

*Ջուանշիր «առեալ զգունդն ի հօրէն՝ նախ քան զիշխանն Սիւնեաց (Գրիգոր) եւ զսպարապետն Հայոց (Մուշեղ) յառաջէր հասանել ի համաշխարհականն յայն բեւրաւոր ժողովս»: Պարսից զօրավարն Ռոստոմ կը ներկայացնէ «զմանուկն Ջուանշիր» Յազկերտ թագաւորին. որ «կոչեաց զնա սպարապետ Աղուանից»: Պարսից բանակը կ՚անցնի Դկղաթ (Տիգրիս) գետը, կը յառաջէ Վեհկաւատ գաւառը (հմմտ. Սեր. 95, 163) եւ կը բանակի «յայն կոյս մեռեալն ջրոյ» թշնամւոյն դիմաց: Պարսից ոյժն էր 30.000 հեծեալ եւ 10.000 հետեւակ: Հագարացիք «եկեալ ի Կատշանէ՝ բազմութիւնք հեծելոց եւ 20.000 հետեւակաց ասպարախիտ չարժամբք յառաջ խաղացեալք նախանձեալ լինէին հարկանել զզօրս Պարսից»: Պատերազմը տեղի կ՚ունենայ յունուար 6ին: Աղուանից սպարապետը կը բախի «ընդ արս զօրութեան». եւ «զերկուսն ի դիմամարտից հարեալ ընկենոյր». իսկ ինքը կ՚ընդունի երեք վէրք, իր*

[1] *Բ. 18. տակաւին նորաթուրմ երիտասարդական հասակին. «որոյ* դեռ *եւս կամէր* (այն) ինչ ծաղկիլ ի ծնօտսն տէգ մօրուաց»: *Հմմտ. Փարպ.* 15. *«Որ մինչ* դեռ *էր ի տիս մանկութեանն, եւ* այն ինչ դեռ տէգ մօրուացն *ի վերայ գեղեցկատեսիլ վարդափթիթ* ծնօտիցն բուսանէր»:

ձին՝ չորս խաչուած։ Թշնամին կը հետապնդէ զինքը մինչեւ գետ. «եւ սա մարտուցեալ ընդ նոսա՝ դարձ եւ զգետոյն անցանէր» արիւնադանգ զգեստով եւ զէնքով։ Երբ կը տեսնէ, թէ պարսիկ մեծամեծք եւ զօրքը խուռն պէս հնձուած են թշնամիէն, կ՚աճապարէ «անդրէն ի դուռն արքունի». ուր կը արամադրէ իրեն թագաւորը ապարանք եւ բժիշկներ։ Ջուանշիր կը գտնէ առողջութիւնը եւ կ՚ընդունի թագաւորէն պատուանշաններ եւ հանդերձանքներ (Հմմտ. Սեբ. 63, 65, 107)։

Ջուանշիր կը յարի Խոռ(ոխ)ազատ զօրավարին։ «Իսկ յութ ամսոյն (ի Ժ. ամի) Յազկերտի եկ մեկանգամ թշնամին եւ պաշարեաց զարքայ ի Տիզբոն քաղաքի զամիս վեց»։ Խոռոխազատ եւ Ջուանշիր կը յարձակին թշնամւոյն վրայ. Ջուանշիր իր երեքհարիւր նախայարձակ կ՚ըլլայ, կը ստիպէ թշնամին քաշուիլ գետին միւս կողմը՝ «եւ ոչ այր նոցա թոյլ զամիս վեց անցանել ընդ Դկղաթ գետ»։

Թագաւորը Դաստակերտ եւ ապա Բեկդադ (Հմմտ. Սեբ. 64) կը քաշուի. թշնամին կը հետապնդէ զինքը։ Այս նահանջին ցոյց կու տայ Աղուանից պատրաստելը իր քաջութիւնները։ «Յետ պարսիկ ճակատ առ ճակատ պատերազմ խմբեալ՝ եղեւ բեկումն չար... Պարսից զօրուն»։

«Արդ զամս եօթն ի պատերազմունս յայ-

*սաստիկ տաժանեալ մրցէր քաջն Ջուանշիր. եւ տեսեալ եւ մի դժնդակ վէրս յանձն առեալ՝ գայր հրաժարեալ ի նոցանէ յԱտրպատական գաւառ»։ Այստեղ պարսիկ զօրավարը կ'առաջարկէ իրեն իր դուստրը կնութեան։ Բայց Ջուանշիր յանձն չ'առներ «զոք յանօրինաց առնել կին»։ Եւ կը վերադառնայ հայրենի տունը, ուր կ'ողջագուրուի հօրը հետ (Բ. 18)։*

*Այս անցքերու համար միւսաղբիւրն աղբիւր ունեցած է Սեբէոսի Պատմութիւնը։ Սեբէոս կը գրէ. «Եւ նուաղեցաւ թագաւորութիւնն Պարսից ի ժամանակին յայնմիկ եւ զօրք նոցա բաժանեալ յերիս մասունս (հմմտ. անդ, էջ 99)։ Յայնժամ զօրացն Իսմայէլի, որ էին գումարեալ ի կողմանս Արեւելից, երթեալ պաշարեցին զՏիզբոն, զի անդ նստէր թագաւորն Պարսից։ Եւ զօրք աշխարհին Մարաց (խմացիր՝ Ատրպատականի, հմմտ. 99—100) գումարեալ ի ձեռն* զօրավարին *իւրեանց* Ռոստոմայ ԶՌ վառելոց, ժողովեցան եւ գնացին ի վերայ նոցա ի պատերազմ։ *Յայնժամ թողեալ (Իսմայելացւոց) զբանակն՝* անցին յայնկոյս գետոյն Դկլաթայ։ Եւ գնացին եւ անցին նոքա (*զօրքն Ռոստոմայ*) զգետովն եւ պնդեցան զհետ նոցա. եւ նոքա (*Իսմ.*) *ոչ դադարեցին մինչեւ ի սահմանս (ի ճամբա՞րն) իւրեանց՝ ի գեւղն որ կոչի Հերթիճան։ Եւ սոքա (Պարսիկք) պնդեալք զհետ նոցա եւ չոգան բանակեցան ի դաշտին, էր անդ եւ Մուշեղ Մամիկոնեան որդի Դաւթի*

զօրավարն Հայոց *երեք հազար սպառազինօք եւ Գրիգոր* իշխանն Սիւնեաց *տէրն՝ հազար արամբ*: Եւ եղեւ յարձակումն ի վերայ միմեանց· *եւ փախեան զօրքն Պարսից առաջի նոցա. իսկ նոքա զհետ մտեալ հարին զնոսա ի սուր սուսերի իւրեանց*: *Եւ* մեռան ամենայն նախարարքն գլխաւորք· *մեռաւ եւ զօրավարն Ռոստոմ. սպանին եւ զՄուշեղ երկու քեռորդւովքն, եւ զԳրիգոր Սիւնեաց տէր միով որդւով*[2]: *Եւ այլքն զերծեալ գնացին փախստական յաշխարհն իւրեանց*: *Եւ Մնացորդք զօրացն Պարսից (որ) յԱտրպատական[է] գումարեալ ժողովեցան ի մի վայր եւ նստուցին իւրեանց* զօրավար զԽոռոխզադ (*եղբայր Ռոստոմայ. որ) եւ փութացեալ ի Տիզբոն էառ զամենայն գանձս թագաւորութեանն եւ զբնակիչս քաղաքացն եւ* զթագաւորն իւրեանց· *եւ փութացաւ հասուցանել յԱտրպատական...*» (107—108)):

*Այս դէպքերը տեղի ունեցան 636/7 տարւոյն: Սեբէոս կը յիշէ նաեւ 642ի պատերազմը (էջ 112), որուն ռազմադաշտը «ի Մարոս (Մարաց) գաւառի» կը դնէ, ուր էր Նիհաւանդ. հոս եղաւ որոշիչ ճակատամարտը:*

*Աղուանից պատմիչը երբ կը գրէ թէ Ջուանշիր «զամս եօթն ի պատերազմունս» մրցէր, պէտք է իմանալ կամ «ամիսս եօթն» եւ կամ «եօթն» (է) կարդալ «հինգ» (ե),*

---

*2 Սեբէոս չէ յիշած Աղուանից մասնակցութիւնը այս պատերազմին մէջ:*

ինչպէս կ՚առաջարկէ Ն. Ադոնց, որով ակնարկուած կ՚ըլլայ 637—642 շրջանը: Թէ ի՞նչ աղբիւրէ առնուած է «ի Կատշանէ», զոր Ադոնց «Կադեսիա» կ՚ուզէ իմանալ[3], չեմ կրնար ըսել: Իրմէ է նաեւ «յետ սուղ ինչ աւուրց յամսեանն մեհեկի, որ օր Ծննդեան էր Քրիստոսի» յաւելուածը. առանց տարեաց ամսուան օրը (Յունուար 6) յիշուած է: Ուշադիր կ՚ընեմ, որ վիպագիրը եւ այլ դէպքերու մէջ կը սիրէ յիշատակել այս օրը:

Ջուանշիր իրեն քաղաք բնակութեան կ՚ընտրէ Պերոզապատը. իր քով կ՚առնէ հայրը: Այս անդառնալութիւնը Պարսիկները արքայից արքայի դէմ «ապստամբութիւն» կը համարին. եւ յարձակումներ կը գործեն: Կը յաջողին միջամուխ ըլլալ Պերոզապատ եւ դերել «զհայրն համդերձ եղբարքք»: Երբ իրազգած կ՚ըլլայ Ջուանշիր, «արդարեւ սեեմ, եթէ որպէս արջ որդեկորոյս...[4] գտանէր ճեպով ի հայրենի վիճակին իւր սահմանս յայն կոյս գետոյն Կուրայ ի Կապիճանն գաւառ»: Կը կոտորէ թշնամին: Վերադարձին կ՚ընէ «առ սահմանօքն Վրաց... եւ անդ մեծապատիւ այրն Ատրներսեհ իշխան աշխարհին, որ երբեակ զաւհերիցութիւն ի Համմայեցւոց Թագաւորութենէն ունէր, գայր առ նա եւ իւրովք պատէր զմէրս նորա»: Ատրներսեհի եւ Ջուանշիրի մէջ նիզակակցութիւն

---

[3] Անահիտ, 1939, Թ. 10—12, էջ 4—9:
[4] Հմմտ. Բ. Թագ. Ժէ. 8:

կը կնքուի։ Վրական օգնական զօրքով կը հասնի Ուտի եւ կը վանէ անկէ Պարսիկները։ Շակաշէնի մէջ երկու ընդհարում կ'ունենայ Պարսից հետ, միշտ յաղթական։ Ջուանշիր կին կ'առնէ Սիւնեաց իշխանին դուստրը յԱրուեծան տոհմէ։ Պարսից հետ խաղաղութիւն կը կնքէ։ Պարսիկը իր քով կը հրաւիրէ Ջուանշիրի հայրը եւ կ'արգելափակէ Պերոզկաւատ քաղաքը։ Աղուանից իշխանը կը շարժէ իր հեծելազօրքը, կը մտնէ Պերոզկաւատ, կը կոտորէ պարսիկները, կ'ազատէ իր հայրը։

«Ի քսաներորդ ամի Յազկերտի համօրէն ի բաց բառնայր ի միջոյ՝ տէրութիւնն Պարսից. եւ այն ԼԱ ամ էր տիեզերակալութեան Հագարացւոց եւ տեառն իմոյ Ջուանշիրի ԺԷ ամ» (Բ. 19)։

Ն. Ադոնց, որ այս գլուխը մանր քննութեան առած է, կը գրէ. «Կաղանկատուացին յիշում է Վրաց իշխան Ատրներսեհին, որ այլուստ յայտնի չէ եւ կը փորձենք ստորեւ որոշել նրա ինքնութիւնը։ Ամբողջ ԺԹ. գլխի մէջ միակ անվիճելի կէտն է Սասանեանների անկման տարին» (անդ, էջ 21բ)։ Այսինքն «Ի քսաներորդի ամի Յազկերտի (632—652), համաձայն Սեբէոսի, էջ 137, եւ «ԼԱ ամ» Հագարացւոց, այն է 621, օգ. 24—652 օգ. 11»։ Ջուանշիրի «ԺԷ ամը» պէտք է հաշուել 636/7էն։

Ադոնց իր խոստումը ի մասին Ատրներ-

*անձի չկրցաւ կատարել «առաքել», որովհետեւ լոյս չառաւ իր վերջին յօդուածը:*

*Ինձ կը թուի թէ վիպագիրը այս տեղ ժամանակագրական փոխառութիւն մը կնքած է: Յովհաննէս կաթողիկոս Դրասխանակերտցի կը գրէ, թէ երբ վախճանեցաւ Աշոտ Ա. թագաւոր (890), «գայր առ նա (առ թագաժառանգն Սմբատ) այր եւ մեծ իշխանն Վրաց Ատրներսեհ ի ցաւակցաբար վշտակցութիւն» Ատրներսեհ «գնայ հանդիպի Սմբատայ. եւ թագաւորական զգեստուց զգեցմամբ զսեւաթոյր զգեստու նորա զգեցումն ի բաց թօթափէ» (էջ 144/5. Դուկ.): Ատրներսեհ վերադարձին կ՚արգելափակուի Արաւէն, կ՚ազատէ Սմբատ: Այսպէս նաեւ Պարսից զօրագլուխը կը հրաւիրէ իր քով Ջուանշիրի հայրը եւ կ՚արգելափակէ. կ՚ազատէ Ջուանշիր իր հայրը: Յունաց կոստանդին կայսր «եկն յաշխարհն Պարսից». կանչեց իր մօտ Ջուանշիրը. «Հրամայէր փոխել ի նմանէ զտխրական զգեստն, զոր սակս մահուան ամուսնոյն իւրոյ էր զգեցեալ. եւ ագուցին նմա զարքունական զգեստն» (Բ. 22):*

*Բ. 19 գլուխի վերջին մասը կը պատկանի 20երորդ գլուխին:*

*Ջուանշիր կ՚ենթարկուի արար իշխանութեան (Բ. 19): Ապա «ընդ զօրավարին Հայոց գնէր ուխտ եւ քաջալերէր զատնայ ի հնազանդութիւն կայսերն Հռոմոց»: Ջուան-*

չէր Հպատակութեան Թուղթ մը կը գրէ Կոստանդին Կայսեր (Բ. 20)։ Կայսրը «իսկոյն հրամայէր գրել երդմունս յանել համամիտ խաղաղութիւն»։ Նոյնհետայն «պարգեւս մեծամեծս շնորհէր՝ գահոյս արծաթի քանդակակերպ թիկամբք ոսկէզօծ, հանդերձս ոսկէմանեայս, եւ գիւղս անձինն մարզպանայես պատանիւք սուսերն։ Եւ տանէ գնա պատո[ն]պատրիկ, եւ տայր տանել պատրկութեան եւ հիպատութեան եւ ապահիպա(ր)քոսութեան եւ ստրատելատութիւն, Եղիասութիւն, 1200 արանց պատիւ. զի որում ինքն կամեսցի՝ շնորհեսցէ եւ նա գայնս»։ Նաեւ Ս. Խաչի մասունք մը, «զոր միշտ ի ծոց իւր կրէր, հանեալ յիւրմէ՝ տայրէր նմա» (Բ. 20)։ Կայսերական հրովարտակին մէջ Ջուանշիր կը կոչուի «Գարդմանայ տէր, Աղուանից իշխան, ապուհիպատ եւ պատո[ն]պատրիկ եւ Արեւելից կուսակալ» (Բ. 21)։

Ն. Ադոնց կը գրէ. «Կայսեր հրովարտակն իր ձեւով եւ բովանդակութեամբ վաւերական չէ կարող համարուել եւ ոչ Ջուանշիրի թուղթը...։ Անտարակուսական են մանաւանդ կայսերական ընծաները... բայց ինչ որ աւելի է քան առասպել, այդ 1200 մարդու յատկացնելի զանազան պատիւներն են...։ Պէտք է կարծել, որ պատմագիրը լաւ չէ հասկացել այն աղբիւրը, որից օգտուել է, քաղելով բիւզանդական պատուանունները

*տոհմանական ստոյգ կարգով...: Մեր պատմագիրը յիշում է այս տոհմանները վե-րից վար կարգով».*

*պատրիկ, «պատրկութիւն»*
*հիւպատ, «հիւպատութիւն», «ապուհի-պատ»*
*ապուհպարքոս, «ապահիպարքոսութիւն»*
*ստրատելատ, «ստրատելատութիւն»:*

*Պրատոպատրիկ («պրոտոնպատրիկ») տիտղոսը, որ շնորհուած է Ջուանշէրին, միայն մէկ անգամ յիշուած է պատմութեան մէջ, շնորհուած Վարազ–Բակուր հաւանօրէն ա-ղուան իշխանին:*

*Իսկ «էլխաութիւն» է* եղուստրութիւն (illustris, *եղուստր*) (*Անահիտ, էջ* 22): *Եղուստր կը յիշուի անգամ մը Այամանի* 636 *տարուայ արձանագրութեան մէջ (Կոստանեանց, Վիմական տարեգիր, էջ* 1): *Աճառեան չէ ստուգաբանած ծագումը. Ն. Ադոնցի կը պարտինք ստուգաբանութիւնը* ἰλλούστριος (*յուն.* illustris). ի *գրի* ե*ի վե-րածուիլը արդիւնքն է հայ հնչունաբանու-թեան. ինչպէս այլուր ցոյց պիտի տամ* լ *եւ* ղ *գրերու առջեւ* ի *կը վերածուի* ե*ի: Այս-պէս նաեւ* եղխաութիւն, *զոր ունի Ծաննա-գարեանի հրատարակութիւնը* (Ա. 300) *պէտք է կարդալ* եղուստր*ութիւն (իլլուստրու-թիւն):*

*Ջուանշէր ենթարկուելով Կայսեր իշխա-նութեան «ի սահմանացն Վրաց մինչեւ ի*

*Դրունս Հոնաց մխահեծան ձիաւորութեամբ եղեւ տէր մինչեւ ցգետն Երասխ»* (Բ. 21)։

*«Իսկ յիններ եւ ի տասներորդի ամի թագաւորութեան իւրոյ Կոստանդիանոս թոռն Հերակլեայ բազմամբոխ զօրօք... եկն յաշխարհն Պարսից կործանել ի նոցանէ զկողմանս աշխարհին»։ Կանչեց Ջուանշիրը իր մօտ... յաշխարհն Մարաց, ի Գունդր գեօղ»* (Բ. 22)։

*Թէեւ կայսրը իր ծոցին մէջ կրած Ս. Խաչը ուղարկած էր Ջուանշիրին, բայց եւ այնպէս նաեւ այս անգամ «խնդրէր ի կայսերէ զմասն յաւիտենից թագաւորին Նշանին». զոր եւ կ'ընդունի։ Այս խաչի մասունքը կը զետեղէ Գարդմանայ բերդին մէջ, ուր նոր եկեղեցի մը կը շինէ։*

*Գարնան կ'ուղեւորի Վաղարշապատ, միւսանգամ հանդիպելու Կայսեր։ Կայսրը մեծ շուքով կը մեծարէ Աղուանից իշխանը, որուն թանկագին նուէրներէ զատ «զքաջ հաւուն իւրոյ Հերակլի եւ զՆիկիտայ համայն զարքունական զօտին էած ընդ մէջ նորա*[5] *եւ զիւրն պատմուճան եւ զրօշս երկուս. եւ զորդիս նորա անէր պատրկունս՝ գաղղյականս։ Եւ որ միանգամ առաջին թագաւորացն Աղուանից գիւղաստանեայք եւ սահ-*

5 *«Հերակլի ընտանիքում ծանօթ է մի Նիկիտաս, որ Հերակլի հօրեղբօր Գրիգորի որդին էր։ Նիկիտաս կնոջ անուն չէ եւ Կոստանդնի հայրն չէր կարող այդպէս կոչուել եւ ոչ էլ այդպիսի գօտի ունենալ, որ կարելի լինէր պարգեւել Աղուանից իշխանի մէջքը». Ն. Ադոնց, Անահիտ, 25ր։*

մանք լեալ էին՝ զամենայն ի նա ընձեռեաց յազգաց ազգս» (Բ. 22)։

Կոստանդին Կայսր իր 19րդ (660) տարւոյն ոչ Պարսկաստան եւ ոչ ալ Հայաստան գացած է։ Ան Կարին եկած էր 653 տարւոյն (Սեբ. 139)։ Այս միջոցին Թէոդորոս Ռշտունի ենթարկուած էր Արաբացիներուն. «ընդ նմա էին միաբան Վրացին եւ Աղուանն եւ Սիւնին. որք ըստ հրամանի նորա գնացին յիւրաքանչիւր աշխարհս եւ ամրացան ի նմին» (Սեբ. 139)։

Կարնէն անցաւ Դուին. Մուշեղ Մամիկոնեանը նշանակեց «իշխան Հայոց հեծելոցն եւ արձակեաց ի կողմն Սեպհական գնդին երեք հազարօք. նոյնպէս արձակեաց ի զօրաց իւրոց ի Վիրս եւ յԱղուանս եւ ի Սիւնիս՝ քակել զնոսա ի միաբանութենէ... բայց Աղուանն եւ Սիւնին եւ Գունդն Սեպհական ոչ հնազանդեցան» (Սեբ. 140)։ Ուստի 652—653ին Աղուանները Արաբական ազդեցութեան տակ էին, Թէոդորոս Ռշտունիի հրամանատարութեան տակ. Սեբէոս կը գրէ թէ Մուաւիա «իշխանութիւն ետ նմա (Թէոդորոսի) զՀայս եւ զՎիրս եւ զԱղուանս եւ զՍիւնիս մինչեւ ցԿապկոհ եւ ցպարհակն Ճորայ» (էջ 143). այսպէս շարունակուեցաւ մինչեւ 659, երբ Համազասպ Մամիկոնեան փոխեց դրօշը եւ անցաւ Բիւզանդացիներու կողմը. իրեն հետ էին Սիւնիք եւ Աղուանք (Սեբ. 152)։ Իր մահէն ետքը (661) Գրիգոր

Մամիկոնեանի օրով դարձեալ արաբական իշխանութեան ենթարկուեցան մինչեւ 682:

Ուստի «Կոստանդին չէր կարող նշանակել Ջուանշիրին իշխան 'ի սահմանաց Վրաց մինչեւ ի դրունս Հոնաց միահեծան ճոխութեամբ, ...: Սրանից հետեւում է, որ մեր պատմագիրը ի նկատի ունի 659ի քաղաքական փոփոխութիւնը Համազասպի օրով ..: Եւ այս կը լինի միակ պատմական կոբիզը, որի շուրջ դիզել է պատմագրի երեւակայութիւնը այնքան անհեթեթ դրուցներ խառնաշփոթ յիշողութեամբ» (Անահիտ, 25—26):

Այս 659էն երկու տարի ետքը Խազիրք կ'արշաւեն Ագուանից աշխարհը: Ջուանշիր յետս կը մղէ թշնամին (Բ. 23): Անկէ դարձեալ երկու տարի յետոյ կ'աւարտի Գարդմանաբերդի եկեղեցւոյն շինութիւնը. եւ արաց ամսի 11ին «զԽաչն լուսոյ տարեալ հանգուցանէ (Ջուանշիր) ի տանն, զոր շինեաց» (Բ. 24): Այն տեղ ծնրադիր կ'աղօթէ իշխանը: «Աղօթք Ջուանշիրի» ներկայացուած է Բ. 25: Այս աղօթքին մէջ կը յիշէ «զուստերս եւ զդստերս իմ», իր զուգակիցն Խոսրովանուշ[6], ալեօք ծաղկեալ հայրն Վարազ-Գրիգոր, մայրն Գորիդուխտ, եղբարքն Վարազ-Պերոժ եւ Ցեղուտ-Խոսրով»: Այս «նո-

---

[6] «Այց արասցես ինձ եւ զուգակցի իմոյ Խոսրովանուշի» ցոյց կու տայ, թէ Ջուանշիրի կինը կ'ապրէր տակաւին, թէ եւ Բ. 22 վախճանեալ ներկայացուած էր:

բահրաշ տօնին» աւարտելէն ետքը կ՚երթայ «ի ձմեռնահանգիստ քաղաքն Պերոզքաւատ»:

Առանց տարակուսի զուգադիպած էր Ս. Խաչին նորահրաշ տօնը սեպտեմբեր 14ի Ս. Խաչի տօնին. զայս կը հաստատէ յետ տօնին երթն ի ձմերոց: Եւ որովհետեւ արաց 11 = Սեպտեմբեր 14 կը զուգադիպի միայն 932—935 տարիներուն, պիտի հետեւցնենք, որ Զուանշիրի Գործոց վիպագիրը յերիւրած է պատմութիւնս այս տարիներու մէջ: Տեսանք վերագոյն, թէ վիպագիրս ծանօթ էր Յովհ. Կաթողիկոսի 930ին գրի առնուած Պատմութեան:

Յաջորդ տարին, ձմեռը, Հոները կ՚ասպատակեն յայսկոյս Կուր գետոյ եւ Երասխի եզերքը: Հոնաց թագաւորը իր եղբայրն կ՚ուղարկէ Աղուանից իշխանին եւ տէրութիւն կը խնդրէ: Զուանշիր աներկիւղ, առած հետը 17 հոգի կը ներկայանայ Հոնաց ճամբարը. «անդ առնոյր զդուստր թագաւորին իւր ի կնութիւն» եւ կը վերադառնայ բերելով հետը 120.000 ձի եւ արջառ եւ 1200 հոգի, որոնք գերի տարուած էին Հոներէն: «Եւ այս եղեւ երկու ամօք պակաս յերից տասներեկաց», այն է Զուանշիրի սպարապետութեան 28երորդ տարւոյն (636—28 = 664. Բ. 26):

Զուանշիր նոյն տարւոյն իր աղօթքին մէջ յիշած էր իր կինը Խոսրովանոյշ[6]: Այն որ այլազգեն պարսիկ սպարապետին զդուստրը մերժած էր առնել, այժմ վայրագ Հոնի

դուստրը կին կ'առնէ։ Արդարեւ զարմանալի։

Ջուանշիր նկատելով, թէ Բիւզանդացւոց ոյժը տկարացած է եւ Արաբացւոցը զօրացած, կը խորհի մերձենալ Արաբացւոց։ Ժամանակագրութեան համար ունինք ակնարկութիւններ. «Յայնժամ առեալ Կայսերն Հոռոմոց զընկլիքորսն զօրացն՝ աճապարէր ընդ ծով եւ ընդ ցամաք անցանել ի սահմանս Հեռաւորս կգգեայն արեւմտից։ Այն վեցերորդ ամ էր հարաւայնոյն փոխելոյ զթագաւորութիւն իւրեանց յաշխարհն Ասորեստանի. զի թողեալ զերկիր ազախնոյն՝ արկանէին զաթոռ տէրութեանն ի Դամասկոս» (Բ. 27)։ «Ակնարկը վերաբերում է Կոստանդ կայսրին, որ արդարեւ իր աթոռը տեղափոխեց Սիկիլիա. բայց այս եղաւ 662 թուին»։ Իսկ Մուաւիա Դամասկոս մայրաքաղաք հռչակեց 662ին. ուստի վեցերորդ տարին կ'ըլլայ 667. եթէ նկատի չառնենք 657ի Ալիի եւ Մուաւիայի ճակատամարտը. երբ վերջինս յաղթական եղաւ եւ ճոց Ասորեստան։ Այս 662/3 տարւոյն կը համապատասխանէ Ջուանշիրի իշխանութեան 28երորդ տարին (662/3)։ Դամասկոսէն վերադարձին կը հանդիպի Արուճի մէջ Գրիգոր Մամիկոնեանի եւ Անաստաս կաթողիկոսի (Բ. 27. Ադոնց, Անահիտ, 28—29)։

Թէ ինչ աղբիւրէ քաղած է վիպագիրս իր տեղեկութիւնները Կոստանդին Կայսեր ի Սի-

կիլիա գաղթին եւ սպանութեան մասին, չգիտեմ:

Ջուանշիր երկրորդ անգամ կ'երթայ Ամիրապետին. ժամանակը կը նշանակուի «յերեսներորդ ամի Թագաւորութեան Կոստանդնի», երբ սպանուած է († 668). եւ Ջուանշիրի իշխանութեան ԼԳ տարին, որ է 668/9 (Բ. 28):

Ընդ մէջ Բ. 28 եւ 34 գլուխներու զետեղուած են տեսանող Իսրայէլի ձեռքով յայտնուած նշխարներու պատմութիւնն եւ նմանիք, որոնք տեղի ունեցած են Ջուանշիրի օրով: Ջուանշիրի պատմութիւնը կ'աւարտի Բ. 34 գլխուն մէջ. ուր կը նկարագրուին անոր եղերական մահուան պարագաները:

Իշխանը ամարանոցէն կը վերադառնայ Պարտաւ: Սեպտեմբեր 14ին կը տօնախմբուի Ս. Խաչի Նաւակատիքը. որուն ներկայ էր Ջուանշիր: «Եւ մինչդեռ հանգուցեալ էր մեծաւ ուրախութեամբ», «այր ոմն տարօրէն եւ վատանշան... մահ խորհեցաւ ի վերայ նորա»: Սա, Ենիրա անուն, ատած իր շուրջը համախոհներ, կը կազմակերպէ դաւադրութիւն մը Իշխանին դէմ: Գիշեր ժամանակ կը մտնէ արքունիք. «Եւ հրապուրեալ զնա (Իշխանը) ի պատճառս բղջախոհութեան... հաւանեցուցանէր զնա երանել ի գրաստնս խոհերականս: Եւ մինչ ի տաճարէ անուի եղանէր իշխանն ընդ ճանապարհն պարախոյայր ծածկոցան, ի գիշերի յատա-

չըս պահուն, անխահան եւ թուր միայն ունե-լով»: «Աւեալ չարաբարոյ Եմիրայ դաւա-ճանոյթն Վարազայ զաւակըն պողպա-տեկ... յանկարծակի յետուստ կողմանէ հարկանէր գլխաւոն այր առանձին վիրաւո-րեալ»: Իշխանը կիսամահ տուն կը տարուի. քանի մ'օրէն կը վախճանի: Դաւաճանը կը հետապնդուի. բայց կարելի չըլլար ձեռք բե-րել: Կ'աւարեն տունը, այն կը հրդեհեն: Մահը ընդհանուր սուգ կը պատճառէ: Դա-թակ ճարտասան կը հիւսէ անոր ողբը:

Սպանութեան պարագաները շատ նման են Հայոց Աշոտ Ա. Թագաւորի սպանու-թեան, նոյն իսկ բառեր եւ ասութիւններ փոխ առնուած Ագաթանգեղոսի նկարագրութենէն: Դաւաճանին անունը «Եմիրայ» կը թուի ինծ, թէ Աշակ անունին (Ա. 14 «Եմակ» գրուած) աղճատուած ձեւն է:

Ջուանշիրի սպանութեան տարին չէ յի-շուած վիպագրէն:

Ջուանշիրի Գործը, ինչպէս տեսանք, պատմական վէպ մըն է. որուն պատմական գետինը 636—680 շրջանն է: Վիպագիրը իր պատմական պատկերները հանած է հայ պատմագիրներու մատակարարած հիւթե-րով եւ հայ մատենագրութեան ընծայած բա-ներով:

Ան կարդացած է Ե.—Ժ. դարու հայ հե-ղինակութիւնները: Վէպին շրջագիծը կազ-մելու համար նիւթ հայթայթած է «Դա-

թակի Ողբը», որ ինչպէս յետոյ պիտի տեսնենք, յօրինուած է Դաւիթ Հիւպատէ ի մահուն Աշոտ պատրիկի († 668):

Վիպագիրը եկեղեցական դասէ կ՚երեւայ. ան հայրենասէր այրուան (գարդմանեցի) է. կը պատկանի Ժ. դարու կէսին. որ գարթնումի դարն էր Աղուանից համար. հաւանօրէն Սահակ Սեւադայի դպրոցէն: Սահակս, որ եւ Սեւադայ կոչուեցաւ, այր քաջ էր եւ յաջող. որ «առ հասարակ տիրեաց Գարդմանայ եւ Բաղախիանեաց գաւառաց, այլ եւ ասպատակեաց Զարդեայն բամանդակ. եղեւ իշխան եւ խնդրող իւր դրագիտութեան. եւ դպրապետ ի տան իւրում կարգեաց» (Գ. 23): Այս դպրապետներէն մին եղած ըլլալու է Գարդմանաբերդի եկեղեցւոյն երէցը, հաւանական վիպագիրը վիպասանութեանս եւ անոր կցորդ մասերու, որոնց վրայ պիտի խօսինք յաջորդ գլխուն մէջ:

Վէպիս հերոս Ջուանշէր, 636—680 տարիներու պատմութեան մէջ չի յիշատակուիր ոչ հայ, ոչ յոյն եւ ոչ արաբ աղբիւրներու քով: Ջուանշէրի հայր կը ներկայացուի Վարազ-Գրիգոր Ա., որ ինչպէս յիշեցինք պատմական անձնաւորութիւն էր: Մեզի ծանօթ է նաեւ Վարազ-Գրիգոր (Բ.) պատրիկ, ասպարապետ Աղուանից, որ 705ին, Միքայէլ կաթողիկոսի ընտրութեան առթիւ գրուած Ձեռնարկին տակ ստորագրած է: Այս ձեռնարկը

չէ առնուած Աղուանից Պատմութեան մէջ, բայց պահուած է Թղթոց գրքին մէջ եւ հրատարակուած Սամուէլ Անեցւոյ Ժամանակագրութեան Յաւելուածին մէջ, էջ 286։ Հաւանօրէն այս Վարազ-Գրիգոր Բ.ի որդին էր այն Ջուանշիր իշխանը, որ սպաննուեցաւ 725ին. Աղուանից Պատմութեան մէջ Գ. 17 կը կարդանք յամի ճՀԴ. «Ի սոյն ժամանակս զՋուանշիր իշխան Աղուանից սպանին Ամեթեղուքն»։ Հաւանօրէն այս պատմական անձնաւորութիւնն է վէպին հերոսը։

## 12. ՏԷՐ ԻՍՐԱՅԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԵԾԿՈՒԵՆԻՑ (Ա. 27—30, Բ. 29—31. 33—45)

Տէր Իսրայէլ Մեծկուենից եպիսկոպոս կը յիշուի 707ին, Աղուանից Միքայէլ կաթողիկոսի գումարած Ժողովին ներկայ եպիսկոպոսներու թիւին մէջ (Սամ. Անեցի, էջ 286)։ Ան քահանայ ձեռնադրուած էր Մեծկուենից Դաւիթ եպիսկոպոսէն (Բ. 33) եւ անոր մահէն ետքը յաջորդ ընտրուած (Բ. 37) Վարազ-Տրդատ իշխանին օրով, հաւանօրէն իբր 680ին Եղիազար կաթողիկոսի ձեռնադրութեամբ։

Կ'ըսուի թէ Ներսէս-Բակուր Աղուանից կաթողիկոսը երբ իբրեւ քաղկեդոնիկ երեւան եկաւ, հեռացուց Իսրայէլը աթոռէն (Գ. 3)։ Եթէ առեղծուած մը չէ, պիտի ենթադրենք, թէ Իսրայէլ Ներսէսի

մահէն ետքը միւսանգամ տիրացած է աթոռին: Ան վախճանած է 707էն ետքը:

Իսրայէլի նախորդ կեանքի մասին «զճշմարտախօս գրուագս բանից սակաւ ինչ նուազ գալ — կը գրէ անանուն կենսագիրը — եւ միայնանայոյն Իսրայէլի սկիզբն անյայտ իսկ էր»: Բայց գիտէ ան, թէ Իսրայէլ Գլխոյ վանքին վանական էր, նոյն իսկ «արան»: Օր մը առած հետը «արբանեակ մը» կը թափառին լեռ. սարի մը բաղանդակ «ի լերինն ննջէր նա ի յերկրի ի վերայ ծնգաց իւրոց» (Բ. 29): Այս տեղ մէկ օր «ի շրջագայում պտղոյ գիշերայն» կը տեսնէ հրաշալի տեսիլ մը, յուսափայլ, մթնոլորտ անուշահոտ. ձայն մը կը հաղորդէ իրեն «զմեծ խորհուրդ յայտնութեանն անցեալ ժամանակաց, գալոց եւ ներկայ քաղաքավարութեան, թէ ի՞ւր արդեօք կամ զի՞նչ ընկալան, որպիսի՞ արամբք, ո՞ ուստեք էին, որք արեամբ պատերազմեալ վկայ անուն ժառանգեցին, կամ ո՞ւր ուրեք գտանելածոյին ծածկեալն զգանձ, եւ թէ քեզ (խմագիր՝ նմա) զինչ պարտ իցէ առնել: Այս ամենայն ասացեալ առ նա միւսանգամ եւ երկիցս»: Իսրայէլ խելամուտ կ՚ըլլայ բառածներուն:

Յաջորդ օրը կ՚իջնայ լեռնէն զեկուցանելու տեսածները ու լսածները Մեծկողմանց Գութի եպիսկոպոսին: Իր կարգին Գութ նոյները կը հաղորդէ Աղուանից կաթողի-

կողմն, որ կը հրամայէ «ժողով մեծ լինել»: Ժողովին մէջ էր «արի այրն» Յովէլ, Մեծիրանքի եպիսկոպոսը, որ «լի էր հզօր գիտութեամբ եւ ուղղակի աստուածաշունչ Գրոց»: Սա բոլոր բաւածները «դատարկաբանութիւն եւ ցնորական առասպել» կը համարի: Բայց Կաթողիկոսը ուշադիր կ'ընէ, որ «գանձք երկնայինք ծածկեալք ի վերջին ժամանակս առաքեամբ ի ձեռն մարդկան ի տեղիս տեղիս երեւեալ են... աստէն իսկ յԵզրանիկ աշխարհիս ի բազում տեղիս երեւեալ են նշխարք սրբոց. եւ չէ ինչ այս զարմանք, որ այժմ երեւի»: Կը յանձնարարէ Կաթողիկոսը, որ Դաւիթ եւ Յովէլ եպիսկոպոսներու հսկողութեան տակ պեղումներ կատարուին:

Պեղումները յաջող արդիւնք կու տան:

Թէպէտ գիտնականն Յովէլ խոստովանեցաւ, թէ սխալ էր իր դատողութիւնն, սակայն եւ այնպէս մենք ուղիղ կը գտնենք իր դատաստանը, թէ «դատարկաբանութիւն եւ ցնորական առասպել» են ոչ միայն բաւածներն, այլ եւ գրուածները:

Ն. Ադոնց կը գրէ. «Այս պատմութիւնները յերիւրուած են ad hoc մեկնելու Գիսի եւ Զգոնի սրբութիւններու ծագումը եւ այդ միջոցով հաստատել նրանց յայտնութեան փաստը: Բ. գրքի 29—33 գլուխները կապուած են սերտօրէն Ա. գրքի 27—30 գլուխներին, գրուած են մի եւ նոյն ոգով եւ շնչով

*եւ պատկանում են մի եւ նոյն գրչին» (Անահիտ, Ժ. 4, էջ 76)։ Այս իմաստով ալ պէտք է հասկնալ Իսրայէլի ընդունած տեսիլքը. ան խելամուտ եղաւ ոչ միայն սուրբ մասունքներու ծածկուած տեղերուն, այլ եւ թէ որո՞նց ձեռքով եւ ի՞նչ պայմաններու մէջ ծածկուած էին։*

### 13. ՎԱՐԱԶ-ՏՐԴԱՏ ՆԱԽԱԳԱՀ ԻՇԽԱՆ

*Ջիւանշիրի սպանութենէն ետքը իշխանապետ կ՚ընտրուի Վարազ-Տրդատ, Ջիւանշիրի Վարազ-Պերոժ եղբօր որդին, «որ մեծարեալ էր կայսերական պատուով՝ գահերէցութեան պատրկութեան (այլ. գաւեհի պատրկութեան) ստացեալ պատիւ։ Սա իրեն նստոց կ՚ընտրէ Պարտաւ մայրաքաղաքը։*

*Հոնաց թագաւորն Աղփիղթուէր (Իլթուէր, Բ. 43), որուն դուստրը կին առած էր Ջիւանշիր, «իբրեւ թէ վրէժխնդիր արեանն Ջիւանշիրի» կ՚արշաւէ Աղուանից աշխարհ. կ՚ասպատակէ Կապաղակայ գաւառը եւ Ուտի գաւառը. կը բանակի «ի կողմանս դաշտին առ ամաձնոքն Լփնայ»։*

*Այս արշաւանքը հաւանօրէն նոյն է Խազրաց արշաւանքին հետ, որ տեղի ունեցաւ 683—685ին, եւ ասպատակեցին Աղուանից, Վրաց եւ Հայոց աշխարհները։ Այս արշաւանքի մասին ունեցանք արդէն խօսելու վերագոյն (էջ 228—232)։ Անանուն ժամանակագիրն եւ Ղեւոնդ կը վկայէին, թէ Խա-*

գիրք «Հայոց, Վրաց եւ Աղուանից» տիրեցին եւ «սպանին ի պատերազմի զիշխանս Հայոց, Վրաց եւ Աղուանից»։ Ղեւոնդ կ'աւելցնէր, թէ «եւ ինքեանք (Խազիրք) ապատակ սփռեալ ի վերայ աշխարհիս առին զբազում գաւառս եւ գաւանս. եւ առեալ զաւար եւ զգերութիւն գնացին յաշխարհն իւրեանց» (Ղեւոնդ, 15—16)։

Աղուան պատմագիրը կը լսէ Աղուանից իշխանի սպանութեան մասին. ընդ հակառակն կը գրէ, թէ Վարազ-Տրդատ իշխան, անզօր զիմադրելու Հոնաց, Եղիազար կաթողիկոսը պատգամաւոր կ'ուղարկէ Հոնաց Թագաւորի ճամբար «զուցանելով ի ձեռն նորա գիր միաբան հաւատարմութեան եւ զէրն»։ Կը յաջողի կաթողիկոսը «նուաճել զմիտս նորա ի հաշտութիւն եւ ի սէր անքակտելի»։ Հոները կը քաշուին Աղուանից սահմաններէն (Բ. 36)։ Այնուհետեւ Վարազ-Տրդատ «օրըստօրէ յառաջանայր ի պետութեան իւրում եւ ընդունէր զգերագոյն զահն ի հզօր եւ յարքայական իշխանէն Տաճկաց՝ սահմանակալ լինել կողմանն Աղուանից եւ Ուտէացւոց գաւառին» (Բ. 37)։ Բայց յետոյ սակայն կ'ըսուի, թէ 681/82 տարւոյն «հարկք, որք եղան ի վերայ մեր ի գժնդակ ազգէն Տաճկաստանեայց՝ յոյժ վանդեալ տարակուսէ զմեզ» (Բ. 39)։

Վիպագրին են այս տեղեկութիւնները։ Ծանօթ է պատմութենէն, թէ Հայերը, Վրա-

ցիներն եւ Աղուանք 682ին, օգտուելով Արաբացւոց ներքին գահակալական կռիւներէն, թօթափեցին արաբական լուծը. Ղեւոնդ (էջ 15) կը գրէ. «Դադարեցին ի ծառայութենէ նոցա (Արաբացւոց) Հայք. Վիրք. Աղուանք, ծառայեալ նոցա ամս երեսուն». այսինքն 652—681 :

Վարազ-Տրդատ իր 680ին կ'ուղարկէ Իսրայէլ եպիսկոպոսը Հայաստան «ի գործ ինչ խորհրդական եւ ի սէր»։ Այս միջոցին «երեւեալ էր իշխանն եւ մեծ գործակալն Հայոց <Գրիգոր Մամիկոնեան> ի Թորդանայ ի Դարանաղեաց գաւառէն զպատուական նշխարս սրբոյն Գրիգորի բոլորովին ամենայն ոսկերօքն հանդերձ... ի Վաղարշապատ քաղաք եւ հանգուցեալ ի նորաշէն յարկս եկեղեցւոյն, զոր մեծին Ներսէսի շինեալ էր յանուն սրբոյն Գրիգորի»։ Տէր Իսրայէլ կը յաջողի միջնորդութեամբ Հեղինէ դշխոյին (Գրիգոր Մամիկոնեանի տիկնոջ), «որ յԱղուանից նահանգէն էր», առնել Ս. Գրիգորի ծնօտը, զոր կը տանի եւ կը հանգուցանէ «յիւրում մենաստանին ի Գիշվանս» (Բ. 38)։ Հայ պատմագիրներուն անծանօթ է Ս. Գրիգորի նշխարաց փոխադրութիւնը Թորդանէն Վաղարշապատ եւ զետեղումը Զուարթնոց եկեղեցւոյ մէջ։

Հեղինակը աղբիւր ունեցած է առ այս Յովհ. Դրասխանակերտցի կաթողիկոսին Պատմութիւնը, որ կը կարդանք. Ներսէս

կալ. Ճինոյ «չինէ տաճար սրբութեան... բառ անուանակոչութեան սրբոյն Գրիգորի... ի ներքոյ չորից սեանցն... դնէ գնշխարս ակերաց սրբոյն Գրիգորի. իսկ... զպատուական գլուխն դնէ ի գանձարանս աստուածութեանն...: Բայց Հայրապետն ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ...» (էջ 83—84, Դուկ.): Եկեղեցին, զոր «նարաչէն» կը կոչէ վիպագիրը, ունէր իր երեանամեայ տարիք մը: Ներսէսի «մեծ» յորջորջումը Դրասխանակերտցին է:

Աշտուանից իշխաններն եւ Եղիազար կաթողիկոս խորհուրդի կը նստին, ելք մը գտնելու երկրին քաղաքական դժուարին կացութեան: Քննելի խնդիրներն են. «Ահա հարկք, որ եղան ի վերայ մեր ի դժնդակ ազգէն Տաճկաստանեայց, յոյժ վտանգեալ տարակուսէ զմեզ: Եւ երկրորդ անգամ՝ անհնարին աղէտք այն են մեզ, ամի ամի ապատակել յաշխարհս մեր զօրացն Հոնաց: Եւ յերկաքանչիւր կողմանցն բռնութենէ թշնամեաց աւերեալ պակասեցաւ երկիրս»:

Այս կը պատահի «ի ԿԲ. ամի Հարաւայնոյ իշխանութեան գոռոզին Մահմատայ»: Կ'ակնարկէ Հիճրէի 62 թուականը, որ կը համապատասխանէ փրկչական 681/2 տարւոյն: Այս այն տարին է, երբ Հայք, Վիրք եւ Աղուանք թօթափեցին արաբական լուծը:

Թէեւ բառ Բ. 36 գլխուն հոնական (Խազրաց) վտանգը բարձուած էր, բայց դարձեալ այդ վտանգի մասին կը խօսի: Յամենայն

դէպի Հոն Խազրաց 683—685 տարիներու ապստամբութիւնները կ'ակնարկուին. այս դէպքին՝ համաձայնցնելու համար ուղիղ ժամանակագրութեան հետ՝ ԿԲ. տարին պէտք է խմանալ յուլեան տարիներ, ուստի 621/2 + 62 = 683/84: Յաջորդ տարւոյն տեղի կ'ունենայ Հայոց, Վրաց եւ Աղուանից միացեալ ուժով մղուած անյաջող պատերազմը Խազրաց դէմ, երբ կը կոտորուին երեք ազգերու սպարապետները (685. օգոստոս). Թէպէտ վիպագիրս կը լռէ այս պատերազմի հետեւանքի մասին:

### 14. ՆՈՐԱՅՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ՀՈՆԱՑ ԱՇԽԱՐՀ (Բ. 39—45)

Պարտաւի խորհրդամողովը 681/2ին կ'որոշէ, որ Հոնաց խաքանին պատգամաւորութիւն մը ուղարկուի, կնքելու համար Հոնաց եւ Աղուանից մէջ «հաշտութիւն եւ անքակտելի սէր»: Պատգամաւորութեան գլուխ կը կարգուի Մեծկողմանց Իսրայէլ եպիսկոպոս: Պատգամաւորները ճանապարհ կ'ելլեն 681/2 տարւոյ մեհեկի ամսոյն 18ին, այն է 681, դեկտ. 24: 12 օրէն կը հասնին «ի քաղաքն Լփնայ», յունուար 5ին եւ փետրուար 10ին «ի հոյակապ քաղաքն Վարաչան, ի մուտս բատտանորդացն»: Մեծ իշխանն Հոնաց, մեծամեծք եւ քաղաքացիք կ'ընդունին զանոնք մեծ պատւով (Բ. 39):

Իսրայէլ կը տեսնէ այն տեղ մարդկան հեթանոսական բարքերն ու կենցաղը. սնո-

ափն կը տիրէ. բայց կը դարձացնէ զինքը Թաքանին եւ քաղաքացիներու ազնիւ վերաբերութիւնը. քաջալերուած ասկէ կը սկսի քարոզել անոնց քրիստոնէութիւնը։ Սիրով կ՚ընդունըին զինքը (Բ. 40)։ Աղփիրութեր Թաքանը կը հաւատայ։ Կը հրամայէ կարել Ասպանդխտայ ձօնուած ծառերը. փայտերը Վարաչան կը տանին. Խորայէլ անոնցմով գեղեցիկ, պատկերազարդ խաչ մը կը շինէ, անոր ստորոտը երկրացիկ գանակ մը, որուն մէջ կը զետեղէ «խաչ մի արծաթեղէն մանաւորեալ ի տէրունական Խաչէն»։ Այս Խաչը կը կանգնուի արքունիքի դրան առջեւ։ Կը մկրտուին քաղաքացիք. կը քանդուին մեհեանները (Բ. 41)։

Ամբողջը յարատութիւն է Ահարոն Վանանդացւոյ (եւ ասկէ Մ. Խորենացւոյ, Բ. 86) Ս. Նշանի Խաչի պատմութեան[7]։

Թաքանը կը խնդրէ եպիսկոպոսէն, որ մնայ իրենց քով, «կանգնեալ ի Վարաչան քաղաքիս մերում զաթոռ Հայրապետական»։ Խորայէլ կը հասկցնէ իրեն, թէ այս մասին Աղուանից Եղիազար հայրապետի հաւանութիւնը պէտք է. ուստի կարելի է դիմել իրեն գրաւոր (Բ. 42)։

Խորայէլ կը մեկնի։ Թաքանը կ՚ուղարկէ անոր հետ երկու պատգամաւոր հանդերձ հրովարտակներով ուղղուած Եղիազար

[7] Հմմտ. Ակինեան, Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան, Վիեննա 1949, էջ 75—169 եւ Հանդ. Ամս. 1947, էջ 497—553։

Աղուանից եւ Սահակ Հայոց կաթողիկոսնե-րու եւ Վարազ-Տրդատ Աղուանից եւ Գրի-գոր Հայոց իշխաններու (Բ. 43—44)։

Սահակ կաթողիկոս (677—703) եւ Գրի-գոր Մամիկոնեան († 685) կը յայտնեն Խա-քանին իրենց ուրախակցութիւնը քրիստո-նէութիւնը ընդունելուն համար. իսկ ի մա-սին Իսրայէլի կը գրեն թէ այդ խնդիրը Աղուանից կաթողիկոսի հաճութենէ կախում ունի։

Եղիազար կաթողիկոս եւ Վարազ-Տրդատ կը պատասխանեն, որ Իսրայէլ եպիսկոպոս իր թեմն ունի եւ պէտք է իր ժողովուրդը հովուէ. բայց եւ այնպէս կը հաւանին որ Իսրայէլ ժամանակ ժամանակ այցելէ Հոնաց աշխարհը, ինչ որ յանձն կ'առնէ ան (Բ. 45)։

Թէ Իսրայէլ եպիսկոպոս քանի յանձնա-ռութեան այցելե՞ց երբեք այդ աշխարհը, Աս-տուած գիտէ. մենք գիտենք միայն, որ Հո-նաստանեայք ինչպէս յառաջ էին, նոյնպէս յետոյ մնացին նոյն հեթանոս բիրտ բարքե-րու մէջ։

Յիշեցինք, թէ Իսրայէլ եպիսկոպոս հա-յածուած էր Ներսէս Բակուր Աղուանից կա-թողիկոսէն եւ հեռացուած թեմէն*։ Եթէ պատմական են մեզ հաղորդուած տեղեկու-

* Ներսէս-Բակուր երբ ընտրուեցաւ կաթողիկոս «զերանելին Իսրայէլ ձեռնադրած եպիսկոպոսն Մեծ-կողմանց հալածեաց, որ դրացեալ աշխարհն Թարրաց եւ Հոնաց դարձոյց ի քրիստոնէութիւն» (Գ. 3)։

թիւններս Իսրայէլի մասին, կ՚ենթադրենք, թէ Իսրայէլի համար յաւագոյն ժամանակն էր աթոռէն մերժուելէն ետքը ուղղակի Հոնաստան երթալու եւ իր նորադարձները հովուելու։

Աղուանից Պատմութեան այս 35 (Ա. 27—30, Բ. 17—45) գլուխները մէկ գրիչ կ՚ենթադրեն։ Այն ձեռքը, որ այդ գլուխներու խոստաբանութիւնները գրած է, Ա. 27, 28 եւ Բ. 33 գլխոց բովանդակութիւնը արտակած է «պատմութիւն վիպասանարար», «շարադրած գրուցարարար» եւ «վիպասանուին գրուցարարար»։ Թէ ի՞նչ իմաստով գործածած է ան այդ բառերը, կը մնայ խնդրական. բայց անոնց նոր առումը ճշդիւ կը պատշաճի բովանդակութեան։ Անոնք վիպասանական պատմուածքներ են, յերիւրուած որոշ նպատակով։ Զուրկ են անոնք պատմական արժէքէ. բայց իբրեւ առաջին փորձեր ճարտասանական կրթութեանց եւ գեղեցիկ գրականութեան կրնան նկատուիլ արժէքաւոր, յատկապէս Գործք Ջիւանշիրի եւ Առաքելութիւնն Իսրայէլ եպիսկոպոսի։ Աստ բառամթերքովը նպաստ կը բերեն հայ բառագիտութեան։

Կորիւնի գեղեցկախօս Վարքն Մաշտոցի նմանութեան օրինակ եղած էր «Ագաթանգեղոսի», Կորիւն եւ Ագաթանգեղոս՝ մեր վիպագրին (յատկապէս Բ. 39, 41)։

Անոր պատագործած նորագոյն աղբիւր–

ներէն կը յիշեմ Թովմաս Արծրունին եւ Յովհ. Դրասխանակերտցին : Վերջնոյս մասին խօսեցայ վերագոյն (§ 11 եւ 13) . առաջինէն է հետեւեալ տեղեկը . Իսրայէլ եպիսկոպոս Վարաչանի մէջ խօսած ճառին մէջ յառաջ բերած է հետեւեալը .

«Տեսանեմք, զի յազգէ նորա (Քամայ) եղեալ Նեբրովթ հսկայ, որ դիւցազնէին կախարդութեամբ զոլորս հրապուրէր ազինս աշտարակաշէն առնել քարակոյտ . եւ ինքն ամբարհաւաճեալ յաղագս յաղթանդամ տեսակին եւ հսկայազօր մեծութեանն՝ թագաւորէր ի վերայ ամենեցուն . որպէս եւ գրեալ է, եթէ եղեւ սկիզբն նորա թագաւորութեանն ի Բաբելոն : Նաեւ յետ կործանման աշտարակին եւ խառնակելոյ լեզուացն յաւուրս մեր ի ժամանակագիր Պատմութենէ ոմանց, եթէ աստուածոց նմանեցուցեալ զինքն Նեբրովթայ՝ ամբարտաւանեալ հպարտանայր, մինչեւ զպատկերն իւր անդրիագործ ճարտարաց ոսկիապաճոյճ նկարիւք կանգնել հրամայէր յարծաթս եւ ի պղինձս, անուն կոչելով իւրեան նկարագրին, որոց բազում ազգս մոլորեալս նուիրական ձօնիւք զոհ մատուցանէին առաջի այնր պատկերի» (Բ. 40. էջ 278) :

Ակնարկուած ժամանակագիր Պատմութիւնն է Թովմայ Արծրունւոյ Պատմութիւնն Արծրունեաց : Թովմաս կը գրէ .

«Իսկ Նեբրովթ ինքնագլխաբար առաց

զինքն աստուած. *և* թագաւորեալ ի Բաբելոնի *սատանի զօրութեամբ՝ անէր և նշանս* կախարդութեամբ *և առ աչօք մինչև ի զարմացումն ամենեցուն*: Եւ տիրեաց ամենայն ազգաց *որ ի ներքոյ երկնից*. Եւ ետ հրաման ահիւ մեծաւ՝ ամենայն ուրեք կանգնել զպատկեր իւր *և երկիր պագանել* իբրև աստուծոյ և զոհս մատուցանել, *որ և սկիզբն պատկերապաշտութեան եղև*» (Ա. 2, էջ 22—23):

*Տեղիքս «Հրամայէր (թագաւորն) վաղվաղակի* տանջանաւոր մահուամբ *կենազրաւել զաւուրս զօրաւորն Թորեղեան*» (Ա. 30, էջ 115) *փոխառութիւն կ՚երևայ Թ. Արծրունիէ, որ ունի. «Ընդ պատժական* տանջանաւոր *խոշտանգանօք արկանելն զմեզ... և մի՛ ի ձեռն* տանջանաւոր մահու *երանիցէք ի բնակութենէ ձերմէ*» (*ի մարինոյ. Թ. Արծր. Գ. 6, էջ* 154, 156):

*Թ. Արծրունի Ժ. դարու առաջին տասնեակին կը մատենագրէր*:

15. ԽՆԴԻՐՔ ՊԱՏԿԵՐԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ. ԴԱՒԻԹ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԵԾԿՈՂՄԱՆՑ, ՅՈՎՀԱՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՀԱՅՈՑ (ՄԱՅՐԱԳՈՄԵՑԻ). ՎՐԹԱՆԷՍ ՔԵՐԴՈՂ

(Բ. 46, 49)

*Ագուանից պատմիչը կը գրէ, թէ Ուխտանէս* (670—682) *և Եղիազար* (682—688) *կաթողիկոսներու օրով «խռովութիւնք և հերձուածք լինէին, մարտ և մրցումն Յունաց և Հայոց. և աշխարհն Ագուանից ան-*

վրդով մնայր յայնցանէ»: Այս անվրդով անդորրութեան մէջ յանկարծ «եհաս, կ՚ըսէ, համբաւ ինձ առ նոսա, եթէ (ի Հայս) ոմանք պատկերս ոչ ընդունին, ոմանք մկրտութիւն ոչ առնեն, ոչ աղ օրհնեն եւ ոչ պսակ դնեն հարսանեաց՝ յայս պատճառս թէ քահանայութիւն բարձեալ է յերկրէ»: Ասկէ գրգռուած Մեծկողմանց Դաւիթ եպիսկոպոսը «խնդրեաց գրով ի Յովհաննէս վարդապետէ Հայոց զպատճառս իրացն: Եւ նա արար հմուտ այնմ ճշմարտապէս»:

Դաւիթ եպիսկոպոսի անունը քանիցս յիշուեցաւ վերագոյն, տեսանող Իսրայէլի պատմութեան մէջ. եւ Բ. 37ի համաձայն ան վախճանած է Եղիազար կաթողիկոսի եւ Վարազ-Տրդատ իշխանի օրով (իբր 685ին) եւ յաջորդ ունեցաւ Իսրայէլը: Դժբախտաբար մեզի չէ պահուած անոր թուղթն առ Յովհաննէս:

Ո՞վ է այս «Յովհաննէս վարդապետն Հայոց»: Այն ձեռքը, որ գրած է այս գլուխի խորագրանութիւնը, անուանած է Յովհաննէսը «Մայրագոմեցի[1]»: Այսպէս ալ համարուած է մինչեւ այժմ բանասէրներէն: Բայց մենք գիտենք, որ Մայրագոմեցի հրապարակ եկաւ 630ին թիկնածու կաթողիկոսութեան, իբր 642ին աքսորուեցաւ իբրեւ հերձուածող ի Կովկաս, վերադարձաւ Իսրայէլ կա-

[1] Ասկէ՝ Միխիթար Այրիվանեցի, էջ 65. «Պատերազմ վասն նկարեաց եկեղեցւոյ, զոր եղած Յովհան Մայրավանեցին»:

Թովիկոսի (667—677) օրով եւ ապրեցաւ ի լռութեան իր կեանքի վերջին տարիները: Նամակագիրը, որ կը պատասխանէ Դաւթի «հայցուածին», ցոյց կու տայ ինքզինքը դիպաց ժամանակակից եւ յուզուած խնդրոց միջամուխ· իսկ խնդիրք յուզուած են 591—610 տարիներուն: Ուստի ոչ Դաւիթ հայցող կրնար ըլլալ եւ ոչ ալ Յովհաննէս Մայրագոմեցի՝ նամակագիր:

Ուղիղ չէ նաեւ, թէ Աղուանից աշխարհը «անվրդով մնացած» ըլլայ այն «մարտէն եւ մրցումէն», որոնք տեղի ունեցան «Յունաց եւ Հայոց» մէջ. ստոյգ է արդարեւ, որ Աղուանից եւ Յունաց մէջ խնդիրներ չյուզուեցան, բայց պատահեցան «մարտ եւ մըրցումն» ինչպէս Հայոց եւ Վրաց, նոյնպէս Հայոց եւ Աղուանից մէջ, ինչպէս տեսանք վերագոյն (§ 8), Աբաս կաթողիկոսի օրով· իսկ այն ժամանակ, երբ Թուղթս կը գրուէր՝ վրդովուած էր Արձախը, ուր Պատկերամարտները աւերներ կը գործէին:

Ինչպէս կը տեսնուի այս Նախարանէն, որ Աղուանից պատմիչի յաւելուածն է, կային Աղուաններու Թղթոց գրքին մէջ «Հայցուած» մը Աղուանքէն եւ անոր Պատասխանը Դաւինէն, որովհետեւ կ'ըսուի թէ «Դաւիթ» «խնդրեաց գրով» «Յովհաննէս վարդապետէն» եւ «նա արար հմուտ ճշմարտապէս», այսինքն Աղուանից կողմէ ներկայացուած հարցարանին պատասխանեց մանրամասնօրէն: Պատմիչը, ըստ սովորու-

թեանը, տուած է մեզի անկէ լոկ քաղուածք մը միայն։ Այդ Հարցարանէն են Նախադրութեան տողերս.

1. «ոմանք պատկերս ոչ ընդունին».
2. «ոմանք մկրտութիւն ոչ առնեն».
3. «ոչ աղ օրհնեն եւ
4. «ոչ պսակ դնեն հարսանեաց»՝
5. «յոյս պատճառս թէ քահանայութիւն բարձեալ է յերկրէ»։

Այս հարցումներէն միայն առաջին կէտի պատասխանը ներս առնուած է Պատմութեան մէջ, ոչ առանց յաւելուածի։

Այդ յաւելուածն է.

«Աղանդդ այդ յետ առաքելոցն երեւեցաւ[3]. եւ պատկերամարտութիւն նախ ի Հոռոմս երեւեցաւ. վասն որոյ ժողով մեծ եղեւ ի Կեսարիա. հրամայեցին նկարել զպատկերս ի տանն Աստուծոյ։ Բայց բարձրամտեալ նկարչացն՝ զինքեանս գերագոյն կամէին լինել քան զամենայն արուեստաւորս եկեղեցականս. եւ աւելին. Մեր արուեստս լոյս է, զի ծերք եւ տղայք առ հասարակ վերծանեն. իսկ զԳիրս սուրբս սակաւք ընթեռնուն։ Աստանօր աղմկեալ կրկին լինի ժողով. եւ քննեալ արդարացուցին զգրիչս եւ զվերծանողս եւ զմեկնիչս եւ եղին յառաջ քան զնկարիչս։

«Եւ անտի մինչեւ ցՄովսէս Հայոց կաթողիկոսն այն աղանդ հերձուած ինչ (չ)էր

յայտնեալ(*)»: Ապա ընդ երկուանալն հայրապետութեան Հայոց»:

Հատուածներս եկամուտ են. չեն պատկանիր նամակին: Ինձ կը թուի թէ Պատկերամարտներու բաջաղանքներէն առնուած է առաջին հատուածը: Հոս «աղանդդ այդ» պատկերայարգութիւնը կը յարաբերէ: Պատկերամարտները հնարած են Կեսարիայի ժողովները. առաջին ժողովին մէջ «հրամայեցին նկարել զպատկերս ի տանն Աստուծոյ»: Նկարիչները պարծեցան իրենց արուեստին վրայ. արհամարհեցին, նուաստացուցին սուրբ Գիրքը օրինակողները, կարդացողները եւ Մեկնողները: Երկրորդ ժողովին մէջ պանծացուցին գրիչները, վերծանողներն եւ Մեկնիչները, եւ նուաղեցուցին նկարիչներու արուեստը, ուրիշ խօսքով անկարեւոր ցուցուցին պատկերները: Այս նպատակով Կեսարիա որ եւ է ժողովք չէ գումարուած եւ չէր կրնար գումարուիլ:

Նման բաջաղանք էր նաեւ Պատկերամարտներու այն հաւաստումը, թէ Պապ Թագաւոր մուծած ըլլայ պատկերները եկեղեցւոյ մէջ. «եւ գրեալ էր թէ զպատկերս յեկեղեցիս Պապ տարաւ[2]»: Այս տեղիքները ցոյց կու տան, թէ պատկերամարտները նաեւ գրով կը տարածէին իրենց հերետիկոսութիւնը: Ուշադրութեան արժանի է Վըր-

---

[2] Վրթանեսի քերթողի Յաղագս պատկերամարտից. Ե. Դուրեան, Ուսումնասիրութիւնք եւ քննադատութիւնք. Երուսաղէմ 1935, էջ 306:

Թանէսի տեղիքս. «ի գրոցն ականջք միայն լսեն. իսկ ընկարսն աչօք տեսանեն եւ սըրտիւք իմանան եւ հաւատան» (305), որ այս հատուածիս մէջ ալ կը կրկնուի: Հատուածիս վերջին տողերը «եւ անտի մինչեւ ցՄովսէս... այն աղանդ հերձուած ինչ (չ)էր յայտնեալ» կը գտնենք Վրթանէսի քով. «եւ ոչ ոք ի նոցանէ (Սահակ–Մեսրոպէ) վասն պատկերաց եւ նկարողաց եկեղեցւոյ բանս ինչ ոք արար, բայց միայն պիղծն մոլին Թադէոս...» (307):

Իսկ յաւելուածս «ապա ընդ երկուանալն հայրապետութեան Հայոց» հակաժամանակագրական է. որովհետեւ այն խնդիրները, որոնք յուղուեցան ըստ պատմութեան, Հայրապետութեան երկուանալէն յառաջ տեղի ունեցան: «Երկուանալ» բայը Աղուանից պատմիչին յատուկ է. կը կիրարկուի նաեւ Բ. 48. «իսկ զերկուանալն հայրապետութեանն խռովեցին տեարքն Սիւնեաց» (էջ 310): Կը սպասուէր, որ հոս յիշուէր Խոսրով Բ. Պարուէզի Տիզբոնէն փախչիլն եւ Մաւրիկ կայսեր քով ապաւինիլը, անոր օգնականութեամբ Վահրամ Չոբինին յաղթելը եւ Պարսկահայաստանի մեծագոյն բաժինը Մաւրիկի անցնիլը: Եւ ես վստահ եմ, թէ Նամակագիրը, որ յաջորդ տողերը կը գրէր, անկէ յառաջ խօսած էր այս անցքերու վրայ գոնէ համառօտիւ: Կ'երեւայ թէ Աղուանից Պատմիչը կարեւոր չէ տեսած այս քաղաքական անցքերը յառաջ բերել:

*Նամակագրի Թուղթէն պահուած են մեզի միայն հետեւեալ հատուածները, որոնք իբրեւ վաւերագիր պատմական արժէք ունին:*

1. < Եւ զհայս Պարսիկք եւ Յոյնք բաժանեալ էին. եւ տէր Մովսէս էր յաթոռն սրբոյն Գրիգորի ի Դուին[3] >:

2. ...էր մեծ մարտ ընդ Մովսէս եւ ընդ Թէոդորոս Կարնոյ եպիսկոպոս, զոր փիլիսոփայապետն կոչէին: Եւ ուղղափառքն աղարտէին զհոռոմց զամենայն կրօնսն:

3. < ի թագաւորելն Մարկիանոսի Հոռվմայեցւոց՝ անդէն հրապուրեալ ի Պողքերայ կնոջէն եւ ի կարգընկէց նեստորականէ, պատառեալ եղյծ զսահման ուղղափառ հաւատոց քաղկեդոնական հաւաքմամբն: Յետ որոյ նոցին հաւանեալքն թագում անգամ մրցեցան վասն Հայոց ի հաւասարիլ ընդ նոսա, էր որ թղթով եւ թագում անգամ դէմ յանդիման ժողովովք. կոչեցին միանգամ ի Կոստանդնուպոլիս եւ երկիցս ի Թէոդուպոլիս. եւ ջանային իբրեւ զվրիպեալս շահիլ զնոսա: Այլ թէպէտ թագաւորական հրամանաւ յարակիրք ճարտարքն Յունաց վստահանային ի սուր լեզուս հելլենական յորդաբանութեամբ յաղթող լինել, սակայն ընդ նմին եւ զպատասխանիս լսէին. քանզի նորոգեալ էին ի Հայաստան եկեղեցիս ուսմունք, եւ էին յոյն լեզուին տեղեկագոյնք[4] >:

---

[3] *Բ.* 48, *էջ* 310, *տ.* 22—24:
[4] *Բ.* 48, *տ.* 1—16 (*էջ* 308) *ըստ իմաստին*:

4. Եւ առնէր ժողով Մովսէս իւր կողմանն վարդապետացն եւ հրամայէր ամենեւին ոչ հաղորդել ընդ Հոռոմս հնազանդեալ քաղկեդոնականն ժողովոյն (զի գործք նոցա ստութեամբ են[5]) մի՛ գիրս, մի՛ պատկերս եւ մի՛ նշխարս ի նոցանէ ընդունել: Յայնժամ Թէոդորոս ետ հրաման ժողովիլ եպիսկոպոսացն Հայոց, որ ի նորայն կողմանն, ի Կարնոյ քաղաք. եւ ասէ. Պարտ է մեզ առնել կաթողիկոս: Եւ ածին զՅովհան ոմն սիւնական. ձեռնադրեցին եւ հնազանդեցան քաղկեդոնական կրօնիցն: Եւ ոչ ոք ի նոցանէ եղեւ խնդրող ուղղափառ հաւատոց բաց յՆնովսայ երանելւոյ, որ գնաց ի նոցանէ եւ եկն առ Մովսէս կաթողիկոս. զոր ուրախութեամբ ընկալան: Մովսէս նստէր ի Դուին կաթողիկոս: Պատշաճեցին եւ Հռովմայեցիքն Յովհաննու զկաթողիկոսարան յԱւանի, մօտ առ միմեանս: Եւ էր խռովութիւն ի միջի նոցա՝ չընդունելով զՅովհաննու ձեռնադրեալսն:

5. Ապա Յեսու անուն քահանայ եւ Թադէոս եւ Գրիգոր, որք ի Մովսիսի կողմանէն էին, գնացին ի Դուինայ եւ եկին ի Սոթից գաւառն բնակելով յանապատս, զի կրօնաւորք էին. եւ սկսան ուսուցանել, եթէ զպատկերս, որ յեկեղեցիսն են նկարեալ, ի բաց ջնջեցէք եւ ընդ աշխարհական քահանայս մի հաղորդիք: Եղեւ խռովութիւն ի գաւառին. եւ համբաւն եհաս առ Մովսէս հայրապետն.

5 Ըստ Շահնազարեանի. Էմինեան՝ բազմակէտներ:

որ իսկոյն գրեաց, թէ Փութով այսրէն եկայք: Եւ նոքա ոչ անսացին հրամանին, այլ անտի գնացեալ բնակեցան ի ձեռում Արցախական գաւառի: Եւ հարցեալ հայրապետին զգիտնաւորս իւր, եթէ զիա՛րդ են այնց մարդկան գործք, նոքա զոր վասն Հռովմայականին էր թիւրութիւն՝ ետուն պատասխանս: Ապա գրեցին նամակ, թէ մի՛ ոք իշխեսցէ խոտել զնկարս որ յեկեղեցիս են:

6. Եւ ի վախճանել հայրապետին Մովսէսի եւ ի տիրել խոսրովու՝ Հայոց, միաւորեցաւ երկիրն եւ նստուցին հայրապետ զԱբրահամ ճշմարիտ եւ ընտիր այր, որ զուրացող ժողովն Քաղկեդոնի նախ եբարձ նզովիւք եւ ապա ձեռնադրեցաւ:

7. Իսկ պատկերամարտքն, որ իջին յԱղուանս՝ պղտորեցին զերկիրդ ձեր: Ապա Գարդմանայ տէրն կալեալ զերեսին արսն, որոց անուանքն ի թղթիդ են, ետ կապանօք ածել ի Հայս:

8. Եւ եղեալ նոցա յանդիման մեզ՝ հարցաք, թէ «յո՞ր պատճառս չընդունիք զմարմնացելոյ Աստուծոյ զպատկերն», ետուն պատասխանի թէ «արտաքոյ է պատուիրանաց եւ եթէ կռապաշտից է գործդ այդ, որոց զամենայն արարածս ի պաշտօն էր առեալ· մեք ոչ պագանեմք երկիր պատկերաց, զի ոչ ունիմք·հրաման ի Գրոց»:

9. Ապա մեր յայտ արարեալ զՄովսիսականն ի խորանին նկարակերտութիւն եւ

զՍողոմոնեան տաճարին զանազան քանդակագործութիւնն՝ զնոյնն նկարագրեալ եւ ի մեր եկեղեցիս։ Զայս եւ զսոցին նմանս ասացեալ՝ զթիւրութիւն նոցա ուղղեցաք։

*Նամակագիրը ժամանակագրօրէն կը պատմէ 592—609 շրջանի դէպքերը համառօտիւ եւ պատկերամարտութեան սկզբնաւորութիւնն, ընթացքն եւ վերջաւորութիւնը քիչ մը աւելի լայնօրէն։*

*Ան կը գրէ Աբրահամ կաթողիկոսի օրով, որ օծուած էր 608, ապրիլ 16, եւ վախճանած 610/1ին։ Կը խօսի յոգնակի առաջին դէմքով, յանուն ժողովականներու, որոնք կաթողիկոսարանի ատեանին անդամներն, «գլխաւորներն» են։ Գրութեանս շարժառիթն է «հայցուածք» մը, որ եկած է Աղուանքէն, եւ կը հայի պատկերամարտներու, որոնք երեւցած են վերջին տասնեակին նախ Սիւնեաց Սոթք գաւառի մէջ եւ անկէ անցած Աղուանից Արձախ նահանգը։ Կը յիշէ նամակագիրս, թէ Մովսէս կաթողիկոսի վերջին տարիներուն, երբ առաջին անգամ լուր հասաւ Սոթից գաւառէն, թէ պատկերամարտ աղանդներ երեւցած են, Դունի գլխաւորները «գրեցին նամակ, թէ Մի ոք իշխեսցէ խոտել զնկարս որ յեկեղեցիս են»։ Այս «նամակն» հասած է մեզի այսպիսի վերնագրով. «Վրթանէսի քերթողի յաղագս պատկերամարտից»։*

*Այս Վրթանէս Դունայ կաթողիկոսարանի խօսնակն էր, Մովսէսի մահէն ետքը աթոռին «տեղապահը» եւ ապա Աբրահամ կաթո-*

*ղիկոսի տանմադպիրը: Երբ Աղուանից Մխիթար Ամարասայ եւ Սիմէոն Մեծկողմանց եպիսկոպոսները Աբրահամ կաթողիկոսի շրջաբերականին պատասխանեցին (609), այդ թուղթը Դուին բերաւ Գրիգոր Սիւնի նախարար[6]. իսկ Թուղթիս պատասխանը տուաւ Վրթանէս քերդող, յանուն Աբրահամ կաթողիկոսի եւ Հայոց եպիսկոպոսներու, որոնց թուին մէջ էր նաեւ Դաւիթ Սիւնեաց եպիսկոպոս (Գիրք Թղթոց, 196): Շատ հաւանական է, որ այս առթիւ ուղարկուած ըլլայ վերայիշեալ «Հայցուածքը», ոչ Դաւիթ, այլ Սիմէոն Մեծկողմանց եպիսկոպոսէն: Նամակագրին շեշտը «զերկիրդ ձեր» կը հայի յայտնապէս Արձախի, որուն գաւառն էր Մեծկողմանք, եւ ուր եկած էին պատկերամարտք: Թուղթիս վերջաւորութիւնը, թէ երեք պատկերամարտք շղթայակապ Դուին բերուեցան եւ ատեանի հանուեցան, եւ «ապա մեր յայտ արարեալ զՄովսիսական ի խորանին նկարակերտութիւն..., զայս եւ զայլսն նմանս ասացեալ՝ զթիւրութիւն նոցա ուղղեցաք», ակնարկութիւն է Վրթանէս քերդողի «յաղագս պատկերամարտաց» Թուղթին, որ գրուած էր 600ին: Առանց տարակուսի այս ատեանին ներկայ «գիտնաւորաց» մէջ էր նաեւ Վրթանէս: Կը համարիմ թէ «Հայցուածին» պատասխան տուողն ալ ինքը Վրթանէս եղած ըլլայ:*

---

*[6] Գրիգոր տէր Սիւնեաց, յիշուած 634ին Ցուլակէփ Գեղամեցիէ եւ † 636ին (Սեր.):*

Ինչպէս ուշադիր ըլլի, նամակիս սկիզբը կը պակսի. սկզբնագրի մէջ պէտք է խօսք եղած ըլլայ համառօտիւ այն քսանամեայ պատերազմներու մասին, որոնք սկսան 571ին Հայաստանի ապստամբութեամբ եւ շարունակուեցան Յունաց եւ Պարսից մէջ մինչեւ 591: Այս վերջին տարւոյն Որմիզդ թագաւոր բանտարկուեցաւ եւ իր որդին Խոսրով Բ. Պարուէզ թագաւոր հռչակուեցաւ: Այս լուրին վրայ Վահրամ Չոբին առաւ բանակով քալեց Տիզբոնի վրայ. Խոսրով փախաւ եւ ապաւինեցաւ Մաւրիկ կայսեր, խնդրեց անոր օգնականութիւնը, փոխարէն խոստանալով Պարսկահայաստանէն ընդարձակ բաժին մը: Յունական բանակը խորտակեց Վահրամի ոյժը. եւ Խոսրով տիրացաւ իր գահին: Իսկ կայսրը ստացաւ Պարսկահայաստանի մեծագոյն մասը: Հայոց կաթողիկոսն էր Մովսէս Բ. Եղիվարդեցի (574—603), որ կը նստէր Դուին, պարսկական բաժնին մէջ:

Սահմաններու այս նոր փոփոխումով Մովսէս կաթողիկոսի իրաւասութենէն կ'ելլէին բազմաթիւ թեմեր եւ կ'ենթարկուէին Կոստանդնուպոլսոյ «տիեզերական պատրիարքի» իրաւասութեան: Կար կռիւ մը ընդմէջ: Հայոց Եկեղեցին 50 տարիէ ի վեր ընդունած էր Յուլիանիտ միաբնեաններու դաւանութիւնը եւ կը մերժէր Քաղկեդոնի ժողովը եւ անոր դաւանողները. իսկ Բիւզանդական Եկեղեցին կը դաւանէր երկու բնու-

Յեան վարդապետութիւնը (քաղկեդոնական), եւ իր սահմանին մէջ չէր հանդուրժեր այլադաւանները։ Ինչպէս 572/573ին, երբ Արտաշատի առջեւ մղուած մեծ ճակատամարտէն ետքը, Վարդան Մամիկոնեան, Յովհաննէս կաթողիկոս եւ այլ եկեղեցական, զինուորական եւ ռամիկ բազմութիւն ապաւինեցան բիւզանդական հողեր, խնդիր ծագած էր Հայոց եւ Յունաց մէջ հաւատոյ դաւանութեան մասին, եւ ժողով գումարուած Կ. Պոլիս լուծելու այս կնճիռը. հաւանած էին Հայք խոստովանիլ Քաղկեդոնի դաւանութիւնը[7]։ Այս համբաւը անախորժութիւն պատճառած էր Դուինի մէջ։ Ասկէ վերջը, երբ Յոյն բանակը մտաւ Հայաստան եւ գործեց խժդժութիւններ երկրին մէջ, աւելի բարձրացաւ ատելութիւնը Յունաց դէմ։ Բանակը ամօթապարտ վերադարձաւ. բայց անոր գործերը չմոռցուեցան։ Այժմ, 591ին, Պարսկահայաստանի մեծ մասին յանկարծական բաժանումը ցնցեց հայ ժողովուրդը, յատկապէս եկեղեցին։ Քաղաքական բաժանումը հետը կը բերէր եկեղեցական բաժանում եւ դաւանաբանական խռովութիւնք կը յարուցանէին «մարտ եւ մրցումն»։ Ուստի զարմանք պէտք չէ պատճառել եթէ «խռովութիւնք եւ հերձուած բազումք ի կողմանս

[7] Դաւիթ Մաշկեան քահանայ, Ժամանակագրութիւն. «Տիբեր՝ ամս է. (578—582). առ սովաւ եղեւ ժողովն ի Կոստանդնուպոլիս Հայոց եւ Յունաց վասն սահմանին Քաղկեդոնին, յորում պարտեցան Հայք». Անանուն Ժամանակագր. հրտ. Սարգիսեան, էջ 75—76։

կողմանս գլխաւորաց եւ ողխոյց լինէին, մարտ եւ մրցումն Ցունաց եւ Հայոց» (Բ. 46)։ Սիւնեաց եկեղեցին բաժնուած Դուինէն՝ յարած էր Աղուանից, Վիրք եւ Աղուանք Երուսաղէմի հայրապետին։

Այս շրջանին Թէոդուպոլսոյ (Կարնոյ քաղաքին) եպիսկոպոսն էր Թէոդորոս, որ փիլիսոփայական անուն կը կրէր։ Իր յիշատակը արձանագրուած է Յունական Սինաքսարիոնի մէջ նոյեմբեր 28 (ըստ այլ օրինակաց՝ 29)․ μνήμη τοῦ ἐν ἁγίοις πατρὸς ἡμῶν Θεοδώρου ἐπισκόπου γενομένου Θεοδοσιουπόλεως Ἀρμενίας, ἐπὶ τῆς βασιλείας Μαυρικίου[8]. (Յիշատակ սրբոյ հօրն մերոյ Թէոդորոսի եպիսկոպոսի Թէոդուպոլսոյ Հայոց, առ թագաւորութեամբ Մաւրիկեայ)։

Նամակագիրս երկիցս կը յիշէ անոր անունը։ Երբ երկու եկեղեցիներու մէջ բանակցութիւններ սկսան, Թէոդորոս իբրեւ եպիսկոպոս Կարնոյ քաղաքի, հին Հռոմէական Հայաստանի (385) կարեւոր բերդաքաղաքի, ունէր իր ձայնը։ Ժողովքներ գումարուեցան անգամ մը Կ. Պոլիս[9] եւ երկիցս Կարնոյ քաղաքին մէջ (Բ. 48. տես վերը)։

---

[8] Synaxorium Ecclesiae Constantinopolitanae, éd. Delehaye, Bruxelles 1902, էջ 264։

[9] Պատմ. Աղ. Բ. 48. տես վերը։ Դաւիթ Մաշկուան, Ժամանակագրութիւն, էջ 76 (հրտ. Սարգիսեան)։ «Ի նորին (Մաւրիկեայ) աւուրս եղեւ դարձեալ միւսանգամ ժողով Հայոց եւ Հոռոմոց վասն նորին աղանդոյն Քաղկեդոնին. ժողովին ի Կոստանդնուպոլիս. եւ եղեն պատրեալ Հայք»։ Սամ. Անեցի.

Թէոդորոս կը ջանար համոզել, որ Մովսէս կաթողիկոս ընդունի Քաղկեդոնի ժողովը եւ ըլլայ երկու կողման ալ կաթողիկոս. այլապէս հարկ պիտի ըլլայ յունական կողման համար ալ նոր կաթողիկոս ընտրել: Մովսէս տեղի չտուաւ. ընդհակառակն հրամայեց իր կողման. «Ամենեւին ոչ հաղորդել ընդ Հռոմս հնազանդեալս քաղկեդոնական ժողովոյն... մի գիրս, մի պատկերս եւ մի նշխարս ի նոցանէ ընդունել»:

Ասոր վրայ Թէոդորոս հրաւիրեց իր կողման եպիսկոպոսները եւ առաջարկեց կաթողիկոսական ընտրութիւն Հռոմէական Հայաստանի համար: Ընտրուեցաւ Յովհաննէս, Կողոփիտ գաւառի Բագարան գիւղէն, որ անապատական մըն էր անծանօթ վանքէ մը[10]: Իր նկարագիրն կու տայ Յովհաննէս Դրասխանակերտցի կաթողիկոս. «այր ճշմարիտ եւ արդար եւ առաքինի ի վարս»: Կառուցին նորընտիր կաթողիկոսին համար կաթողիկոսարան մը Կոտայքի Աւան գիւղաքաղաքին մէջ, «պայծառակերտ» եկեղեցիով, Դուինէն ոչ շատ հեռու: Ինչպէս կը գրէ նամակագիրս, Յունական կողման եպիսկոպոսները «հնազանդեցան քաղկեդոնական կրօնիցն եւ ոչ ոք ի նոցանէ եղեւ խնդրող ուղղափառ հաւա—

76. «Գրիգոր եւ Վրթանէս վարդապետք Հայոց գնացին ի Յոյնս. եւ ոչինչ օգտեցուցեալ գնան՝ դարձան նզովելով»: Հմմտ. նաեւ Մխիթար Այրիվանեցի, Ժամանակագրութիւն 64:

10 Նամակագիրս կը գրէ «Մինական»:

տոց», բայց ի «յԵնովսայ երանելւոյն, որ գնայ ի նոցանէ եւ եկն առ Մովսէս կաթողիկոսգոր ուրախութեամբ ընկալաւ»: Այլուստ անծանօթ է այս անունը. հաւանօրէն եպիսկոպոս էր, որ 609/10ին արդէն վախճանած էր: Անկէ կարելի է եզրակացնել թէ Յովհաննէս կաթողիկոսին հնազանդած եպիսկոպոսներու վրայ որեւէ ճնշում չէ եղած: Բայց ընդհակառակը եղած է Պարսկական բաժնին մէջ. «եւ էր խռովութիւն ի մէջի նոցա՝ չընդունելով զՅովհաննու ձեռնադրեալսն». ոչ միայն այն կողման ձեռնադրութիւնք, այլ եւ մկրտութիւնք: Այս խռովութիւնները շարունակուեցան մինչեւ 602/603, երբ վախճանեցաւ Մովսէս կաթողիկոս:

Այժմ Յովհաննէսեանք ամէն ջանք բրին, որ հանգուցեալ կաթողիկոսի յաջորդ ճանչցուի Յովհաննէս, եւ այսպէս մի հովիւ եւ մի հօտ ըլլայ Հայոց եկեղեցին: Այս 603 տարւոյն գրուած պէտք է ըլլայ Սորմէնի թուղթն առ Վրթանէս Քերդող: Ընդունելի չեղաւ այս առաջարկը:

Նոյն տարւոյն, 603 նոյեմբերի վերջերը սպաննուեցաւ Մաւրիկ կայսր, գահ բարձրացաւ Փոկաս. ընտանի պատերազմ ծագեցաւ Բիւզանդիոն: Խոսրով Բ. Պարուէզ իբրեւ վրէժխնդիր Մաւրիկի սպանման, շարժեց բանակները Փոկասի վրայ: 603 դեկտեմբերին պարսկական բանակ մը մտաւ Հռոմէական Հայաստան եւ վերագրաւեց 591ին Մաւրիկին շնորհուած հողամասերը: Յով-

հանդէս կաթողիկոս առած կաթողիկոսարանի սպասները ապաւինեցաւ Կարնոյ բերդաքաղաքը:

Դուինի կաթողիկոսարանը տակաւին տեղապահով կը կառավարուէր: 608ին Դուին այցելեց Սմբատ Բագրատունի «Վրկան մարզպան». եկած էր իր նախագահութեամբ ընտրել տալու կաթողիկոս մը, յաջորդ Մովսէս կաթողիկոսի: Ժողովը տեղի ունեցաւ. ընտրուեցաւ Աբրահամ, Ռշտունեաց եպիսկոպոս (608, ապրիլ 9), եւ օծուեցաւ (16 ապրիլ):

Նամակագիրս կը շեշտէ թէ Աբրահամ «նախ երարձ նզովիւք (զժողովն Քաղկեդոնի) եւ ապա ձեռնադրեցաւ»: Նզովքի ձեռնարկը պահուած է Թղթոց գրքին մէջ. «Ձեռնարկ զոր խնդրեաց Սմբատ Վրկան մարզպան, ցայն եպիսկոպոսունսն, որք դարձեալ ժողովեցան նորին հրամանաւ ի Դուին, կարգել կաթողիկոս...» (Գիրք Թղթոց, էջ 149—150): Նոյն նզովքը նզովեցին ապա Աբրահամ կաթողիկոսի առաջ «այնոքիկ (եպիսկոպոսք եւ վանից երէցք) որ էին ընդ իշխանութեամբ Հոռոմոց ի թագաւորութեան Մաւրկան» (անդ, 151—152):

Ընտրական ժողովս տեղի ունեցած է «յեւթնուտասներորդ ամի Ապրուեզ Խոսրովու արքայից արքայի, յամսեանն մարերի... ի Դունի ի սուրբ եկեղեցւոջ» (Գիրք Թղթոց, 149). Խոսրովի ժէ. տարին պէտք

է հաշուել 590, յունիս 27էն[11]. ուստի ժէ. տարին է 607 յունիս — 608 յունիս. հոս կը յիշուի նաեւ ամիսը, Մարերի, որ կը համապատասխանէ յուլեան տոմարի 608, մարտ 24 — ապրիլ 23ի: Ստեփանոս Օրբելեան (Ա. 141) կը գրէ. «յաւուրս քառասներորդի պահոցն մերոյն ժողովքն ի Դուին... յաւուրս ողոգոմենի տօնին արմաւենեաց նստուցանեն պատրիարք զտէր Աբրահամ Ռշտունեաց եպիսկոպոս»: Եւ Ուխտանէս կ'աւելցնէ. «ձեռնադրեցին (զԱբրահամ) զկնի սրբոյ զատկին, յաւուր կիրակէի, յետ ամսոյն նաւասարդի» (Բ. 35, էջ 61): Ասոնք ենթադրութիւններ են, հաւանցուած Աբրահամ կաթողիկոսի առ Մովսէս Ցուրտաւայ եպիսկոպոս գրած տեղիքէն. «Մի դանդաղիցիս ի սուրբ Զատիկն գալ այսր, զի բազմաց խնդութիւն եւ գործք հոգեւորք առաջի կայ, մինչդեռ Տէր Սմբատ (Գուրկան Մարզպան) աստէն է» (Գիրք Թղթոց, 163): «Գործք հոգեւորք» անտարակոյս կաթողիկոսածութեան հանդէսներն են: Ուստի կարելի է ենթադրել որ Ծաղկազարդին (մարերի 17 եւ ապրիլ 9) կատարուած է ընտրութիւնը եւ Զատկին՝ օծումը (24 մարերի, 16 ապրիլ): Բայց Ուխտանէսի տուեալը անեղծուած մը համարելու է, որ նաւասարդին զատիկ տօնել կ'ուզէ: Հաւանօրէն Հայոց շարժական տոմարն աչքի առաջ ունի. 840—999 տարիներուն նաւասարդը ապրիլ 30 մարտ

[11] Nöldeke, Tabari, 430:

22 ամիններուն կ'իյնար · 984ին նաւասարդ 1 կը համապատասխանէր մարտ 25ին, իսկ մարերի 1՝ դեկտ · 21ին · այս տարւոյն մարտ 23ին կ'իյնար զատիկը եւ Նոր կիրակին նոյն ամսոյն 30ին ։ Յամենայն դէպս Ուխտանէս նոր լոյս մը չի տար ժամանակագրութեան համար ։ Եւ սակայն Մ . Օրմանեան յեցած այս ոչ վստահելի տեղիքին՝ հետեւցուցած է , թէ Աբրահամ ապրիլ 30ին ձեռնադրուած ըլլայ (Ազգապատում , Ա · 616) ։

Յաջորդ տարին, Խոսրովի ԺԸ (608/9) գրաւուեցաւ Կարնոյ քաղաքը, ուր կը գըտնուէր Յովհաննէս կաթողիկոս ։ Խոսրովի ԻԱ (610/611) տարւոյն տեղահան ըրին Կարնեցիները Ահմատան շահաստան · «ընդ նոսին ըմբռնեալ եւ երանելի ծերունի կաթողիկոսն Յովհան ի գերութիւն վարեցաւ հանդերձ ամենայն սպասուք եկեղեցւոյն ։ Եւ անդէն վախճանեալ բերաւ մարմին նորա ի գիւղն Աւան՝ յեկեղեցին, զոր ինքն շինեաց» (Սեբէոս , էջ 77—78) ։ Յովհաննէս ընտրուած էր 593/594ին եւ վախճանեցաւ 611ին ։ Ստ . Ասողնիկ կը գրէ · «որ կալաւ զաթոռն ամս ԺԶ» (էջ 86) , որ կը համապատասխանէ ժամանակագրութեան · իսկ Յովհ · Դրասխանակերտցի (43) , Սամուէլ (77) եւ Վարդան (60) ունին ԻԶ ։

Աբրահամ կաթողիկոս , ընտրուած 608 ապրիլին , նոյնպէս վախճանեցաւ 611ին (Սեբէոս 78) ի Դուին ։ Յովհաննէս Դրասխ ·

(43 էջին), Ասողնիկ (86), Սամուէլ (76) կու տան իրեն ԻԳ տարի. ուղիղն է՝ Գ տարի (608—611)։

Աբրահամ խնդիր ունեցաւ Ցուրտաւի Մովսէս եպիսկոպոսի համար Վրաց Կիւրիոն կաթողիկոսի հետ, որուն գրեց երեք թուղթ, յորդորելով, որ նզովէ Քաղկեդոնի ժողովը եւ ընդունի Ցուրտաւի եպիսկոպոսը։ Երբ մերժեց Կիւրիոն, հանեց Աբրահամ շրջաբերական թուղթ մը, որով կը պարտաւորէր իր հաւատացեալները խզել ամէն յարաբերութիւն Վրաց հետ։ Այս թուղթէն պատճէն մը ուղարկեց Աղուանից ալ, որոնք նոյնպէս քաղկեդոնականներ էին։ Այս շրջաբերականէն հատուած մը դոյզն փոփոխութեամբ ներս առնուած է Աղուանից պատմութեան մէջ (Բ. 47, էջ 307)։ Աղուանից եկեղեցւոյ տեղապահները՝ Մխիթար Ամարասի եւ Սիմէոն Մեծկողմանց եպիսկոպոսները պատասխանեցին այդ շրջաբերականին։ Դժբախտաբար այդ թուղթին պատճէնը չէ պահուած ոչ Թղթոց գրքին եւ ոչ ալ Աղուանից պատմութեան մէջ։ Ունինք միայն Աբրահամ կաթողիկոսի կողմէ Վրթանէս Քերդողի գրած պատասխանը շատ վնասուած ընագրով (Գիրք Թղթոց, 196—211։ Արարատ 1896, էջ 477—488։ Քաղուածաբար՝ Աղուանից պատմ. Բ. 49, էջ 313—317)։

Առանձին ուշադրութեան պէտք է առնել Բ. 48ի տեղիքս. «քանզի նորոգեալ էին ի Հայ-

տատան եկեղեցիս ուսմունք եւ էին յոյն լեզուին տեղեկագոյնք»։ Խօսքը 591—604 շրջանի դաւանաբանական վիճմանց մասին է, Հայոց եւ Յունաց մէջ։ 572/573ին, ինչպէս յիշեցինք վերագոյն, բազմաթիւ փախստականներ անցան հռոմէական սահման եւ մնացին այն տեղ, տոհմիկներ, եկեղեցականներ, ռամիկներ. անոնցմէ մաս մը զետեղուեցաւ Կ. Պոլիս, ուրիշներ այլ քաղաքներ։ Քանի տարիներու մէջ ուսումնասէրներն հմտացան հելլէն դպրութեան, եւ նոր սերունդը կատարեց դպրոցական ընթացք։ 590—606 շրջանին կազմուեցաւ յունաբան դպրոցը, եւ թարգմանուեցան իմաստասիրական, ճարտասանական եւ աստուածաբանական գրքեր, (Ա. եւ Բ. խումբ թարգմանութեանց), որոնք ապա ծառայեցին երկրին մէջ իբրեւ դասագիրք, եւ նորոգուեցան «ի Հայաստան եկեղեցիս ուսմունք»։ Աստուածաբանները դաւանաբանական վիճաբանութեանց համար կարեւոր աղբիւր ունեցած էին Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնքը։

## 16. ՊԱՏԿԵՐԱՄԱՐՏՔ
(Բ. 46)

Այս 600—608 չփոթ տարիներուն երեւան եկան երեք աբեղաներ՝ Յեսու, Թադէոս եւ Գրիգոր, որոնք «ի Մովսիսի կողմանէն», այսինքն Դուինի թեմէն էին։ Ասոնք միախորհուրդ ճանապարհ կ'ելլեն Դուինէն եւ կ'երթան Սոթից գաւառը, Սիւնեաց նա-

հանդի մէջ, Գեղամայ լճին հարաւ-արեւելեան կողմը. կը բնակէին վանքի մը մէջ, «զի կրօնաւորք էին»: Սիւնեաց աշխարհը 565ին բաժնուած էր Հայաստանի մարզպանութենէն եւ ենթարկուած Ատրպատականի մարզպանութեան, նաեւ եկեղեցին ելած էր Դուինոյ կաթողիկոսի իրաւասութենէն. Ձեռնադրութիւնը կը ստանար Աղուանից կաթողիկոսէն եւ աղերսի մէջ էր Երուսաղէմի պատրիարքին հետ: Այս վայրը ընտրած էին որոշ նպատակով մը: Հեռու, Դուինոյ կաթողիկոսարանի իրաւասութեան սահմանէն դուրս, պիտի քարոզէին պատերազմ «պատկերապաշտութեան» դէմ. պիտի քանդէին, եղծանէին եկեղեցիներու մէջ նկարուած նուիրական պատկերները, վասն զի Ս. Գիրքը, դրօշեալները եւ պատկերները իրրեւ անսուրբ, իրրեւ կուռք դատապարտած են. «ոչ է արժան, ասեն, նկարս եւ պատկերս յեկեղեցիս առնել». «զի անխօսք են եւ անբանք», «հոտ դայ ի դեղոյն» պատկերաց: «Սկսան ուսուցանել, եթէ զպատկերս... ի բաց ջնջեցէք»:

Բացի պատկերներէ անոնք «սկսան ուսուցանել... ընդ աշխարհական (ամուսնացեալ) քահանայս մի հաղորդիք»: Ասոր վրայ աւելցնելու է եւ տեղիքս. «ոմանք պատկերս ոչ ընդունին, ոչ աղ օրհնեն եւ ոչ պսակ դնեն հարսանեաց, յայս պատճառս, թէ քահանայութիւն բարձեալ է յերկրէ»:

Ինչպէս կը տեսնուի Վրթանէս Քերդողի գրուածքէն, քարոզութիւնը եղած է բանիւ եւ գրով:

Այս նորաղանդ վարդապետութիւնները խռովութիւններ կը յարուցանեն գաւառին մէջ: Առանց տարակուսի տեղական քահանաներու բողոքի ձայնը լսուեցաւ Սիւնեաց եպիսկոպոսարանը: Եւ որովհետեւ այդ երեք հերետիկոսները Դուինէն եկած էին, Սիւնեաց եպիսկոպոսը տեղեկացուց խնդիրը Մովսէս կաթողիկոսին: Կաթողիկոսը անյապաղ ուղարկեց հրաման այդ երեքին. «փութով այսրէն եկայք»:

Անոնք չեն անսար հրամանին: Բայց ինքնակամ կամ բռնի կը հեռանան Սիւնիքէն, կ'անցնին Արձախ, Աղուանից աշխարհը, որ նոյնպէս դուրս էր Մովսէսի իրաւասութեան սահմանէն: Այս կը պատահի 600—603 տարիներուն: Երբ կաթողիկոսը իր «գինուորներուն» կը հարցնէ, թէ ինչ եղաւ այդ երեք աբեղաներու խնդիրը, ծերունին չվրդովելու համար՝ կը պատասխանեն թէ անոնք քաղկեդոնական եղած են. «զոր վասն Հոռոմայականին էր թիւրութիւն՝ ետուն պատճառս»: Բայց իրենք «գրեցին նամակ (առ եպիսկոպո՞սն Սիւնեաց), թէ մի ոք իշխեսցէ խօսել ընկերս որ յեկեղեցիս են»: Այս թուղթն է Վրթանէս Քերդողի «Յաղագս պատկերամարտից» գրուածքը:

Պատկերամարտք, որոնք գացին Աղուանք, չարունակեցին իրենց քարոզութիւնը նաեւ

այստեղ. «պղտորեցին զերկիրդ ձեր, ապա Գարդմանայ տէրն կալեալ զերեսին արան... ետ կապանօք ածել ի Հայս» (608/609)։

Աղուանից կաթողիկոսն էր Վիրոյ, որ Տիզբոնի մէջ արգելափակուած էր. եկեղեցական գործերը կը կառավարէին եպիսկոպոսները։ Այս շրջանին տեղապահներն էին Մխիթար Ամարասայ եւ Սիմէոն Մեծկողմանց եպիսկոպոսները։ Գարդմանայ տէրն էր հաւանօրէն Վարազ-Գրիգոր։

Երբ ատենի առջեւ եկան երեք պատկերամարտները, «յանդիման մեզ», կը գրէ Նամակագիրը, «հարցաք թէ Յո՞ր պատճառս չընդունիք զմարմնացելոյ Աստուծոյ զպատկերն»։ Կը պատասխանեն. «մեք ոչ պագանեմք երկիր պատկերաց, զի ոչ ունիմք հրաման ի Գրոց»։ «Ապա մեք յայտ արարեալ... զայս եւ զայլսն նմանս... զթիւրութիւն նոցա ուղղեցաք»։ Նամակագրին յոգնակի առաջին դէմքով արտայայտութիւնները ցոյց կու տան, թէ ինքը ներկայ էր ատեանին եւ մասնակից դատող գիտնականներուն։

Այն ապացոյցները զորոնք յառաջ կը բերէ Նամակագիրն ի նպաստ պատկերայարգութեան, ընդարձակ ներկայացուած էր Վրթանէս Քերթող իր Ընդդէմ պատկերամարտից թուղթին մէջ։

Նամակագիրս եւ Ընդդէմ պատկերամարտից թուղթին հեղինակը կը նոյանան։

Շարժում մը, որ տկար ոյժերով, անձուկ սահմանի մէջ հազիւ տասնամեայ չըր-

*ջան մը բոլորեց եւ դադարեցաւ, առանց հետք մը թողնելու։*

*Թէ Վրթանէս Քերդող եւ թէ նամակագիրը միաբան կը վկայեն թէ մինչեւ այս հերետիկոսները «ոչ ոք ի նոցանէ (Հայ նախահայրերէն) վասն պատկերաց եւ նկարողաց եկեղեցւոյ բանս ինչ ոք արար»։ Վրթանէս իր ընդդիմաբանութեան մէջ թէպէտ կը յիշէ, թէ «Մանիքեցիքն, Մարկիոնացիքն առ աչօք համարին զճշմարտութեամբ մարմնանալն Փրկչին. եւ յորժամ տեսանեն զպատկերս դժգմին, զայրագնեալք՝ մատուցեալ թշնամանեն» (էջ 322), բայց որեւէ ակնարկութիւն չ'ըներ, թէ անոնց ազդեցութեան տակ եղած ըլլան մեր պատկերամարտները։ Հաւանօրէն Մանիքեցիներ էին այն փախստական Խուժիկ Նեստորականները, որոնք Զ. դարու կէսին Դուին տաճար մ'ունէին եւ 554/555 տարւոյն Ներսէս Աշտարակեցի տաճարը կործանեց եւ աղանդաւորները տարագրեց։ Կ'ըսուի թէ անոնք Մովսէս կաթողիկոսի օրով Վրաստան վերբերեցան եւ կաթողիկոսը զգուշացուց Կիւրիոն կաթողիկոսը։ Այս Խուժիկ Նեստորականները, որոնք Ներսէս կաթողիկոս Պաւղիկեանց հետ նոյնացուցած էր, Է. դարուն «Նեստորական» անուանեցան եւ «Նեստորականներն» ալ Քաղկեդոնականներու հետ նոյնացուեցան եւ այսպէս Ներսէսի նզովքը Խուժիկ–Նեստորականներու հասցէին, մերձեցուեցաւ Քաղկեդոնականներու։ Սամուէլ Անեցի իր ժամա-*

նակագրութեան մէջ, յամի 590 կը գրէ թէ «Եկին ի Հայս Ասորիք, արք քաջարանք եւ կամէին սերմանել զաղանդն Նեստորի (Մանիքեցիք) եւ Նզովեալք հալածեցան. բայց ոմանք ընկալան. նոքա թարգմանեցին գիրս սուտս... (Անվաւերական գրութիւններ). եւ որ հաւատայ նոցա՝ նզովի» (էջ 76—77):

Այս պայմաններու տակ ժամանակը ընդունակ էր անհեթեթ յղացումներու եւ հրեշային ծնունդներու:

Ինծ կը թուի, թէ Պատկերամարտութիւնը Հայաստանի մէջ ինքնաբոյս էր եւ ոչ արտաքուստ եկած վարդապետութիւն: Պատկերամարտներն երբ առեան հանուեցան, միաբերան ջատագովեցին իրենք զիրենք, թէ չենք ընդունիր պատկերները, վասն զի «արտաքոյ է պատուիրանաց. ...կռապաշտից է գործ այդ, որոց զամենայն արարածս ի պաշտօն էր առեալ. մեք ոչ պագանեմք երկիր պատկերաց, զի ոչ ունիմք հրաման ի Գրոց»: Նոյնը խոստովանած են գրով, ինչպէս յառաջ կը բերէ Վրթանէս իր ընդդիմագրութեան մէջ. «Ոչ է արժան, ասեն, նկարս եւ պատկերս յեկեղեցիս առնել. եւ բերեն վկայութիւն ի Հին Կտակարանաց, զոր վասն կռապաշտութեան հեթանոսացն էր ասացեալ. վասն որոյ եւ ամբաստան լինէին մարգարէքն» (էջ 299): Վրթանէս կը պատասխանէ. «Թէ մերոյ բանիցս ոչ հաւատայք՝ զԳիրս պարտ է քննել եւ ի վերայ հասանել. բայց դուք ի Գրոց այնչափ հեռի էք որպէս երկինք յերկրէ» (302):

«Որ հակառակարանեն եւ ասեն. Վասն այնորիկ խոտան համարիմ զի անխօսք են եւ անբանք» (305)։ «Որ ասէքդ թէ հոտ գայ ի դեղոյն... ասէք թէ ձեռագործք են» (308)։

Այս տեղիքները ցոյց կու տան, թէ մեր պատկերամարտները Ս. Գրոց ընթերցմամբ հասած են այս իմաստութեան։

Նամակագիրը կը յիշէր, թէ Պատկերամարտ հերձուածողներս կը քարոզէին նաեւ թէ «ընդ. աշխարհական քահանայս մի հաղորդիք»։ Այս մասին Վրթանէս ոչ մէկ խօսք ունի։ Բայց Աղուանից պատմիչը, հաւանօրէն այս նամակէն առնելով, կ՚աւելցնէ նախադրութեան մէջ թէ «ոմանք պատկերս ոչ ընդունին, ոմանք մկրտութիւն ոչ առնեն, ոչ աղ օրհնեն եւ ոչ պսակ դնեն հարսանեաց, յայս պատճառս, թէ քահանայութիւն բարձեալ է յերկրէ»։ Անշուշտ երբ կը քարոզուի թէ ամուսնացեալ քահանաները ոչ մկրտութիւն, ոչ պսակ եւ ոչ աղօրհնէք պիտի կատարեն, թերեւս նաեւ թաղում պիտի չընեն, ինքնին պիտի բարձուէր քահանայութիւնը։ Այս՝ պատկերամարտութենէն աւելի աղանդաւորութիւն պիտի դառնէր։ Այս մասին աւելորդ են անդրադոյն ենթադրութիւններ, քանի որ չունինք ձեռքի տակ վաւերագիրներ։

Մինչեւ այսօր կասկած կար Վրթանէս Քերդողի Ցաղագս Պատկերամարտից գրութեան ժամանակի մասին։ Այժմ կարող ենք հանգիստ սրտով վճռել, թէ Վրթանէս Քեր-

դող 601/602ին գրեց Յաղագս պատկերամարտից Թուղթը եւ 609/610ին իր նամակն առ Սիմէոն եպիսկոպոս Մեծկողմանց, վերջինս քաղուածաբար մեզի հասած:

Վրթանէս պատկերամարտներու գլուխը կը համարի Թադէոսը. սա, ինչպէս կ'երեւայ, իր նորաղանդ վարդապետութիւնը նաեւ գրաւոր. փաստել փորձած է: Այսպիսի գրուածք մը ձեռք ձգած է Վրթանէս, ուսկից կոչումներ ալ յառաջ բերած է իր ընդդիմագրութեան մէջ. այսպէս. «եւ գրեալ էր (Թադէոսի) թէ Զպատկերս յեկեղեցիս Պապ տարաւ» (306): Այսինքն առաջին անգամ Պապ թագաւորն էր, որ եկեղեցիներու մէջ պատկեր մուծուց: Առ այս կը պատասխանէ Վրթանէս. «Ամենեցուն յայտնի է թէ սուտ խօսիք. քանզի ի Հայք պատկերս ոք չգիտէր առնել մինչեւ ցայժմ, բայց ի Հոռոմոց բերէին. եւ քան զՊապ յառաջ այլ թագաւորք էին եւ պատկերս եւ նկարս առնէին յեկեղեցիս Քրիստոսի»: Ե. Դուրեան կը գրէ թէ «հաւանօրէն» Փաւստոսի Ե. 31 տեղիքս կ'ակնարկէ Թադէոս. «ընդ բազում տեղիս Հայոց կուռս կանգնեցին ի համարձակութենէ թագաւորին (Հայոց Պապայ) ...բազումք պատկերս կանգնեալ երկիր պագանէին» (Դուրեան, 306, ծան.): Այս տեղ Փաւստոս որեւէ ակնարկութիւն չ'ըներ, թէ այդ «կուռքերն» եւ «պատկերները» Պապի հրամանով եկեղեցիներու մէջ կանգնուած ըլլան: Բայց աղանդաւոր մը կրնար շահագործել զայն եւ պատ-

կերպերու մուտքը եկեղեցւոյ մէջ վերագրել այն թագաւորին, որ Ներսէսի կարգադրութիւնները տապալեց եւ նոյն իսկ անոր մահուան պատճառ եղաւ։

Վրթանէսի համաձայն «սկիզբն մոլին Թադէոս եւ Եսայի (Յեսու) եւ ընկերք նոցին... զյոլովս ընդ իւրեանս ի յետ կացուցին, որպէս զձեզդ» (էջ 307)։

Ինչպէս Պատկերամարտութիւնն առաջին անգամ Հայաստանի մէջ երեւցաւ, այնպէս ալ առաջին անգամ Հայաստանի մէջ հերքուեցաւ։ Վրթանէս Քերթողի Պատկերայարգութեան այս ջատագովութիւնը քրիստոնէական–եկեղեցական մատենագրութեան մէջ իր առաջնութիւնն ունի։ Ջատագովական մը, որ հիմնուած է Ս. Գրոց եւ Ս. Հարց եւ Եկեղեցական Աւանդութեան վրայ, հիւսուած մտաց առողջ դատողութեամբ։ Արդիւնքը եղաւ պատկերամարտութեան պարտութիւնը։ Երբ արեւմուտք, Ը—Թ. դարերուն պատկերամարտութիւնք կայսերական հովանաւորութեամբ սկիզբ առաւ եւ սաստիկօրէն բորբոքեցաւ, պատկերաց ջատագովները գրեթէ նոյն վկայութիւնները յառաջ բերին[1], ինչ որ Վրթանէս գործածած էր իր ջատագովականին մէջ։

Ասոնք են

1. Ելից ԻԵ. 18—ԼԷ 9 (քաղուածօրէն)։

[1] Sirarpie der Nersessian, Une apologie des images du septième siècle: Byzantion 17 (1944/45) 58—87, յատկապէս էջ 77—78։

2. *Գ. Թագաւորաց Զ. 23:*

3. *Եզեկիէլ Խ. 2—ԽԱ. 20:*

4. *Գործք Առաքելոց. Ժէ:*

5. *Թուղթ առ Եբրայեցիս Թ. 5:*

6. *Լաբուբնա* (*էջ* 301. *Հմմտ. Լաբուբնա, էջ* 6):

7. *Գիւտ խաչի* (305):

8. *Եւսեբիոս Կեսարացւոյ Եկեղ. Պատմութիւն* (*էջ* 303). *Է.* 17, *էջ* 557:

9. *Յովհաննէս Ոսկեբերանի երկու ճառերը* (301):

10. *Ագաթանգեղոս* (302). *էջ* 46—47 (*Բնն. հրտ.*), *քաղուածաբար:*

11. *Սեբերիանոսի* (*Սեւերիանոսի*) *ճառ* (301/302): *Կ'ակնարկուի Սեբերիանոս Գաբաղացւոյ մէկ ճառը, որ անծանօթ է ինծ: Ա. Տէր Ներսէսեան, անդ,* 78 *կը հաստատէ, թէ տեղիքս Սեբերիանոսի անունով յառաջբերած է նաեւ Յովհ. Դամասկացի.* Migne, P. G. XCIV, 1409 A.

*Յովհաննէս Ոսկեբերանի ճառերէն յառաջ բերուած վկայութիւններն այս տեղ կը ներկայացնեմ, անոնց դիմաց դնելով բնագիրները, որոնք հրատարակուած են Ոսկեբերանի հայերէն թարգմանուած ճառերուն մէջ:*

Յովհան Կոստանդնուպոլսի եպիսկոպոսն յայնմ ճառի որ ասէ. Առ յուսաւորեալսն ասացեալ. եւ փոքր մի յառաջ մատուցեալ ասէ

Առ յուսաւորեալսն ասացելոյն յուսացմամբ Մարիամայ.

| | |
|---|---|
| *Զոր օրինակ պատկերք պղնձիք թագաւորականք անշունչք են եւ անզգայք, որք փախչին ի նոսա մարդիկ ապրեցուցանեն, անշունչք են եւ անզգայք. ոչ զի պղինձ է, այլ վասն զի թագաւորի պատկեր է:* | *Զոր օրինակ պատկերք պղնձիք թագաւորականք անշունչք են եւ անզգայք, որ փախչին ի նոսա մարդիկ՝ զշնչաւորս եւ որք ունին զգայութիւնս ապրեցուցանեն անշունչքն եւ անզգայքն, ոչ զի պղնձի է, այլ վասն զի թագաւորի պատկեր է (Մեկնութիւն Թղթոցն Պաւղոսի. Բ. 844—845):* |
| *Եւ դարձեալ յայնմ ճառի որ ասէ* Ոչ պարտ է անցանել զաստուածային գրով. *եւ այս ասէ.* | Եւ որս բողին զժողովն եւ յաղագս ոչ զանց առնելոյ զվերագիր աստուածային Գրոց եւ ի գիր մեհենին եւ ի նոր յուսաւորեալսն: |
| *Ո՞չ տեսանէք ի թագաւորական պատկերսն, զի ի վեր անդ կայ պատկերն եւ զթագաւորին ունի գրեալն. եւ ի խոնարհ ի խարսխին գրեալ են թագաւորին նահատակութիւնք, յաղթութիւնք, իրաց ուղղութիւնք, նոյնպէս եւ ի մաշկին է տեսանել, (զի) գրեալ է թագաւորական պատկերն ի վերայ եւ ի ստորեւ առաքինութիւնքն, յաղթութիւնքն ամենայն:* | *Ո՞չ տեսանէք եւ ի թագաւորական պատկերսն, զի ի վեր անդ կայ պատկերն եւ զթագաւոր(ի)ն ունի գրեալ. իսկ ի խոնարհ ի խարսխին գրեալ են թագաւորին նահատակութիւնք, յաղթութիւնք, իրաց ուղղութիւնք: Նոյնպէս եւ ի գիրսն է տեսանել. գրեալ է թագաւորական պատկերն ի վերայ եւ ի ստորեւ գրեալ լինի յաղթութիւնն, առաքինութիւնն, ուղղութիւնք ամենայն (Ճառք, Վենետիկ 1861, էջ 287):* |

## 17. ՍՈՂՈՄՈՆ ՄԱՔԵՆՈՑԱՑ ՎԱՆԱՀՕՐ ԹՈՒՂԹՆ ԱՌ ՍՈՂՈՄՈՆ ԳԱՌՆԵՑԻ

(Բ· 48)

*Այդուանից պատմագիրը խօսք առած պատմելու 591—606 շրջանի դէպքերը, Հայոց եւ Յունաց մէջ յուզուած վէճերը, յանկարծ կ'ընդհատէ պատմութիւնը եւ կ'անցնի ուրիշ միջադէպքի·*

1· «Այլ Հայք համբաւէին զՅովհաննէ Մայրագոմեցւոյ, եթէ ի կողմն Յունաց լեալ՝ հակառակ քերի· որոյ զրպարտութեան պատճառ էր Սողոմոն ումն միանձնեայ, որ յետոյ (790) եղեւ կաթողիկոս: Եւ նորա հարցեալ զվարդապետն իւր զՍողոմոն, որ Մաքենացւոցն էր հայր: Նա գրով ուսոյց զայս, եթէ «Ոչ պարտեցան Հայք ի հաւատոյ մասին, այլ այսուիկ յոյժ եղեն պարտեալ, զի առաջին Յոյնք, եթէ կարգեաց Աստուած զեկեղեցի ինն դասուք» (էջ 308, տ· 17—309, տ· 7):

*Յովհաննէս Մայրագոմեցի, որ ծնած է իբր 610ին եւ վախճանած 684ին*[1]*, հրապարակ ելաւ իբր 640ին: Սողոմոն միանձնաւոր, աշակերտն Սողոմոն հօր, վախճանած է իբր 790ին յետ միամեայ կաթողիկոսութեան, յառաջացեալ տարիքի մէջ*[2]*, ուստի ծնած*

---

[1] *Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին. հատոր Ա. Երեւան* 1934, *էջ* 47:

[2] *Յովհ. Դրասխանակերտցի, Մոսկուա* 1853, *էջ* 63:

իրր 710ին։ Որովհետեւ գրպարտուող եւ գըր-պարտիչ ժամանակակից չեն, պէտք է խմանալ թէ իրր 740ին վիճաբանութիւն մը եղած է 100 տարի յառաջ պատահած խնդրոյ մը մասին, որ չէր կրնար 591—606ի վէճերու հետ աղերս ունենալ։

Միանձնաւոր Սողոմոնը կը դիմէ իր ուսուցչին անոր կարծիքը հարցնելու։ Մեծն Սողոմոն կը պատասխանէ գրաւոր։

Մաքենոցայ հօրանց հայրը անուանի էր իբրեւ գիտնական, իմաստասէր եւ առաքինի անձ. ան կը յիշուի 726ին Մանազկերտի ժողովին ներկայ եպիսկոպոսներու եւ վարդապետներու թւուին մէջ[3]։ 735ին հանդիպում կ'ունենայ Վահան Գողթնացւոյ[4]։

Աղուանից Միքայէլ Կաթողիկոս (707—742) «կոչէ առ ինքն զհռչակելի այրն զՍողոմոն, որ Մաքենոցաց էր առաջնորդ ուխտին սուրբ եւ ըստ ժամանակին Հայաստանեայցն էր պարծանք», երբ կը գումարէ Ծամքորի Բերդոյ վանքի ժողովը[5]։ Յովհաննէս Դրասխանակերտցւոյ համաձայն իրր 750ին Սողոմոն կը թողնու Մաքենոցաց վանքը եւ կ'երթայ Շիրակի Զրեակ վանքը, իրեն կը հետեւին Մաքենոցաց վանքի վանականնե-

---

[3] Chronique de Michel le Syrien, ed. J.-B. Chabot, t. II, Paris 1901, p. 497—498.

[4] Սոփերք հայկականք, ԺԳ., էջ 33։

[5] Պատմութիւն Աղուանից, Գ, 13, էջ 359—360, հմմտ. նաեւ 393։

րան կէր, անոնց թուին մէջ էր Սաղմոն միանձնաւորը[6]:

Մխիթար Այրիվանեցի յաման ՃԾ—ՃԿ (701—711) կը գրէ. «Հայր Սաղման արար զՏօնականն ի Մաքենիսն[7]: Նոյնը կը կրկնէ Ստ. Օրբելեան[8]: Կանոնարկեն Մաշի Առաքելոց վանքի ճառընտիր-Տօնականը, որ գրած է Վարդան Բարերդացի 1204ին պատ–րան Աստուածատուրի համար: Այս մեծադիր երեքիջեան հոյակապ ձեռագիրը ոչ շատ տարիներ յետոյ կը գնուի Առաքելոց վանքի համար:

Ճառընտիրիս սկիզբը զետեղուած է նախարան մը այսպիսի սկզբնաւորութեամբ.

«Սկիզբն պատմութեանց աստուածաբեալ և որբագրանացուն վարդապետութեանց հոգիացուցելոց սրանց սրբոց հարց, եպիսկոպոսաց և վարդապետաց հաւաքիչք. զա ի միմեանց ասացելոց և ասացիչք համբարչութիւնս ամենայնի հերձուածողացն:

Զայնուհե պատուածարան հայրապետաց գլխաւորանչիրան ասացեալ ճառս հոգիախաւս վարդապետութիւնս, զորում (ա՛յսպէս) ի վանան կարգադրութիւն ժողովեալ ան Աստուծոյ Սաղմոնի Մաքենոցաց ուխտին առաջնորդ, ի գաւառին Գեղաքունի, որ

[6] Յովհ. Դրասխանակերտցի, էջ 62—63:

[7] Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն ժամանակագրական, Պետերբուրգ 1867, էջ 66:

[8] Ստեփաննոս Օրբելեան, Մոսկուա 1861, էջ 96:

յորջորջեցաւ յանուն նախարարին Գեղամա, ի Թուականին ՃՂԶ (747)․ և պատշաճեալ յաղագս բառ զրման ընթերցուածին, զոր ի սորայն Յակոբայ և ի Կիւրղէ հաստատեցաւ․ բառ նմին կարգի եղին զոր ի սմայս են կարգք եկեղեցականք․ անուանելով Տօնական յաղագս սկզբան տարւոյն մինչև ի կատարումն նորա, որ ունի զընթերցումն զիշերային պաշտաման, զտէրունական տօնից և զյիշատակ սրբոց մարգարէից և առաքելոց․ և մարտիրոսաց և հայրապետաց և Թագաւորաց, յորում արարիչն առնի յաւիտեանս»[9]:

Նոյնը կը կրկնուի բառ իմաստին ուրիշ անանուն գրչէ ճառընտրի մէջը:

«Այս ունի իմաստուն, որոյ անուն Սողոմոն, ոչ ինչ համառօտ ամօք նախագոյն եղեալ, յաշխարհէ Արեւելից... վանաց վանական Մաքենոենից ուխտական, սրբազարդից արանց առաջնորդի... զհաստատեալ կանոն տօնից... հաղեպատումն ճառից պատմութեանց...»[10]:

Այս տեղ խօսքը Տօնականի, այսինքն ճաշոց գրքի կարգաւորութեան մասին է: Կար Երուսաղեմեան Տօնական, որ Ծննդէն մինչև Հոգեգալուստ շրջանը կ՚ընդգրկէր:

---

[9] Հմմտ. Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Բ. էջ 437:

[10] Գարեգին Կաթ. Յովսէփեան, Յիշատակարանք ձեռագրաց, հատոր Ա., Անթիլիաս 1951, 710:

Կ՚ըսուի թէ Սողոմոն 747ին նոյն ծրագրով կարգաւորեց եկեղեցական տարւոյն բոլոր տօները, իւրաքանչիւրին համար պատշաճ ընթերցուածներ նշանակելով. «ընթերցուածն գիշերային պաշտաման վասն տէրունական տօնից, յիշատակին սրբոց մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց, հայրապետաց եւ թագաւորաց» [11]:

Վարդան Բարձրբերդացի իր ճառընտիրը կազմած է այս եկեղեցական տարւոյն հետեւելով, իւրաքանչիւր տօնին եւ յիշատակին համար հաւաքելով պատշաճ ճառեր, Մեկնաբանական հատուածներ, վարքագրութիւններ եւ վկայաբանութիւններ:

Տակաւին չէ հասած մեզի Տօնական մը, որ լրիւ պահած ըլլայ Սողոմոնի կարգաւորութիւնը:

Շատ կասկածելի է, որ Վարդան 1204ին այդ Տօնականի կարգին հետեւած ըլլայ, երբ հրապարակը Գրիգորիս Վկայասէրի Տօնականը բռնած էր:

Թուղթը, զոր Աղուանից պատմիչը Սողոմոն հօր կը վերագրէ, կարօտ է մանր քննութեան. վասն զի այն՝ այլուր ծառայած է յետագայ սերունդին.

ա. Փոխի առ Զաքարիա Թուղթին հայ խմբագիրը.

բ. Յովհաննէս Դրասխանակերտցի իր Պատմութեան մէջ.

---

11 Հ. Ղ. Ալիշան, Սիսական, Վենետիկ 1893, էջ 66—67:

գ. Ուխտանէս, Բ. 63—65 (էջ 119—124):

դ. Մաշտոցի Թուղթ առ Գէորգ կաթողիկոս[12]:

ե. Գաւազանագիրք Հայոց[13], էջ 147—148.

զ. Ստեփաննոս Օրբէլեան, գլ. ԻԴ—ԻԶ:

Հ. Բ. Սարգիսեան համարած է Թուղթս «Մաքենոցաց հուշակաւոր վանահօր Սողոմոնի վաւերական մէկ յիշատակարանը[14]»: Բայց քննութիւնը չարդարացներ անոր վաւերականութիւնը: Տեսանք վերագոյն թէ Թուղթիս պատճառը պատմական հիմ չունէր: Ժամանակակից են արդարեւ երկու Սողոմոնները, մին ուսուցիչ եւ երկրորդը աշակերտ, երկուքն ալ Մաքենոցաց վանքէն, Սիւնեցի համշիրակներ, բայց Թուղթիս մէջ ցոյց չեն տար, թէ իրենք հայազգի են, հայ Եկեղեցւոյ պաշտօնեաներ: Ուշադիր ընթերցող մը չի գտար թէ նամակագիրը հայ է: Ան կը խօսի երրորդ դէմքով. «Ոչ պարտեցան Հայք... եղեն պարտեալ... պարտեցան Հայք... եկեղեցի նոցա» (Հայոց): Այսձեւ օտար մը կը խօսի եւ ոչ ընտանին: Այդ

---

[12] Հրատարակուած Արարատ 1902, էջ 751—752: Համա. իմ Կիւրիոն Կաթողիկոս Վրաց, Վիեննա 1909, էջ 248—249:

[13] Գաւազանագիրք Հայոց, հրտ. Վ. Վ. Բաստամեանց, Վաղարշապատ 1880, էջ 147—148, 248—258:

[14] Հ. Բ. Սարգիսեան, Անանիա Թարգմանիչն եւ իր գրական գործոց նմուշներ. Վենետիկ 1899, էջ ԺԲ. ծան. 2:

*օտարը յոյն չէ։ Կարող է այն միայն աղուան ըլլալ, ժամանակով Զ. դարու երկրորդ կէսէն, դաւանութեամբ քաղկեդոնական։*

*Այն հատակտորները, որոնք յառաջ բերուած են Աղուանից պատմութեան մէջ, առնուած են հաւանօրէն Աղուանից Թղթոց գիրքէն։*

2. «Ասացին Յոյնք եթէ կարգաւորեաց Աստուած զեկեղեցին իւր դասուք, որպէս ի վեր անդր երկնայինքն. նոյնպէս զահակալե-ցան եւ ի ներքին խորանիս (1) Պատրիարք, որ է հայրապետ. (2) Արքեպիսկոպոս, որ կոչի եպիսկոպոսապետ եւ կաթողիկոս. (3) Մետրապոլիտ, (4) Եպիսկոպոս, (5) Քահա-նայ, (6) Սարկաւագ, (7) Կիսասարկաւագ, (8) Ընթերցող եւ (9) Փսաղտ։ Արդ... խոս-տովան լերուք, եթէ ո՞վ է պատրիարքն ձեր, զի չորք միայն կացին (պատրիարք) ի վերայ երկրի։

1. Աղեքսանդրիոյ. Մարկոսի աթոռն.
2. Անտիոքայ, Մաթէոսին.
3. Հռովմայ. Ղուկասուն եւ
4. Եփեսոսի. Յովհաննուն...։

Արդ մեք ամենեցուն հնազանդիմք. հնա-զանդեցարուք եւ դուք միում ի նոցանէ կամ ամենեցուն, որ մի հաւատ լինիմք։ Քանզի ձեր սուրբն Գրիգոր ի Կեսարիա եպիսկոպո-սապետ միայն ձեռնադրեցաւ եւ յետ նորա մինչեւ ցայսօր։ Ապա եթէ այլոյ եկեղեցւոյ ուղղափառ էք, զատ յայնցանէ, ցուցէք

զպատրիարքն . ընդ որում դասի արքեպիսկոպոսն ձեր , որ մինչեւ ցայսօր ընդ մեօք էր [1] : Ապա եթէ պատրիարք ոչ ունիք եւ ոչ զայլ կղերիկոս եկեղեցւոյ քովանդակ , յայտնի խոտորեալ ներձող էք ընդ Արիոսի եւ ընդ այլ խուժադուժն եւ չարափառս» :

Այսուհետեւ անպատասխանի լինէին Հայք . զի այնպիսի դրութեամբ վարէր եկեղեցի նոցա» :

3 · Իսկ ի թագաւորելն Յուստինիանոսի . փոխեաց զնշխարս սրբոյն Յովհաննու աւետարանչին ի Կոստանդնուպոլիս եւ հաստատեաց անդ զաթոռն հայրապետական եւ թուն աթոռն մնաց անդէն յեփեսոս : Նոյնպէս եւ զՄատթէոսին փոխեաց յԱնտիոքայ յԵրուսաղէմ · առէ · Զի քաղաք է մեծի արքային · եւ թուլն մնաց յԱնտիոք :

Ցայնժամ շարժեցան ամենայն մեծամիտք · եւ ուր առաքեալ էր վախճանեալ՝ զամենեցուն աթոռսն պատրիարք խոստովանեցան (309 , տ · 5—310 , տ · 18) :

*Թ . 1 · Հատուածը կ'ենթադրէ ըստ երեւութին ժամանակ մը , որ Յուստինիանոս կայսեր գահակալութենէն առջ կ'իյնայ : Յուստինիանոս Ա · գահ բարձրացաւ 527 , ապրիլ 1ին եւ վախճանեցաւ 565 նոյեմբերին : Ոչ Յունաց եւ ոչ Հայոց տարեգրութեանց մէջ արձանագրուած է , թէ այն շրջանին Հայոց եւ Յունաց մէջ նուիրապետութեան հարցին վէճ յարուցուած ըլլայ եւ Հայք պար–*

տութիւն խառնակուած ըլլան։ Կը յիշուի միայն 591—606 տարիներուն, թէ Վրթանէս եւ Գրիգոր վարդապետ իբրեւ բանադրեալ Կ. Պոլիս եւ Թէոդուպոլիս աքսորուած եւ պարտուած ըլլան[15]։ Դաւիթ Մաշկան իր ժամանակագրութեան մէջ կը գրէ. «Եւ ի նորին (Մաւրիկ կայսեր) աւուրս եղեւ դարձեալ միւսանգամ ժողով Հայոց եւ Հոռոմոց վասն նորին աղանդոյն Քաղկեդոնի, ժողովին ի Կոստանդնուպոլիս. եւ եղեն պարտեալ Հայք[16]»։ Ժողովին նիւթն էր նուիրապետական հարցը. կը պահանջէին Յոյները, որ Մովսէս Կաթողիկոս ենթարկուի Կ. Պոլսոյ պատրիարքութեան եւ միացնէ Պարսից եւ Հռոմայեցւոց իշխանութեան տակ եղած Հայերու վրայ. եւ մերժեցին Պարսկահայք այս առաջարկութիւնը, Հռոմահայք ընտրեցին նոր Կաթողիկոս մը, Յովհաննէս Կոտայեցի։

Չեմ կրնար հաստատել, թէ հաւատածիս բովանդակութիւնը նոյնութեամբ Կ. Պոլսոյ ժողովին մէջ խմբագրուած ըլլայ. յատկապէս չորս պատրիարքական աթոռներու վերագրութիւնը չորս աւետարանիչներու, նորանշան աւանդութիւն մը, որ առաջին անգամ այստեղ երեւան կու գայ, եւ կ'որդեգրուի

[15] Սամուէլ Անեցի, 78, Մխիթար Այրիվանեցի, 64. «Գրիգոր եւ Վրթանէս վարդապետք գնացին ի Յոյնս եւ ոչինչ օգտեցուցեալ, գնան դարձան նզովելով»։

[16] Անանուն ժամանակագրութիւն, Վենետիկ 1904, էջ 76։

հայ ճառընտիրներէ ։ Եւ եթէ զայն նաեւ Փոտի առ Զաքարիա Կաթողիկոս գրած Թուղթին մէջ դնենք, զարմանանք միայն. վասն զի խաբուսիկ երեւոյթ է միայն ։ Այդ թուղթը գրուած է 878ին. որոյ սկզբնագիրը տակաւին չէ յայտնուած, ինչպէս նաեւ որոյ հայերէն թարգմանութեան հարազատ օրինակը չէ հասած մեզի. ինչ որ ունինք, անճարակ խմբագրի մը անպէտ յաւելուածներով ընդարձակուած եւ անխիղճ կրճատումներով անդամատուած խմբագրութիւնն է [17] ։ Կու տամ այս տեղ այդ հատուածը.

«Եւ արդ նոյն ինքն սուրբ եւ անոր աստուածութիւնն, որ ի չորեքկերպեանն հանգչի կենդանիս, որպէս եւ տեսան Եզեկիէլ եւ չորք յեղանակօք զաշխարհս զգացոյց եւ չորս գետս բաժանեալ յԵդեմայ, արբուցանել զաշխարհս. հաճեցաւ չորիւք աւետարանչօքն չորս աթոռս հայրապետութեան հաստատել. որով կատարի կաթողիկէ եկեղեցի լինել քառակի ճշմարտիւ եւ մշտնջենաւոր անճառելի տնօրինութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որք են աթոռք այսոքիկ.

Մատթէոս յԱնտիոք, եւ
Մարկոս յԱղեքսանդրիա, եւ
Ղուկաս ի Հռոմ, եւ

---

17 Ունիմ արտագրութեան տակ Վիեննայի Թ. 623, 783, Էջմիածնի Թ. 500, Պարիզի Թ. 130 ։

Յովհաննէս ի Կոստանդինուպոլիս, որ է Նոր Հռոմ·

Նաեւ զԵրուսաղէմի եպիսկոպոսն վասն սուրբ տեղեացն անուանեցին պատրիարք[18]»։

A. Mai, որ հրատարակած էր հայ բնագրին լատիներէն թարգմանութիւնը, պատշաճ համարած էր յաւելուածներէն ինչ ինչ տեղիքներ դուրս թողուլ· անոնց թուին մէջ նաեւ հատուածս։ Բայց իր մէկ աշխատութեան մէջ[19] անդրադարձած էր հատուածիս չորս աւետարանիչներու տարօրինակ պատրիարքական աթոռներուն։ Ան այս կը գրէր J. Hergen= röther· «Այսպիսի հատուած մը, որ ամէն պատմական եւ աւանդական վկայութենէ զուրկ է, կարելի չէ այնպէս դիւրաւ Փոտի մը վերագրել, չնայած անոր ամէն աւանդաւորական ձգտումին· եւ կը թուի որ անհաւանական չէ, ինչպէս Մայի կը նկատէ, թէ ուշ ժամանակի արեւելցի մը Թուղթիս մէջ ներմուծումներ[20] կատարած ըլլայ[21]»։ Եւ կը յիշէ Յովհաննէս Դրասխանակերտցի Պատ—

---

[18] Հրատարակած է հանդերձ ռուսերէն թարգմանութեամբ Ն. Մառ, Երուսաղէմի Թ. 633 ձեռագրէն, Православный Палестинскій Сборникъ ի ТОМЪ XI, 1։ Պետերբուրգ 1892, էջ 184—185։

[19] A. Mai, Nova bibliotheca Patrum, t. I, 1. Dissert. ed. n. 10, p. 49։

[20] J. Hergenröther, Photius, Patriarch von Constantinopel. Sein Leben, seine Schriften und das griechische Schisma. I. Band, Regensburg 1867, էջ 483, ծան. 51։

[21] Յովհ. Դրասխանակերտցի, էջ 28—29։

մութեան մէկ անցքը, որուն պէտք անդրադառնանք ստորեւ:

Յովհաննէս Դրասխանակերտցի իր Պատմութեան մէջ այս երկու հատուածները դասած է Դ. դարու շրջանին. «Կոստանդիոս (337—361), որդի Մեծին Կոստանդիանոսի, յԵփեսոսէ ի Կոստանդինուպոլիս զնշխարս ոսկերաց Յովհաննու աւետարանչին փոխեալ եւ յայնմանէ համարձակութիւն առեալ պատրիարքս ի Կ. Պոլիս կացուցանէ: Ապա ըստ նմին յայս պատճառի համարձակութիւն եւ Երուսաղեմացւոց առեալ՝ գերեանցն եւս աթոռ հաստատէին ի պատիւ պատրիարքութեան իւրեանց համարեալ, ըստ որում եւ ի նմա գոլ անեալ եղեւ Բանին Հօր ծնունդ...: Եւ վասն զի ցայն վայր չորք միայն էին ընդ երկիրս պատրիարքք ըստ չորից աւետարանչացն՝

Մատթէոսին յԱնտիոք,
Մարկոսին յԱղեքսանդրիա,
Ղուկայն ի Հռոմ, եւ
Յովհաննուն յԵփեսոս.

այս յայնմանէ իրակերութեանց վեց բաժանդակեալ կային[21]» (պատրիարքունք): Սոքա են 1. Անտիոքի. 2. Աղեքսանդրիոյ. 3. Հռոմի, 4. Կ. Պոլսի, 5. Երուսաղէմի. 6. անանուն:

Պատմաբան Կաթողիկոսը կամ չորս աւետարանիչներ եւ երկու՝ Կ. Պոլիս եւ Երուսաղէմ հաշուած է եւ կամ իբրեւ վեցերորդ

*աչքի տակ ունեցած է Վաղարշապատի պատրիարքը: Փաստ ունի շարունակութեան մէջ. «Եւ արդ այս հինգեքեան պատրիարքունք..»: Կը կարծեմ թէ Յովհաննէս Կաթողիկոս աչքի առջեւ ունեցած է թէ՛ Սողոմոնի եւ թէ Փաստի թուղթերը. Փաստէն է «Ղուկայն» եւ «Յովհաննուն»: Իսկ «Յուստինիանոս» «Կոստանդեայ» շրջերը Պատմաբան կաթողիկոսի քմահաճոյքին վերագրելու է:*

*Կարգը կը պահանջէ հարց տալ, թէ Յուստինիանոս կամ Կոստանդեայ փոխադրա՞ծ են երբեք Յովհաննէս աւետարանիչի նշխարները Եփեսոսէն Կ. Պոլիս:*

*Իմ քննութիւններս ցոյց տուին, որ ոչ պատմական եւ ոչ աւանդական աղբիւրներն որ եւ է յիշատակութիւն ըրած են Աւետարանչի նշխարաց գոյութեան, թող թէ նշխարաց փոխադրութեան մասին: «Ստոյգ է, որ իր սուրբ մարմինէն որ եւ է տեղ նշխարք չէ գտնուած. բայց կը յիշուին իր զգեստէն մասունքներ[22]»: Ըստ աւանդութեան Յովհաննէս յետ մահուան վերափոխուած է մարմնով երկինք Ենովքի եւ Եղիայի հետ: Ուստի իր նշխարաց փոխադրութեան մասին չէր կրնար խօսք եղած ըլլալ:*

*Անտեղի է նաեւ չորս աւետարանիչներու աթոռներու հարցը. յատկապէս Ղուկասի Հռոմայ եւ Մատթէոսի Անտիոքայ աթոռները:*

---

[22] Stadler - Ginal, Vollständiges Heiligen-Lexikon, Band III, Augsburg, S. 284.

*Աւանդութեան համաձայն Մատթէոս իր Աւետարանը գրեց Երուսաղէմ, Մարկոս՝ Աղեքսանդրիա, Ղուկաս՝ Անտիոք եւ Յովհաննէս՝ Եփեսոս:*

*Կը կարծեմ թէ Սողոմոն ուշքի առաջ առած ըլլայ այս աւանդութիւնը. ասկէ Մարկոսի՝ Աղեքսանդրիա, Յովհաննու՝ Եփեսոս եւ Մատթէի Անտիոք (փոխադրուած Երուսաղէմ) աթոռները առած է: Եւ որովհետեւ Անտիոքի աթոռը Մատթէոսի յատկացուցած էր, հարկադրուած է Հռոմի աթոռն ալ Ղուկասի բաժին հանել, թէեւ ան Անտիոք գրած էր իր աւետարանը:*

*Սողոմոն չի գիտեր, թէ Երուսաղէմ աւելի յառաջ պատրիարքական աթոռ եղած էր քան Կ. Պոլիսը, բայց իրեն ծանօթ պէտք է եղած ըլլայ, որ Անտիոքի պատրիարքութենէ յառաջ եղած է:*

*Այնպէս կ՚երեւայ թէ Սողոմոնի անծանօթ մնացած է Եւսեբիոս Եմեսացւոյ ճառն «Վասն կրօնից եւ մկրտութեան», գրուած իրր 350ին: Այս տեղ կը գրէ Եւսեբիոս. «Եղիցի պատուհանեւ ամենեցուն մեզ... զհաւատս Երրորդութեանն յանձին ունել՝* զերից հայրապետացն. *զի Երրորդութիւնն երկնաւոր յերկինս է եւ* երէք հայրապետք յերկրի. *ոչ սոքա բնութիւնն առին եւ ոչ նոքա պատիւն յաւրացութիւն եղանէ: Այս Երրորդութիւն է՛ւ ժամանակաւ բաժանի է՛ւ փոքր մենի. եւ*

այն՝ անժամանակաւոր եւ յաւիտենական[23]»:

Եկեղեցին մինչեւ Նիկիայի ժողովը (325) երկու գահերէց եպիսկոպոսներէ կը կառավարուէր. մին ունէր իր աթոռը Հռոմ եւ միւսը՝ Աղեքսանդրիա: Հռոմի եպիսկոպոսն ընդհանրապէս համօրէն Եկեղեցւոյ եւ մասնաւորապէս Արեւմուտքի համար, եւ Աղեքսանդրիայի եպիսկոպոսը՝ Արեւելեան եկեղեցւոյ համար: Նիկիոյ ժողովին մէջ նոյնը կրկնուեցաւ, աւելցնելով իբրեւ երրորդ մը՝ երկրորդական աստիճանի վրայ՝ Անտիոքի եպիսկոպոսը. որոնք նկատուեցան եկեղեցական նուիրապետութեան երեք պատրիարքներ: Նոյն ժողովի Է. Կանոնը կը սահմանէր. «Եպիսկոպոսն Երուսաղէմի ըստ աւանդին սովորութեան մեծարեսցի երեւելի պատուով, պահեալ զկարգ պատշաճ իշխանութեան եպիսկոպոսապետին իւրոյ[24]». այսինքն ենթակայ մնալով Անտիոքի պատրիարքութեան:

Բայց չգոհացաւ Երուսաղէմի եպիսկոպոսը «պատուակիր հայրապետ» տիտղոսով, առանց իրաւասական թեմերու. հետամուտ եղաւ ոչ միայն Անտիոքէն անկախ ըլլալ, այլ եւ զանիկա իրեն հպատակեցնել: Այս նպատակին մասամբ հասաւ խորամանկն Յոբնաղ (422—457), իւրացնելով Պաղեստինի երեք

---

[23] Սեբերիանոսի Գաբաղացւոյ ճառք, Վենետիկ 1830, էջ 61:

[24] Հ. Գ. Յովնանեան, Պատմութիւն տիեզերական ժողովոց. Վիեննա 1847, էջ 49:

նախահանգները, որոնք մինչ այն Անտիոքի պատրիարքութեան կը պատկանէին։ Այսպէս Ե. դարու առաջին կէսին պատրիարքներու թիւը բարձրացաւ չորսի։

Պատրիարքութեան կը ձգտէր նաեւ Կոստանդինուպոլսոյ եպիսկոպոսը, իբրեւ եպիսկոպոս Կայսերանիստ քաղաքի։ 381ին գումարուեցաւ այս տեղ ժողով մը, երկրորդ տիեզերական ժողով. ներկայ եպիսկոպոսները Երրորդ Կանոնին մէջ սահմանեցին. «Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսն ունիցի պատիւ առաջութեան յետ եպիսկոպոսին Հռոմայ, քանզի Կոստանդինուպոլիս Նոր Հռոմ է[25]»։ Այս պատուակիր տիտղոսով չգոհացան նաեւ Բիւզանդացիք։ Անատոլիոս եպիսկոպոս 451ի Քաղկեդոնի ժողովին սահմանած 27 կանոններուն կցել առաջարկեց 28երորդ կանոն մը, որուն բովանդակութիւնն էր. «Որովհետեւ Կ. Պոլիս է երկրորդ եւ Նոր Հռոմ՝ արքունի եւ ծերակոյտ իշխանօք շքեղացեալ, վայել է եպիսկոպոսի նորին քաղաքի մեծապատիւ իշխանութեամբ ընդ եպիսկոպոսապետի հնոյն Հռոմայ փառաւորել եւ երկրորդական պատուով յետ նորա մեծարգոյ լինել ի մէջ եկեղեցւոյ։ Մետրապոլիտք Պոնտոսի, Ասիոյ եւ Թրակիոյ եւ եպիսկոպոսք կողմանցն բարբարոսաց ընդ իշխանութեամբ լինել պարտին աթոռոյն Կ. Պոլ-

---

25 Անդ, 132։

այ. եւ ի Հայրապետէ նորին ընդունել զիւրեանց ձեռնադրութիւն[26]»։

Թէպէտ ոչ ժողովականներէն եւ ոչ Հռոմէն ճանչցուեցաւ այս կանոնը, բայց յեցած ասոր վրայ ամէն ջանք տարին Բիւզանդիոնի եպիսկոպոսները, քաջալերուած կայսրերէ, եւ ձեռք բերին թէ պատրիարքական իշխանութիւն եւ թէ իրաւասութիւն բոլոր Բիւզանդական երկիրներու վրայ։ Այսպէս աճեցաւ պատրիարքներու թիւը հինգի. Հռոմ, Աղեքսանդրիա, Անտիոք, Երուսաղէմ եւ Կոստանդինուպոլիս։ Այսպէս Զ. դարու կէսին։

Սողոմոնի Թուղթին սկզբը. «Իսկ ի թագաւորելն Յուստինիանոսի (527—565) փոխեաց (նա) զնշխարս սրբոյն Յովհաննու աւետարանչին ի Կ. Պ. եւ հաստատեաց անդ զաթոռն Հայրապետական... նոյնպէս եւ զՄատթէոսին (զնշխա՞րսն) փոխեաց յԱնտիոքայ յԵրուսաղէմ. ասէ. Զի քաղաք է մեծի արքային» (Դաւթի՞). պէտք է իմանալ ըստ ժամանակագրութեան այսպէս. Երուսաղէմ, որ «պատրիարքական» աթոռն ունէր, ոչ թէ Մատթէոսի նշխարաց փոխադրութեամբ պատրիարքական աթոռ եղաւ Յուստինիանոսի օրով, այլ 451ին Յոբնաղի ճարպիկութեամբ, Անտիոքի իրաւասութեան ենթակայ Պաղեստինեան 3 նահանգները ստանալով։ Իսկ Կ. Պոլսի աթոռը անկէ իբր 70 տարի յե-

---

[26] Անդ, 330։

տոյ պատրիարքութիւն հռչակուեցաւ, այնու որ Յուստինիանոս իր Իրաւանց գրքին մէջ իբրեւ այնպիսի ներս առած էր։

4. «Յայնժամ շարժեցան ամենայն մեծամիտք. եւ ուր առաջեալ էր վախճանեալ՝ զամենեցուն աթոռն պատրիարք խոստովանեցան» (էջ 310)։

*Այս տեղիքը միջադէպ մը կ'ակնարկէ, որ պատահած է Յուստինիանոսի օրով. եւ աւելի պատմական է քան Յովհաննէս աւետարանիչի նշխարաց եւ Մատթէոսի աթոռին փոխադրութիւնները։*

*Շարժման պատճառն եղած է Բիւզանդացւոց հռչակած այն համբաւն, թէ գտնուած է վաւերագիր մը, որ կը փաստէ Բիւզանդիոյ եկեղեցւոյ առաքելական ծագումը. այսինքն Բիւզանդիոյ առաջին եպիսկոպոսը Ստաքոս ձեռնադրուած է Անդրէաս առաքեալէն, որ եղբայրն էր Պետրոսի, եւ գործած է ի կողմանս Կապադովկիոյ, Գաղատիոյ եւ Բիւթանիոյ, ինչպէս կը պատմուի Անդրէասի Նորագիւտ պատմութեան մէջ։ Անդրէաս «գնաց ի Բիւզանդիոն եւ անդ քարոզեալ ներմանեաց զբանն կենաց եւ ձեռնադրեաց զՍտաքոս աշակերտն իւր եպիսկոպոս Բիւզանդիոյ, որ է մի յեօթանասնից աշակերտացն Քրիստոսի[27]»։*

---

[27] Անկանոն գիրք առաքելական, Վենետիկ 1904, էջ 172։

ոչ հաւանեալ Աղուանք՝ զայլ ոմն երեւցու-ցին կանխաւ առաքեալ յաշխարհէն Աղուանից՝ Եղիշէ անուն, յաշակերտաց Տեառն՝ ձեռնա-դրեալ ի ձեռանէ Յակոբու եղբօր Տեառն»։

Շատ միամիտ խոստովանութիւն։ Երբ յունական կողմն Հայք կը թելադրեն Հայոց կաթողիկոսին, յեցած Թադէոս առաքեալի նշխարաց, «խնդրել զգահերիցութիւն ի վերայ Աղուանից», Աղուանք կը փութան հրապա-րակ հանել Եղիշէ առաքեալ մը, որ թէ Թա-դէոսի աշակերտն է եւ թէ Յակոբ Տեառն եղբօր ձեռքէն ձեռնադրուած եպիսկոպոս Աղուանից. եւ իրենց յառաջահաս քան զՀայս եւ զՎիրս ըլլալը կը հաստատեն Աբ-րահամ կաթողիկոսի վկայութեամբ. վկայ-ութիւն մը, որ կեղծուած է իրենց պատմա-գրին ձեռքով (Բ. 47, 48, էջ 307, 311)։

Նոյնպէս կեղծիք է Յովհաննէս Դրաս-խանակերտցւոյ նորաձեւ եկեղեցական ինն պատուակարգութիւնք, կազմուած Կոստանդնու կայսեր եւ Հայոց Արշակ թագաւորի օրով, երբ Ներսէս Մեծ պատրիարք կը կարգէր «զգլխաւորս արքեպիսկոպոսացն Վրաց եւ Աղուանից արքեպիսկոպոս ընդ ձեռամբ նորա կարգեալ» (էջ 28—29)։ Չեմ ուզեր այս մա-սին աւելի խօսիլ, վասն զի այլուր առիթ ու-նեցած եմ այս հարցերով զբաղելու [28]։

---

[28] Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց. էջ 248—254։

## 18. ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ԱԲՐԱՀԱՄ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԵՒ ԹՈՒՂԹ ՎՐԹԱՆԷՍԻ ԱՌ ԱՂՈՒԱՆՍ

(Բ. 47. 49)

1. Բ. 47 գլուխը, որ յառաջ կը բերուի հատուած մը Աբրահամ կաթողիկոսի շրջաբերականէն, նախաբան մ'ունի Աղուանից պատմիչէն, որ ժամանակագրական թուականներով կը յուսաբանուին Վրաց Հայոցմէ բաժանումի պատճառները եւ յարակից խնդիրները։ Մենք առիթ ունեցանք վերագոյն, Բ. 1 խօսելու այս ժամանակագրական տուեալներու արժէքին, ինչպէս նաեւ Աբրահամ կաթողիկոսի շրջաբերականէն առնուած հատուածի մասին, ցոյց տալով, որ պատմիչը այդ հատուածին սկզբնաւորութիւնը բաւական խարդախած է։ Արդ այս խարդախուած տեղիքը անհարկելով, զայն մէկը կը կոչէ. «Իսկ սուրբ հայրապետն Աբրահամ ասէր լինել յառաջահաստ քան զՎիրս՝ զԱղուանս. եւ նոցա անկ է եպիսկոպոսապետութիւնն» (Բ. 48, էջ 311)։

2. Բ. 49. էջ 313—317. «Պատասխանի թղթոյն Մխիթարայ Ամարասայ եպիսկոպոսի ի Հայոց», գրուած Վրթանէս Քերթողէն։ Յառաջ կը բերուի քաղուածօրէն։

## 19. ՅՈՎՍԷՓ ԳԵՂԱՄԵՑԻՈՅ ՆՇԽԱՐԱՏՈՒՓՆ Ի ՅԳԵՐԿՍ

(Բ. 50)

Յովսէփ, Գեղամայ գաւառի Բրոն–այրից անապատէն, նեղուած պարսկան յերուպակ–

նել, կը գաղթէ Արճախի Ցղերկս գիւղը։ Մխէր եպիսկոպոս, որ տեղւոյն առաջնորդն էր, կ'առանձնականէ եկուորը, եւ կը յորդորէ գիւղացիները, որ անոր համար եկեղեցի մը չինեն։ 12 տարի յետոյ կը վախճանի եպիսկոպոսը եւ կը յաջորդէ Անդրէաս երէց․ Յովսէփ կը յիշէ ասոր վարչութեան 11 տարիները։ Այս տարիները Մխիթար, Տանձեայ անապատէն, ուխտագնաց կ'երթայ դէպի Երուսաղէմ․ կը մնայ այն տեղ տարի մը․ ձեռք կը բերէ Ս. Ստեփանոսի եւ Ս. Գէորգի նշխարներէն մասունքներ։ Վերադարձին կ'անցնի Յունական սահմանը․ կը հանդիպի Տաւրոսի Ս. Անդրէասի վկայարանը․ կը յաջողի ստանալ նոյն վկայի նշխարներէն մաս մը։ Երբ կը հասնի Արճախի սահմանները՝ ընդառաջ կ'ելլէ Յովսէփ․ որ կը համոզէ Մխիթարը, որ ոչ միայն բերած մասունքները Ցղերկի եկեղեցւոյն մէջ դնէ, այլ եւ նոյն վանքին միաբան ըլլայ։ Յանձն կ'առնէ Մխիթար այս առաջարկը։ Ցղերկի վանքին անդամներու թիւը կը բարձրանայ երեքի։

Յովսէփ ալ կը փափաքի երթալ Երուսաղէմ․ ճամբու ծախքը կը հոգայ Անդրէաս երէց։ Կը հասնի Ս. Քաղաք․ ուխտը կը կատարէ․ բայց Քաղաքը կը գտնէ քաղկեդոնական հաւատքով․ լուռ ու մունջ կը վերադառնայ ձեռնունայն․ կը հանդիպի Գեղարքունեաց Պուհայ վանքը, կը կողոպտէ անոր նշխարները (Յովհաննէս Մկրտչի, Թոմաս

տառաքեալի եւ Ս. Ստեփաննոսի) եւ կը գե-տեղէ Ցղերկի սրբարանին մէջ:

Յովսէփ գրած է այս Յիշատակարանը իբրեւ արձանագիր Ցղերկի եկեղեցւոյ շինութեան եւ նշխարներու հաւաքման:

Կարճառօտ գրուածքիս ճակատին ագուցուած է շատանուն եւ բարձրագոյն արձանականս.

1. «Ի թագաւորութեան Հերակլի (610—641).

2. եւ ի ջախջախ[12] թագաւորութեանն Պարսից Յազկերտի (632—642).

3. ի կաթողիկոսութեան Հայոց Եզրի (630—641).

4. ի սպարապետութեանն Մուշեղի († 636).

5. ի Սիւնեաց տէրութեանն Գրիգորի († 636).

6. յեպիսկոպոսութեանն Մաթուսաղայի.

7. եւ յիշխանութեանն Աղուանից Վարազ-Գրիգորի, Գարդմանայ տեառն»:

Մուշեղ սպարապետի եւ Գրիգոր Սիւնեաց տիրոջ մահուան տարին ծանօթ է Սեբէոսի Պատմութենէն, որ կ'ըսէ թէ 636/637 տարւոյն Կադեսիոյ ճակատամարտին ներկայ էին «Մուշեղ Մամիկոնեան, որդի Դաւթի, զօրավար Հայոց երեք հազար սպա-

12 Հմմտ. Դանիէլ Բ. 42. «Մի կողմն թագաւորութեանն հզօր կայցէ եւ ի նմանէ եղիցի ջախջախին»:

ռազինոք եւ Գրիգոր իշխան Սիւնեաց տէրն հազար արամբ». ճակատամարտին մէջ Արաբները «սպանին զՄուշեղն երկու քե-ռորդուվքն եւ զԳրիգոր Սիւնեաց տէր միով որդւով» (107) :

Այս տեղ յիշուած եօթը անձերու ժամա-նակակցութիւնը անժխտելի է : Բայց աչքի կը զարնէ Ագուանից կաթողիկոսի, ինչպէս եւ Ցղերկի եպիսկոպոսի յիշատակութեանց բացակայութիւնը Գարդմանայ տիրոջ կշտին, մինչ յիշուած է Սիւնեաց եպիսկոպոսը : Իսկ այսպիսի շատաչուն արձանագրութիւն կամ սկսուածք ոչ Յովսէփին շնորհուած եկե-ղեցւոյ, ոչ անոր կազմած սրբարանի եւ ոչ ալ անոր գրած յիշատակարանի ճակատին կը սազէ :

Ինձ կը թուի, թէ այս հատուածը առ-նուած է իբր 632—636 տարիներուն (միջին հաշուով 634ին) Սիւնեաց աշխարհի շինուած եկեղեցւոյ մը արձանագրութենէն :

Ինչպէս կ'երեւայ, Յովսէփ բաւ կ'ուզէ թէ այս տարւոյն մեկնած է Գեղամայ գաւա-ռէն դէպի Ցղերկ : «Միհր եպիսկոպոս» միայն այս տեղ կը յիշատակուի, առանց յի-շելու անոր թեմը : Ան 12 տարի ետքը կը վախճանի Ցղերկ գիւղի մէջ եւ յաջորդն կ'ըլլայ երէց մը Անդրէաս անուն, որ իր կարգին կը վարէ գեղջերիցութեան պաշտօնը 11 տարի (ըստ Շահնազարեանի հրատարա-կութեան). ուստի (634/636 + 12 + 11 =) 657/660ին կ'աւարտէ Յովսէփ իր Յիշատա-

կարանը։ Այս տարիներուն տեղի կ'ունենան Մխիթարի եւ Յովսէփի ուխտագնացութիւնները դէպի Երուսաղէմ, առանց թուական մը յիշելու։

Յիշատակարանիս նպատակն է ցոյց տալ, թէ Յղերկոփ վանքին սրբարանի 6 նշխարները ուսկից եւ որոնց ձեռքով բերուած են։ Ասոնք են.

Մխիթարի ձեռքով 1. Ս. Ստեփանոսի եւ 2. Ս. Գէորգի, նուիրուած Երուսաղէմի մէջ Հռոմէյինեցիէ մը։ 3. Ս. Անդրէ վկայի, նուիրուած Տարոնի նոյն վկայի վկայարանի Թոմաս սպասաւորէն։

Յովսէփի ձեռքով՝ 4. Ցավ. Մկրտչի, 5. Թոմաս առաքեալի, 6. Ստեփանոս Նախավկայի նշխարները, զորոնք նուիրած է կ'ըսուի Գրիգորիկ, որ Գեղարքունի գաւառի Պուհոյ վանքի սպասաւորն էր։ Կ'աւելցուի. «յետ այսր եղելոյ հանեցան սուրբքն ամենայն, որք ի գաւառին Գեղամայ բերդին խորաքանչիւր ոք անուամբ եւ գրով եւ եդան ի նմին եկեղեցւոջն»։

Վերագոյն տեսանք, թէ Սրբոց նշխարքները Աղուանից աշխարհի հողերէն դուրս կու գային։ Այս տեղ արտասահմանէ կը բերուին։ Որքան հաւատք կարող ենք ընծայել Յովսէփի պատմածներուն։ Դժուարաւ կրնանք հաւատալ թէ Ս. Գէորգի նշխարները Երուսաղէմ յայտնուած ըլլան։ Կ'ըսուի թէ Մխիթար Երուսաղէմէն դարձին չեղած է սովորական ճամբէն «ընդ Հռոմս կոյս՝ յեր-

կեցէ թշնամեաց եւ հասանէր ի լեառն Տաւրոս ի վկայարանս սրբոյն Անդրէի, որ բազում ընկերօք վկայեաց ի Սելեւկիոյ Թագաւորէ: Անդ մեծահայց եղեալ նորա խնդրէ ի նշխարաց Անդրէի ի պատուարէն Թովմայ. եւ նորա հաւանեալ աղաչանացն՝ տայ նմա զխնդիրն» (էջ 319):

Ուստի պատահմամբ հանդիպած է այդ Վկայարանը, բախտով գտած է այնտեղ բարեպաշտ Թովման, որ զիջած է անոր թախանձանքին եւ շնորհած խնդրելին: Պատահակա՞ն էր եւ այն, որ Ցլերկուի Երէցը Անդրէաս կը կոչուէր. եւ Ս. Անդրէի վկայաբանութիւնը հայերէն թարգմանութեամբ ծանօթ էր (գոնէ Է. դարէ ի վեր):

Անդրէասեանց վկայից վկայարանը, մեր ծանօթին Բարձրբերդի, յետոյ վերածուեցաւ վանքի. գիտենք, որ ԺԱ. դարէն ի վեր Հայոց ձեռքն էր. հաւանական է որ անկէ յառաջ ալ եղած ըլլան այն կողմերը հայ գաղթականներ (հմմտ. Ալիշան, Սիսուան, էջ 61—66, 149—151):

Այն պարագան որ Յովսէփ գրած թէ Ս. Անդրէ «բազում ընկերօք վկայեաց ի Սելեւկիոս Թագաւորէ», ցոյց կու տայ թէ ան կարդացած է Վկայաբանութիւնը, որ հասած է մեզի երկու խմբագրութեամբ. սոանք են.

1. Վկայաբանութիւն սուրբ Անդրէի զօրավարի: — Ի ժամանակս Թագաւորութեանն Անտոխոս եւ Սեղեւկոսի Թագաւորացն Ասորեստանի էր հալածումն մեծ քրիստոնէից...:

Փարիզ, Թ. 117, թղ. 133բ—140ա (1307)։ 178, թղ. 545բ—547ա (ԺԲ. դ.)։

Յոյն բնագիրն՝ Migne, Patrologia Graeca, հատոր 115, էջ 596—609։

2. Նահատակութիւն Անդրէի զօրավարի եւ զօրաց նորա 2800իցն, որոց անուանքն գրեալ են ի դպրութեան կենաց։ — Զաստուածային զանճառելի եւ զանիմանալի խորհուրդն...։

Վենետիկ, Թ. 201, թղ. 174բ—179բ (ԺԳ. դ. Ցուցակ, Բ. 46)։

Հմտ. Վարք եւ վկայաբանութիւնք սրբոց. Ա. էջ 103—113։

Հմմտ. Acta SS. Aug. III, 721, n. 6. եւ Ալիշան, Սիսուան, էջ 149—151։

Գրուածքս ուշ ժամանակի կերտիք է. երբ Աղուանք ենթարկուած էին Հայոց ազդեցութեան եւ բռնած էին դիրք Հասանայ դէմ բաց պահանջման Մովսէս եւ Աբրահամ կաթողիկոսներու, թէ «ոչ հաղորդել ընդ Հասանայ ...մի իշխաքս ի նոցանէ ընդունել-ամենեւին մի հաղորդել ընդ նոսա մի յաղօթս ... մի ի բարեկամութիւն ... նոյն հրաման (որպէս վասն Վրաց) եւ վասն Աղուանից անշարժ կացցէ. զի պատկառեալ դարձցին ի թիւր ճանապարհէն» (Գիրք Թղթոց, 194), ինչպէս դարձան, յատկապէս Է. դարէն սկսեալ։ Այս հոգւով տոգորուած կը տեսնենք Յովսէփը երբ Երուսաղէմ այցելեց. եթէ երբեք այցելեց։

Աղուանից Պատմութեան մէջ, Գ. Տ,

էջ 343 կը մնայ 699ին «Յովսէփայ վանաց առնուածը»· Ցղերսկի վա՞նքը կ'ակնարկուի:

Աղաւնեաց Պատմութեան այս գլուխը 1896ին արժանացաւ անգլիերէն եւ ռուսերէն թարգմանութեան.

E. W. Brooks, An Armenian visitor to Jerusalem in the seventh century; The English Historical Review, 1896, No. 11, p. 93—97.

Նոյնը ռուսերէն թարգմանութեամբ՝ Сообщенія Имп. Правосл. Палест. Общ 1896, փետր. էջ 120—123:

### 20ա. ՎԱՆՔ ՈՐ Ի Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄ ԵԿԵՂԵՑԵԱՑ (Բ. 51)

Անանուն «ակնատես» մը, ինչպէս կ'ըսուի վերնագրին մէջ, կը թուէ Երուսաղէմի ներսն եւ դուրսը գտնուած տնօրինական տեղեաց եկեղեցիները եւ կու տայ անոնց բարձրութիւն, երկայնութիւն եւ լայնութեան չափերը կանգունով եւ տեղեաց հեռաւորութիւնը ասպարէզով եւ հրասախով հանդերձ այլ գիտելիքներով: Հետաքրքրական գրուածք մը, իր տեսակին մէջ հազուագիւտ. դժբախտաբար առանց թուականի:

### 20բ. ԱՆԱՍՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՂՈՒԱՆԻՑ ՈՐ ԵՐՈՒՍԱՂԷՄ (Բ. 52)

Այս գլուխը վերնագիր կը կրէ. «Անուանք վանորէից, որք յԵրուսաղէմ են շի-

*նեալ յԱղուանից անուն, զորս ի Թղթոց Երանելւոյն Անաստասայ առ Վահան Մամիկոնեան առեալ ուսաք»։*

*Անաստաս վարդապետի Թուղթը հասած է մեզի անխորագիր։ Այդ Թուղթին վերջը երկրորդ գրչէ աւելցուած է վերջաբան մը, որ կ'ըսուի. «Երանելւոյն Անաստասայ Հայոց վարդապետի գրեալ զԱնուանս վանորէից Երուսաղէմի ի խնդրոյ Իշխանին Համազասպայ Կամսարականի պահլաւունւոյ, որ կամէր գնալ յԵրուսաղէմ, որ եւ գնաց իսկ եւ արժանացաւ աստուածակոխ սուրբ տեղեացն...»։ Ձեռագրին նախագաղափարը գտնուած է, կ'ըսուի, Ձմշկածակ. անկէ օրինակ մը հանուած է եւ պահուած Անկիւրիոյ Ս. Գրիգոր Լուսաւորչի եկեղեցւոյ մէջ։*

*Իշխանն Համազասպ տոհմով Մամիկոնեան էր. ուստի պէտք է ենթադրել, որ* Կամսարական *սխալագրութիւն է* Կուրապաղատ *տիտղոսին, զոր ընդունած էր Համազասպ* 657/658 *տարւոյն* Կոստանդ *կայսրէն, իսկ* Կամսարական պահլաւունի *տոհմանունը որովհետեւ Հայոց պատմութեան մէջ երեւան եկած է* 1000 *թուականէն ետքը*[1], *պէտք է հետեւցնել, թէ ձեռագիրը ԺԱ/ԺԲ դարէն պէտք է եղած ըլլայ։*

*Համազասպ Մամիկոնեան խաղաղասէր, ուսումնասէր, ոչ պատերազմիկ եւ մարտագէտ, իշխան կարգուեցաւ* 654/655*ին Հայաս-*

---

[1] *Ակինեան, Ներսէս Լամբրոնացի, Վիեննա* 1956, *էջ* 338—348։

տանի այն բաժնին վրայ, որ ինքնակամ ենթարկուած էր 651ին արաբական իշխանութեան: Իր առաջին գործն եղած էր Յունական բաժնի Հայ իշխանին, Մուշեղ Մամիկոնեանի հետ խաղաղութեան դաշինք կնքել: 657ին, երբ Մուաւիա կայսեր հետ խաղաղութեան դաշինք կապեց եւ 658ին ընտանեկան պատերազմի մէջ էր, արաբական Հայաստան ապստամբեցաւ, եւ ենթարկուեցաւ կայսեր: Առանց տարակուսի Համազասպի կամքով չէր եղած այս ապստամբութիւնը: Անոր հաւատարմութեան վստահ էր Մուաւիա որ բոլոր պատանդները կտորեց եւ խնայեց միայն Համազասպի եղբօր՝ Գրիգորի կեանքին: Մուաւիա 600ին յաղթական ելաւ ընտանեկան պատերազմէն: Վերագրաւեց իր Հայաստանի բաժինը: Մենք կը տեսնենք թէ Մուաւիայի կողմէ Հայաստան կու գայ Գրիգոր Մամիկոնեան իբրեւ իշխան եւ նոյն տարւոյն Դամասկոս է Համազասպ կուրապաղատ Մամիկոնեան, որ Դաւիթ Տարօնեցիէն կը խնդրէ թարգմանել Բարսղի ի Ծնունդն Տեառն ճառը: Այս տեղ կը կորսնցնենք իր կեանքի հետքը:

Ինչպէս այլուր ըսած եմ, Համազասպ 600ին ինքնակամ առաջարկած էր Մուաւիայի, որ ինքը պատրաստ է իբրեւ պատանդ Դամասկոս երթալ, եթէ իր պատանդ եղբայրը Գրիգոր Հայաստանի իշխան կարգուի: Վեհանձն ամիրապետը յանձն առաւ այս առաջարկը:

Եւ եթէ այժմ Աղուանից Պատմութեան մէջ երեւան կու գայ Անաստաս վարդապետի ի խնդրոյ Համազասպի գրած «Անուանք վանօրէից Հայոց յԵրուսաղէմ» երկրորդ օրինակով եւ «Թուղթ Անաստասայ առ Վահան Մամիկոնեան» խորագրով, պիտի հետեւցնենք, թէ ուղիղ է Յովհաննէս Դրասխանակերտցւոյ այն հաւաստումը թէ Համազասպ Կուրապաղատ եւ իշխան Հայոց վախճանած է 600ին, այն իմաստով, որ ան մեռած է քաղաքական կեանքի համար, բայց վերածնած է իբրեւ Վահան Մամիկոնեան հաւանօրէն եկեղեցական սքեմի տակ, օտար աշխարհի մէջ, թերեւս Երուսաղէմի մէջ. «որեւ գնաց իսկ (յԵրուսաղէմ) եւ արժանի եղեւ աստուածակոխ սուրբ տեղեացն»:

Համազասպ, որ խնդրած էր Անաստաս վարդապետէն Երուսաղէմի վանքերու անուանացանկը, ցոյց կու տայ թէ ծանօթ էր անձամբ Անաստաս վարդապետին: Արաբական պատմագիրներու համաձայն Հերակլի օրով Արաբացւոց քով ապաստան փնտռելով հայ զօրականն Վահան (Մահան) Արխառունի, Սինայի վանքին մէջ վանական եղած է Անաստաս անունով: Է. դարուն Անաստաս անունով մէկէ աւելի Սինայեցիներ ծանօթ են: Բայց Անաստաս վարդապետ մէկը միայն եղած է, որ գործած է իբրեւ աստուածաբան, քարոզիչ եւ մատենագիր 640—700: Եթէ արաբական զրոյցը կը կրէ իր մէջ ճշմարտութիւն, պատմական չենք կրնար

նկատել, որ Համազասպ, Անաստասի բարեկամը, իրեն ծածկանուն տուած ըլլայ Վահանի: Այս մասին պէտք անդրադառնամ ուրիշ տեղ աւելի լայնօրէն:

Աղուան հայրենակէրը, որ ուխտաւորութեամբ Երուսաղէմ գացած է եւ ի խնդիր եղած Աղուան վանքերու, իրեն առաջնորդ առած է Անաստաս վարդապետի վանացոյցը, ուր մի առ մի նշանակուած էին անունները եւ տեղերը այն վանքերուն, որոնք հայախօս վանականներու համար շինուած են յընթացս դարերու Հայոց եւ Աղուանից կողմէ: Անոնք յընթացս ժամանակի ձեռքէ ձեռք անցան ոչ միայն Վրաց, Աղուանից, Յունաց եւ այլ քրիստոնեայ ժողովուրդներու, այլ եւ Մահմեդականաց: Մինչ Անաստաս անկամնակու աչուլ կազմած էր իր ցուցակը, ուրիշներ ջանացած են ձեռք բերած վանքերը ի բնէ իրենց սեփհական ցուցնել: Անոնցմէ մէկն է Աղուան ուխտաւորը, որ ըստ երեւութին Ը—Թ. դարէն է:

Ուղեւորիս նկարագրութիւնը համեմատութեան դնելով Անաստասի ցուցակին հետ, յայտնապէս կը տեսնենք երկուքին միամիտ փոփոխութիւնները:

Կու տամ համեմատութեան համար հետեւեալ հատուածները.

ԱՆԱՍՏԱՍ. «Պանդոյ վանքն, որ սուրբ Կարապետին է. որ յարեւելից կողմանէ ի Ձիթենեաց լերինն կայ. նոյնպէս արքունի ծախիւք շինեալ յանուն սուրբ կաթողիկէին

*որ ի Վաղարշապատ (յԷջմիածին)*, *զոր* Աղուանք ունին *մինչեւ* ցայժմ:

— Պանդայ վանքն, որ յարեւելից կողմանէ Ձիթենեաց լերին կայ. *Պանտոն ոմն ճգնաւոր յԱղուանից եղեալ նախաշինող. եւ* այժմ *Պետրոս* աղուան *քահանայ* ունի:

ԱՆԱՍՏԱՍ. Բառոյ վանքն, որ յանուն սուրբ Աստուածածնի, որ առ աշտարակին Դաւթի է:

— Պարտաւոյ վանք սուրբ Աստուածածնին, որ առ աշտարակին Դաւթի. *զոր այժմ ունի կին ոմն Մարիամ անուն Շամքորցի. եւ դկէան տաճիկն ունի:*

*Այս գլուխները անգլիերէն թարգմանուած*՝ Bain R. Nisbet, Armenian description of the Holy Places in the seventh century: Palestine Exploration Fund. Quarterly statement, 1896, p. 346—349.

*Այստեղ կ'աւարտի Բ. գիրքը:*

## 21. ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆՔ ԱՐԱԲ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐՈՒ ՄԱՀՄԵՏԷՆ ՄԻՆՉԵՒ ՀԱՐՈՒՆ ԱՌ-ՌԱՇԻԴ ԵՒ ՈՐԴԻՔ (Գ. 1—2)

*Աղուանից պատմիչը այս Գ. հատորին մէջ հաւաքած է բաւ մեծ մասին եկեղեցական-պատմական վաւերագիրներ եւ ժամանակագրական հատուածներ, որոնք կը հային 680—1085 շրջանի Աղուանից պատմութեան:*

Գ. 1 նուիրուած է «Մահմետ կարծեցեալ մարգարէի». կու տայ Մարգարէին նորանշան վարդապետութիւնն՝ ըստ քրիստոնէական աշխարհահայեցողութեան եւ ապա անոր համառօտ կենսագրականը: Գ. 2 կը ներկայացնէ Մահմետի յաջորդ ամիրապետներու ամփոփ յաջորդութիւնը մինչեւ Հարուն առ Ռաշիդ եւ իր որդիք (632—813):

Այս երկու գլուխները նախնարար մէկ ինքնակաց գրուածք եղած է, թարգմանուած արաբ բնագրէ մը, որ կը պարունակէր Մարգարէին համառօտ կենսագրականը, սկսեալ առաջին տարիէն, երբ «երեւեցաւ Մահմետ ի Մդին չահատանի...» (էջ 331, տ. 27):

Նախարանը, որ կու տայ Մարգարէի թագաւորութեան նկարագիրը, կը պատկանի հայ թարգմանիչին, որ քիչ-շատ տեղեակ եղած է Մահմետի վարդապետութեան ի լսելոյ: Սկզբնաւորութիւնը «ընդ նուազելն թագաւորութեան Պարսից սասանական ազգին...» կը յիշեցնէ Ագաթանգեղոսի «ընդ նուազել ժամանակի թագաւորութեանն Պարթեւաց». Սեբէոսի «Եւ եղեւ ի նուազել ժամանակաց տէրութեանն Արշակունեաց...» (22). Եղիշէի «ի բառնալ ազգին Արշակունեաց տիրեցին աշխարհիս Հայոց ազգն Սասանեայ պարսիկ» (էջ 7): Տեղիքս «Մահմետ... ծածկաբար զվարդապետն իւր սպա-

*նեալ՝* ընդաւազեաց» (330)․ *Համեմատէ Եղիշէի Ե․ էջ* 83․ *Մովսէս «եհար զեզերատացին եւ* ընդաւազեաց»։ *Միայնակեացն «սկսաւ ուսուցանել… ըստ Արիոսի, որ ա-* րարած զՈրդին Աստուծոյ ասաց», *յաճախ կը կրկնուի հայ մատենագիրներու քով․ Հմմտ․ Եպիփան, Գիրք Հերձուածոց, էջ* 140 *Հրտ․ Տաշեան,* 140, *Գիրք Թղթոց* 215, 328։

*Գրուածքս, որ ինքնակաց էր,* 1305*ին ի Կիլիկիա ձեռքի տակ ունեցած է Տիրացու դպիր, եւ առած է իր հաւաքման մէջ, Վիեննայի Մխիթ․ Թ․* 324, *Թղ․* 157*բ*։ *Այս տեղ կը պակսի «անուն փախիրա», որ աղաւաղած ընթերցուածն է «Բխիրայ» անուան, յաճախ յիշուած Մահմետի կենսագրութեան այլ խմբագրութիւններու մէջ (Հմմտ․ Սամուէլ Անեցի,* 46, *Մխիթար Անեցի,* 36)։

*Իսկ էջ* 329, *տ․* 1—5 (*Զոր — մեծ*) *Ազուանից պատմիչին յաւելուածն է*։

*Այստեղ յառաջ կը բերեմ Մահմետի կենսագրականը ըստ Թ․* 324 *ձեռագրին․*

«Ի լինել ԿԵ․ ամի թուականի Հայոց երեւեցաւ Մահմետն ի Մդին շահաստանի։ Եւ յորժամ․ Հ․ էր եկն ի գումբէդն Աբրահամու։ Եւ անտի եկաւ յայն շահաստան, որ այժմ կոչի յիւր անուն Մահմդա․ յամսեանն սոփր․ եղեւ անդ տարի մի․ եւ զողջոյն ամն ի շահաստանէն ասպատակ արարեալ, յամսեանն շահոաբի (է)լ ակդ սկսեալ թափեաց

զգումբերն Աբբահամու· յամզդան ամսոյ ի ԺԹ-ն: Այն Ը·երորդ ամ էր նորա իշխանութեանն: Եւ ի շամադ ամսոյ ի ԵԺ-ն կոտեցաւ ընդ Ըրէփ պարսկի: Եւ աղկադ ամսոյ ի հասարակել տունջեան եւ գիշերոյ եկն ի Մաքա: Եւ անտի դարձեալ յիւր շահաստանն մինչ դեռ վեց օր կայր յաղկադէ ամսոյ ի նոյն ամին: Եւ եթող ամիրա ի Մաքա զԱդբուսիդա որդի: Եւ դարձան նորա ընգերքն ի Մաքա· Աբուբաքր Աբիկուհարա ազգ էր ընգեր նոցա: Եւ այն Թ· տարի Մահմետի իշխանութեանն· եւ ի Ժ· ամին մեռաւ յաւուր երկուշաբթի, յամսեանն շարաբի աղավոլ յերկուսն· կալեալ զիշխանութիւնն ամս Ժ· եւ ԳԺ· ամ զմոլորական իւր քարոզութիւն զաղտնի հաստատեաց հաւատ: Խ· ամ ունէր մինչ երեւեցաւ· եւ ի ԿԳ· ամին սատակեցաւ»:

*Ամիրապետներու յաջորդութեան ցանկը կը սկսի եւ կ'աւարտի:*

«Երկրորդ յիշխանութեանն Տանկաց զկնի Մահմետայ նստաւ Աբուբէքր Աբի Կահիփեան· եւ կալաւ ամս հնն: ... (*վերջ*·) Հարուն Մադիայ որդին, զոր Մադիունն կոչեն, ամս ԻԵ: Սա նեղութիւն անչափ հասոյց աշխարհի· եւ վասն այնր բազում գաւառք Հայոց փախեան ի Հոռոմս:

«Մահմատ, որդի Հարունայ· ամս Գ:

«Հարուն մինչ կենդանի էր, բաժանեաց զիշխանութիւնն երկուց որդւոց իւրոց՝ Մահմատայ եւ Մայմունայ. ի ստնդիեցութեանն ունէր Մահմատ զիշխանութիւնն ի Բաղդատ եւ ի Խորասան. եւ Մայմուն ընդ հակառակս նմա եղեալ պատերազմաւ՝ մեռանի Մահմատ (25 *սեպտ.* 813) եւ Աբդալլահ, որ եւ Մայմունն կոչէր, իշխեաց ամենայն ամս (Ի)[1]: Իբրայիմ ամս[2] Ժ:

Հարուն ԻԳ-երորդ նստաւ ի Մահմատայ Ամիր Մումին. եւ հայ թուականն էր ՄԿ ամ» (811)[3]:

*Արաբական ամսանունները պէտք է իմանալ.*

1. Սոփր, Սաֆար (safar) *Բ. ամիս:*

2. *Շահ* ռաբի ավլ, šah rabī alawl, Rebīh el-awl, *Գ. ամիս:*

3. Ռամզդան, ռամադան, ռամազան. Ramadan, *Թ. ամիս:*

4. Շաւալ (*շավալ*), šawwāl, *Ժ. ամիս:*

---

[1] *Իշխանութեան տեւողութիւնն՝ 20 տարի (813—833) չէ նշանակուած:*

[2] *Իբրահիմ, որդի Մահդի, 817 նոյ. 19ին—819 մայիս 28 ի Բաղդատ հակաթոռ խալիֆա հռչակուեցաւ ընդդէմ Մայմունի* (Müller I, 504/6)*: Ուստի ամս Ժ պէտք է կարդալ ամս Գ եւ համարիլ այլ ձեռքէ յաւելուած:*

[3] *Հարուն վախճանեցաւ 809, մարտ 24ին: Եթէ հոս Հայոց թուականը ՄԿ (811) կը յիշուի, պէտք է իմանալ թէ բնագիրը աւարտած է 809/10ին, թարգմանութիւնը կատարուած է 811 թուականին, երբ Հարունի որդին Մահամմեդ խալիֆայ էր երկու տարիէ ի վեր: 809—813 եւ շար. յաւելուած է:*

5. Աղկադ, յաղկադեէ, *փուղկաթա*, Zu el-Kahde, *ԺԱ. ամիս*:

## 22. ՏԱՃԿԱՑ ՀԻՃՐԷԻ ԹՈՒԱԿԱՆԸ

*Այս եւ յաջորդ գլուխներու մէջ պիտի խօսիմ Տաճկաց, Հայոց եւ Տաճկաց ըստ հայերէն թուի թուականներու մասին, որոնք երեւան կու գան Աղուանից Պատմութեան մէջ:*

*Տաճկաց, այսինքն արաբական հիճրայի թուականը հաստատեց Մահմեդի երկրորդ յաջորդը Օմար (Ամր, 634—644) յետ Քրիստոսի 637ին, ելակէտ առնելով յուլեան թուականի 622, յուլիս 15, որ էր Մահմեդի Մեքքէէն փախուստի (հիճրա) տարին եւ օրը: Այս թուականը լուսնական էր, տարին 354 օրով: Հաւանօրէն չէր գիտեր Օմար, թէ կար նաեւ արեգակնային թուական, տարին 365 օրով, զոր ունէին արտասահմանի քաղաքակիրթ ժողովուրդները ի վաղուց հետէ:*

*Տասնեակ տարի մը յետոյ, երբ արաբական վայրագ բանակները հեղհեղեալ նուաճեցին Եգիպտոսը, Պաղեստինը, Ասորիքը, Պարսկաստանն եւ միջամուխ եղան հիւսիսային Կովկաս, եւ հարկատու ըրին նուաճեալները, զգացին, տեսան հարկահանները լուսնական տոմարի պակասութիւնը եւ արեգակնային տոմարին առաւելութիւնը: Մինչ լուսնական տարին էր 354 օրով աւելի արագ*

կ'ընէր իր ընթացքը, առանց համընթանալու տարւոյն չորս եղանակներու հետ, արեգակնային տարին լուսնականէն 11 օր աւելի կը համընթանար բնութեան կարգին, եւ անով կը դիւրացնէր թէ՛ հարկատուութիւնը, եւ թէ՛ հարկահանութիւնը, այնու որ երկրագործը իր հարկերը կու տար արմտիքներով. եւ հարկահանները կը ամառնային բերքերը որոշուած շրջանին։

Նկատելով այս իրողութիւնը, գիջաւ-պետութիւնը, որ հպատակ ժողովուրդները հետեւին արեգակնային, (սելեւկեան) տոմարին, պահանջելով միայն, որ տարին Հիջրէի թուականը կրէ։ Այս նորանշան թուականը կոչուեցաւ խարաջի, կամ խարաջներու թուական[1]։

### 23. ՀԱՅՈՑ ԹՈՒԱԿԱՆԸ

Եգիպտական, Նաբոնասար փարաւոնի բռուած, տոմարը շարժական է. ունի 12 ամիս 30ական եւ 5 աւելեաց օրերով (365 օր), եւ չորս տարի միանգամ նահանջ։ Ընդունուած էր ան նաեւ Կապադովկիա եւ Պարսկաստան։ Նոյնը առած են նաեւ Հայերը Քրիստոսէ յառաջ 488ին, Պարսիկներու միջնորդութեամբ[2]։ Այս ուսողական

[1] F. K. Ginzel, Handbuch der mathematischen und technischen Chronologie, Bd. I, Leipzig 1906, S. 263—265.

[2] Ginzel, III, S. 314.

թուականը իր 1000 տարի յետոյ գործածական թուական հաշուած է, ելակէտ առնելով 552, յուլիս 11: Եւ այս շարժառիթ յառաջ կը բերեն ուշ ժամանակի մատենագիրները «Անդրէաս» տօմարագէտի զատկացոյց երկհարիւրակը, որ կը լրանար Յուստինիանոս Ա.ի (527—565) օրով, այսինքն 552ին: «Անդրէասի» անունին տակ, ինչպէս կը կարծեմ, պէտք է իմանալ Անանիանոս եգիպտացի երէցը, որ Ե. դարու առաջին քառորդին բազմապատկելով լուսնի 19 եւ արեգակի 28 բոլորակները գտած էր հինգհարիւրեակ բոլորակի գրութիւնը. որով ցոյց կու տար, թէ ամէն 532 շրջանին լուսնի ԺԴ նոյն ամսոյն, նոյն շաբաթի օրը կը հանդիպի: Այսպէս այս հինգհարիւրակս կրնար մշտնջենաւոր զատկացոյց ծառայել: Որովհետեւ Անանիանոս այս գիւտը հրապարակ հանեց Ե. դարու առաջին քառորդին ի Կոստանդինուպոլիս, եւ անոր վերջին երկհարիւրակը հայերէն թարգմանութեամբ Հայաստան բերուած պիտի ըլլայ իր 430ին, եւ գործածութեան առնուած 430—552 տարիներուն: Աւանդութիւնը կ՚ըսէ թէ այս երկհարիւրակին լրանալէն ետքը Հայոց եկեղեցին զատկացոյց չունեցաւ ժամանակ մը եւ ստիպուեցաւ դիմել դրացի Եկեղեցիներուն, իմանալու համար զատկի օրը:

Յովհաննէս պատմաբան Կաթողիկոս կը գրէ. «Անաստաս Հայրապետին (660—667)

*հոգացեալ վասն հայկականս տոմարի, զի թէպէտ անշարժ գնա ըստ այլոց ազգաց մարթացէ յօրինել, զի միշտ անշարժք լինիցին ամիսք տարեկանաց կամ յեղափոխ յեղանակք ժամանակաց: Վասն որոյ եւ առ ինքն զԱնանիա Անեցի կոչեալ, որ բանիբուն այնմ արուեստի էր հմուտ, հրամայէ նմա ստեղծագործել զխնդրելին իւր: Իսկ նորա ջան ի վերայ եդեալ եւ* ըստ բոլոր ազգաց պայմանի անշուշտ յօրինեալ զկարգ հայկականս տոմարի, զի բարեձեւագունից ումանց եւ զմերս կշռադատեալ՝ մի կարօտասցուք զայլ ի զուգաւորութիւն Հռովմայեցւոց: *Եւ մինչդեռ խորհէր մեծն Անաստաս ժողով եպիսկոպոսաց գեղեցկայն հաստատել՝ վախճան կենաց նմա ժամանէր...: Անփոյթ զկնի եկելոցն այսմիկ արարեալ՝ եւ զառաջին մշտախաղաց շրջագայեալ կարգն կալեալ» (էջ 92—93. Դաւկ.):*

*Անանիա պատրաստեց երկտոմարեան հինգհարիւրակ բոլորակ մը աղիւսակաձեւ, ուր 532 (552—1084) մէն մի տարւոյ համար մէկը աչքի վրայ առած է տոմարացոյցը, տօնացոյցը, լուսնա- եւ արեգակնացոյցը, ամսացոյցը, օրացոյցը եւ ժամացոյցը: Տոմարներէն մին է յուլեանը, երկրորդը հայկականը, դասաւորուած դէմ առ դէմ, երկու թուղթի մէկուն ներքին եւ երկրորդին արտաքիններուն վրայ: Այս համբերատարաշխատութեամբ պատրաստուած տոմարական*

գրուածքը պիտի անուանեմ Անանիա Շիրակացւոյ Հինգհարիւրամեակ, որ առած գետեղուած է Դաւիթ Մաշկատն կոչուած գիտնաւոր քահանայն իր բազմահարուստ «Մատենադարանին» մէջ, գրուած իր հսկողութեան տակ իր Ղուկաս որդիէն 981ին, պահուած Երեւանի Մատենադարանի Թ. 2679ի մէջ[3]:

Հինգհարիւրակոփս գրադեցաւ Անանիա 661—667 տարիներուն եւ անոր ելակէտ ընտրեց 552 տարին, վասն զի ուզեց Անանիան հինգհարիւրակի հետեւելով անոր երկրորդ բոլորակը տալ, ուստի այն կէտէն սկիզբ առնելով, ուր կը լրանար առաջինը, այն է 552 տարին, երբ Հայոց Նաւասարդ 1 կը հանդիպէր յուլեան տոմարի յունուար 7ին:

Անանիայի նպատակը չէր Հայոց նոր տոմար տալ. եւ ոչ ժամանակագրական թուական, այլ լոկ պատկացոյց յուլեան անշարժ եւ հայկական շարժական տոմարներու, հինգհարիւրեակ բոլորակի դրութեամբ եւ տոմարագիտական պիտոյքներով: Գրի հանեց զայն եւ յանձնեց Անաստաս կաթողիկոսի, անոր իմաստութեան թողնելով ընտրութիւնը: Կաթողիկոսը վախճանեցաւ յառաջ քան «ժողովով եպիսկոպոսաց գեղեցկան հաստատել»: Այս հարցով չհետաքրքրուեցան

[3] Անանիա Շիրակացի, Մատենագրութիւնը, հրատ. Ա. Աբրահամեան, Երեւան 1941, էջ 263—282:

յաջորդ կաթողիկոսները: Շարժական տոմարը մնաց իր ընթացքին վրայ. Թէեւ եկեղեցական տարին շատ կէտերու մէջ մերձեցած էր յուլեան անշարժ տարւոյն. Յայտնութիւնը յունուար 6ին, Առաջաւորէն մինչեւ Ս. Երրորդութիւն շրջանը ենթարկուած էր Զատկական տօնին. Յունիս 24 ծնունդ Յովհաննու Մկրտչին, Ս. Խաչ սեպտ. 14, եւ այլն: Այս շարքէն դուրս կը մնային միայն Աւետումն, Ծնունդ, Տեառն ընդ առաջ, այնու որ Ծնունդը ըստ հինաւուրց սովորութեան յունուար 6ին կը տօնուէր:

Թէպէտ տոմարի փոփոխութիւն տեղի չունեցաւ, սակայն Անանիայի Զատկացոյց տախտակը եղաւ Հայոց եկեղեցւոյն երկար դարեր ճշդելու զատկական տօնի օրը: Հինգհարիւրեակը տեսաւ իր երեք բոլորակ հոլովումը 20—552—1084—1616 եւ կը գտնուի չորրորդ հոլովումի մէջ:

Անանիա այս հինգհարիւրեակ բոլորակի մէն մի տարի բաժնած է աղիւսակաձեւ աչքերու, որոնց պաշտօնը նշանակած է վեց աչքերու մէջ: Արդ երկրորդ աչքի մէջ կը կարդանք «Թուականն» հինգհարիւրեակի մէն մի (1—532) տարիները: Ինչպէս կ'երեւայ, յընթացս երկու տասնեակ տարիներու յաճախակի գործածութեամբ հինգհարիւրեակիս «Թուականներու», սովորութիւն եղած ըլլայ զայն նաեւ անցեալ դէպքերու, ծնունդի.

մահուան... տարիները հաշուելու, նախ իբրեւ «դատկացոյցի այս ինչ թուականին», եւ քայլ մը յառաջ երթալով իբրեւ «Հայոց թուական» անուանել. իբր այսպիսի առաջին անգամ կիրարկուած է 685ին. երկրորդ անգամ 700ին Ագուանից Սիմէոն Կաթողիկոսի ձեռնարկին առջեւ:

Ագուանից պատմիչը աւելի վաղ ժամանակներ ալ յիշած է Հայոց թուականը, որոնց պիտի անդրադառնամ քիչ յետոյ: Այս տեղ ցոյց պիտի տամ, թէ ան ձեռքի տակ ունեցած է Անանիայի Հինգհարիւրամեակը: Պատմիչը Բ. մասի իններորդ գլխու վերջաւորութեան կը գրէ. «Սկսայց յառաջին <ամէն> ԺԸ. նահանջին[4], ի Յայտնութենէն[5] Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի <որ օր ԺԷ. է> մեհեկանի ամսոյն, յերեւուն եւ հինգ ամէն Խոսրովու արքայից արքայի»: Գլուխ Ժ. «Յառաջին ԺԸ. նահանջէն սկիզբն պատմագրաբար[6]»: Ընդգծուած տեղինքերը Ագուանից պատմիչին յաւելուածներն են. Մովսէսը Վիրոց կաթողիկոսին: Խոսրով Բ. Փարուէզ գահ բարձրացաւ 590 ամառ, իր գահակալութեան ԼԵ. տարին է 624: Այս տարւոյն Յայտնութիւնը յունուար 6, մեհեկանի 17, ԺԸ նահանջը կ'իյնայ Հինգհարիւրամեակի 72 թուականին,

---

[4] տպ. նահանջէն:
[5] տպ. յարութեան:
[6] Պատմ. Ագուանից. էջ 145 Մոսկ.:

որ է Հայոց Թուականի ՀԲ, յուլեան 623/24։ Այսպէս պէտք է իմանալ, ինչ որ գրեցի վերագոյն § 9։

### 24. ԹՈՒԱԿԱՆ ՏԱՃԿԱՑ ԸՍՏ ԹՈՒՈՑ ՀԱՅԵՐԷՆ ՏՈՄԱՐԻ

Յիշեցի վերը «խարաջի Թուական», սոր գործածութիւնը Հայոց քով կը գտնեմ Թովմա Արծրունեաց Պատմութեան մէջ։ Պատմագիրը Ա. դպրութեան 4. գլխու վերջը, եւ 5. գլխու խոստարանութեան մէջ կը գրէ. «Բայց մեզ կայ առաջի ասել վասն Ջափրայ եւ չար գործոց նորա... ի մերս հանդիպեալ աւուրս, որ էր Հայոց 300 Թուական։ Վասն Թագաւորին Ջափրայ... եւ որ ինչ ընդ ասել նախ քան զինել Զ. յորելինի եւ Հ <Դ> ոլոմպիադին, յետ Թ. եւ Ժ. ընդդիմախոնին. յորում բովանդակին ժամանակք բռնակալութեանն Տաճկաց ամք ՄԻԵ (այ. ՄԻԲ) ըստ Թուոց հայերէն տումարի, թագաւորէ Տաճկաց Թոքլ ոմն Ջափար անուն» (էջ 106 Պատկ.)։

Այս երկայնաչունչ Թուականութիւնը կը հայի Մոտավաքքիլ ալ Ալլահ Աբու Ֆաճլ Ջաֆար խալիֆայի (847—861) պաշտակալութեան առաջին տարւոյն։ Ունինք այս տեղ 5 Թուականներ նոյնիմաստ.

ա. Զ. յորելեան, $6 \times 50$ նախ քան Ց ($300 + 551 = 851$) Հայոց Թուական։

բ. ՀԴ ողոմպիադ, 74 × 4 (296 + 551) = 847:

գ. Յետ Թ. եւ Ժ. ինդիկտիոնին. իմացիր «յետ 9. ինդիկտիոնին, այն է 846. 10. ինդիկտիոն, որ է 847. ա՛յսպէս, վասն զի չկայ ԺԹ ինդիկտիոն:

դ. ՄԻԵ. (այ. ՄԻԲ. Բ կարգա՛ Ե) ըստ Թուոյ Հայերէն տոմարի. Հիճրէի 1—232 լուսնական տարիները արեգակնային տոմարի հաշուով. 225 (+ 7 աւելեաց ամք = 232). ուստի 225 + 622 = 847: Այս «ՄԻԵ» խարաջի տարի է. Հայ գրականութեան մէջ յիշուած միայն այս տեղ:

## 25. ՀԻՃՐԷ ԸՍՏ ԹՈՒՈՅ ՀԱՅԵՐԷՆ ՏՈՄԱՐԻ ՆՈՐԱԿԵՐՏ ԹՈՒԱԿԱՆ ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*Աղուանից պատմիչը կարդացած է Թոմաս Արծրունւոյ Պատմութիւնը եւ ծանօթացած «ՄԻԵ» ըստ Թուոյ Հայերէն տոմարի թուականութեան, եթէ այլուստ լսած չէ անոր գոյութիւնը: Ուզած է ան իր Պատմութիւնը ծաղկազարդել Հայոց եւ Տաճկաց թուականներով, երբեմն մէկը, երբեմն միւսը, նաեւ երկուքն ալ ի միասին գործածելով: Այս տեղ Տաճկաց թուականը Արծրունւոյ յիշած խարաջի թուականը չէ, այլ անկէ կամայ կամ ակամայ խոտորած նորակերտ թուական մը, որ 615էն կը սկսի եւ*

յուլեան անցնելով 622, հիճրայի 1, կը նկրտի հասնիլ հիճ. 195 եւ Հայոց ՄԿ։

Այս մասին աղօտ ակնարկութիւն մ՚ըրած է Գ. 2ի վերջը. «Հարուն ԻԳ. նստաւ ի Մահմատայ Ամիր Մումին. եւ հայ թուականն էր ՄԿ ամ» (810/11)։ Հարուն առ Ռաշիդ Մահմեդի ԻԳ. յաջորդն էր. գահակալեց 23 տարի (786—809, մարտ 24. Հիճր. 193[7])։ Աղուանից Պատմութեան Գ. 2 իր գահակալութեան տարին կը նշանակէր 25, թերեւս առկէ ազդուած պատմիչը, մահուան տարին Հայոց ՄԿ (հիճ. 195, յ. Ք. 811) համարած է։

Պատմիչը իր այս նորակերտ տոմարին երակէտ ընտրած է հիճ. ըստ հայ տոմարի 195 եւ Հայոց ՄԿ (810/811) թուականները եւ ընթացած է դէպի ետ հասնելու հիճ. 1 (= Հայոց ՀԱ), բայց գտած է ինքզինքը փոխանակ յ. Ք. 622ի, անկէ 7 տարի յառաջ՝ 615ին, ի հարկէ անզգալաբար. Թերեւս համարելով թէ թուականը Մարգարէի յայտնութենէն կը սկսի։ Այսպէս այս համաձայնութեան մէջ դնելով Հայոց եւ Տաճկաց տոմարները կը կազմէ իր ժամանակական կանոնը։

Ամ Հայոց ԿԴ, ամ Տաճկաց Ա. (յ. Ք. 615)։

— Ամ խարաջի —

Ամ Հայոց ՀԱ. ամ Տաճկաց Ը. (622) Ամ

[7] Müller I, 497.

Հիճ. 1. Ամ խարաջի Ա։
Ամ Հայոց ՀԲ. ամ Տաճկաց Թ. (623)
Ամ Հիճ. 2. Ամ խարաջի Բ.

Կը տեսնուի ապէ, թէ Պատմիչը ամէնուին տեղեկութիւն չէ ունեցած Լուսնական տոմարի մասին, ինչպէս է Տաճկաց (Արաբացւոց) տոմարը, 354 օրով, 11 օրով նուազ արեգակնային տոմարէն, որ ունի 365 օր. այս պատճառաւ ալ ամէն 30 տարի տարւով մը առաւ կ'ընէ արեգակնային տարւոյն վրայ. ուստի 622—810 շրջանին մինչ արեգակնային տոմարը 188 տարի կը հաշուէ, լուսնական տոմարը 195, այսինքն 7 տարի աւելի։ Այս 7 տարիները գոյացած են հետեւեալ կարգով.

| | | | Յետա-դարձ | Յառաջա-դէմ |
|---|---|---|---|---|
| ա. | 1— 19 | (622—639) | 621 | 196 |
| բ. | 20— 52 | (640—671) | 620 | 197 |
| գ. | 53— 86 | (672—704) | 619 | 198 |
| դ. | 87—119 | (705—736) | 618 | 199 |
| ե. | 120—153 | (737—769) | 617 | 200 |
| զ. | 154—186 | (770—801) | 616 | 201 |
| է. | 187—220 | (802—834) | 615 | 202 |

Երբ 195 հ. եւ ՄԿ տարի առ տարի վերէն վար (195—1, ՄԿ—ԿԴ) իջնալով հանենք հիճ. 1 եւ Հայոց ԿԴ. պիտի գտնենք զմեզ յուլեան տոմարի 615 թուի առաջ. եւ եթէ 1—195, ԿԴ—ՄԿ վեր ելնենք պիտի հասնինք նոյն տոմարի 202 թուականին. վասն

դի նկատի չենք առած, որ Հիճ. 195 լուսնական տարի է, եւ Հայոց ՄԿ արեգակնային տարի է, ուստի կամ 195էն աւելցած 7 տարիները դուրս հանելու է եւ կամ Հայոց ՄԿին վրայ 7 տարի աւելցնելու է, որ անիմաստ է. ինչպէս անիմաստ էին 195 արեգակնային տարիներու 1—7 (615—621) թուականները:

Աղուանից պատմիչը եթէ Հիճ. 195էն հանած ըլլար աւելցած 7 տարիները պիտի գտնէր Տաճկաց թուին բառ Հայերէն ամարի (խարաճի) թուականը, զոր յիշած էր Թոմաս Արծրունի:

Հիճրայի եւ Հայոց թուականները քով քովի, համարական ուղիղ զուգաձուլթեամբ կը գտնեմ Երեւանի Մատենադարանի թիւ 2374 Աւետարանի յիշատակարանին մէջ. «Յամի թուոյ Հայկազանց ՆԼԸ (989) եւ բառ թուոյ Հոռոմի ՉԽԲ (742 + 247 = 989). յիմայէլական բռնակալութեանն ՅՀԹ (989. Յովսէփեան Գարեգին Ա. Կաթ., Յիշատակարանք ձեռագրաց. Ա., Անթիլիաս 1951, էջ 157):

## 26. ՀԱՅՈՑ ԵՒ ՏԱՃԿԱՑ ԹՈՒԱԿԱՆՆԵՐԸ ԱՂՈՒԱՆԻՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Պատմիչը իր արուեստական երկտամարեան ժամանակագրական քրոնիկոնը կազմելէն ետքը, յեցած անոր վրայ, փորձած է իր Պատմութեան 615—703 շրջանի դէպքերու

ժամանակը հայկական կամ արաբական թուականներով ճշդել : Այս տեղիքներն են.

ա. «Ի թուիս ԿԵ ամի թուականին Հայոց երեւեցաւ Մահմետն ի Մդին շահաստանին» : Հայոց ԿԵ տարին է 616 յունիս 25. որ կը լրանայ 617 յունիս 24ին :

բ. «Եւ յորժամ Հ. էր (Հայոց թուականին) եկն ի Գամբրեղն Աբրահամու». ուստի 621 յունիս, որ կը համապատասխանէ հիճ. 1ին (622, յուլիս 16) :

Արաբական աւանդութիւնք շատ քիչ կենսագրական տեղեկութիւններ պահած է Մահմէդի նախահիճրէեան շրջանէն, այս պատճառաւ այս Գ. 1 ուշադրութեան արժանացած է Մահմէդի կենսագիրներէն (հմմտ. Müller, I, 170) :

գ. «ԿԲ ամն հրաւիրեց իշխանութեան զօրքն Մահմետայ» (Բ. 39) : Աղուանից պատմիչին ծանօթ եղած է Հայոց ՃԼԴ. թուականը, երբ Խազերը աղարտեցին Աղուանից, Վրաց եւ Հայոց աշխարհները (Դաւիթ Մաշկանի խմբագիր ժամանակագրութիւն, էջ 399. ի գիրս Անանիա Շիրակացւոյ Մատենագրութիւն) : Հայոց ՃԼԴ համած է հիճ. 195էն եւ տեւած է 61/62 տարին :

դ. Սիմէոն Աղուանից կաթողիկոսը կը տարադրէր իր ձեռնակին տակ «Հայոց ՃԽԸ. հրաւից» եւ «Տաճկաց ԶԵ» (Գ. 88).

*այն է յուլեան 699/700 մայիս (Հիճրէի Ձե· 704):*

Ե· *Մեզի հասած է Ձեռնակ մըն ալ, ուր տուած են Աղուանից եպիսկոպոսներն եւ իշխաններ Միքայէլ Կաթողիկոսին· տարեւգրուած է «ՁԸ Թուականութեանս <Տաճկաց եւ ըստ Թուականին ՃԾԱ> Հայոց» (Սամուէլ Անեցի· էջ 286): Այսպէս լրացնելով գրութեան տարին, ՁԸ կը համապատասխանէ Հայոց ՃԾԱ եւ յուլեան 702/703 տարւոյն:*

| Հիճրէի | | | Եարաքի | յետ Քրիստ. | Հայոց | Աղուանից |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | 615 | ԿԴ | 1 |
| | | | | 616 | ԿԵ | 2 |
| | | | | 617 | ԿԶ | 3 |
| | | | | 618 | ԿԷ | 4 |
| | | | | 619 | ԿԸ | 5 |
| | | | | 620 | ԿԹ | 6 |
| | | | | 621 | Հ | 7 |
| 1 | VII | 16 | 1 | 622 | ՀԱ | 8 |
| 2 | | | 2 | 623 | ՀԲ | 9 |
| 3 | | | 3 | 624 | ՀԳ | 10 |
| 4 | | | 4 | 625 | ՀԴ | 11 |
| 5 | | | 5 | 626 | ՀԵ | 12 |
| 6 | | | 6 | 627 | ՀԶ | 13 |
| 7 | | | 7 | 628 | ՀԷ | 14 |
| 8 | | | 8 | 629 | ՀԸ | 15 |
| 9 | | | 9 | 630 | ՀԹ | 16 |

| Հինքեի | | | Խաւարջի | յետ Քրիստ. | Հայոց | Աղուա-նից |
|---|---|---|---|---|---|---|
| 10 | | | 10 | 631 | Ձ | 17 |
| 11 | III | 29 | 11 | 632 | ՁԱ | 18 |
| 12 | | | 12 | 633 | ՁԲ | 19 |
| 13 | | | 13 | 634 | ՁԳ | 20 |
| 14 | | | 14 | 635 | ՁԴ | 21 |
| 15 | | | 15 | 636 | ՁԵ | 22 |
| 16 | | | 16 | 637 | ՁԶ | 23 |
| 17 | | | 17 | 638 | ՁԷ | 24 |
| 18 | | | 18 | 639 | ՁԸ | 25 |
| 19 | | | 19 | 640 | ՁԹ | 26 |
| 20 | XII | 21 | 20 | 641 | Ղ | 27 |
| 21 | XII | 10 641 | 20 | 642 | ՂԱ | 28 |
| 22 | | | 21 | 643 | ՂԲ | 29 |
| 23 | | | 22 | 644 | ՂԳ | 30 |
| 24 | | | 23 | 645 | ՂԴ | 31 |
| 25 | | | 24 | 646 | ՂԵ | 32 |
| 26 | | | 25 | 647 | ՂԶ | 33 |
| 27 | | | 26 | 648 | ՂԷ | 34 |
| 28 | | | 27 | 649 | ՂԸ | 35 |
| 29 | | | 28 | 650 | ՂԹ | 36 |
| 30 | IX | 4 650 | 29 | 651 | Ճ | 37 |
| 31 | | | 30 | 652 | ՃԱ | 38 |
| 32 | | | 31 | 653 | ՃԲ | 39 |
| 33 | | | 32 | 654 | ՃԳ | 40 |
| 34 | | | 33 | 655 | ՃԴ | 41 |
| 35 | | | 34 | 656 | ՃԵ | 42 |
| 36 | | | 35 | 657 | ՃԶ | 43 |
| 37 | | | 36 | 658 | ՃԷ | 44 |

| Հիճրէի | | Յառաջի | յետ Քրիստ. | Հայոց | Աղուա-նից |
|---|---|---|---|---|---|
| 38 | | 37 | 659 | ՃԸ | 45 |
| 39 | | 38 | 660 | ՃԹ | 46 |
| 40 | V 17 660 | 39 | 661 | ՃԺ | 47 |
| 41 | | 40 | 662 | ՃԺԱ | 48 |
| 42 | | 41 | 663 | ՃԺԲ | 49 |
| 43 | | 42 | 664 | ՃԺԳ | 50 |
| 44 | | 43 | 665 | ՃԺԴ | 51 |
| 45 | | 44 | 666 | ՃԺԵ | 52 |
| 46 | | 45 | 667 | ՃԺԶ | 53 |
| 47 | | 46 | 668 | ՃԺԷ | 54 |
| 48 | | 47 | 669 | ՃԺԸ | 55 |
| 49 | II 9 669 | 48 | 670 | ՃԺԹ | 56 |
| 50 | I 29 | 49 | 671 | ՃԻ | 57 |
| 51 | I 18 671 | 50 | 672 | ՃԻԱ | 58 |
| 52 | | 51 | 673 | ՃԻԲ | 59 |
| 53 | | 52 | 674 | ՃԻԳ | 60 |
| 54 | | 53 | 675 | ՃԻԴ | 61 |
| 55 | | 54 | 676 | ՃԻԵ | 62 |
| 56 | | 55 | 677 | ՃԻԶ | 63 |
| 57 | | 56 | 678 | ՃԻԷ | 64 |
| 58 | | 57 | 679 | ՃԻԸ | 65 |
| 59 | | 58 | 680 | ՃԻԹ | 66 |
| 60 | X 13 679 | 59 | 681 | ՃԼ | 67 |
| 61 | | 60 | 682 | ՃԼԱ | 68 |
| 62 | | 61 | 683 | ՃԼԲ | 69 |
| 63 | | 62 | 684 | ՃԼԳ | 70 |
| 64 | | 63 | 685 | ՃԼԴ | 71 |
| 65 | | 64 | 686 | ՃԼԵ | 72 |

| Հիճրէի | | Խալաֆի | յետ Քրիստ. | Հայոց | Աղուա-նից |
|---|---|---|---|---|---|
| 66 | | 65 | 687 | ՃԼԶ | 73 |
| 67 | | 66 | 688 | ՃԼԷ | 74 |
| 68 | | 67 | 689 | ՃԼԸ | 75 |
| 69 | | 68 | 690 | ՃԼԹ | 76 |
| 70 | VI 25 689 | 69 | 691 | ՃԽ | 57 |
| 71 | | 70 | 692 | ՃԽԱ | 78 |
| 72 | | 71 | 693 | ՃԽԲ | 79 |
| 73 | | 72 | 694 | ՃԽԳ | 80 |
| 74 | | 73 | 695 | ՃԽԴ | 81 |
| 75 | | 74 | 696 | ՃԽԵ | 82 |
| 76 | | 75 | 697 | ՃԽԶ | 83 |
| 77 | | 76 | 698 | ՃԽԷ | 84 |
| 78 | | 77 | 699 | ՃԽԸ | 85 |
| 79 | | 78 | 700 | ՃԽԹ | 86 |
| 80 | | 79 | 701 | ՃԾ | 87 |
| 81 | 700 II 26 | 80 | 692 | ՃԾԱ | 88 |
| 82 | | 81 | 693 | ՃԾԲ | 89 |
| 83 | | 82 | 704 | ՃԾԳ | 90 |
| 84 | | 83 | 705 | ՃԾԴ | 91 |
| 85 | | 84 | 706 | ՃԾԵ | 92 |
| 86 | | 85 | 707 | ՃԾԶ | 93 |
| 87 | | 86 | 708 | ՃԾԷ | 94 |
| 88 | | 87 | 709 | ՃԾԸ | 95 |
| 89 | | 88 | 710 | ՃԾԹ | 96 |
| 90 | | 89 | 711 | ՃԿ | 97 |
| 91 | 709 XI 9 | 90 | 712 | ՃԿԱ | 98 |
| 195 | | 188 | 810 | ՄԿ | 202 |

## 27. ՎԱՐԱԶ–ՏՐԴԱՏ ՆԱԽԱՐԱՐ ԻՇԽԱՆ ԱՂՈՒԱՆԻՑ

*Վերայդն (§ 12) առիթ ունեցայ խօսելու իշխանին մասին իբրեւ վերջաբան Ջուանշէրի վէպին։ Անոր կը վերադառնամ այժմ իբրեւ պատմական դէմքի։*

*Հայաստան, Վրաստան եւ Աղուանից աշխարհ 680ին թօթափած էին արաբական լուծն ու մտած Բիւզանդական ծառայութեան։ Աղուանից նախարար իշխանն էր այս շրջանին հաւանօրէն Վարազ–Պերոզ։ 685ին տեղի ունեցաւ Խազրաց արշաւանքը Հայոց, Վրաց եւ Աղուանից աշխարհներուն վրայ։ Այս աշխարհներու զինուորական միացեալ ուժը փորձեց դիմադրել անոնց թշնամւոյն, բայց ձախողեցաւ։ Դաւիթ Մաշկան իր խմբագիր ժամանակագրութիւնը կ'աւարտէ այսպէս. «Յաւարտ(եր)անս (Բ.) արքի Գ. Կոստանդեի ամս երկու։ Ի սորայ առաջին ամին ելեցին հիւսիսային ազգն, որ ասին Հայկերք, (եկին ի վերայ) Հայոց, Վրաց եւ Աղուանից. եւ սպանին ի պատերազմի զիշխանս Հայոց, Վրաց եւ Աղուանից, յամենայն սահմի, որ օր առան էր ամսոյն, ի ձԼԴ թուականին Հայոց*»։ Ժամանակն է 685, որուն 16. սպանուած իշխաններն են. Հայոց՝ Գրիգոր Մամիկոնեան, Աղուանից՝ հաւանօրէն Վարազ–Պերոզ, Վրաց՝ անծանօթ։*

---

** Անանիա Շիրակացւոյ Մատենագրութիւն, էջ 399։*

Երբ լսուեցաւ Կ. Պոլիս երեք հիւսիսական աշխարհներու հարուածը, փութաց Կայսրը սպանուած իշխաններու յաջորդ նշանակել, Հայոց՝ Աշոտ Բագրատունի, Աղուանից՝ Վարազ-Տրդատ, Վրաց՝ անծանօթ:

Աղուանից պատմիչը Վարազ-Պերոզի որդւոյն Վարազ-Տրդատի գահակալութեան հանդէպ նկարագրած է այսպէս. «Իշխանք աշխարհին եւ Կաթողիկոսն» (Եղիազար, իմացիր Ներսէս) կ'ընտրեն «զնախարար ոմն, որ մեծարեալ էր կայսերական պատուով զանթեհիպատրիկութեան[9] ստացեալ պատիւ սոյն անուն Վարազ-Տրդատ, որդի Վարազ Պերոզի... ասեալ կացուցանէին զնա ի վերայ ոսկեհանդերձ վահանին ... աւանդեալ նմա զպատիւ նախապատիւ իշխանութեանն հայրենական գահոյին... Թէպէտ ատեցող միտս ունէին ընդ նմա ոմանք ի նախարարաց անհամակցացն» (Բ. 36): «Այնուհետեւ ... որ բատ օրէ յառաջանայր ի պետութեանն իւրում եւ ընդունէր զգերագոյն զահն ի հօր եւ յարքայակերպ իշխանէն Տաճկաց (իմացիր՝ ի կայսերէն Հոռոմոց) սահմանակալ լինել կողմանն Արեւելից, իշխել ամենայն թագաւորութեանն Աղուանից եւ Ուտէացւոց գաւառին եւ նուաճել ընդ ինքեամբ զամենեսին» (Բ. 37):

Հոս «յարքայակերպ իշխանէն Տաճկաց»

[9] ἀνθύπατος πατρίκιος

ընդունելի է, որովհետեւ այս շրջանին Աղուանից աշխարհը ենթարկուած էր Հոռոմոց կայսեր իշխանութեան: Նոյն իմաստով առնելու է նաեւ հետեւեալ տեղիքը. «Ապա ի ԿԲ. ամի հարաւայնոց իշխանութեան զօրացին Մահմատայ խորհուրդ լինէր հաւանութեամբ Վարազ–Տրդատայ... ընդ ազգակից նախարարս իւր եւ ընդ կաթողիկոսին Եղիազարու եւ այլ. Աւա՜ հարկք, որք եղան ի վերայ մեր ի գժնդակ ազգէն Տաճկաստանեայց յայժմ ժամանեալ տարակուսէ զմեզ եւ երկրորդ անգամ՝ անհնարին այլեաց այն են մեզ՝ ամի ամի տապաստեալ յաշխարհս մեր զօրացն Հոնաց. եւ յերկարանշիր կայմանոյն բնութենէ թշնամեաց աւերեալ պակասեցաւ երկիրս»: Կորուսանի Իսրայէլ եղխակապար Հոնաց իշխանին ուղարկել եւ անոր հետ «անբաժանելի սէր» կնքել:

Յուստինիանոս կայսր իր արշաւանքները փոխանակ դէպ Թայնելու, Աբդալ Մալիք ամիրապետի հետ համաձայնութիւն կը կնքէր, որ Կիպրոսի, Հայաստանի, Վրաստանի (եւ Աղուանի՞ց) հարկերը բաժանուին իրենց մէջ հաւասարապէս[10]:

Ժամանակիս համար Թանկագին են Սամուէլ Անեցիի տողերը. «Իսկ ի գալ չորրորդ ամին (688/689) Յուստինիանոս ինքն խաղա-

[10] F. Dölger, Regesten der Kaiserurkunden des oströmischen Reiches, München 1924, համա. G. Ostrogorsky, Hist. de l'État byzantin, Paris, էջ 160:

ցեալ զօրու ծանու եկն ի կողմն մի (կարդա՛լ Առաջին) Հայոց, ի լեառն, որ կոչի Արտաակ եւ յերկիր բաժանեալ զզօրս իւր՝ աւարէ ի Հայս, ի Վիրս եւ յԱղուանս. եւ կոչեալ առ ինքն զամենայն իշխանս աշխարհացս այսոցիկ. եւ (որոց) ոչ ի կամաց այլ ի հարկէ գնացեալ առ նա:

«Իսկ նորա զամենայն յիշխանացն ընդ իւր առեալ եւ զամանց զորդին պատանդս խնդրեալ. ընդ որս եւ զկաթողիկոսն Հայոց զՍահակ հանդերձ հինգ եպիսկոպոսօք արգելեալ առ ինքն. եւ զամենայն յիշխանացն արքունատուր պատարագօք պատուեալ՝ կացոյց իշխանս աշխարհացն. զՆերսէհ Շիրակայ տէր կոմս Կամսարականաց՝ Հայոց իշխան. եւ զՎարազ-Տրդատ (ձ. Վարդատ. այլ. Վարազդատ) պատրիկ էքսարքոս[11], որ էր երկրորդ թագաւորին, Աղուանից իշխան: Եւ 30.000 զօր օգնական իշխանացն: Եւ ինքն ի Կոստանդնուպօլիս դարձաւ» (Ասողիկ, էջ 100—101):

Յովհաննէս աւագերէց (ԺԳ. դար) իր ժամանակագրութեան մէջ յամի ձէ. կարճառագրէ. «Դաւիթ (հիւպատ) եբեր զթուղթն կայսեր ի Դվին եւ ժողովեցան առ Սահակ (կաթողիկոս) եպիսկոպոսք. եւ զԴաւիթ պայլեցին» (արձակեցի՞ն[12]):

---

[11] πατρίκιος ἔξαρχος!

[12] Վ. Ա. Յակոբեան, Մանր ժամանակագրութիւններ. Բ. Երեւան 1956, էջ 20:

Վերպաղյն տեսանք, որ Տաճկաց «ԿԲ» թուականը տրուած է Հայոց ՃԼԴ (կամ ՃԼԳ) հիճրէի 195 թուականէն հանելով. ուստի հիճ. ԿԲ (622) կը համապատասխանէ յուլեան 685 տարւոյ, եւ քաղաքական խորհրդածութիւնները կը հային նոյն տարւոյ դէպքերուն: Տաճկաստանեայքն՝ արաբական հէններն են, իսկ «Տաճկաց իշխան» Հոռոմայ կայսրը, առ որ գնաց Աղուանից նախագահ իշխանը «անքակտելի ուխտ» կնքելու: Այս եւ Բ. 37, 39—45 գլուխները հնարուած են Աղուանից պատմիչէն:

Հայք, Վիրք եւ Աղուանք 680ին ապստամբած էին Արաբներէն եւ անցած Հոռոմայ ծառայութեան, վասն զի անտանելի եղած էին անոնց հարստահարութիւնները եւ տանելի համարած Կոստանդին Պոգոնատոսի վարչութիւնը: Բայց երբ վախճանեցաւ Կոստանդին եւ յաջորդեց գահը վեշտասանամեայ խելառ Յուստինիանոս Բ. (684) եւ 685ին արշաւեցին Խազիրները անպաշտպան Հայաստան, Վրաստան եւ Աղուանստան, եւ գերփեցին, աւերեցին, կոտորեցին այդ աշխարհները, Բիւզանդիոն այդ հարուածուած ժողովուրդներուն ոչ բանակով օգնութեան եկաւ եւ ոչ հարկերու թողութիւն բրաւ, բայց յաջորդ տարին (686/687) «զօր սաստիկ առաքեաց ի Հայս եւ հրով եւ գերութեամբ քանդեցին գաւառս 25 եւ 8000 երդ գերեալ վաճառեցին: Եւ ի միւս ամին այլ զօր առա–

բեայ 40.000», ինչպէս կը գրէ Ստեփանոս Ասողնիկ. «եւ էր խռովութիւն մեծ յաշխարհիս Հայոց. զի յարեւելից հարաւոյ տաճիկ զօր եկեալ գերեցին գաւառս (ոչ) սակաւս» (էջ 100)։ Անշուշտ նոյն մղձաւանջի մէջ էին նաեւ Վիրք եւ Աղուանք։

Ստ. Ասողնիկ կը գրէր, թէ կայսրը «զօրանս յիշխանացն ընդ իւր առեալ, եւ զամենայն զօրագլխան պատանդս խնդրեալ»։ Անոնց մէջ էր Վարազ-Տրդատ, զոր պատուած էր ամէնէն աւելի։ Իշխանս պարտաւորուած էր իր երկու որդիները տալ երթալ Կոստանդինուպոլիս, եւ ստանալ իրեն շնորհուած «պատրիկ Էքսարքոս» արժանապատուութեան համազգեստը եւ յանձնել Կայսեր իր երկու որդիները, Գագիկ եւ Վարդան իբրեւ պատանդ հաւատարմութեան։ Վարազ-Տրդատ հասաւ կայսերական քաղաքը 694/695ին։ Քաղաքին կլիման կը հիւանդացնէ իշխանը։ Այս միջոցին բնատեղեան պատերազմ կը ծայրի մայրաքաղաքին մէջ. գահընկէց կ'ըլլայ Յուստինիանոս կայսրը եւ կ'աքսորուի Քերսոն (695). եւ յաջորդ կը հռչակուի Լեւոնդիոս զօրավար. եւ սա 3 տարի յետոյ գահընկէց կ'ըլլայ (698). կը յաջորդէ Տիբերիոս Ապսիմարոս. 705ին կը վերադառնայ գահը Յուստինիանոս եւ կը սպանուի 711ին, թողլով գահը հայազգի Փիլիպպիկոս Վարդանի (711—713)։

Թէ ի՞նչ եղաւ այս բազմաշփոթ շրջանին

վայել է իսկ ձեզ: Եւ այն ամ հինգ էր իշխանին նորա ի Հայոց (694—699): Եւ վասն այսր իբր գերծեալ Աստուծոյ օգնականութեամբն՝ եկն եհաս յաշխարհն իւր եւ յայնմ ժամէ եա պաշխարհս Արեւելից ի Տաճիկս· եւ նոցա միայն հարկէր....:

«Իսկ Վարազ Տրդատայ որդիքն Գագիկ եւ Վարդան, որք ի Յոյնս էին պատանդք, վասն խռովութեան թագաւորին (կայսերն Տերերեայ) կացին ի մթին տան զամս տասն եւ երկու. եւ պատճառք հօրն նոցա (՞) պաշխարհն Արեւելից ի Տաճիկս տայն եղեւ: Եւ ի փոխանակն Յուստինիանոսի Հռոմայ թագաւորի, Վարդան Փղեպիկոս (Փիլիպիկոս) թագաւորեալ (711—713), որ էր յազգաց Հայոց: Եւ յիշեալ (կայսրն) զսա ի խաւարային բերդին էին արգելեալ կենդանւոյն. եւ հրամայեալ թագաւորն հանել զնոսա յանտանելի տանջանացն, որոց տեսութեան աչացն խաւար էր ծածկեալ. այլ սա փոքր փոքր ածեալ ի լոյս՝ եւ պարգեւս թագաւորն եւ արձակեաց յաշխարհն իւրեանց, շնորհեալ Գագկայ մասն ի կենսատու խաչէն՝ զլոյսն տեսանելոյ: Եւ նորա եկեալ եւ զմեծ պարգեւն զՄիրոյն Աղուանից Կաթողիկոս» (Գ. 12):

Այս հատուածին ժամանակագրութիւնն է.

694 թուին, Վարազ Տրդատ կը հանի Կ. Պ.

699/700 Է. ամ Վարազ Տրդատայ ի Կ. Պ.

700 գարուն, դուրս կու գայ Կ. Պոլսէն.

700 գարուն, Աղուանք կ'անցնին Արաբներուն:

700 Վարազ Տրդատի որդիք կը նետուին բանտ, ուր կը մնան 12 տարի.

711/712 Փիլիփիկոս կը հանէ բանտարկեալները եւ կ'ուղարկէ տուն:

### ՈՂԲԵՐԱՄ ՏԻԿՆԱՅ ՏԻԿԻՆ ՏԻՂԱՊԱՀ ՊԱՇԻ[1]

Վարազ Տրդատ երբ պիտի մեկնէր Կոստանդնուպոլիս տանելու համար կայսրէն էքսարխոս տիտղոսը եւ յանձնելու իր երկու որդիները Գագիկ եւ Վարդան կայսեր իբրեւ պատանդ իր հաւատարմութեան, գահին տեղապահ կարգեց իր տիկինը Սպրամ, չվստահելով իր տոհմակցաց, վասն զի գիտէր, թէ «անկեալ (անկարի՞) մնաս ունէին ընդ նմա սմանք ի մախայորդաց տոհմակցացն» (Բ. 36): Շատ հաւանական կը համարիմ, թէ այս պարագային խորհած ըլլայ խնդրել Ներսէս կաթողիկոսէն, խորհրդատու ըլլալ Տիկնոջը կարեւոր դէպքերու մէջ: Ճանապարհ ելաւ իշխանը, յուսով թէ շուտով կը վերադառնայ ողջանդամ: Բայց բախտը այլ կերպ տնօրինած էր. ինչպէս տեսանք վերադարձը:

[1] Պիտի խնդրեմ ընթերցողներէն ներողութիւն կրկնութիւններուն համար:

Սպարամ, զոր Յովհաննէս Դրասխանակերտցի, հեղինակը, կ'անուանէր «որ յայն ժամանակս հրամանատար Աղուանից էր» եւ Մովսէս Օրբելեան՝ «թագուհի», իմաստութեամբ եւ քաջութեամբ վարեց պետական գործերը 694—699, թէեւ այդ տարիներուն քաղաքական մթնոլորտը պաշտպան պետութեան վրայ շատ ծանր նստած էր. գանէ չէ յիշուած պատմութեան մէջ թէ այս շրջանին որ եւ է խլրտում եղած ըլլայ Աղուանից աշխարհի մէջ։ Իշխանուհին պահեց երկիրը կայսեր լուծին տակ։ Ան մնաց հաւատարիմ կայսեր, այպէս կը պահանջէին նաեւ ամուսնական սէրը դէպի իր ամուսինն եւ մայրական գորովը դէպի իր որդիները, որոնք Կ. Պոլիս էին։

700 էր տարին, երբ մայիսին, մինչ տիկին Սպարամ դէտակն իր ամուսնոյն վերադարձին կը սպասէր, եւ իշխանը վերադարձի ճանապարհի վրայ էր. Ծերոյ նախարար Թոյլտուութին կը խնդրէր Տիկնոջմէն տեսակցութիւն ունենալու. հոն կը կանչուի նաեւ կաթողիկոսը։ Ծերոյ կը պահանջէ բաժնուիլ Բիւզանդիոնէն եւ ենթարկուիլ ամիրապետի իշխանութեան տակ։ Սպարամ կ'ընդդիմանայ, Ծերոյ կը պահանջէ տիկնոջմէ քաշուիլ քաղաքական գործերէ, յանձնել իրեն իշխանութիւնը։ Տիկինը կը մերժէ։ Ծերոյ սպառնալիքով կը հեռանայ։ Նոյն երեկոյ կը կալանաւորուի Սպարամ.

յաջորդ օրը կաթողիկոսը: Իշխանութիւնը կը բռնագրաւէ Ծերոյ, Աղուանից աշխարհը կը մնայ արաբական լուծին տակ: Այս օրերուն կը փախցնեն Սպրամ տիկինն եւ Ներսէս կաթողիկոսը ի չղթայս բանտի մէջ: Այսպէս կ՚աւարտէ կաթողիկոսի վերջին խօսքը «հակառակութիւն ի վերայ իշխանութեան». տես վարը:

Ներսէս նզովեց Ծերոն, ոչ քննախնդրութեամբ, այլ վասն զի արժանի էր ոճրագործը, որ փառասիրութեան ոգւով ձեռք վերցուց պետական եւ եկեղեցական պետերու վրայ, բանտեց չղթայակապ եւ սովամահ ըրաւ: Ծերոյ եւ իր ազատները 704ին հրաւիրուեցան ամիրապետէն Դամասկոս. Թէ ի՞նչ մահուամբ վախճանեցան անոնք մեզի յայտնի չէ (տես վարը):

Այս միջոցին մէջ էր երկիրը, երբ Վարազ-Տրդատ կը հասնէր Աղուանից սահմանը: Պատմիչը կը հաստատէ թէ նա «եկն եհաս յաշխարհն իւր եւ յայնմ հետէ եւ դաշխարհս արեւելից ի Տաճիկս եւ նոցա միայն հարկէր» (Գ. 12): Այս տեղերս կը կրկնուի. «պատճառաւ (բանտարկութեան որդւոց Վարազ Տրդատայ) հօրն նոցա դաշխարհն Արեւելից ի Տաճիկս տալն եղեւ»:

## 28. ՆԵՐՍԷՍ ԲԱԿՈՒՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ
(Գ. 3—9)

*Աղուանից Պատմութեան այս գլուխները կը ծրարեն Ներսէս Կաթողիկոսի դէմ բացուած դատին հայոց թուղթերը: Որովհետեւ այն տեղ գոյն ինչ հարազատ եւ առաւել անհարազատ տարրներ կը նկատեմ, յարմար կը համարիմ նախ հարազատը տալ եւ ապա անհարազատ մասերը ապացուցնել:*

*Ներսէս, աւազանի անունով Բակուր, ընտրուած էր Գարդմանայ եպիսկոպոս. երբ վախճանեցաւ Եղիազար կաթողիկոս (682), ընտրական ժողովը անոր յաջորդ հրաւիրեց Ներսէս եպիսկոպոսը (Գ. 3, 24):*

*Կաթողիկոսարանը կը գտնուէր առանձնակ Ուտիի Պարտաւ քաղաքին մէջ: Ան ունէր քաղաքէն ոչ շատ հեռու Հովանոց-ամարանոց, Բերդակուր գիւղի մէջ, որուն առջեւէն կը հոսի Տրտու (Թարթառ) գետը:*

*Պարտաւի մէջ էր նաեւ Աղուանից նախագահ իշխանի ապարանքը:*

*Ներսէս Բակուր թէ ուսմանց ի՞նչ ընթացք ըրած էր, մեզի ծանօթ չէ. բայց վկայուած է, թէ ան ունէր «գրեան, զորս լցեալ էր յարկեղս»: Գրասէրը պէտք է եղած ըլլայ նաեւ ընթերցասէր եւ իր կարգին մատենագիր:*

*Դժբախտաբար Կաթողիկոսարանի սարկաւագապետը եւ Ներսէսի յաջորդը Սիմէոն*

կաթողիկոսը, որ ժառանգեց այդ «գրեանը», չէ հաղորդած մեզի գրքերու թիւն եւ անոնց բովանդակութիւնը. բայց տուած է անոնց միահամուռ որակը «լի հերձուածովք», ուստի արժանի յանձնուելու Թարթառ գետի հոսանքին. «առեալ զամենայն (գրեան) ետ ի գետն Տրտու յիւր հոսից տեղւոջն, որ Բերդակուրն կոչի» (էջ 340):

Եթէ այդ գրքերու մէն կամ միւսը «հերձուածողական» էր, կային հոն անտարակոյս Ս. Գրոց մասեր ալ, նոյնպէս Յովհ. Ոսկեբերանի եւ այլ Հայրերու Մեկնութիւնները, ճառերը, Եզնիկի ընդդէմ աղանդոցը, Ագաթանգեղոսի, Փաւստոսի, Ղ. Փարպեցւոյ եւ այլոց պատմագրութիւնները, ինչպէս նաեւ փիլիսոփայական գործոց նորագոյն թարգմանութիւնները. գիրքեր, որոնք նոյն դարու գրասէրի գրադարանը պիտի կազմէին: Ահա գրադարան մը, զոր ագիտութիւնը կ՚ոչնչացնէր:

Աւանդութիւնը չէ պահած իրմէ որեւէ գրաւոր յիշատակ, բայց եթէ անգիրքս Ներսէս կաթողիկոս մահուան օրհասին «ետ թաղել զինքն նամին երկաթեօք եւ նզովեաց զԾերոյ, զի նա եղեւ առաջնորդ չարի նորա (Կաթողիկոսի) եւ Սպարամայ, վասն հակառակութեանն որ ընդ նա (Ծերոյ) եւ ընդ Սպարամ ի վերայ իշխանութեանն» (Գ. 7):

Այս տողերը թէեւ սխրագին են, բայց

պատմութեան համար թանկագին տապանագիր կարող են համարուիլ:

Ո՞վ էր բանտարկած Աղուանից կաթողիկոսը շղթայակապ. «այն, որ էր առաջնորդ չարին», Տէրոյ, որ ոչ միայն Աղուանից կաթողիկոսն այլեւ Սպարամ իշխանուհին բանտարկած եւ շղթայակապած էր: Ի՞նչ պատճառաւ. վասն զի «ի վերայ իշխանութեան» ձեռնամուխ եղած էր, այս ինքն պահանջած էր Աղուանից Սպարամ տիկինէն, որ տեղապահ կարգուած էր իր ամուսինէն, որպէս զի հրաժարի պաշտօնէն, եւ Տէրոյի յանձնէ գահը: Երբ կը մերժէ իշխանուհին, Տէրոյ կը բանագրաւէ իշխանութիւնը, կը բանտարկէ Սպարամն իբրեւ գահին տեղապահ եւ կաթողիկոսը, վասն զի խորհրդատու կարգուած էր իշխանուհւոյն: Երկուքն ալ վախճանեցան բանտի մէջ սովամահ: Շատ խորհրդաւոր է կաթողիկոսին վերջին խնդրուածքը. «թաղել զինքն նովին երկաթեօք». որ կը յիշեցնէ այն շղթաները, որոնցմով կը պարծէր Առաքեալը:

Քաջ կը համարիմ այն դպիրը, որ համարձակած է արձանագրել այս տողերը Աղուանից Պատմութեան մէջ:

Տէրոյ փութայ ժողով գումարել կաթողիկոսէն «նշկահել» երեք եպիսկոպոսներով, եւ 11 ազատներով, ընտրելու նոր կաթողիկոս եւ անոր ձեռքով նզովել տալու

Ներսէս կաթողիկոսն իբրեւ հերձուածող եւ Սպարամ իշխանուհին անոր համախոհ։

Պատմութեան համար արժէքաւոր է այն հաւաստումը, թէ «Ներսէս կալաւ զաթոռն ուղղափառութեամբ ամս ԺԴ եւ զչարափառութեամբն ամս երեք եւ կէս»։

Կաթողիկոս կ՚ընտրուի «Սիմէոն այր պարկեշտ», «սարկաւագապետ» ծերունի, «եւ ձեռնադրեցին զնա» յիշեալ երեք ապստամբ եպիսկոպոսները «ի հայրապետութիւն Աղուանից. որ զպղտորութիւն Ներսիսի երած յաշխարհէն» (Գ. 7)։ Այս կը պատահի «յՁԵ. ամի Տաճկաց եւ ի հայ թուականիս ՃԽԸ, յամսեանն հրոտից» (Գ. 8), այն է 700, մայիս–յունիս։

Այս չորս եւ կէս տարիներն են 695—699/700, մայիս–յունիս. ուստի այն շըրջանը, որ Վարազ Տրդատ կը գտնուէր կայսերական արքունիքը եւ Սպարամ կ՚իշխէր Պարտաւ։ Այս շրջանի՞ն կը հային այն տողերը, զորոնք Աղուանից պատմիչը գետեղած է Բ. 37 գլուխի մէջ. Վարազ Տըրդատ «ընդունէր զգերագոյն զահն ի Հզօր եւ յարքայակերպ իշխանէն Տաճկաց (՞) սահմանակալ լինել կողմանն Արեւելից, իշխել ամենայն թագաւորութեանն Աղուանից եւ Ուտէացւոց գաւառին եւ նուաճել ընդ ինքեամբ զամենեսին»։

Եթէ այսպիսի հրահանգ հասած է Կ. Պոլսէն տեղապահ Սպարամի, եւ նա

գործադրած է, կարելի է, որ կաթողիկոսն ալ ընդարձակած ըլլայ իր իրաւասութիւնը եւ հրաւիրած ըլլայ միաբնեայ եկեղեցիներու հաւատացեալները խոստովանիլ Քաղկեդոնի ժողովոյն ճշդած դաւանութիւնը:

Ինձ կը թուի թէ այն պատմական գրուածքը, որ հեղինակուած է հայերէն Է. դարու չորրորդ քառորդին, եւ հասած է մեզի անանուն, յունարէն թարգմանութեամբ եւ հրատարակուած De rebus Armeniae խորագրի տակ, հեղինակութիւնն ըլլայ Ներսէս կաթողիկոսի, 695—698 շըրջանին: Գրուածքին նպատակն է ցոյց տալ պատմականօրէն, թէ Հայոց, Վրաց եւ Աղուանից եկեղեցիները այն հաւատքը, զոր տուաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ, անվթար պահած են մինչեւ Զ. դարու կէսը. ապա Հայոց եկեղեցւոյ մէջ մուտ գտած է Ասորիներու միջնորդութեամբ միաբնեայ վարդապետութիւնը: Ուստի կարելի է ենթադրել, թէ գրուածքիս հրատարակութիւնը գրգիռ տուած ըլլայ դաւանաբանական վիճաբանութիւններու «ուղղափառաց եւ չարափառաց» մէջ:

Բայց ի անդի այսր ինձ դարձեալ գալ պիտի:

29. ՇԵՐՈՅ ԵՒ ԻՐ ԱԶԱՏՆԵՐԸ

Շերոյ կը յիշուի Աղուանից պատմութեան մէջ 699—704 տարիներուն: Հաւանօրէն ինքն էր մին այն «ի մախայրորդր տան-

մակցայն Աղուանից», որոնք «անկեալ մխա ունէին» ընդ Վարազ Տրդատ, 685էն ի վեր (Բ. 26):

Տեսանք վերագոյն, թէ Վարազ-Տրդատ 694ին, երբ պիտի մեկնէր Կ. Պոլիս, իր աթոռին աթոռակալ, իշխանութեան կառավար նշանակած էր իր տիկինը Սպարամ: Իշխանը կը յուսար, թէ իր բացակայութիւնը կարճատեւ պիտի ըլլայ. բայց դէպքերը բերին, որ հինգ տարի երկարի: Թէպէտ Իշխանուհին այս հինգ բազմաշփոթ տարիներուն իշխանութեան սանձը ամուր բռնած կայսերապաշտ հաւատարմութեամբ պահեց երկիրը անսասան, սակայն ժամանակի պայմանները արտաքին քաղաքականութեան կը մղէին: Հայաստան յարած էր Արաբներուն: Այս պատճառաւ ալ Աղուանից քաղաքագէտներէն մէկը — Վարազ-Տրդատի այն տոհմակիցներէն, որոնք նախանձաւոր էին իշխանական գահին, եւ այժմ այդ գահին վրայ աչքին մը կը տնկէին — համարձակութիւն կ'ունենայ ներկայանալ Սպարամ իշխանուհւոյ եւ դնել անոր առաջ ժամանակի պահանջը, թօթափել բիւզանդական լուծը եւ առնել արաբականը: Այդ իշխանն էր Շերոյ: Այնպէս կ'երեւայ թէ խօսակցութեան ներկայ էր նաեւ Ներսէս Աղուանից կաթողիկոսը:

Խօսակցութիւնը հակաճառութեան կը փոխուի երբ Սպարամ տեղի չի տար այդ խորհուրդին, վասն զի չէր կրնար իր ամուս-

*սինն եւ երկու պատանդ որդիները վանքի մտնել։ Շերոյ կը պահանջէ Իշխանուհիէն քաշուիլ քաղաքական ասպարէզէն... եւ կը հեռանայ սպառնալիքով։*

*Կաթողիկոսը կը գուշակէ վտանգը, որ կը սպառնար Սպարամին, թերեւս եւ իրեն։*

*Նոյն երեկոյ կը կալանաւորուի Իշխանուհին եւ կը դրուի բանտ։ Կը փնտռուի նաեւ Կաթողիկոսը, որ թաքնուած էր. կը գըտնուի յաջորդ օրը եւ կը տարուի ուր էր Իշխանուհին։ Կը շղթայակապուին երկուքն ալ։*

*Ազուանից իշխան կը հռչակուի Շերոյ. որ կ՚ապստամբի Կայսրէն եւ կ՚ենթարկէ Ազուանից աշխարհը Արաբացւոց։*

*Շերոյ իր քայլերը արդարացնելու համար կը գումարէ ժողով եկեղեցականներու եւ ազատներու։ Ժողովը կը նզովէ Ներսէս Կաթողիկոսը եւ Իշխանուհին — առանց անոնց ներկայութեան — իբրեւ քաղկեդոնական կայսերապաշտ, աղանդաւոր։ Առ այս հրատարակուած Ձեռնարկին ստորագրած են նորընտիր Սիմէոն կաթողիկոս եւ 3 եպիսկոպոս |7 վանականներ եօթը վանքերու| ի զինուորական հրամանէ Շերոյ Ազուանից իշխան եւ հետը 12 ազատք։ (Այս ազատներու անուանացանկը կը կրկնուի յետոյ գլ. 10, էջ 348—349)։ «Գրեցաւ գիրս այս յՁԵ. ամի Տաճկաց եւ ի հայ թուականիս ՃԽԸ. յամսեանն հրոտից»։*

Երկու ու կէս տարի յետոյ Տերոյ կը ստորագրէ. «Ես Տերոյ ապիճի պատրիկ, Գարդմանայ տէր եւ Աղուանից իշխան»:

Երբ վախճանեցաւ Սիմէոն կաթողիկոս եւ գումարուեցաւ ժողով նորընտիր կաթողիկոսի համար, Թիկնածուն Միքայէլ քահանայ կը պահանջէ եպիսկոպոսներէն եւ ազատներէն հետեւեալ ձեռնարկը, որ անծանօթ եղած է Աղուանից պատմիչին եւ պահուած է Թղթոց գրքին մէջ[1]:

## 30. ՁԵՌՆԱԿ. ԶՈՐ ԽՆԴՐԵԱՑ ՄԻՔԱՅԵԼ ԿԱԹՈՂԻԿՈՍ Ի ՏԵՐՈՑԷ

Ի ժամանակին, յորում կարգեցաւ ի քահանայապետութիւն Աղուանից Միքայէլ քահանայ, խօսեցաւ աթոռակցօքն իւրովք, որք էին.

Յովհաննէս Կապաղակու եպիսկոպոս,
Սահակ Ամարասու եպիսկոպոս, եւ
Եղիազար Հաշոյ եպիսկոպոս, եւ
Իսրայէլ Մեծկուանից եպիսկոպոս, եւ
Զաքարիա Մեծիրեանց եպիսկոպոս, եւ
Յովակիմ Գարդմանայ եպիսկոպոս.
յաղագս բարեկարգութեան աշխարհիս եւ ուղղափառութեան հաւատոյ:

---

[1] Էջմ. 58 եւ 100: Հրատարակած է Ա. Տէր-Միքէլեան, Սամուէլ Անեցի, Վաղարշապատ, 1893, էջ 286:

*Արդ ես Շերոյ Ապիհի-պատրիկ, Գարդմանայ տէր եւ Աղուանից իշխան,*

*Վարազ-Գրիգոր պատրիկ Աղուանից սպարապետ,*

*Բարի Շահրփերդեան,*

*Ջարմիհր ի Վարազ-Գուրդաքեան,*

*Թէոդորոս Վատամ յԱրեւմանեան,*

*Ռ(ո)ստոմ ի Վաչագան ի Վարազաքեան, Յունաստահեան,*

*Վահան ի Վարազ-Վահանեան,*

*Սմբատ ի Քարոյեան,*

*Մահումատ ի Ղանքարեան,*

*Գրիգոր ի Ռահատեան,*

*Պատրիկ ի Քամդիտան,*

*Արեւքս ի Վարուքեան,*

*Շերոյ ի Մերդանշահեան,*

*Վարդէշ ի Թամդիկան հիւպատոս,*

*ՁԸ Թուականութեանս <Տաճկաց եւ ՃԾԱ> Հայոց:*

*Այսպէս կանոնեցաք, թէ յորժամ դուք ձեռնարկէք յաղագս Քաղկեդոնական աղանդոյն եւ կամ Մայրագոմեցոյն, եթէ վասն Պայլիկենաց եւ թէ վասն խառն ամուսնութեան եւ թէ գինչ եւ իցէ, ոչ ոք կարէ եղանել բառ ձեր հրամանէ· եւ եթէ ոք եղանէ՝ յԱստուծոյ դատապարտեալ եղիցի, եւ դուք իշխան լինիք բառ կամաց ձերոց դատել եւ որ յիշխանաց չունի իշխանութիւն օգնել· եւ ի պայմանիս, զոր կարգեցաք, հաստատուն կացցուք:*

*Եւ կնքեցի զգիրս ես Ներսոյ ապահիպատրիկ, Գարդմանից տէր եւ Աղուանից իշխան, հանդերձ ամենայն ազատօք:*

•

*Ներսոյ վերջին անգամ կը յիշուի 704ին. «Յետ այսորիկ (Տաճիկք) զՆերսոյ Աղուանից իշխանն ազատօքն հանդերձ տարան ի Տարօն եւ անդի յԱսորիս. եւ հայ թուին լինէր ՃԾԳ» (704 [2]): Այս տարուոյն էր որ Հայոց ազատները ի Խրամ եւ ի Նախիջեւան հրակէզ եղան Աբդլմելիքի հրամանով: Թէ ինչ մահուամբ մեռան Ներսոյ եւ անոր ազատները, ծանօթ չէ:*

*Ներսոյի յաջորդն եղաւ հաւանօրէն «եամն-չահիկն Վաչական ի Պատրիկեան Աղուանից իշխան» (Գ. 17, էջ 368), որ կը յիշուի 712ին, հաւանօրէն որդին «Պատրիկ ի Քարոյեան»ի, որ էր յարքայից զարմից (էջ 344, 348 եւ 349):*

*Կ'երեւի ասկէ, թէ Քաղկեդոնականաց հալածանքը չարունակուած է Ներսոյի օրով:*



[2] Գ. 17, էջ 367: